ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ   Թիւ 12



# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

Գրեց
ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

ԳԱՀԻՐԷ
Տպ. ՆՈՐ - ԱՍՏՂ
1950

# ՑԱՆԿ

Զ.



Է.



Ը.



Թ.



Բ.



Ա.



Բ.



Գ.



Դ.



Գ.



Ա.



Ա.



Բ.



Գ.



Դ.



Ե.



Զ.



Բ.



Գ.



Ա.

## Զ.

ոյնիսկ անոր քաղաքական անկախութիւնը ջնջեցին։

Տկար պզտիկ իշխանութիւններու վերածուած Վրաստանի քաղաքակրթական չափանիշն ալ ինկաւ։

Վրաստանի անկումը եւ կործանումը, ինչպէս Մեծոփեցի մատնանիշ ըրած է, մեծ վնասութիւն պատճառած է Հայոց, որոնք Սելջուկեանց օրերէն սկսեալ Վրաց վրայ մեծ յոյսեր դրած էին։

Վրաստանի բաժանումէն վերջ Հայերը Թիֆլիս նստող թագաւորները միայն կը ճանչնան Վրաստանի վեհապետներ եւ ըստ այնմ ալ կը յիշատակեն (1)։

## Զ.

# ԹՈՒՐՔ, ՊԱՐՍԻԿ ԵՒ ՌՈՒՍ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1467ԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

Այս շրջանը որ կրնանք կոչել իրաւամբ անտէրնչութեան ժամանակամիջոց, ներկայացուած է արդէն (վերը, էջ 81—88), այնպէս որ կրկին պիտի չխօսիմ Հայոց պատմութեան այս ամենամռայլ շրջանին վրայ։

Թիմուրի աշխարհակալութեանց, ինչպէս նաեւ Թուրքմէն ցեղերու արշաւանքներուն եւ ասպատակութիւններուն, եւ Գարագոյունլու եւ Ագգոյունլու իշխաններու շրջաններուն կատարուած կոտորածներուն յաջորդող քուրդ եւ պարսիկ պատերազմները, որոնք մօտաւորապէս երկուքուկէս դար տեւեցին, Հայաստանի բնակչութիւնը անօրացուցին եւ երկիրը տնտեսապէս քայքայեցին, վասնզի այդ կռիւներու շրջանին կատարուեցան աւերածութիւններ, առեւտրական ճանապարհները փակուեցան, Օսմանցիք մանկաժողովներ կատարեցին եւ Պարսիկները տարագրութիւններ։

Տիրող տնտեսական ու քաղաքական ծանր կացութեան իբր հետեւանք Հայ բնակչութեան մէկ մասը թողուց Հայաստանը եւ գաղթեց հեռաւոր վայրեր։

ԺԵ—ԺԶ. դարերուն Հայաստանի ամենէն արգաւանդ մասերուն բնակչութիւնը, ինչպէս Եւրոպացի կարգ մը ուղեւորներ կը հաստատեն, չափազանց պակսած էր, դաշտերը անմշակ մնացած էին եւ ամէն կողմ կը տեսնուէին աւերուած գիւղեր, խոպան դարձած այգիներ ու արտեր (*Հայ ժողովրդի պատմու-թյուն.* 1943 Երեւան էջ 239)։

Հայաստանի բնակչութեան քաղկացութիւնը հիմնական փոփոխութեան ենթարկուած էր եւ անոր զուտ հայկական նկարագիրը որ ԺԱ. դարէն սկսեալ արդէն փոխուիլ սկսած էր բոլորովին այլափոխուած էր, վասնզի Հայաստան հաստատուած էին բազմաթիւ Թուրքեր, Պարսիկներ եւ Քուրդեր։

Ո՛չ Օսմ. կայսրութիւնը եւ ո՛չ Պարսկաստան կրցած էին Հայաստանի մէջ հաստատել կանոնաւոր վարչութիւն մը, որով բոլորովին ողբալի վիճակի մը մատնուած էր արդէն թշուառ երկիրը։

Օսմ. Կայսրութիւնը զինուորական կազմով, ոյժի վրայ հիմնուած իշխանութիւն մըն էր եւ աւելի կեդրոնացման կը միտէր, իսկ Պարսկաստան զինուորականապէս աւելի տկար, կեդրոնական զօրաւոր կառավարութենէ մը զուրկ էր։ Հայաստան երկու պետութիւններու համար ալ ծայրագաւառ մըն էր։ Հոն Հայերու անկախութեան վերջին հետքերը թէեւ ջնջուած էին, բայց մի քանի լեռնային գաւառներու մէջ կը մնային շրջաններ, որոնք տակաւին կատարելապէս նուաճուած չէին եւ ինչպէս ըսուած է (տես. վերը, էջ 84) անոնք թէեւ կը ճանչնային Օսմ. Սուլթաններու կամ Իրանի Շահնշահներու գերիշխանութիւնը բայց կը պահէին տեղական մասնաւոր առանձնաշնորհներ եւ կը կառավարուէին բնիկ ժառանգական իշխողներու կողմէն։

Թէ՛ Պարսկաստանի եւ թէ՛ Թուրքիոյ մէջ այդ անկուած շրջանները, իրարմէ տարբեր վիճակներ ունէին, բայց առհասարակ ամէնքն ալ տեղացի եւ ժառանգական պետէ մը կը կառավարուէին։ Պարսկաստանի մէջ ատոնց ամէնէն նշանաւորը Վրաստանն էր, զոր կը կառավարէր Վրաց թագաւորական տունը։

Կային նաեւ աւելի փոքր ինքնավար շրջաններ, եւ կիսավայրենի վիճակի մէջ ապրող մի քանի ցեղեր (Պախտիար, Քուրդ եւ այլն) որոնք իրենց ցեղապետներու հրամանին տակ կ'ապրէին, առանց պետութեան ընդհանուր օրէնքներուն հնազանդելու։

Յետոյ կային նաեւ Հայ մելիքութիւններ, մի քանի տեղերու մէջ, որոնք պարզ հողատիրութիւններ էին, քիչ մը ընդարձակուած իրաւունքներով։

(1) *Կ'երեւի թէ Ալեքսանդրի որդին Գորգի յաջորդած է իր հօրը 1442ին եւ թագաւորած է մինչեւ 1460ական թուականները։ Աղջոյ վանքին մէջ 1447ին գրուած Աւետարանի մը եւ 1459ի Այրիվանուց մէջ գրուած Տարեգիրքի մը յիշատակարաններուն մէջ կը յիշատակուի այս թագաւորը (տես.* Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի Միխիթարեանց, Ա. էջ 687 եւ Խաղբակեանք, Բ. էջ 126 եւ Գ. էջ 141—144)։

Թուրքիոյ մէջ ալ կային այս տեսակ ինքնավար շրջաններ:

Մասնաւորապէս ասիական բաժինին մէջ գոյութիւն ունէին *տէրէպէյի*ութիւններ, որոնք ցեղապետութիւններ էին եւ իրենց գրաւած դիրքերուն համար այսպէս *ձորապետ (տէրէպէյի) կոչուած էին*:

Կային նաեւ քրդական *հիւքիւմէթ* (իշխապետութիւն) կոչուած շրջանակները, Պիթլիսի, Մուշի, Տիարպէքիրի կողմերը եւ մի քանի լեռնային համայնքներ Հայաստանի եւ Տաւրոս լեռներուն վրայ (*Լէօ. Հայոց Պատմ.* Գ. էջ 51—52):

Որչափ որ այս ինքնավար եւ կէս-անկախ կամ կեդրոնական իշխանութեան դէմ ըմբոստ իշխանութիւնները հեռու էին կանոնաւոր կազմակերպութիւններ ըլլալէ եւ խառնակ ու անկանոն վարչութիւն մը ունէին, սակայն անոնցմէ Հայաստանի մէջ գոյութիւն ունեցողները պիտի չանտեսուին հոս, ամբողջական գաղափար մը տալու համար Հայաստանի մէջ հնագոյն շրջաններէ մինչեւ մեր օրերը իրարու յաջորդող բոլոր անկախ ու կէս անկախ Հայ եւ օտար իշխանութիւններու վրայ եւ ասով փակելու Հայաստանի պատմական աշխարհագրութիւնը:

## Ա.

## ՊԱՐՍԿԱՀԱՅԱՍՏԱՆ

### Ա.

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐՍԻԿ ԽԱՆԵՐԸ

Պարսիկները շրջանին սկիզբը Հայաստանի մեծագոյն մասին տէրն էին, մրցակից ունենալով Օսմանցիները, որոնք անընդհատ պատերազմներով չթողուցին որ Պարսիկ տիրապետութիւնը տեւական ըլլար:

Երկարատեւ պատերազմներէ վերջ, Սուլթան Մուրատ Դ.ի եւ Շահ Սէֆի Ա.ի ժամանակ վերջապէս 1639ին կնքուած դաշինքով մը, Հայաստանը բաժնուեցաւ այս երկու սահմանակից պետութիւններու միջեւ, գոնէ ժամանակի մը համար ունենալով հաստատուն սահման մը, որ կ'սկսէր Արեւմտեան Ախուրեանի (Արփա Չայ) ափերէն եւ նոյն գետին ընթացքին հետեւելով մինչեւ Արաքս կը հասնէր, ուրկէ վերջ Արաքսի ուղղութեամբ կ'երկարէր դէպի արեւելք, մինչեւ Կողբի մօտերը, իսկ այն տեղէն կը ծռէր դէպի հարաւ, հայկական պարը եւ Արարատէն ուղիղ գիծով կ'իջնէր դէպի Միջագետք։

Հայաստան այս ձեւով երկուքի բաժնուելէն վերջը, Պարսկաստան, Արեւելեան Հայաստանի եւ Ատրպէճանի մէջ, իր երկիրին սովորական եղող դրութեան համաձայն, կազմակերպեց Շաքիի, Շիրվանի, Գանձակի, Պագուի, Նախիջեւանի ու Երեւանի խանութիւնները, որոնց վրայ վերջը աւելցաւ նաեւ Ղարապաղի խանութիւնը:

Խանութիւնները կը բաժնուէին *մահալ*ներու, այսինքն շրջաններու: Այդ մահալները ունէին իրենց կառավարիչները, որոնք խանին կողմէ կը նշանակուէին, եւ կը կոչուէին, *Սուլթան, բէկ, մելիք, նայիպ, միրպոլուկ*, եւայլն տիտղոսներով:

Խանութիւններու մէջ քաղաքական եւ վարչական ամբողջ իշխանութիւնը կը գտնուէր խանին ձեռքը: Ան փոքրիկ ժառանգական միապետ մըն էր իր խանութեան սահմաններուն մէջ:

Պարսիկ խաները թէպէտեւ կեդրոնական կառավարութեան գերիշխանութիւնը կ'ընդունէին, սակայն միշտ կը ձգտէին անկախօրէն գործել, իսկ երբ խռովութիւններ կամ անիշխանութիւն կը տիրէր կեդրոնին մէջ անոնք բոլորովին կը մերժէին ճանչնալ ոեւէ հեղինակութիւն:

Այսպէս, երբ ԺԸ. դարուն, Պարսկաստանի մէջ անիշխանութիւն կը տիրէր, Կովկասի եւ Հայաստանի խաները գրեթէ կատարեալ անկախութեան տիրացան:

Հետեւաբար, այս խանութիւնները, Հայաստանի հողին վրայ կազմուած իշխանութիւններ էին, որոնց վրայ գաղափար ունենալ հարկ է:

### Ա. ԵՐԵՒԱՆԻ ԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Լէնկ Թիմուրի արշաւանքներէն վերջ Երեւան կեդրոն եղած էր Հայաստանի մէջ կազմուած ինքնիշխան թուրք տոհմերէն մէկուն իշխանութեան: Այսպէս, 1440ին Երեւանի կ'իշխէր Եաղուպ բէկ, որ հաւանօրէն Ազգոյունլու Գարա Օսմանի եղբօրորդին էր: Յետոյ Երեւանի իշխած է Ուզուն Հասանի եղբօրորդին ուրիշ Եաղուպ բէկ մը:

ԺԶ. դարուն սկիզբը Երեւանի կուսակալն էր Ռէվան խան, որ կառոյց Երեւանի բերդը, զոր Թուրք եւ Պարսիկ պատերազմներու ատեն իրարու ձեռքէ յափշտակեցին այս երկու պետութիւնները, որոնց երկուքին համար ալ Երեւանի շրջանը կը կազմէր ծայրագաւառ մը:

1579ին Երեւանի պարսիկ կուսակալն էր Թօքմաք Մահմուտ խան, որ Լալա փաշայի յարձակման ատեն փախաւ: Թուրք բանակը թէ՛ քաղաքը եւ թէ՛ գաւառը աւերեց եւ մեծ թուով գերիներ տարաւ։ Երբ հաշտութիւն կնքուեցաւ քաղաքը կրկին պարսից ձեռքը մնաց, բայց երկու տարի վերջը Ֆէհրատ փաշա վերստին գրաւեց, եւ հոն նոր բերդ մը շինեց ու ամրացուց: Հոն կուսակալ դրաւ Չղալ Եուսուֆ փաշան:

Պարսիկները 10—12 տարի իզուր փորձեցին վերագրաւել Երեւանը, որ Արարատեան նահանգին հետ 1590ի հաշտութեան համաձայն Շահ Աբաս թողուց թուրքերուն: Բայց 1603ին երբ Թուրք եւ Պարսիկ պատերազմները կրկին սկսան Շահ Աբաս բոլոր գաւառը, ինչպէս նաեւ Երեւանը, ինն ամսուան պաշարումէ մը վերջ, գրաւեց (1604):

Շահ Աբաս, Երեւանը խանութեան մը կեդրոնը բրաւ 1604ին, զայն տալով իր անուանի զօրավարին՝ Ամիրգունա խանին:

# ԹՈՒՐՔ, ՊԱՐՍԻԿ ԵՒ ՌՈՒՍ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ

## (1467-ԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կանանչ գոյնով սպուած են պարսիկ վեց խանութիւններու կեդրոնները, իսկ ենթակայ քաղաքները նոյն գոյնով նշանակուած են:
2. Կարմիր գոյնով սպուած են Քիւրտ հինգ իշխանութեանց կեդրոնները, ինչպէս նաեւ անոնց ենթակայ քաղաքները:
3. Սեւ գոյնով նշանակուած քաղաքները ռուսական յառաջխաղացման ընթացքը ցոյց կու տան:

Թիւ 18 | Էջ 376–424

## ՊԱՐՍԿԱՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՍԻՒՆԵԱՑ ՆԱՀԱՆԳ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Գիրքին մէջ յիշուած վայրերը, որոնք նշուար է նշանակուած են քարտէզին վրայ։

Այս խանութիւնը ունէր 13 *մահալներ* որոնց կառավարիչները կը կոչուէին *Միրպոլուկ*: Իսլամ գիւղերու գիւղապետները կը կոչուէին՝ *Նայիպ* եւ զուտ հայաբնակ գիւղերու պետերը՝ *Մելիք*, որոնք պարզ տանուտէրեր էին եւ միջնորդներ՝ գիւղական համայնքին եւ խանին միջեւ, որ շատ չէր խառնուեր համայնքներու ներքին գործերուն: Խանը կը կոչուէր *պէկլէրպէկի*— վանզի անոր ստորադրուած էին, կարգ մը երկրորդական խաներ, իսկ պատերազմի ատեն՝ *Սարտար* (զօրագլուխ), եւ իր իշխանութեան տակ ունէր գրեթէ բոլոր Պարսկական Հայաստանը կամ Վրաստանի եւ Արաքսի միջեւ տարածուած երկիրները (*Լէօ. Հայոց Պատմ.* Գ. էջ 54): Երեւանի խանը Պարսկաստանի ամենազլխաւոր պաշտօնակալներէն մէկն էր եւ ամէնէն հարուստը: Անոր տարեկան եկամուտն էր 32,000 թուման, առանց հաշուելու անուղղակի տուրքերը, եւ ընծաները, որոնք խանին կը բերէին 14,000 թումանի մօտ հասոյթ (Chardin. Բ. հտ. էջ 247 եւ Դ. հտ. էջ 37 Լէօ. Գ. էջ 57): Եւրոպացի հեղինակի մը համաձայն ԺԷ. դարուն Երեւանի խանութեան մէջ էին, Ղափան, Ջուղա, Սկաբուս, Սիսիան, Բէշտաղ, Զարզիբիլ, Երեւան, Ղըրխ-Պուլաղ, Աղստափա, Ապարան, Սկարժել, Սաշաբ, Իւչէ, Տաբաք-Մելէք, Թումանիս, Ալգէթ, Զիլդեր, իսկ ըստ նոյն հեղինակին խանութեան նշանաւոր քաղաքները եւ բերդերն էին, Պարտա, Պալապան, Շամգոռ, Երեւան, Ղարապաղ, Շինքար, Բարկուշատ, Նախիջեւան, Օրդուպար, Պայազիտ, Մակու, Մաղասբերդ, Թիֆլիս եւ Զիլդեր (1): (*Լէօ. Հայոց Պատմութիւն*. Գ. էջ 54. առած է Adam Olearius-էն— Les vayages en Moscovie, Tartarie et Perse. Amsterdam 1727 էջ 522):

ԺԸ. դարուն Ֆրանսացի հեղինակ մը ըսած է որ Հայաստան կը բաժնուի երեք մասի եւ անոնցմէ մէկը, հիւսիսայինը՝ կը գտնուէր Վրաստանի եւ Արաքսի միջեւ, եւ մայրաքաղաքն էր Երեւան:

Ամիրգունա խանի իշխանութեան ժամանակ, 1616ին Եօքիւզ Ահմէտ փաշան, առաջացաւ մինչեւ Երեւան, երկուքուկէս ամիս պաշարեց եւ չկրցաւ քաղաքը առնել, եւ ետ դարձաւ: Անկէ վերջը 1617—1626 խաղաղութեան շրջանին Ամիրգունա ըրաւ շինարարութիւններ: Տնկեց այգիներ, եւ բացաւ առուներ, ու աշխատեցաւ երկիրը շէնցնել, բնակչութիւնը շատցնելով։ Ան լաւ ըմբռնած ըլլալով Հայ տարրին նշանակութիւնը, Շահ Աբասի տեղահանութեան հետեւանօք սաստիկ նուազած Հայոց թիւը շատցնելու նպատակով արշաւած է Վանի, Մուշի եւ Կարինի կողմերը Հայ գաղթականներ բերելու համար:

Զաքարիա Սարկաւագ կ՚ըսէ թէ «*գեղորայքն՝ որ ի մէջ Երեւանայ եւ Էջմիածնայ են, այսինքն Բալար, Դօկզումբէթ, Կաւակերտ, Փարաքար, Սապատ եւայլք… զերեաց ի գաւառացն Օսմանցըւոց, բերեալ բնակեցոյց յայսմ գեղորայս եւ ահա կան շէն մինչեւ ցայժմ*»։ Աշխարհաշէն խանը «*սիրեաց զազգս Հայոց եւ միշտ գնայր ի տունս քրիստոնէից, ուտէր եւ ըմպէր ընդ նոսա: Եւ կարգեաց գաւառապետս՝ որ է մելիք*»: (Զաքարիա Սարկաւագ): Այսպէս կը յիշէ թէ «*ի գեղջէն Բանաքեռոյ՝ զոմն Դաւութ անուն կարգեաց Մելիք Կոտէից եւ Անբերդու: Եւ Դեօզալ— բէկ անուն ոմն ի Կարբոյ՝ արար ընկեր եւ խորհրդակից Դաւութին: Եւ խանն՝ զոր ինչ եւ առնէր, հարցանէր նոցա եւ յորժամ նստէր յընթրիս, յաջմէ եւ յահեկէ իւրոյ, նստուցանէր զմելիք Դաւութն եւ Դեօզալ-բէկն եւ ասէր դուք հայր իմ էք եւ ես որդի Ձեր: Զայս առնէր, զի հաճոյացի յաչս ամենեցուն, եւ լինիցին փոյթ ի շինումն աշխարհին*» (*նոյն.*): Ուրիշ յիշատակարանի մը մէջ անոր համար կ՚ըսուի թէ «*Թէպէտ կրօնիւք այլազգի էր, սակայն բարեպաշտ եւ երկիւղած էր եւ քրիստոնէասէր*» (*Արարատ*. 1888 էջ 407. Լէօ. Գ. 272): Ամիրգունա սիրած է նաեւ Մովսէս Տաթեւացի Կաթողիկոսը, որ վերանորոգած է Էջմիածինը:

Այսպէս, Ամիրգունա Հայերով Արարատեան դաշտը կը շէնցնէր եւ կը զարգացնէր եւ 20 տարուան պաշտօնավարութենէ մը վերջ, 1625ին կը մեռնէր (Լէօ. Գ. էջ 272), Վրաց պատերազմին մէջ կամ ըստ ոմանց կ՚սպաննուէր իր Թահմազ բէկ կամ Թահմազ-ղուլի խան որդիէն որ Շահ Աբասէն իրեն յաջորդ կարգուեցաւ (*նոյն.* էջ 293): Թահմազ Ղուլի խան նոյնպէս „*սիրող քրիստոնէից*" էր եւ „*միշտ գնայր ի տունս նոցա, ուտէր եւ ըմպէր եւ ո՛չ խտրէր ի զենլեացն քրիստոնէից եւ ո՛չ յափոցացն։ Եւ ասէր թէ՝ եւ Տաճիկք՝ զքրիստոնէից միսն ուտեն եւ զարիւնն ըմպեն, են ասեն թէ՝ քրիստոնէից զենեալն մի ուտիցէք, զի մեղք է*" (*Զաքարիա Սարկաւագ*):

Թահմազղուլի խանն ալ հօրը նման անգամ մը արշաւեց Օսմ. հող եւ Հայեր բերաւ Այրարատեան դաշտը (Լէօ. Գ. 294): Անոր պաշտօնավարութեան ատեն՝ 1635ին, Սուլթան Մուրատ Դ. արշաւեց Երեւան: Խանը պարպեց Երեւանը զոր գրաւեց Սուլթանը, եւ Թահմազ Ղուլի խանը գերի վարեց, եւ ինքն անցաւ գնաց Դաւրէժի վրայ։ Քանի մը ամիս վերջը Շահ Սէֆի, 100,000 զինուորներով պաշարեց Երեւանը որ երեք ամիսէն միայն կրցաւ գրաւել (Լէօ. Գ. 299—301)։ Շահ Սէֆի Երեւանի խան նշանակեց Քալիպ Ալի խանը:

1638ին Թուրքերը 400,000էն աւելի զօրքերով, ասպատակային հրոսախումբեր կազմած Երեւանի շրջակայքը սաստիկ աւերի ենթարկեցին: Երեւանի խանը Քանաքեռի մօտ սաստիկ ջարդ կրեց եւ փախուստ տուաւ, սակայն Երեւան չգրաւուեցաւ պարսիկի մը հնարամտութեամբ (Լէօ. Գ. 302—3): Անկէ վերջը 88 տարի պարսից ձեռքը մնաց եւ կառավարուեցաւ խաներով:

Երեւանի խաներէն կը յիշուի նաեւ Վրացի Խոսրով խանը (1648—1654) «*այր լաւ եւ բարեսէր, եւ բարեկամ քրիստոնէից*», որ «*թեթեւացոյց եւ զհարկն քրիստոնէից*»:

Խոսրով խան առժամապէս Սպահան կը կոչուի եւ անոր իբր փոխանորդ Երեւան կը ղրկուի

(1) *Անոնցմէ ոմանք անծանօթ են կամ մեկնելի, Եւրոպացի հեղինակին սխալ արտաբերութեան պատճառով։*

Մահմատ, որ Ղարա-Ղուբաթ Քալանթարին (1) հետ միացած կը դաւէ Զաքարիա Սարկաւագէն այնքան գովուած Խոսրով խանի դէմ եւ կ'անպատուէ անոր կանանցը եւ նոյնիսկ կը բռնաբարէ անոր կինը (*նոյն.* էջ 304):

Մահմատ, Խոսրովի Երեւան դառնալէն առաջ կը փախի, իսկ իր դաւակիցները մահով կը պատժուին։ Խոսրով իր բռնաբարած կինը չարչարելուն համար, անոր հայրը, որ Սպահանի մէջ պաշտօն ունէր, զայն պաշտօնանկ ընել կուտայ։

1654ին Մահմատ խանը *«եկաւ մեծաւ զօրութեամբ եւ փառօք, եւ եմուտ յաշխարհս մեր խրոխտալով եւ հպարտութեամբ, զի զոռոզ էր եւ ինքնահաւան եւ ագահ»* (Զաքարիա), ուստի քայքայեց Խոսրով խանի գործը, եւ կեղեքել սկսաւ ժողովուրդը տուրքերով, եւ *«եղեւ թշնամի եւ հակառակ ազգիս մեր»* (*նոյն.*)։

Իրեն յաջորդած է *բիլաւ-տէօքէն* մականուանեալ վախկոտ եւ անկարող Նաղաֆ, կամ Նաճաֆ Ղուլի խանը զոր Շահ Աբաս Բ. շուտով Շամախի տեղափոխեց, եւ տեղը նշանակեց Ամիրգունայի որդին՝ Աբաս Ղուլի խանը, ծեր եւ տեսողութեամբ տկար որ բարեկամ էր Հայոց եւ Յակոբ Ջուղայեցի Կաթողիկոսին (1656—1680)։ Էջմիածինի նուէր տուած է այգի մը։ Զաքարիա, զայն կը գովէ իբր արդար մարդ։ Քիչ ատեն կրցաւ պաշտօնավարել։ Իր յաջորդն էր Լեզգի Սաֆի կամ Սաֆի Ղուլի խան որ *«ի գալն իւրում՝ երեւցոյց զինքն լաւ յաչս ամենայնի, բայց յետոյ եղեւ չար»* եւ ուզեց Էջմիածինի կալուածներէն մէկը յափշտակել։ (Լէօ. Գ. 320), 1673ին, բանտարկելով Յակոբ Կաթողիկոսը, որ փախաւ եւ գնաց Սպահան եւ հոն յաջողեցաւ հրաման հանել տալ Սաֆի խանը եւ իր որդին Մեհուպ Ալին ձերբակալելու (*նոյն.* 322), եւ ինքն դարձաւ Երեւան նոր նշանակուած խանին հետ որ նոյնպէս Սաֆի կը կոչուէր (*նոյն.*)։ Այս խանը թէ՛ քրիստոնէից եւ թէ՛ մահմետականներու ընդհանուր դժգոհութեան առարկայ եղաւ եւ իրեն դէմ Ֆաթալի անուն մէկը «Ղարա փաչա» անուն կազմակերպութիւնը ստեղծեց որ Սաֆի խանը բանտարկեց, մինչեւ որ 1679ին, ծագումով Վրացի շինարար եւ գթասիրտ Զալ խանը եկաւ, եւ նոյն տարին պատահած երկրաշարժին աղէտը դարմանելու աշխատեցաւ։ Այս առթիւ Ատրպէհանի վէզիր Միրզա Իպրահիմը եկաւ շրջակայ բազմաթիւ կառավարիչներու հետ եւ Երեւանի բերդը *«ամրագոյն քան զառաջին»* (*նոյն.* 349) եւեք պարիսպով շինեց եւ Հրազդանի կամուրջը եւ աւերուած ջրանցքները նորոգեց (*նոյն.* 349), Զալի իշխանութեան ատեն Երեւան բարօր վիճակ մը ունէր։

Զալի յաջորդեցին Նախճաւանի խանին որդին Մուրթուզա Ղուլի (1688—1690), որ կեղեքիչ մը հանդիսացաւ եւ Մահմատ Ղուլի (1690—1693) որ *«բարութիւն ցուցեալ ամենայնի եւ արար բարութիւն եւ սէր առ ռամիկ հարկատուքն, ի բազումս թեթեւացոյց զհարկն եւ զծեռամաքս ի ճանապարհաց ե բարձ եւ զամենայն գողս եւ աւազակս. եւ հրաման արար շինութեան եկեղեցեացն, եւ ի դատարանի ճշմարտասէր եւ առանց կաշառաց»*։

Անոր յաջորդն է Ֆարզալի, Ամիրգունայի թոռներէն մէկը, *«այր ագահ եւ ռիշտ, կողոպտող եւ գերփող եւ կաշառող, անիրաւ ի դատաստանի... բազմացան եւ գողք ի շէնս եւ աւազակք ի ճանապարհս եւ յանդաստանս...։ Եւ էր տագնապ մեծ յաշխարհին Արարատեան»* 1700 թուականին։

Կը յիշուի նաեւ իբրեւ խան Երեւանի Միհրալի խանը (1719—1724) որուն օրով երբ 1721—1722ին լեզգիները կովկասեան լեռներէն անցնելով Շամախին գրաւեցին, ասիկա Գանձակի խանին հետ, սկսաւ պատրաստուիլ լեզգիներուն դէմ կռուելու։ Երկու խաները Շահ Սուլթան Հիւսէյինին իմաց տալով հաւաքեցին իրենց եւ իրենց ստորադրեալներուն զօրքերը եւ Բարդա գիւղին (հին Պարտաւ) մօտ բանակեցան։ Հիւսէյին Շահ ոեւէ օգնութիւն չկրցաւ հասցնել վասնզի աֆղաններու արշաւանքով զբաղած էր։ Լեզգիները յաջողեցան Կուրը անցնիլ եւ խոշոր կողոպուտ գործադրելով դառնալ իրենց տեղը (1721) (*Եսայի Կաթողիկոս*, եւ Լէօ. Գ. էջ 605)։

Լեռնականները, 1722ին, աւելի մեծ թուով, Դերբենտը անցնելով կրկին Շամախի եւ այս անգամ աւելի հարաւ Մուղանի դաշտը հասան։ Պարսիկները առանց կռուելու փախուստ տուին։ Լեզգիները մտան Դիզակ, ուրկէ անցան Վարանդա որուն մելիքը՝ Բաղեր, ընծաներով ազատեց իր երկիրը եւ Դիզակէն առնուած գերիներուն մէկ մասը փրկեց։

1724ին Լեզգիներու արշաւանքին յաջորդեց թուրքերու արշաւանքը, Քէօփրուլիւ Ապտուլլահ փաշայի հրամանատարութեամբ։

Միհրալի խանը չկրցաւ յաղթել եւ պարտուեցաւ Եռիվարդի դաշտին մէջ, (Լէօ. Գ. 638—639) եւ ապաստանեցաւ Երեւան։ Թուրքերը քաղաքը պաշարեցին։ Հայերը՝ պարսից հետ ուս ուսի կռուեցան Թուրքերուն դէմ 60 օր, իրենց գլուխը ունենալով Յովհաննէս Հունդիբէկեանը, Պօղոս Քիչիբէկեանը, Կառչիկ Յովհաննէսը, Դաւիթ Միրզեջանեանը եւ Գրիգոր վրդ.ը (Լէօ. Գ. 641), բայց երբ Սարը Մուսթաֆա եւ Ռէճէպ փաշաները 38 հազար զօրքով եկան, Երեւան անձնատուր եղաւ, Աստուածատուր Կաթողիկոսի բանագնացութեամբ, 1725 Յունիս 7ին։ (*Նոյն.* 645)։

1725ին Երեւանը տրուեցաւ Կախէթի Մուհամմէտ Ղուլի խանին որ երկիրը կառավարեց իրեն նման Վրացի հաւատուրացի մը հետ, որ Նայիպի պաշտօն ունէր։ Ասիկա կը նեղէ Աստուածատուր Կաթողիկոսը որպէսզի յորդորէ Հայերը որ ապստամբական միտումներէ հրաժարին, եւ հպատակին կառավարութեան, սակայն Կաթողիկոսը խուսափողական պատասխաններ կուտայ։

Մուհամմէտ Ղուլի խանը կը փորձէ Կաթողիկոսը բանագնաց դարձել Հայ բանակին եւ իր միջեւ։ Ան Հայ զօրքերու հրամանատարին կը ղրկէ իր գանձապահ Աբամշէնը, որ կը խոստանայ Հայոց շատ

(1) *Փիլիպպոս Կաթողիկոսի պահանջով պաշտօնանկ եղած է,*

մը առաւելութիւններ, բայց անոնք կը մերժեն ռուս-
ներուն վրայ յոյս դրած. (Լէօ. Գ. էջ 701):

Ասոր վրայ Երեւանի զօրքերը Կախէթի զօր-
քերուն հետ կ'երթան Հայոց վրայ, կը պարտուին եւ
կը փախչին Գեղարքունիք, որուն բնակչութենէն վրէժ
կը լուծեն կոտորածով եւ թալանով: Երեւանի իսլամ-
ներն ալ այս պարտութենէն զայրացած քաղաքին եւ
գիւղերուն Հայ բնակիչներուն վրայ կը յարձակին եւ
շատ չարիքներ կը հասցնեն:

Հայոց դէմ հալածանքը կը տարածուի ամէն
կողմ վասնզի Հայերը կը նկատուին ռուսական
գործիք:

Դաւիթ բէկ որուն գործին պիտի անդրադառ-
նամ վարը, իրատես քաղաքականութեամբ մը կրցաւ
պարսիկներու հետ համաձայնութեան լեզու մը գտնել
եւ թուրքերուն դէմ մաքառեցաւ (Լէօ. Գ. 706):

Քիչ վերջը, Նատիր դարձաւ Շահ, եւ
վերագրաւեց Օսմ. տիրապետութեան ենթարկուած
Պարսկական երկիրները, Երեւանի հետ, ստանձնելով
Ապտուլլահ փաշան (Լէօ. Գ. 709). Նատիր իր
թագադրութեան ատեն Մուղանի մէջ Երեւանի խան
եւ պէկլէր պէկի նշանակեց Հերաթի Փիր Ահմատ
խանը, որ սակայն միշտ իր քովը պահեց եւ Երեւան
չղրկեց, իսկ անոր տեղ միւսէլիմ կամ նայիպ դրաւ
Մահմատ Թիզայ պէկը որ Մուղանէն Երեւան ղրկեց
(*Աբրահամ Կրէտացի*. էջ 39):

Նատիր Շահ, Հայոց նկատմամբ բարեացակա-
մութիւն ցոյց տուաւ որովհետեւ անոնք իր ոխերիմ
թշնամի թուրքերու դէմ կը կռուէին:

Նատիր այնքան առաջ գնաց որ, Գեղարքու-
նիքի Թօփուզ Մելիքջան Մելիք Շահնազարեանը, որ
օգնած էր իրեն Հայ զօրքով, Կարբիի մէջ, Քէօփ-
րիւլիւ Թօփալ Ահմէտ փաշայի դէմ մղած պատերազ-
մին, ոչ միայն վերահաստատեց իր ժառանգական
իրաւունքներուն մէջ, այլ նշանակեց Երեւանի խանէն
անկախ կառավարիչ, անոր ստորադրելով մահմե-
տական կարգ մը իշխողներ: Նատիր զայն կ'անուանէր
«պապա»: Սակայն չխղճահարեցաւ զայն սպաննել
տալու երբ ան վեհանձնօրէն ներելով Երեւանի խա-
նին իր դէմ գործած դաւերուն, իրմէն խնդրեց որ
ինքն ալ ներէ անոր:

Նատիր յետոյ անդրադարձաւ իր գործած անի-
րաւութեան եւ զղջաց, եւ դարմանելու համար անոր
զաւակին՝ Մանուչարին տուաւ պարգեւներ եւ շնորհ-
ներ զորս ան քաջութիւնը ունեցաւ մերժելու ըսելով
թէ իր հօրը պատահածը օր մը կրնար իրեն ալ պա-
տահիլ:

Նատիր ամէն ապահովութիւն տալով զայն
նշանակեց Միրիմիրան կամ Պէյլէրպէյի Արարատեան
երկիրին եւ Սիւնեաց աշխարհի մէկ մասին (Լէօ.
Գ. 712) եւ այսպէս Երեւանի խանութիւնը Հայու մը
վստահեցաւ գրեթէ: Մինչեւ 1745 Նատիրի սպանու-
թիւնը Մանուչար վարեց այս պաշտօնը, որուն վրայ
քրիստոնեայի մը գտնուելուն չհանդուրժելով մահմե-
տականները զայն սպաննեցին (Լէօ. Գ. էջ 715):

Նատիրի մահէն վերջ, երբ Պարսկաստան
խառնակութեան մատնուեցաւ, Երեւանի խաներն ալ
եղան անկախ: Ազատ խան, որ արեւմտեան Պարս-
կաստանի մէջ ամէնէն զօրաւոր իշխանն էր 1751ին
փորձեց Վրաստանն ալ գրաւել սակայն չարաչար պար-
տուեցաւ եւ ստիպուեցաւ Վրաց Հերակլ թագաւորին
հետ դաշինք կնքել Արաքսը իբրեւ սահման ընդունե-
լով (Լէօ. Գ. էջ 725 եւ 767), որով Երեւանի
խանութիւնը Վրաստանի գերիշխանութեան ենթար-
կուեցաւ (Նոյն. 770):

Թահմազ Ղուլի խան 1755ին դարձեալ տի-
րեց Երեւանի:

Պարսիկները եւ Վրացիք տարիներով մաքա-
ռեցան Երեւանի շուրջ, եւ մի քանի անգամ Սիմէոն
Կաթողիկոս Երեւանցի միջնորդեց եւ արիւնահեղու-
թեան առաջքը առաւ:

1779ին Երեւանի խանը Հերակլի դէմ ըմ-
բոստացած ըլլալով, Հերակլ եկաւ Երեւանի վրայ.
Սիմէոն Կաթողիկոս այս անգամ չկրցաւ համոզել
երկու կողմերը որոնք իրարու հետ պատերազմեցան.
Հերակլ չկրնալով գրաւել քաղաքը շատ չարիք հաս-
ցուց գաւառին, վասնզի իր զօրքերուն ազատութիւն
տուաւ եւ անոնք Հայ եւ Թուրք գիւղերու վրայ յար-
ձակեցան եւ քարուքանդ ըրին զանոնք, (Լէօ. Գ. 819):

Երեւանի խաները, երբ Պարսկաստան կրկին
անիշխանութեան մատնուեցաւ, բոլորովին անկախ
դարձան:

Իսկ երբ Աղա Մեհմէտ խան իշխանութեան
տիրացաւ 1795ին ուզեց պարսիկ տիրապետութեան
ենթարկել նաեւ Երեւանը, զոր նուաճեց իր եղբայրը՝
Ալի-Ղուլի խանը (*Նոյն*. էջ 88):

Երեւան մնաց պարսիկ տիրապետութեան տակ,
մինչեւ ռուսական գրաւումը (1827 Հոկտ. 19):

Երեւանի վերջին Սերտարն էր Հիւսէյին խան
որ նշանաւոր էր իր քաջութեամբ.

Երեւանի գրաւումէն վերջ Հիւսէյին խան
Պարսկաստան գնաց, ուր անարգանքի ենթարկուեցաւ
եւ թշուառ մահ մը ունեցաւ գոմի մը մէջ:

## Բ. ԳԱՆՁԱԿԻ ԽԱՆՈՒԹԻՒՆ

Գանձակ, ինչպէս տեսնուեցաւ (տես. վերը,
էջ 197—200), որորանը եղած էր Շատատիկեան կամ
Փատլունեան քուրդ իշխանութեան որ 1088ին վերջ
գտած է (տես. վերը, էջ 297) եւ հոն ԺԲ. դարուն
առաջին կիսուն հաստատուած էր Սելջուկ Սուլթանու-
թիւն մը (տես. վերը, 304—305) զոր Աթաբէկեանք
շարունակած էին 1156էն 1225.

1232—33ին Գանձակը հիմնայատակ կործանած
էին Թաթարները, եւ Ջարմաղան վերաշինած էր զայն,
(տես. վերը, էջ 308), սակայն քաղաքը իր կարե-
ւորութիւնը կորսնցուցած էր:

Անիկա կրկին կարեւորութիւն կ'ստանար ԺԶ.
դարուն վերջերը, թուրք եւ պարսիկ պատերազմնե-
րուն շրջանին: Պարսիկ Սէֆեան հարստութեան վեհա-
պետները, որոնք նուաճած էին Արաքսի եւ
Կուրի միջեւ տարածուող հողերը, Գանձակի մէջ հաս-
տատած էին խանութիւն մը:

ԺԶ. դարուն կէսէն վերջ, Իմամ Ղուլի խանին
իշխանութեան ատեն, 1579ին Օսմանեան բանակին հրա-
մանատարը՝ Օսման Էօզտէմիր փաշա, մի քանի օրերու

ընթացքին կը գրաւէ Գանձակը, Խաչէնը, Ջրաբերդը, Վարանդան եւ Դիզակը, այսինքն Զարեքի գետէն մինչեւ Արաքս տարածուող հողերը եւ գանձք կ'աւերէ: 1580ին Իմամ Ղուլի խան 5,000 զօրքով կը յարձակի Օսման փաշայի վրայ, որ Հայտար փաշայի օգնութեամբ կը յաղթէ Իմամ-Ղուլի խանին եւ մինչեւ Շամախի կը հալածէ զայն իր զօրքով (Գաբրիէլ վրդ. Այվազովսքի, *Պատմ. Օսմ.* Ա. հտ. էջ 441), սակայն 1585ին Գանձակը վերստին կը գրաւուի Օսմանցիներէն կարճ միջոց մը: 1586—1588ին Շահ Աբաս Ա. ետ կ'առնէ Գանձակը, բայց չկրնար հոն մնալ վասնզի Ֆահրատ փաշա կը վանէ պարսիկները (1588) եւ կը շինէ բերդ մը: Թուրք եւ Պարսիկ հաշտութեան դաշնագիրին համաձայն Գանձակ կը մնայ Թուրքերու ձեռքը, մինչեւ 1602, երբ երկու ազգերուն միջեւ պատերազմը նորէն կ'սկսի եւ Շահ Աբաս Թուրքերու ձեռքէն կ'առնէ անոնց գրաւած վայրերը, ի մէջ այլոց Գանձակը, զոր կը գրաւէ իր սիրելին՝ Ամիրգունա խան եւ կը ջարդէ թուրք պահակազօրքը: Բայց Ամիրգունա հազիւ Երեւան դարձած էր, երբ Օսմանեան բանակը Ջինջիլ-Դռան Ալի փաշայի հրամանին տակ կուգայ վերագրաւել Գանձակը:

Այս անգամ Շահ Աբաս անձամբ մեծ բանակով մը Գանձակի վրայ գնաց (1607ին) եւ թնդանօթով քանդեց անոր պարիսպները եւ տիրեց Գանձակի, ուր կառավարիչ դրաւ Ախսաս Մահմուտ խանը, կոտորելէ վերջ ամբողջ Սիւննի այրերը եւ մանուկները (Չամ. Գ. 555, Մակար եպս. Բարխուտարեան. *Պատմ. Աղուանից*, Բ. հտ. էջ 61. Լեօ. Գ. 265. Ե. Լալայեան, *Ազգագր. Հանդէս*, Ե. էջ 215):

Շահ Աբաս հին քաղաքէն քիչ հեռու հիմնեց նոր քաղաք մը զոր կոչեց Աբասապատ (Ալիշան. *Տեղագիր Հայոց մեծաց*, էջ 86):

Շահ Աբաս զայն ըրաւ խանութեան կեդրոնը:

Բայց քիչ վերջ Օսմանցիք կրկին գրաւեցին Գանձակը, որ 1623ին պարսից անցաւ կրկին եւ դարձեալ Օսմանցիներուն, եւ վերջապէս 1663ին դարձեալ Պարսիկներուն:

Այս թուականին պարսիկները հաւանօրէն հոն կառավարիչ դրին Ուղուրլու խանը, վասնզի 1668ին յիշատակարան մը զայն կը յիշէ (*Արցախ*. էջ 45 եւ *Պատմ. Աղուանից*, Բ. 58)։

Այս խանութիւնը այն ատեն շատ ընդարձակ էր եւ իր սահմաններուն մէջ ունէր Ղարապաղը կամ Խամսայի մելիքութիւնները։

1708ին այս ընդարձակ խանութեան գլուխն էր, Մէյտի խան որ յափշտակեց այս թուականին Ծարի մէկ մասը:

Մելիք Շահնազար Բ. աղերսագրով մը կը դիմէ Շահ Սուլթան Հիւսէյինի, որ վերահաստատէ իր իրաւունքը:

Շահը յատուկ հրովարտակով կը հրամայէ Շուշիի եւ Երեւանի խաներուն որ ետ դարձնեն իրենց գրաւած հողը, (*Պատմ. Աղուանից*. Բ. էջ 29):

Մէյտի խանի յաջորդն էր հաւանօրէն Բալպալի խան եւ ասոր իր որդին՝ Ուղուրլու խան, ինչպէս կը հասկցուի Աւետարանի մը յիշատակարանէն, որ 1730ին գրուած է: «*Ի ժամանակս բռնակալութեան Գանձայու* (Գանձակ) *քաղաքիս Ուղուրլու խանին, որ է որդի Բալպալի խանին* (*Արցախ*. էջ 280. *Պամ. Աղուանից, Բ.* էջ 47):

Այս Ուղուրլու խանի իշխանութեան ատենը, 1721ին, Լեզգիները Ալի Սուլթանի առաջնորդութեամբ Գանձակը կը գրաւեն, բայց քաղաքացիք անոր 8,000 մարդերէն 1,220-ը կը կոտորեն եւ մնացեալները կը փախցնեն (*Ազգագր. Հանդէս*. Ե. էջ 216): Ուղուրլու խան կը հալածէ զանոնք բայց պարտուած ետ կը դառնայ։

Այս յաղթութենէն քաջալերուած՝ Լեզգիները զանազան կողմեր ասպատակներ կը սփռեն եւ կրկին կուգան Գանձակի վրայ, եւ զայն կը պաշարեն (Լեօ. Գ. 614):

Գանձակի Ջաւատ խանը Վրաց Վախթանկ Զ. թագաւորէն օգնութիւն կը խնդրէ բայց անոր գալէն առաջ Լեզգիները կը քաշուին։

Գանձակեցիք կը խնդրեն Վախթանկէն ջարդել թուրքմէնները որոնք Լեզգիները հրաւիրած էին կովկասեան լեռներէն ասդին, բայց Վրացիք անխտիր — Հայերն ալ մէջը ըլլալով — կը կողոպտեն եւ գերի կը տանին, (*Եսայի Կաթողիկոս*, էջ 30. *Ազգագր. Հանդէս* Ե. էջ 216)։

1722ին երբ Վախթանկ Զ. հեռացած էր, Լեզգիները նորէն կը յարձակին Գանձակի վրայ, կ'առնեն քաղաքը, ծերերը եւ պառաւները կը կոտորեն եւ աղջիկները եւ մանուկները գերի կը տանին (Չամ. Գ. 784): Հազիւ Լեզգիները հեռացած թուրք եւ պարսիկ կռիւները վերսկսան, Իպրահիմ փաշայի հրամանին տակ, 1723ին, Օսմանեան բանակը արշաւեց Գանձակի վրայ, բայց քաղաքը չկարենալով գրաւել շրջակայ գիւղերը կ'աւերեն եւ բազմաթիւ Հայեր գերի կը տանին: Անոնք որ փախելով ազատուած էին, բոկոտն եւ թալանուած, գացին Լեզգիներուն դէմ կռուող Հայ բանակին (Սղնախ) քով (Լեօ. էջ 634):

Հայ բանակին հրամանատար Աւան իւզպաշի պահանջով Իպրահիմ փաշան Հայ գերիները արձակեց, Հայերը սիրաշահելու համար, եւ նոյնիսկ ամէն ազատութիւն խոստացաւ հայոց, սակայն Աւան բնաւ կարեւորութիւն չտուաւ: 1724 Յունիս 24ի ռուս եւ թուրք դաշնադրութեան համաձայն Գանձակը տրուեցաւ Օսմանցիներու, որոնք աւելի ընդարձակեցին իրենց նուաճումները, պարսիկ ուրիշ հողեր ալ գրաւելով, օգտուելով Աշրաֆի եւ Շահ Թահմազ Բ.ի գահուն շուրջ մղած կռիւներէն։ Օսմանցիք ճանչցան Աշրաֆը իբր Շահ պայմանով որ անիկա իրենց զիջի կարգ մը քաղաքներ որոնցմէ մէկն էր նաեւ Գանձակը:

Թուրք բանակը Գանձակէն հեռացած էր երբ Պարսիկները՝ Նատիրի հրամանատարութեամբ, վերագրաւեցին Գանձակը, եւ վերահաստատեցին Ուղուրլու խանը, որ Նատիրի ատելութիւնը իր վրայ հրաւիրեց Մուղանի աշխարհաժողովին մէջ (1736) Նատիր Շահի հռչակման համամիտ չըլլալով: Պարսիկ բռնակալը բնական է ասիկա չներեց խանին, սակայն նկատելով որ ան կարեւոր ոյժ մը կը ներկայացնէր, անմիջապէս զայն չպատուհասեց, այլ աշխատեցաւ զայն տկարացնել:

Նատիր, այլ անուամբ Թահմազ Ղուլի խան (1736—1747), իր բացարձակ իշխանութեամբ Ղազախ

եւ Բորչալու գաւառները այս խանութենէն բաժնեց, ինչպէս նաեւ Խամսայի Հայ մելիքութիւնները, որոնք ուղղակի գահուն կապեց:

Նատիր նոյնպէս այս խանութիւնը տկարացնելու համար Ջիվանշիր, Օթուզիքի եւ Քաբիրլի ցեղերը Խորասան տարաւ հոն բնակեցնելու համար (Լէօ. Գ. էջ 755):

Ուղուրլու խան մեռաւ 1740ին եւ անոր յաջորդեց Շահվերտի խանը (1740—1756?)՝ իր որդին: Ուղուրլու խանի մահէն վերջ իր եղբայրը՝ Մամաս խան, փորձած է Շահվերտին սպանելով ինքն գրաւել Գանձակի խանութիւնը սակայն անիկա կրցաւ խոյս տալ եւ ապաստանիլ Ջրաբերդ Մելիք Ադամին քով եւ կեանքը փրկել (Րաֆֆի. *Խամսայի Մելիքութիւնները*. 1906 Վիեննա, էջ 74)։ Մելիք Ադամ Հայ զօրքով զայն Գանձակ տարաւ եւ իր իշխանութեան մէջ հաստատեց Մամաս խանը սպանելով, եւ ատոր համար երախտապարտ էր Մելիք Ադամին։ Ինքն ալ վերջը ապաստան տուաւ անոր, եւ այս կերպով խառնուեցաւ Խամսայի մելիքներուն եւ Շուշիի Իպրահիմ խանին միջեւ մղուած պայքարին, որուն պիտի անդրառնամ: Շահվերտի խան, ըստ Րաֆֆիի (*Նոյն.* էջ 75) պարսիկ կառավարութեան առջեւ բարձր դիրք ունէր իբր Պէյլէր պէյի (իշխանաց իշխան) եւ նախապատիւ էր Շաքիի, Շիրուանի, Շուշիի, Տէրպէնտի, Պագուի եւ այլ խաներէն:

Վրաց Թէյմուրազ թագաւորին զօրքերը Գանձակի մօտէն անցած ատեն որովհետեւ կողոպտած էին ճամբուն վրայ գտնուած գիւղերը, Շահվերտի պատերազմեցաւ Վրաց հետ եւ գերի ինկաւ: Շիրուանի խանը Հաճի Չէլեպի, երկու Հայ մելիքներով վրայ հասաւ եւ Շէյխ Նիզամի կոչուած վայրը Վրաց յաղթեց: Հաճի-Չէլեպի եւ Հայերը հալածեցին Թէյմուրազը մինչեւ Սնըղի կամուրջը, եւ անցան Ղազախի եւ Շամշադինի գաւառները եւ ամէն տեղ թալանելով ետ դարձան:

Շահվերտի խանին 1770ական թուականներուն յաջորդած է իր որդին Մեհմէտ Հասան խանը եւ ապա իր միւս որդին՝ Ջաւատ խանը (1), որ բարեկամ էր Մելիք Ադամի որդին Մելիք Մէջլումի (Րաֆֆի, *նոյն.* էջ 74) եւ զայն ու Մելիք Աբովը հիւրընկալեց, երբ անոնք 1789ին Թիֆլիսէն խոյս տալու ստիպուեցան, վախնալով Վրաց դաւաճանութենէն (*Նոյն.* էջ 113):

1791ին Գանձակ, իր մօտ, ապաստած է նաեւ Սարգիս եպս. Հասան Ջալալեան (*Նոյն.* էջ 116):

Ջաւատ խան՝ իր հօրը Շահվերտի խանին նման Հայերու հետ լաւ վարուած է: Կը յաճախէր Հայոց եկեղեցին եւ ներկայ կ'ըլլար կրօնական հանդէսներուն:

1788ին Կիւլիստանէն գաղթող 500 Հայ ընտանիքներ՝ Շամքոր եւ Ջրաբերդէն գաղթող՝ 1,000 ընտանիքներ՝ Շամշատին բնակեցուց (Րաֆֆի. *նոյն.* էջ 120):

Ջաւատ խան հնազանդած էր Աղա Մեհմէտ Շահին որ Թիֆլիսը աւերելէ վերջ դարձաւ Գանձակ, եւ անկէ ասպատակներ սփռեց Նուխիի կողմերը, եւ անլուր անգթութիւններ գործադրեց։

Այս միջոցին Պարսկաստանի մէջ խռովութիւն ծագեցաւ եւ Շահը ստիպուեցաւ դառնալ Թեհրան ընկճելու համար ապստամբութիւնը: Աղա Մեհմէտ Շահի Կովկասէն հեռանալէն վերջ Շուշիի Իպրահիմ խանը որ Տաղիստան ապաստանած էր, դաշնակցելով Հերակլ թագաւորին հետ եւ վարձելով 12,000 կովկասեան լեռնականներ, Վրացի զօրքերուն հետ, 1796ին կուգայ Ջաւատ խանին վրայ: Ջաւատ խան կ'ապաստանի Մելիք Մէջլումի հետ Գանձակի բերդը որ կը պաշարուի: Մելիք Մէջլում պատերազմին մէջ կ'սպաննուի: 50 օր վերջ ճարահատ Ջաւատ խան հաշտութիւն կը խնդրէ եւ կը պարտաւորուի իբր հատուցում տալու վարձուած կովկասեան լեռնականաց դրամները եւ քանի մը հարիւր Թիֆլիսցի գերիները զորս Ջաւատ խան, Մելիք Մէջլում եւ ուրիշ երեւելիներ ունէին:

Առաւ նաեւ պատանդներ եւ Գանձակի բնակիչներուն մեծ մասը գերի վարեց Վրաստան: Հերակլ իր տեղը դարձաւ, եւ Իպրահիմ խան՝ Տաղիստան:

Աղա Մեհմէտ Շահ որ իմացած էր Գանձակի պաշարումը հրամայեց Երեւանի եւ Նախիջեւանի խաներուն որ օգնութեան հասնին Գանձակի, բայց մինչեւ անոնց շարժիլը արդէն Գանձակ ինկած էր: (*Դիւան Հայոց պատմութեան,* Գ. էջ 742—743):

Նոյն տարին (1796) Զօրավար Զուբովի հրամանին տակ Ռուս բանակը կը հասնի Գանձակ, եւ Ջաւատ խան, Մելիք Աբովի եւ Յովսէփ Արքեպս. Արղութեանի յորդորներով, առանց կռուելու անձնատուր կ'ըլլայ (*Րաֆֆի.* նոյն 145—150): Ռուսերը քաղաքը կը դարձնեն կրկին պարսիկներուն, բայց 1804 Յունուար 3ին ռուս զօրավար Ցիցիանով կրկին կը գրաւէ Գանձակը: Պատերազմին ինկան Ջաւատ խանը եւ իր կրտսեր որդին (Րաֆֆի. *նոյն.* էջ 205):

1826ին երբ Աբաս Միրզա մեծ պատրաստութեամբ յարձակեցաւ Ռուսերու վրայ, եւ առաջացաւ մինչեւ Շուշի, Գանձակի թուրքերը պատգամաւորներ ղրկեցին եւ խնդրեցին վերահաստատել Գանձակի խանութիւնը:

Աբաս Միրզա, իր որդին՝ Մեհմէտ Միրզան, փեսան՝ Ամիր խան Սարտարը եւ Ջաւատ խանի որդին Ուղուրլու խանը ղրկեց որ այս խնդրանքին գոհացում տան:

Ասոնք Գանձակը գրաւեցին:

Մատաթով Հայ զօրավարը Սեպտ. 4ին հակայարձակումով մը մտաւ Գանձակ: Սեպտ. 13ին քաղաքին առաջ տարածուած ընդարձակ դաշտին մէջ Զօր. Պասկեւիչ վճռական յաղթութեամբ մը Աբաս Միրզան պարտութեան մատնեց:

(1) *Ե. Լալայեանց* (Ազգագրական Հանդէս Ե. էջ 216) *կ'ըսէ թէ 1756ին, Շահվերտի խանին յաջորդած է Ջաւատ խանը, սակայն Լէօ.* (Գ. էջ 792—7) 1765—7 *թուականներուն տակաւին Շահվերտին իշխանութեան վրայ ցոյց կուտայ եւ Ջաւատ խանէն առաջ կը յիշատակէ* 1783—4 *թուականներուն երբ Գանձակի խան էր որդին Մեհմէտ Հասան խանը* (տես. էջ 797, 847 եւ 852), *եւ անկէ վերջ Ջաւատ խանը* (էջ 862)։

Գանձակ վերջնապէս ենթարկուեցաւ ռուս տիրապետութեան եւ Պասկեւիչի առաջարկով կոչուեցաւ Եղիսաւետպոլ:

## Գ. ՂԱՐԱՊԱՂԻ ԿԱՄ ՇՈՒՇԻԻ ԽԱՆՈՒԹԻՒՆ

ԺԷ. դարուն Ղարապաղ Երեւանի պէկլէրպէյութեան ենթակայ էր, ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 377 եւ Լեօ. Գ. էջ 54): Երբ Շահ Աբաս գրաւեց Ղարապաղը եւ Գանձակը (Լեօ. Գ. էջ 265) զանոնք միացնելով կազմեց Գանձակի խանութիւնը այնպիսի հողամասի մը մէջ որ երկար ատեն (1578—1590) թուրք եւ պարսիկ պատերազմներու թատերաբեմ եղած էր (Լեօ. Գ. էջ 198—204):

Այս խանութիւնը մինչեւ Նատիր Շահի ատեն շարունակուեցաւ, բայց ինչպէս տեսնուեցաւ, 1736էն վերջ Նատիր զայն տկարացնելու աշխատեցաւ (տես. վերը, էջ 381): Այսպէս, Խորասան տեղափոխեց կարգ մը ցեղեր, ինչպէս Սարուճալլիները (տես. Գ. 754), որոնց ցեղապետը եղաւ Իպրահիմ խալիլի որդի Ֆազլ Ալի բէկը եւ անոր սպանութենէն վերջ իր կրտսեր եղբայրը՝ Ֆանալին կամ Ֆանահ-Ալի (*նոյն.* 755) որ փախաւ Խորասանէն եւ խումբ մը կազմելով Ղարապաղի կողմերը աւազակութեամբ զբաղեցաւ (*նոյն.*):

Պարսիկ կառավարութիւնը հրամաններ տուաւ Շիրուանի, Շաքիի եւ Գանձակի խաներուն որ զայն հալածեն, սակայն ան միշտ յաջողեցաւ խոյս տալ, շնորհիւ Ջրաբերդի Մելիք Ալլահ-Ղուլի Սուլթանին, որ իբր թէ զայն հարկահաւաք (*դարուղա*) նշանակած էր (*նոյն.* 755):

Այսպէս, Ֆանահ քաշքշեց իր գոյութիւնը մինչեւ Նատիր Շահի սպանութիւնը (1747), եւ անոր մահէն վերջ, տիրող անիշխանութենէն օգտուելով, հետամուտ եղաւ փառքի եւ իշխանութեան: Ան Խորասանէն կանչեց իր ցեղակիցները եւ բնակեցուց իրենց առջի տեղերը: Հետզհետէ իր կուսակիցները շատցուց եւ սկսաւ աւազակային արշաւներու Շաքիի գաւառէն մինչեւ Նախիջեւան: Իրեն աջակցեցաւ նաեւ Քեբիրլի ցեղը, որուն պետին փեսան էր: Ֆանահ շուտ աւազակապետութենէն անցաւ տիրապետողի դիրքին, իրեն հպատակեցնելով Ղարապաղի դաշտերուն մէջ թափառող ցեղերը, Քեբիրլուի գաւառին մէջ շինեց Բայաթ բերդը, եւ ստացաւ խանութեան տիտղոս Ատիլ Շահէն, անոր խոստանալով հաւատարիմ ծառայութիւն (Լեօ. Գ. 756): Այսպէս, ԺԸ. դարու կէսերուն կազմուեցաւ Ղարապաղի խանութիւնը, որ յետոյ շատ քիչ կախում պիտի ունենար կեդրոնական կառավարութենէն նման միւս խանութիւններուն (Լեօ. Գ. 60—61): Ֆանահ խան, հետզհետէ նուաճեց հիւսիսային Ղարապաղը, Սիւնեաց աշխարհը, Բարկուշատը, Ղափանը, Սիսիանը եւ Զանգեզուրը, մինչեւ Նախիջեւանի սահմանները (Լեօ. Գ. 762), եւ տիրեց բոլորովին անկախ, նոյնիսկ դրամ հատանելու համարձակելով (*նոյն.*)։ Իր արագ առաջացումն դժգոհութիւն պատճառեց Ջիվանշիրի եւ Օթուզիքիի ցեղերուն եւ Խամսայի Հայ Մելիքներուն, որոնք միացած անոր ընդդիմանալու համար:

Իրենց հետ էր նաեւ Շիրուանի Հաճի Չէլէպի խանը, որ պաշարեց Բայաթ բերդը, բայց չկրցաւ գրաւել եւ յուսահատ ետ դարձաւ:

Փանահ խան, 1749ին հիմնեց նոր բերդ մը՝ Թարնակիւտը՝ Շահպուլաղի մեծ աղբիւրին մօտ, գրեթէ Խաչէնի սահմանագլուխին վրայ, (*նոյն.* էջ 756) զայն յենարան ընելու համար իրեն հակառակորդ ցեղերու եւ Հայ մելիքներու դէմ, որոնց միութիւնը կ՚ուզէր քայքայել: Առիթն ալ շուտով ներկայացաւ. վասնզի հինգ մելիքներէն մէկուն՝ Վարանդայի Մելիք Շահնազարի դէմ կռուիլ սկսան միւս չորսը, անոր կատարած եղբայրասպանութեան համար:

Մելիք Շահնազար, մինակ մնացած, Փանահ խանին կը հպատակի պաշտպանութիւն գտնելու համար: Այսպէս, կը խանգարուի թէ՛ Մելիքներու միութիւնը եւ թէ՛ Ղարապաղի զուտ Հայ բնակչութեան մէջ կը մտնէ օտար թշնամի մը (*նոյն.* էջ 757):

Փանահ խան, ճարպիկ խորագէտ, Հայոց միջեւ գոյացած այս ճեղքը աւելի խորացուց, յարձակելով Խաչէնի վրայ, որուն Մելիքութիւնը խլեց Հասան-Ջալալեաններէն եւ տուաւ իրեն կողմնակից Հայու մը՝ Խնզրիստան գիւղէն Միրզա խանին (Լեօ. Գ. 757 եւ Րաֆֆի *նոյն.* էջ 58): Ասով ան իրեն ենթարկեց հինգէն երկուքը եւ մնացեալներն ալ երկուքի բաժնեց, գրաւելով Ջրաբերդի, Կիւլիստանի եւ Դիզակի միջեւ գտնուող Խաչէնը եւ Վարանդան, եւ այսպէս մեկուսացնելով աշխարհագրապէս անջատուած Դիզակը, որ անկարող եղաւ գործակցելու միւսներուն:

Փանահ, աւելի զօրաւոր յենարան մը ունենալու համար, Մելիք Շահնազարի խորհուրդով եւ աջակցութեամբ 1752—54ին, Շոշի հայաբնակ գիւղին մօտ շինեց նոր բերդ մը որ կոչեց Փանահապատ, բայց շուտով փոխուեցաւ այս անունը Շոշվաղալայի (Շուշու բերդ կամ պարզապէս Շուշի) (Լեօ. Գ. էջ 758): Ինչպէս պիտի տեսնուի վարը, Ջրաբերդի, Կիւլիստանի եւ Դիզակի մելիքները անվհատ կռուեցան Փանահ խանին եւ անոր Հայ աջակիցներուն դէմ ամբողջ քսան տարի (Րաֆֆի, *նոյն.* էջ 61):

Վերջապէս Փանահ խան, որոշեց համաձայնիլ անոնց հետ, սակայն հաշտութեան բանակցութիւններու միջոցին ստորին դաւով մը սպաննեց Ջրաբերդի Մելիք Իսրայէլեան Մելիք Ալլահ Ղուլի Սուլթանը (Լեօ. Գ. էջ 759) ապերախտութեամբ, վասնզի անոր կը պարտէր իր կեանքը, ինչպէս տեսնուեցաւ (տես. նաեւ Րաֆֆի, *նոյն.* էջ 62):

1761ին, երբ մելիքները, պատժելու համար Փանահ խանը եւ իր Հայ գործակիցները— Մելիք Շահնազարը եւ Մելիք Միրզա խանը— միացան Պարսկաստանէն Ղարապաղ եկող Ֆաթալի խանին եւ պաշարեցին Շուշին: Փանահ խան եւ Մելիք Շահնազար թէեւ անձնատուր եղան սակայն չյանձնուեցան Հայ մելիքներուն, այլ կաշառքով արձակուեցան:

Միայն Փանահ խանի որդին Իպրահիմ— Խալիլը պատանդ տարուեցաւ Պարսկաստան (Րաֆֆի, *նոյն.* էջ 69):

Փանահ սաստիկ ոխակալութեամբ լեցուեցաւ Հայ մելիքներու դէմ, որոնք ինքզինքնին պաշտպանելու համար դիմեցին Վրաց Թէյմուրազ թագաւորին, որ 1762ին Ղարապաղ արշաւեց, իրեն հետ ունենալով Կիւլիստանի Մելիք Յուսուֆը եւ Ջրաբերդի Մելիք Ադամը, իրենց զօրքերով: Փանահ խան, Մելիք Շահնազարի եւ Մելիք Միրզա խանի հետ գերի բռնուեցաւ Թէյմուրազէն, որ Ֆաթալի խանի նման զանոնք չյանձնեց Հայ մելիքներուն, (Րաֆֆի, *նոյն.* էջ 72—73), այլ մեծ գումար մը կաշառք առնելով արձակեց (Րաֆֆի, *նոյն.* էջ 73—74): Հայ մելիքները դառնացած Վրաստանի դէմ միացան Շիրուանի Հաճի Չելէպի խանին (Րաֆֆի, *նոյն.* էջ 72—73) որ չկրցաւ յաղթել Վրաստանի:

Հայ մելիքները այս անգամ միացան Գանձակի Շահվերտի խանին եւ յաջողեցան յաղթել Թէյմուրազի, բայց դարձեալ Փանահ խանի իշխանութեան չկրցան վերջ տալ, վասնզի Շահվերտի խան, Մելիք Ադամը եւ Մելիք Յուսուֆը յորդորեց որ համակերպին Փանահի Շուշիի բերդին տիրանալուն, պայմանով որ ան չմիջամտէ Հայ մելիքներու գործերուն, պատերազմ չընէ ինքնագլուխ՝ առանց մելիքներու հաւանութեան, նոր նուաճումներ չընէ եւ հարկերը տեղւոյն վրայ գործածէ (Րաֆֆի, *նոյն.* էջ 75—76):

Փանահ խան 1762ին մեռաւ Շիրազի մէջ (Լէօ. Գ. էջ 765) վասնզի Ֆաթալի խանէն վրէժ լուծելու եւ պատանդ տարուած իր որդին ազատելու համար Պարսկաստան գացած եւ միացած էր Զենդ Քերիմ խանին, որ Ուրմին գրաւելէ եւ Ֆաթալի խանը սպաննելէ վերջ, Փանահ խանը իր քովը պահած էր, իսկ որդին Իպրահիմը, արտօնած էր 1763ին դառնալ Ղարապաղ, հօրը յաջորդելու համար:

Իպրահիմ իր հօրը պէս ռազմիկ էր եւ օժտուած արեւելեան քաղաքագէտի յատկութիւններով: Նախ կռուեցաւ իր եղբօրը՝ Միհրալի խանի դէմ, որ կ'ուզէր իշխանութիւնը ինքն յափշտակել: Զայն դիւրաւ տապալելու համար ամուսնացաւ Տաղիստանի զօրաւոր իշխողներէն Աւարիայի Ումմա խանին քրոջ հետ (1): Միհրալի ալ իր կարգին դաշինք կնքեց Ղուբայի Ֆաթալի խանին հետ որ նոյնպէս զօրաւոր էր (Լէօ. Գ. էջ 788): Միհրալի գրաւեց Ղարապաղի դաշտերը եւ սպասեց իր դաշնակիցին, որպէսզի յարձակի Շուշիի վրայ: Բայց այդ միջոցին ինքն սպաննուեցաւ եւ իր դաշնակիցը՝ Ֆաթալի խան, որ գրաւեր էր Գանձակը, մեռաւ: Իպրահիմ այսպէս մնաց միահեծան տէր Ղարապաղի (Լէօ, Գ. էջ 788), եւ սկսաւ ընդարձակել իր խանութեան սահմանները, իրեն հպատակեցնելով դրացի խանութիւնները: Ժամանակ մը նուաճեց նոյնիսկ Շաքին, Շիրուանը, Ռէշտը, եւ նոյնիսկ առանց դիմադրութեան Դաւրէժը, ձգտելով Իրանի գահին (Լէօ. Գ. էջ 788—9, ըստ պարսկական աղբիւրներու), բայց չկրցաւ վասնզի Պարսկաստանի մէջ Ղաջարներու տոհմը կացութեան տէր դարձաւ եւ վերջ տուաւ անիշխանութեան:

Գանձակի խանը որ միշտ թշնամի էր Ղարապաղի խանին, ոչ միայն ինքն կռուեցաւ այլ ուրիշ խաներ ալ դաշնակից առաւ, սակայն Իպրահիմ խան խորամանկութեամբ չէզոքացուց զայն ի հարկին զինակցելով քրիստոնեայ Վրաստանի հետ:

Նոյնպէս ուզեց չէզոքացնել Հայ մելիքները, որոնցմէ երկուքը,— Կիւլիստանի Մելիք Յովսէփը եւ Ջրաբերդի Մելիք Հաթամը — իր հօրը դէմ մղուած երկարատեւ կռիւներու հետեւանքով անցեր էին Գանձակ եւ կ'ապրէին հոն Շահվերտի խանի հովանաւորութեան տակ (Լէօ. Գ. էջ 789): Իպրահիմ խան, ուզեց համաձայնիլ այդ իշխաններուն հետ եւ զանոնք իրենց տեղերը դարձնել, իր ձեռքին տակ ունենալու համար:

Մելիք Յովսէփ իրեն հին ժառանգական իրաւունքները յարգելու խոստում առնելով ուզեց դառնալ (Լէօ. Գ. էջ 792), սակայն Գանձակի խանը չթողուց, եւ Մելիք Յովսէփ գժտուած գնաց Վրաստան 1765ին, տկարացնելով Շահվերտի խանին կողմը ի նպաստ Իպրահիմի, որ մահմետական խաներն ալ կը պառակտէր եւ իրարու դէմ կը հանէր իր գերազանցութիւնը ապահովելու համար:

Այսպէս, ան ուրախութեամբ տեսաւ Շամշատինի թուրքերուն՝ Շահվերտի խանին դէմ ապստամբիլը եւ Հերակլի հպատակիլը (Լէօ. Գ. էջ 792), ինչպէս նաեւ անոր պարտութիւնը Շամախիի Հիւսէյին խանէն եւ Հերակլի բանակին Մելիք Յովսէփի հրամանին տակ անոր վրայ երթալը: Թերեւս վերջնական հարուածը տալու համար, ինքն ալ միացաւ Հիւսէյին խանին, երբ երկրորդ անգամ ան Գանձակի վրայ գնաց:

Շահվերտի ամէն կողմէ յարձակման ենթարկուած, դիմեց Ջառի (հարաւային Տաղիստան) Լեզգիներուն, խոստանալով անոնց մեծ կաշառքներ եւ հարուստ աւար, եթէ իրեն օգնեն: Սակայն մինչեւ անոնց հասնիլը Շահվերտի կրցաւ համաձայնիլ Հիւսէյին եւ Իպրահիմ խաներուն հետ, առանց պատերազմի մտնելու (Լէօ. Գ. էջ 792):

Այսպէս չէզոքացնելէ վերջ Շահվերտի եւ Հիւսէյին խաները, Իպրահիմ իր հօրը հաւատարիմ զինակից Մելիք Շահնազարը աւելի եւս իրեն ենթարկելու համար ամուսնացաւ անոր Հիւրիզատ աղջկան հետ (Լէօ. Գ. էջ 789), ինչ որ մեծ յուզում մատնեց դաւաճան Մելիքին Հայ հակառակորդները, մանաւանդ Դիզակի Մելիք Եսային, որովհետեւ Հիւրիզատը իր հարազատ թոռն էր: Այս պատճառով երկու մելիքները տարիներով կռուեցան, ինչ որ Իպրահիմի փափաքն էր, քանի որ ասով մելիքները կը տկարանային եւ իր տիրապետութիւնը կ'ապահովուէր: Այս կռիւներուն մասնակցեցան Խաչէնի Մելիք Միրզա խանը — Իպրահիմի միւս գործակիցը — որ պատերազմին մէջ սպաննուեցաւ 1775ին, եւ վերջապէս 1781ին սպաննուեցաւ Մելիք Եսայի ու Դիզակ ընկճուեցաւ:

Իպրահիմ խան երբ հոտառութիւնը ունեցաւ թէ Հայերը եւ Վրացիք Ռուսերու հետ յարաբերութիւն կը մշակեն եւ Հայ-Վրացական զօրաւոր պետութիւն մը կազմելու ծրագիր կայ, ռուսական հովանաւորութեան տակ, սկսաւ ամրացնել Շուշիի բերդը եւ փորձեց Հայերու եւ Վրացիներու գործակցու-

(1) *Րաֆֆի աղջկան Բիքայի հետ կ'ըսէ:*

թիւնը անկարելիութեան մատնել, ուստի կողմնակի կեր-պով հարուածելու համար— Վրաստանը, վերջի թողլով Հայերը,— թելադրեց իր աները՝ Օմար խանը որ կով-կասեան լեռնականներու մեծ բազմութեամբ մը յար-ձակի Հերակլի վրայ։ Օմար, 1782ին Բորչալուն աւերակ դարձուց, ապա մտաւ Լոռի, գրաւեց Կիւմիւշ խանէ բերդը, Հաղբատի եւ Սանահինի մօտ, եւ մեծ թուով գերիներ առաւ, եւ Ղարապաղի կողմերէն անցնելով դարձաւ իր երկիրը։

Իպրահիմ խան, Հայ դաւաճանի մը (Հասան Ջալալեան Մելիք-Բէկի որդի Ալլահ-Ղուլի բէկ, եղբայրը Աղուանից Յովհաննէս Կաթողիկոսի) մատ-նութեամբ, տեղեկանալով Հայերու ծրագիրին, Մելիք Մէջլումը, Մելիք Աբովը եւ Մելիք Բախտամը ձեր-բակալեց եւ առաջին երկուքը Շուշիի մէջ բանտար-կեց եւ երրորդը՝ ղրկեց Պարսկաստան իբր դաւա-ճան (Րաֆֆի, *նոյն.* էջ 104)։

Ձերբակալեց նաեւ Աղուանից Յովհաննէս Կաթողիկոսը եւ անոր հինգ եղբայրները։ Կաթո-ղիկոսը բանտի մէջ թունաւորուեցաւ (1786)։

Մելիք Մէջլում եւ Մելիք Աբով բանտէն փրկուեցան բուռն մը Հայ քաջերու յարձակումովը, սակայն 1787ին Հայերու եւ Վրացիներու օգնութեան եկող ռուս զօրավար Բուրնաշովը երբ ետ քաշուե-ցաւ, Իպրահիմ խան, Մելիք Մէջլումի երկիրը կո-ղոպտեց ու աւերեց եւ անոր տեղը Մելիք նշանակեց Կիւլ-Եաթաղ գիւղի Ռուստամ բէկը, որ Կիւլիստանի Մելիք դարձաւ հպատակութեան խոստումով, բայց երբ Մելիք Շահնազար Բ.ի մահէն վերջ Իպրա-հիմ խան ոտնձգութիւններ ըրաւ Հայ մելիքներու գործերուն, մանաւանդ հողերու բաշխումին (Րաֆ-ֆի, *նոյն.* էջ 127—130) եւ Թուրքեր բնակեցուց Ղարա-պաղի մէջ, Մելիք Ռուստամ — որուն կինը նախատած էր Իպրահիմ խան — զայրացած Նուխիի Սէլիմ խանի քով ապաստանեցաւ։

1795ին, երբ Աղա Մամաս խան Թիֆլիս ար-շաւած ատեն Շուշիի առջեւ հասաւ, Մելիքներուն խոստացաւ իրենց վաղեմի իշխանութիւններուն մէջ հաստատել եւ նորոգել իրենց արտօնութիւնները, եւ ջնջել Իպրահիմ խանի իշխանութիւնը, պայմանով որ Պարսկաստանի հաւատարիմ մնան։ Մելիքները սակայն մնացին հաւատարիմ ռուսաց եւ նախընտրե-ցին նոյնիսկ իրենց թշնամի Իպրահիմ խանին միա-նալ։ Այսպէս Մելիք Շահնազարը, Մելիք Ջումշուտը եւ Մելիք Բէգլարեան Մելիք Աբովը Հայ զօրքով ամրացան Շուշիի բերդին մէջ եւ Իպրահիմ խանին հետ պաշտպանեցին բերդը։

Միայն Մելիք Իսրայէլեան Մելիք Մէջլումը չմիացաւ Իպրահիմ խանի (*նոյն.* էջ 141), այլ Աղա Մամաս խանի օգնեց, Գանձակի Ջաւատ խանին հետ, վասնզի երկուքն ալ թշնամի էին Իպրահիմ խանի եւ Հերակլի։ Քառասուն օր պաշարուած մնաց Շուշի (էջ 141)։ Աղա Մամաս խանը քաղաքը պա-շարուած թողլով, Թիֆլիս արշաւեց եւ զայն աւե-րակ դարձնելէ վերջ դարձաւ Շուշի զայն գրաւելու համար, բայց ստիպուեցաւ երթալ Խորասան Պու-խարայի Թաթարներուն յարձակումներուն դէմ պաշտ-պանելու համար (*Գաղտնիք Ղարապաղի*, էջ 591), Շուշի ձգելով Ջաւատ խանը եւ Մելիք Մէջլումը (Րաֆֆի, *նոյն.* էջ 146)։

Իպրահիմ խան վրէժ լուծելու համար Գան-ձակի Ջաւատ խանէն եւ Մելիք Մէջլումէն, որոնք հաւասարապէս ատելի էին Հերակլին, վասնզի Թիֆ-լիսի աւերման մասնակցած էին, չվարանեցաւ 1796ին Հերակլի միանալու։ Իրենց հետ նաեւ Աւարիայի Օմար խանը (Րաֆֆի. էջ 153) եւ Մելիք Ռուստամը, որ հաշտուած էր Իպրահիմի հետ, Մելիք Մէջլումէն— որ իր եղբայրը եւ փեսան հրացանի բռնել տուած էր — վրէժ լուծելու համար։

Գանձակ պաշարուեցաւ չորս ամիս (Րաֆ-ֆի, էջ 154)։ Հերակլ՝ Մելիք Մէջլումը իրեն յանձ-նելու պայմանով հաշտութիւն կ'առաջարկէ Ջաւատ խանին, որ կը մերժէ (*նոյն.* 154) սակայն քիչ յե-տոյ Մելիք Մէջլում զինուորական ըմբոստութեան մը միջոցին կը վիրաւորուի եւ կը մեռնի (1796) եւ Ջաւատ խան հաշտութիւն կը կնքէ։ Իպրահիմ խան եւ Հերակլ՝ Գանձակի պաշարումին վերջ կուտան (Րաֆֆի, էջ 157)։ Աղա Մամաս խան Շահը երբ իմացաւ որ ռուսերը կը պատրաստուին Պարսկաս-տանի վրայ յարձակիլ դարձաւ Կովկաս, ուր մտած էր 1796ին արդէն Զօր. Զուբով ռուս զօրքով, եւ մահմետական խաներ հնազանդած էին անոր, ի մէջ այլոց Իպրահիմ խանը որ իր որդին՝ Ապտիւլ Ֆաթեհ խանը ղրկած էր ռուս զօրավարին, եւ հպատակութիւն յայտնած։

1797ի գարնան ռուսերը ետ քաշուեցան Պօղոս Զարին հրամանով, վասնզի Եկատերինա կայսրու-հին մեռած էր (1796 Նոյեմ. 6 ✝) եւ իր որդին չէր ուզեր շարունակել իր մօրը քաղաքականութիւնը։

Շահը Կովկասի անհաւատարիմ խաները պատժելու համար ձեռնարկեց արշաւանքի մը (1797)։ Իպրահիմ խան իր ընտանիքով Շուշիէն փախաւ Բա-լաքան իր աներոջ Օմար խանի մօտ (Րաֆֆի, էջ 160)։

Հայ մելիքները բոլորովին մինակ մնացին (*նոյն.*) եւ իրենք ալ խոյս տուին։ Մելիք Բէգլարեան Մելիք Աբովը՝ Վրաստան գնաց, իսկ Մելիք Շահնա-զարեան Մելիք Ջումշուտը փախած ատեն ձերբա-կալուեցաւ եւ 20,000 թումանի կաշառք տալով կրցաւ ազատիլ եւ պարսիկ զօրքը անձամբ Շուշի առաջնորդեց (Րաֆֆի, *նոյն.* 161)։

Կացութիւնը շատ աննպաստ էր Կովկասի խա-ներուն եւ Հայ Մելիքներուն համար, երբ Աղա Մա-մէտ խան սպաննուեցաւ Շուշիի մէջ 1797ին։ Իպ-րահիմ խանի եղբօրորդին Մամաս բէկը խանու-թիւնը ինքն յափշտակեց, բայց չկրցաւ կողմնակից-ներ գտնել, ուստի ինքնաբերաբար իր հօրեղբայրը հրաւիրեց Շուշի։

Սովը եւ ժանտախտի համաճարակը, որոնք իրարու յաջորդեցին (1798ին), բոլորովին ամայա-ցուցին Ղարապաղը, վասնզի բնակչութիւնը, մա-նաւորապէս Հայերը, հեռացան մեծ մասամբ Վրաս-տան գաղթելով։ Հերակլի մահէն (18 Յունուար 1798 ✝) վերջ իր որդին Գէորգի ԺԲ. Աղա Մէհմէտ Շահի յաջորդող Ֆաթալի Շահի արշաւանքէն սար-սափելով Ռուսիոյ հովանաւորութեան ապաստանե-ցաւ (1799)։ Իսկ Իպրահիմ խան 1800ին երբ պար-սիկ բանակը անցաւ Արաքս գետը եւ պաշարեց

Երեւանը, անցաւ պարսիկներու կողմը: Բայց որովհետեւ պարսիկները պարտուեցան, Իպրահիմ հպատակեցաւ ռուսերուն 1805ին (Րաֆֆի, էջ 206) բայց կրկին դաւեց 1806ին անցնելով կրկին պարսից կողմը եւ Աբաս Միրզայի բանակին միանալու համար փախած ատեն (1806 Մայիսին) սպաննուեցաւ Մելիք Ջումշուտի կողմէ (Րաֆֆի էջ 208): Իրեն յաջորդեց իր երէց որդի Մէհմէտ խանը, որուն մեծ իրաւունքներ տուին Ռուսերը, բայց ան ալ իր հօրը պէս դաւաճանեց, 1822ին Պարսկաստան երթալով եւ պարսիկ բանակին մէջ ռուսերու դէմ կռուելով:

Այս կերպով վերջ գտաւ Ղարապաղի խանութիւնը:

## Դ. ՆԱԽԻՋԵՒԱՆԻ ԽԱՆՈՒԹԻՒՆ

Նախիջեւանի խանութիւնը վաղեմի հիմնարկութիւն մըն էր, քիչ մը աւելի ձուլուած Պարսկաստանի մարմինին մէջ քան թէ օրինակ Երեւանի խանութիւնը որ ունէր բոլորովին տեղական դիմագիծ եւ կառավարական, վարչական եւ հարկային դրութիւններով կը տարբերէր պարսկական ուրիշ նահանգներէն։ Նոյնիսկ Ջահան-Շահին ատեն Նախիջեւան կարեւոր կեդրոն մըն էր ուր իբր փոխարքայ կը նստէր իր որդին Հասան Ալի խան։

Սակայն աւելի ուշ ժամանակներուն, Նախիջեւանի խանութիւնը կը թուի ըլլալ ոչ-ժառանգական, այլ բուն Պարսկաստանի նահանգներուն պէս կապալով տրուած (Լէօ. Գ. 91—92): Այս պատճառով հոն կը գործադրուէր Պարսկաստանի կամ գոնէ Ատրպատականի մէջ կիրարկուածին նման հարկապահանջութիւն մը որ չափազանց ծանր եւ բազմատեսակ էր (տես. Լէօ. Գ. 91—92):

Այս խանութիւնը որ հաւանօրէն Սէֆիներու ատեն կազմուած էր, շարունակուած է մինչեւ Նախիջեւանի ռուսական գրաւումը:

Նատիր Շահի գահակալութեան հանդէսներուն մասնակցած է Նախիջեւանի Րիզա խանը (*Աբրահամ Կրետացի*, էջ 40):

Նատիրի իշխանութեան շրջանին Նախիջեւանի խան նշանակած է Մահմուտ Ղուլի խանը, որ կեղեքեց այս գաւառը, եւ երբ Նատիր մեռաւ (1747ին) Ատիլ շահի ժամանակ ապստամբեցաւ եւ չճանչցաւ Իրանի վեհապետութիւնը (Լէօ. Գ. էջ 720), բայց գաւառին մէջ ըմբոստութիւններ ծագեցան իր կեղեքումներուն հետեւանօք։ Այս ըմբոստներու մեծ մասը հաւաքուած էին Աստապատ Հայ գիւղը, որուն դիրքէն օգտուելով բնակիչները սաստիկ դիմադրութիւն ցոյց տուին, եւ խանը, հարկադրուեցաւ փախչիլ:

Ատիլ խան անոր տեղը խան նշանակեց Հայտար Ղուլի խանը, որ տեղացի մըն էր (Լէօ. Գ. էջ 720)։

Անիկա իր նախորդը զերազանցեց իբրեւ կեղեքիչ, եւ հարստահարիչ, բնակիչները, աս անդ գրուեցան: Այդ միջոցին Դաւրէժի մէջ Ատիլ շահի եղբայրը՝ Իպրահիմ Միրզան ինքզինքը թագաւոր հռչակեց եւ սկսաւ Պարսկաստանը նուաճելու պատրաստուիլ, եւ որպէսզի դրամ հայթայթէ խստացուց հարկապահանջութիւնը: Այդ օրերուն Դաւրէժ գացած էին Նախիջեւանի խանութեան Հայոց ներկայացուցիչները, խնդրելու համար որ Հայտար Ղուլի խանը հեռացուի: Շահը կատարեց Հայոց խնդրանքը եւ պաշտօնանկ ըրաւ Հայտար Ղուլի խանը, որ սաստիկ թշնամացաւ Հայերու հետ, մատնեց պատգամաւոր Հայերը պարսիկ կառավարութեան ձեռքը՝ իբրեւ հարուստ մարդիկ, որոնք կրնային առնել ժողովուրդէն այնքան դրամ, որքան պէտք էր այդ միջոցին կառավարութեան:

Պատգամաւորները յանձնուեցան հարկահաններուն, որոնք սոսկալի տանջանքներով զանոնք տարին Նախիջեւան եւ սկսան հոն եւ շրջակայքը անհռելի խոշտանգումներով՝ հարկապահանջութեան: Այս անտանելի կացութեան մէջ էր Նախիջեւան, երբ յանկարծ, Իպրահիմ Շահ Նախիջեւան ղրկեց, ազգով Վրացի Բեհնամ խանը, իբր կառավարիչ: Անոր գալստեամբ դրութիւնը բոլորովին փոխուեցաւ: Նոր խանը ոչ միայն դադրեցուց այս բարբարոս տանջանքները, այլ իրեն համար զօրք կազմեց Հայերէն եւ իր շուրջը հաւաքեց Հայ գլխաւորները, որոնց մէջ իր քաջութեամբ եւ իմաստութեամբ նշանաւոր էր Շահկերտ կամ Ղազանճի աւանէն Յովհաննէս Խանտամիրեանը:

Իսլամ բնակչութիւնը գրգռուեցաւ Բեհնամ խանին դէմ, Հայկական զօրքին պատճառով: Դաւիթ Բէկի ժամանակները դեռ չէին մոռցուած, եւ ահա Օրտուպատը, որ այնքան թշնամի էր Ղափանի Հայ զինուորութեան, ապստամբեցաւ եւ պատրաստուեցաւ երթալ Բեհնամ խանի դէմ, որուն Հայկական զօրքը, Յովհաննէս Խանտամիրեանի եղբօրորդի Վարդազարի եւ Շահկերտցի Ղազարի հրամանատարութեամբ, արշաւեց Օրտուպատի վրայ: Սակայն ճիշտ այդ միջոցին Հայտար Ղուլի խան մեծագումար կաշառքներով վերստին ստացաւ Նախիջեւանի խանութիւնը եւ դեռ իր պաշտօնատեղին չհասած երբ իմացաւ որ Օրտուպատը պաշարուած է, ինքն ալ հոն դիմեց, յաղթեց եւ ձերբակալեց Հայ հրամանատարները, Նախիջեւանէն վանեց Բեհնամ խանը եւ ապա վրէժ լուծեց Հայերէն, ցրուելով անոնցմէ կազմուած զօրքը եւ պաշտօնէ հանելով պետերը: Ան ամբաստանեց շատերը զանազան յանցանքներով եւ մահապատիժի ենթարկեց: Միայն չհամարձակեցաւ Յովհաննէս Խանտամիրեանին եղբօրորդւոյն վնասել, անկէ պատկառելով:

Հայտար Ղուլի խան սաստիկ լարուած էր Շահկերտի դէմ եւ կ'ուզէր զայն ոչնչացնել ամէն գինով: Սակայն քաջ եւ կորովի Շահկերտցիք դիմադրութիւն կազմակերպեցին Խանտամիրեանի գլխաւորութեամբ, որ 500 հոգիով բանակ մը կազմեց (Լէօ. Գ. էջ 721—722): Հայտար Ղուլի խան եկաւ Շահկերտի մօտ (1750 ամառ) եւ ուզեց խորամանկութեամբ կործանել քաղաքը, բայց չյաջողեցաւ: Ան ատեն դիմեց Դաւրէժի Սարտարին որ օգնութեան ղրկեց երեք խաներ իրենց զօրքով (*նոյն*. 722), սակայն հինգ օր կատաղօրէն ի զուր կռուելէն վերջ (Լէօ. Գ. էջ 722), Հայտար ստիպուեցաւ բանակցութեան մտնել: Շահկերտցւոց մէջ երկպառակութիւն ծագած ըլլալով անոնք իրենց զէնքը վար դրին, եւ Հայտար Ղուլի խանին կամակայականութեան մատնուեցան: Յովհաննէս Խանտամիրեանը թունաւորուեցաւ եւ

գլխաւորներէն ոմանք Ղափան փախան (Լէօ. Գ. էջ 762) Փանահ խանի երկիրները։ Փանահ զանոնք հովանաւորեց եւ նոյնիսկ պատերազմ բացաւ Նախիջեւանի խանին դէմ (Չամ. Գ. էջ 762), մինչ Րաֆֆի, Փանահը եւ Հայտար Ղուլին իրարու բարեկամ ցոյց կուտայ, 1756ին (*Խամսայի Մելիքութիւնները* էջ 62):

Իպրահիմ Շահ 1751ին սպաննուեցաւ Շահ Ռուհէն, բայց ինքն ալ թշնամիներուն ձեռք ինկաւ եւ իր աչքերը կորսնցուց: Գահը գրաւեց Սուլէյման Շահ զոր նոյնպէս կուրցուցին եւ վերահաստատեցին կուրացած Շահ Ռուհը:

Այս խառնակութեանց եւ շփոթութեանց միջոցին արեւմտեան Պարսկաստանի մէջ երեւան ելաւ Ազատ խան որ իբր թագաւոր կը վարուէր: Ասիկա Հայտար Ղուլիի վրայ յարձակեցաւ վասնզի իր մի քանի պահանջները չէր կատարուած: Ազատ խանի բանակին մէջ էր Բեհնամ խանը, որ երբ Հայտար Ղուլի գերի ինկաւ իր վրէժը լուծեց անձամբ ջախջախելով անոր գլուխը Հին Ջուղայի մէջ:

Ազատ խան զայն վերահաստատեց Նախիջեւանի խանութեան մէջ եւ Հայերը կրցան քիչ մը ազատ շունչ առնել այս մարդասէր իշխանին օրով, որ երբ Ազատ խան արշաւեց Երեւան, եւ Վրաց Թէյմուրազ թագաւորը հակառակեցաւ իր բանակով, Բեհնամ խան հաւանօրէն վտանգ տեսնելով ձգեց Նախիջեւանը եւ գնաց Վրաստան (Լէօ. Գ. էջ 725):

1795ին ամառը երբ Աղա Մեհմէտ խան Շահ, դէպի Կովկաս արշաւեց, Նախիջեւանի բնակչութիւնը մեծ թուով Վրաստան գաղթեց: (Լէօ. Գ. էջ 877), եւ Հայոց թիւը աննօսրացաւ գաւառին մէջ:

1828ին վերջապէս ռուսերը գրաւեցին Նախիջեւանը, Երեւանի հետ:

## Ե. ՇԻՐՈՒԱՆԻ ԿԱՄ ՇԱՄԱԽԻԻ ԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Շիրուան կամ Շամախի թէեւ դուրս է Հայաստանի սահմաններէն Կուրի արեւելեան կողմը գտնուելով, եւ աւելի Աղուանից երկիրին մաս կազմելով, բայց շատ կապեր ունէր Հայաստանի հետ:

Ան կը կազմէր պարսկական պետութեան ծայրագաւառներէն մին, եւ այս պատճառով յաճախ պետական միութենէն բաժնուելով անկախ միապետութիւն մը կազմած էր:

Այս անկախ իշխանութեան վեհապետը կը կոչուէր *Շիրուանշահ* եւ երկիր՝ *Շիրուան* (1), որ Կուրի միջին հոսանքներէն մինչեւ Կասպից ծով՝ Դերբենտի դուռներուն մօտ կը տարածուէր:

Այս պետութեան մայրաքաղաքն էր Շամախին, որ առեւտրական մեծ կեդրոն մըն էր:

Հարուստ երկիր մըն էր Շիրուան, որուն բնակչութեան կարեւոր մասը կը կազմէին Հայերը, հակառակ հալածանքներուն եւ բռնի իսլամացումներուն:

Երբ Մոնկոլները Հայաստան մտան Աղուանից աշխարհը քաղաքական միութիւն մը կազմելէ շատոնց դադրած եւ ազգը՝ հայացած էր, բայց Մոնկոլ տիրապետութեան տակ բոլորովին կերպարանափոխ եղաւ։ Մուղան, Մոնկոլ եւ Թաթար բանակներուն ձմեռանոցն էր, ուստի անոնց հետեւող ժողովուրդը այս երկիրին մէջ բնակութիւն հաստատեց եւ հետզհետէ մեծամասնութիւն կազմեց:

Գարա Եուսուֆի որդին՝ կատաղի Իսքէնտէր, Շահ Արմէնը, գրաւեց նաեւ Շամախին եւ կոտորած եւ գերեվարութիւն կատարեց։ Անցաւ նաեւ Տէրբէնտի դուռը եւ կոտորեց անհամար Թաթարներ (Մակար եպս. Բարխուտարեանց *Պատմ. Աղուանից*, էջ 210): Սակայն երբ Ուզուն Հասան (1453—1477) յաջողեցաւ Ազգոյունլուներու եւ Գարագոյունլուներու իշխանութիւնները միացնել, ինչպէս նաեւ Լէնկ Թիմուրի որդւոյն՝ Միրան Շահի յաղթել, եւ մեծ պետութիւն մը հիմնել, Շիրուան ենթարկուեցաւ այս պետութեան, բայց որովհետեւ ծայրագաւառ մըն էր եւ Կովկասեան լեռներէն անցնելով դէպի հարաւ արշաւող ժողովուրդներու ճամբուն վրայ կը գտնուէր, հաւանօրէն անոր տրուեցաւ անկախութիւն, վեհապետութեամբ մեծ իշխանի մը որ *Շիրուան Շահ* կոչուեցաւ:

Շիրուանի մէջ հաստատուած այս արքայական տունը նախանձը գրգռեց Շէյխ Սէֆիի տոհմին, որ Արտաբիլի նեղ շրջանակին մէջ սեղմուած կը ձգտէր անկէ դուրս գալ եւ նուաճել դրացի երկիրներ, որոնց մէջ ամէնէն նախանձելին Շիրուանի թագաւորութիւնն էր, իր հարստութեամբ:

Շէյխ Ճիւնէյտ, Սէֆեան ընտանիքէն, ամուսնացած էր Ուզուն Հասանի քրոջ Խատիճէ-Պէկումի հետ եւ ասով իր դիրքը զօրացուցած: Ան դարձաւ Արտաբիլ ուրկէ զինքը վանած էր Գարագոյունլու Ճիհան Շահ եւ վերստին տիրեց քաղաքին, բայց Շիրուան արշաւած ատեն սպաննուեցաւ:

Իրեն յաջորդեց իր որդին Շէյխ Հայտար որ Ուզուն Հասանի (1477 ✝) աղջկան հետ ամուսնացաւ եւ անոր յաջորդներուն մղած քաղաքային պատերազմներուն միջամտեց եւ իր հօրը մահուան վրէժը լուծելու համար 1488ին Շիրուան արշաւեց:

Շէյխ Հայտարի արշաւանքը մեծ ձախողում մը եղաւ վասնզի Շիրուանշահի միացաւ Ազգոյունլու Եաղուպ (1478—1490), հակառակ անոր որ Հայտար իր քեռայրն էր:

Ձեռագիրի մը յիշատակարանին մէջ կը կարդանք թէ «*ի ՋԼԷ* (= 1488) *թուականին եղեւ արհաւիրք իբազում տեղիս եւ կոտորեցաւ ազգն տաճկաց, զի յաշխարհն Զաղաթային բազում պատերազմունք եւ արեան հեղումն եղեւ, եւ Մարա Սուլթանն եւ Հումոց խոնորքարն* (1) *զմիմեանս ջարդեցին եւ կոտորեցին եւ Մեծ Սօֆի Արտաւիլ*

(1) *Շիրուան անունը իբր թէ առնուած է ազգի մը անունէն որ կ'ապրէր Շամախիի շուրջը* (Ալիշան Տեղագիր Հայոց Մեծաց *էջ* 91—92)։ *Ըստ Չամչեանի Հայկազեան Սեւակէ Սիրուան որդիէն սերած են Շիրուանք։ Երկրին հիւսիսային և արեւմտեան մասերը հիներու Լփնաց և Ծոդէից կամ Ծաւդէացւոց երկիրն էր։ Լփնիք երբեմն թագաւորութիւն մը ունէին։ Շիրուանի լեռներուն ստորոտն կը բնակէին ծիղբք։*

(1) *Կ'ակնարկէ Օսմանեան Սուլթանին։*

*քաղաքին ժողովեաց թղթով իւրով զամենայն Սօֆիսն իւր յամենայն երկրէ, զի էր սահմանք եւ սովորութիւն նոցա որ յամենայն ամի փութային իկոչն նոցա յամենայն աշխարհէ կարմրագդակ Սօֆիքն եւ զինուորէին նման իւրեանց թոշակօքն եւ փոխանակ առնելոյ ինմանէ տային նմա բազում ոսկի եւ արծաթ . . . . . . . . . . ժողվեաց յասմ ամի արս իբրեւ Խ* (40,000) *եւ գնացեալ խաբէութեամբ եմուտ ի Շամախի եւ զամենսեան որ իձեռն էած իբրիստոնէից եւ խտաճկաց զարս եւ զկանացս՝ սրով կոտորեաց եւ զքաղաքն ամենայն հրով այրեաց՝ կումաշօքն եւ որ ինչ էր ինման եւ զմայր տղայքն ժողովեալ առինքն եւ դիզեալ իվերայ միմեանց հինգ եւ վեց եւ ինքն իվերուստ նիզակաւ անցուցանէր մինչեւ իներքին տղայն եւ վերացուցեալ նիզակաւն կանգնէր եւ տղայքն աղիողորմ թալկանային ոտիւք եւ ձեռօք իծայրս նիզակացն եւ նա ծափս հարկանէր ուրախութեամբ եւ ասէր՝ այս է ճշմարիտ ղաղայն։* (տես. *Ցուցակ Վենետիկի Ձեռագրաց* Բ. էջ 1139):

Ձեռագիրը որ այս վայրագ նկարագրութիւնը տուած է, չէ ըսած թէ Շէխ Հայտար ինչպէս այս պատերազմին մէջ սպաննուեցաւ եւ իր զօրքը ջարդուեցաւ: Հայտարի որդիները, Իպրահիմ եւ Իսմայիլ, փախան Գիլան, իրենց անձը փրկելու համար, Արտաբիլը թողլով Շիրուանշահի:

Երբ 1490ին Եաղուպ մեռաւ, երկու եղբայրները իրենց հայրենի երկիրը Արտաբիլ դարձան: Հոն Իպրահիմ մեռաւ եւ Իսմայիլ դարձաւ միակ ներկայացուցիչը Շէխ Սէֆիի տոհմին: Իսմայիլ (1500—1522), հազիւ քսանամեայ, ցոյց տուաւ արտակարգ կարողութիւններ։ Շուտով կազմակերպեց 7,000 Թուրքմէններէն բաղկացեալ բանակ մը եւ գնաց Շիրուանշահի վրայ, իր հօրը մահուան վրէժը լուծելու համար (1500), Շիրուանշահ յաղթուեցաւ եւ սպաննուեցաւ։

Շամախին եւ Պագուն գրաւուեցան (Գաբ. վրդ. Այվազովսքի, *Պատմ. Օսմ.* Ա. էջ 240): Սակայն Շիրուանը բոլորովին չկորսնցուց իր անկախութիւնը: Շիրուանշահերը շարունակեցին իրենց գոյութիւնը պահել, անուանական կերպով հպատակած ըլլալով Արտաբիլի (Լէօ. Գ. *Հայոց Պատմ.* էջ 171—173):

Իսմայիլ Պագուէն վերջ Շամախիի մօտակայ Գիւլիստան բերդին վրայ գնաց բայց իրեն դէմ փութաց Ագգոյունլու Ուզուն Հասանի թոռը Էլվենտը (1498—1504), որ իր ազգականն էր։

Արաքսի եզերքը Նախիջեւանի մօտ, երկու բանակները ճակատեցան իրարու դէմ (1501): Էլվենտ չարաչար պարտուեցաւ եւ սպաննուեցաւ: Յաջորդ տարին, Պարսկաստան Իրաքի տիրակալող Մուրատ Ագգոյունլու եւս պարտուեցաւ Համատանի մօտ եւ այսպէս վերջ գտաւ Ագգոյունլուներու պետութիւնը:

Այս անգամ Շիրուանի իշխանութիւնը Սեյֆեան իշխանի մը ձեռքով կրկին ինքնագլուխ կը դառնայ, վասնզի 1547ին Յովհաննէս Արճիշեցին իր գրած մէկ Մաշտոցին մէջ կը գրէ թէ «*խիստ նեղացեալ ենք ի հարկապահանջութենէ անօրինացն, եւ աճաբեկ եղեալ եմք Շահ-Դահմանէն (1) որ յայս աշունս շարժեցաւ անհուն զօրօք իվերայ եղբօրն Ալխասի-Միրզին, որ էր նստեալ իՇրուան եւ ինքնագլուխ դարձեալ*» (*Դիւան Հայոց Պատմ.* Ժ. էջ 30):

Հազիւ քառասուն տարիներ վերջը Շիրուանի ինչպէս նաեւ կովկասեան միւս երկիրներու կացութիւնը շատ կը ծանրանայ եւ աւելի խոշոր դժբախտութիւններու կ'ենթարկուին անոնք, վասնզի թուրք եւ պարսիկ պատերազմներու հետեւանքները այս շրջաններն ալ կը կրեն:

Թուրքերը կը գրգռեն Կովկասի բնակիչները եւ անկարգութիւնները կը քաջալերեն: Անոնք կը թելադրեն Վրաստանի, Տաղիստանի եւ Շիրուանի տիրողները որ ապստամբին Պարսկաստանի դէմ:

Օսմանեան բանակը Մուսթաֆա փաշայի հրամանատարութեամբ 1575ին կը գրաւէ Շամախին, որ քիչ վերջ պարսիկները ետ կ'առնեն, սակայն Օսման փաշա, որ Խրիմի խանին եղբօրը՝ Ագիլիքէ բէկի հետ Տէրպէնտի կողմէն պարսից դէմ կը կռուէր, կը պարտուի Խուտապանտ Շահի (1576—1580) որդին Համզա Միրզայէն եւ հազիւ Տէրպէնտ կ'ապաստանի, Ագիլիքէն գերի ձգելով պարսիկներու ձեռքը:

1578ին Խրիմի Մէհմէտ-Գիրէյ խան կը հասնի Տէրպէնտ եւ Օսման փաշայի կը միանայ:

Թուրքերը կը գրաւեն Վրաստանը, Շաքէն, Շիրուանը եւ Տէրպէնտը (Լէօ. *Պատմ. Հայոց*, Գ. հր. էջ 198):

Համզա-Միրզա 1579ին ետ կ'առնէ Շիրուանը եւ կը հարկադրէ Օսման էօզտէմիր փաշան նահանջել Տէրպէնտ (*Նոյն.* էջ 198), ուր ան կը կազմակերպէ զինուորական արշաւանք մը նուաճելու համար Տաղիստանը: Արդարեւ, 1585ին Օսման փաշա կրկին կը գրաւէ Շամախին (*Առաքել Դաւրիժեցի*, էջ 488), Խրիմի թաթարներուն օգնութեամբ, աւերակի վերածելով Շիրուանը եւ 160.000 հոգի գերի տանելով (Լէօ. *Նոյն.* էջ 198):

Սակայն պարսիկները կը պայքարին իրենց ձեռքը պահելու համար Շամախին. Շաքէն, Գանձակը եւ Դաւրէժը, հրամանատարութեամբ Համզա Միրզայի որ 1585ին կ'սպաննուի նոյնիսկ պարսիկ զինուորներէն:

Խուտապանտայի կը յաջորդէ իր որդին Շահ Աբաս Ա. (1586—1630) որ 1586—1588 քաջութեամբ կը կռուի թուրքերու դէմ:

1584ին եւ 1586ին գրուած երկու Աւետարաններու յիշատակարանները (2) գրեթէ համանման բառերով, մին համառօտ եւ միւսը ընդարձակ, կը պատմեն թէ 7—8 տարի ծանր խառնակութիւններ

(1) *Թահմազ Շահ* (1524—1576) *որ* 53 *երկար տարիներ իշխեց Պարսկաստանի:*

(2) *Առաջինը Թ.* 131 *ձեռագիրն է Երեւանի պետական Թանգարանին* (*տես. Երուանդ Շահազիզ*, Հին Երեւան. 1931 *էջ* 87) *եւ երկրորդը՝ Վենետիկի վանքը կը գտնուի* (*տես.* Ցուցակ Վենետիկի Ձեռագրաց, *էջ* 667)։

պատահած են Արեւմուտքէն եկող 200,000 Ձետախներու արշաւանքի մը հետեւանօք:

Անոնք Խրիմի թաթարներն են, որոնք կը հասնին *«իմաւուս Շարվանայ եւ գերեաց զգազգս հա(յ)կազանց»* եւ 72,000 գերի կը տանին *«այր եւ կին, ծեր եւ տղայ»*: Անոնք գերեցին նաեւ Արարատեան գաւառէն 60,000 բնակիչ եւ *«եղաւ սով սաստիկ մեծ եւ նուազեցաւ զծուխս (ծխս ?) հայոց»*:

Նշանակելի է որ յիշատակագիրներէն մին յստակապէս կը շեշտէ թէ Շիրուանի մէջ անոնք *«քակեցին ծառն ապրիշումի»* այսինքն թթենիները, որոնք շերամաբուծութեան կը ծառայէին անշուշտ (1):

1588ին թուրք եւ պարսիկ հաշտութեան պայմաններուն համաձայն թուրքերու կը մնայ Շամախին:

1607ին Շահ Աբասի դէմ արշաւող Սինան փաշա, երբ իր բանակով հասաւ Արաքսի ափը եւ տեսաւ որ ժողովուրդը տեղահանուած է, որոշեց ձմեռել Շիրուան ուր իր որդին կառավարիչ էր, սակայն զօրքը ըմբոստացաւ, ուստի քաշուեցաւ Վան (Այվազովսքի, *Պատմ. Օսմանեան* Ա. էջ Լեօ. *Պատմ. Հայոց.* Գ. 256): Հաւանօրէն այս ըմբոստութենէն օգտուելով նոյն տարին Շահ Աբաս վերստին գրաւեց Շամախին (*Առաք. Դաւրիժեցի* էջ 491) եւ հոն կուսակալ դրաւ Զիչփիզար խանը (*Դաւրիժեցի*, էջ 93—94) ինչպէս թուրք տիրապետութեան տակ *Պէյլէրպէյի* մը կար:

Շիրուանի խաները, որոնք 3,000 զօրք ունէին (Լեօ. Գ. էջ 62), գրեթէ ինքնիշխան կառավարեցին երկիրը մօտաւորապէս դար մը: 1711էն 1721 գրեթէ բոլոր Կովկաս տակնուվրայ եղաւ Լեզգիներու եւ կովկասեան լեռնականներու պատճառով:

Շամախի անոնց արշաւուղիին վրայ գտնուող վայրերէն մին էր: Շամախիի Հասան Ալի խանը, ինչպէս Գանձակի Ուղուրլու խանը չկրցաւ այս արշաւանքը կասեցնել: Հասան Ալի խան, 15,000 զօրքով գնաց Լեզգիներու վրայ, սակայն անակնկալ յարձակումով մը ինքն եւ զօրքը ջարդուեցան կամ փախան (*Եսայի Կաթողիկոս*, էջ 25): Հասան Ալի խանէն վերջ կը յիշատակուի իբր խան Շամախիի Հիւսէյին խանը որուն յաջորդած է ուրիշ Հիւսէյին խան մը:

Մասնաւորապէս 1721ի եւ 1722ի Լեզգիական երկու մեծ արշաւանքներուն ատեն Շամախի գրաւուեցաւ եւ որովհետեւ Լեզգիները Սիւնի էին Շիի աղանդին պատկանող պարսիկները ջարդուեցան (*Եսայի Կաթողիկոս*, էջ 30—31, Լեօ. *նոյն.* էջ 604, *Աղուանից երկիր եւ դրացիք* էջ 152 եւ *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 78 եւ 83):

Երբ Լեզգիները քաշուեցան առաջին արշաւէն վերջ, Պարսիկները Շամախին գրաւեցին վերստին եւ Շահը, խան նշանակեց Ագուլեցի Հիւսէյին խանը, որ երկրորդ արշաւանքին ատեն Լեզգիներէն բռնուեցաւ եւ քանի մը օր վերջ յանձնուեցաւ Ղուրթաշէնի իր նախորդէն սպանուած մելիքին որդիին (տես. վարը):

Լեզգիներու գործադրած կողոպուտէն վերջ 1723ին, Օսմանցիք կրկին տիրեցին Շամախի քաղաքին եւ 1724 Յունիս 24ին ռուս եւ թուրք դաշինքին համաձայն Շամախին մնաց թուրքերուն, որոնք հոն հաստատեցին Օսմ. հովանաւորութեան տակ իշխանութիւն մը, որուն պետն էր Սուլթանին հաւատարիմներէն Տավուս պէկ (տես. վերը, էջ 87): Սակայն հազիւ 10 տարի վերջը՝ 1734ին թուրքերը պարտաւորուեցան Նատիր Շահին (1735—1746) թողուլ Շիրուանը, Շաքի, Գանձակի եւ Թիֆլիսի հետ, բայց պատերազմին հետեւանօք Շամախի քաղաքը բոլորովին կործանեցաւ եւ Հայ եւ Վրացի 700,000 գերիներ տարուեցան Պարսկաստան (*Աբրահամ Կրետացի*, էջ 58): Նատիր ձեռնարկեց վերաշինել զայն (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 95—96) եւ իր հզօր իշխանութեան տակ Շամախին վերածեց պարսիկ խանութեան մը, որուն իշխողը Երեւանին պէս կը կրէր *Պէկլէրպէկի* տիտղոսը, (*Աբրահամ Կրետացի*, էջ 40):

Հաւանօրէն առաջին Շամախիի Պէկլէրպէյին էր Ղրաթն որ ներկայ եղած է Նատիր Շահի գահակալութեան (1736) իՄուղան (*նոյն.*):

Այս խանութիւնը որուն սահմանները ընդարձակ էին եւ կը պարունակէր Շիրուանի հետ Շաքէն եւս, պահ մը (շուրջ 1750), ենթարկուած է Շաքէի մէջ տիրող Հաճի Չէլէպի խանին (տես. վարը), բայց վերջը դարձեալ կազմած է 1765ին առանձին խանութիւն մը: Այդ թուականին Շամախիի տիրողն էր Հիւսէյին խան որ կը յարձակի Գանձակի Շահվերտի խանին վրայ եւ կը յաղթէ անոր եւ երկրորդ անգամ մը կ'արշաւէ անոր հողերը Շուշիի Իպրահիմ խանին հետ (Լեօ. Գ. 792 եւ *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 108):

1790ական թուականներուն Շամախիի անկախ իշխողն էր Մուսթաֆա խան, որուն քով ապաստանեցան Վարանդայի Մելիք Շահնազար Բ.ի որդիներէն Ջհան Բախշ եւ Ջհանգիր (Րաֆֆի. *նոյն.* էջ 127):

1795ին Մուսթաֆա խան, Յովսէփ Արղութեանի յորդորով, Շամախին առանց արիւնահեղութեան յանձնեց ռուսերու, որոնք Մուսթաֆա խանը պահեցին իր պաշտօնին վրայ: Րաֆֆի, (էջ 145) թէեւ կ'ըսէ թէ 1805ին վերջ գտած է այս իշխանութիւնը, սակայն Մուսթաֆա խան մինչեւ 1816, գէթ անուական կերպով կը պահէր իր իշխանութիւնը, եւ Մատաթով իշխանին խոստմնագիր տուած էր պարսիկ կառավարութեան հետ յարաբերութիւն չունենալու համար (*Պատմ. Աղուանից*, Բ. հտ. էջ 147):

1826—27ի ռուսեւթուրք պատերազմէն վերջ վերջնապէս Կովկասի մէջ ոչ մէկ խանութիւն մնացած էր:

(1) *1709ին Իսրայէլ Օրի Մեծն Պետրոսի հրամանով Շամախիէն 20 մետաքսագործ ընտանիք տանիլը Ռուսաստան ուրիշ փաստ մըն է որ Շամախիի մէջ առաջացած էր այս գործը։*

# Զ. ՇԱՔԻԻ ԿԱՄ ՆՈՒԽԻԻ ԽԱՆՈՒԹԻՒՆ

Հայաստանի սահմաններէն դուրս եւ ուղղակի անոր մաս չկազմող շրջանի մը մէջ կազմուած էր նաեւ այս խանութիւնը, որ մինչեւ ԺԸ. դար Շիրուանի անուանական իշխանութեան տակ էր:

Այս խանութիւնն ալ նման Շիրուանի կը գտնուէր Հայաստանի բնական սահմանը կազմող Կուրի արեւելեան կողմը, բայց բնակչութեան մէջ աննշան փոքրամասնութիւն մը կը կազմէին Շիի իսլամները եւ Հայերն էին մեծամասնութիւնը (Լէօ. Գ. էջ 60):

Օսմանցիք ԺԶ. դարուն վերջին քառորդին առաջացած էին մինչեւ Շաքէ (*Նոյն.* էջ 198) որ վերջը կրկին պարսիկ տիրապետութեան ենթարկուած էր:

Այսպէս, ԺԷ—ԺԸ դարերուն թուրք եւ պարսիկ պատերազմներու թատերավայր եղած էր Աղուանից աշխարհին այս մասը, որուն բնակիչները երկու սուրի մէջ մնացած եւ մեծապէս վնասուած էին ֆիզիքապէս եւ տնտեսապէս:

Շաքէի շրջանին մէջ կային բազմաթիւ վասալ իշխանութիւններ կամ մելիքութիւններ:

ԺԸ. դարուն առաջին քառորդին, Քապալա կամ Ղապալա որ Աղուանից Կապաղակ կամ Կապաղական գաւառին կը համապատասխանէ, ունէր Ղուրթղաշէն գիւղին մէջ թուրք հարուստ մելիք մը, Մելիք Մուհամմէտ անուն, որ Շամախիի խանէն այս երկիրը առած էր կապալով եւ որովհետեւ չափազանց ագահ էր, մելիքութիւնը ձեռք բերելէ վերջ կը կեղեքէր բնակչութիւնը, որուն մէջ Հայերը աւելի շատ էին, վասնզի Ղարապաղէն շատեր հոն գաղթած էին (*Եսայի կաթ.* էջ 26): Այս մելիք Մուհամմէտին դէմ տեղացիք Իսպահան բողոքի գացած էին: Հոն էր նաեւ Բարսեղ անուն քահանայ մը, խաչէնցի եւ ազգական Ղարապաղի մելիքներուն, եւ գաղթած էր Սօկութլու գիւղը ժողովուրդին հետ: Գիւղին բնակիչները զայն ղրկած էին Իսպահան որպէսզի գիւղին Հայոց մելիքութիւնը ստանայ: Տ. Բարսեղ քհ. Շահէն հրամանը կ'ստանայ, բայց չկրնար պաշտօնը կիրարկել, վասնզի իր հակառակորդը կը կաշառէ Շամախիի բռնաւորը: Սակայն քիչ վերջը Շամախիի մեծամեծները կ'ըմբոստանան եւ խանը իշխանութենէ կը ձգեն եւ Մելիք Մուհամմէտը կը զրպարտեն ըսելով թէ շատ գանձեր հաւաքած է եւ կ'ուզէ ապստամբիլ:

Մելիքը եւ իր Ահմէտ եղբայրը ձերբակալուեցան, իրենց ինչքերը գրաւուեցան եւ իրենք տարուեցան Շամախի եւ բանտարկուեցան քանի մը ամիս, բայց վերջը կրկին իշխանութիւնը առին (*Եսայի կաթ.* էջ 27—28):

Շամախիի Հիւսէյին խանը քանի մը տարի վերջը, ձերբակալեց երկու եղբայրները եւ գլխատեց, Շահին հրամանով (*Նոյն.* էջ 28—29):

Մելիք Մուհամմէտի երեք որդիները, Փէյքար, Իպրահիմ եւ Ղասում եւս կողոպտուեցան եւ իրենց ինչքերը յարքունիս գրաւուեցան:

Ասոնցմէ Փէյքար գնաց Իսպահան եւ Շահին հրամանով յաջորդեց իր հօրը, եւ բնակեցաւ Ղուրթղաշէնի մէջ, սակայն Հիւսէյին անուն Շամախիի նոր խանը չորս տարի վերջ գլխատել տուաւ Փէյքարը եւ անոր բոլոր ինչքերը եւ ընտանիքը տարաւ Շամախի:

Որովհետեւ սպանուած մելիքներուն ցեղը Սիւննի մահմետական էր, Փէյքարի եղբայրները՝ Իպրահիմ եւ Ղասում փախան նոյնպէս Սիւննի Լեզգի Ալի Սուլթանին մօտ, Տաղիստան:

Միր-Մահմուտի Աֆղանական արշաւանքին (1720) հետեւանքով երբ Պարսկաստան կը խառնակի, 1721ին Լեզգիները առիթէն օգտուելով Դաւութ բէկի առաջնորդութեամբ եւ Օսմ. Սուլթանին թելադրութեամբ եւ հրահանգով եւ թերեւս Փէյքարի եղբայրներուն քաջալերութեամբ, կը յարձակին Շամախիին վրայ եւ զայն կը գրաւեն (1721 Օգոստոս) եւ կը կողոպտեն (Լէօ. Գ. 603—604):

Շիի մահմետականները կը ջարդուին, եւ Շամախիի Հիւսէյին խանը գերի կը բռնուի եւ քանի մը օրէն կը յանձնուի Իպրահիմ աղայի, Մելիք Փէյքար եղբօրը, որ զայն կ'սպաննէ իբր փոխ-վրէժ իր հօրը եւ եղբօրը սպաննութեան (*Եսայի կաթ.* էջ 31—34):

Լեզգիները նաեւ աւարի կուտան եւ կը կողոպտեն Շամախին եւ ապա կը դառնան Տաղիստան (*Եսայի կաթ.* էջ 30—31 եւ Մակար եպս. Բարխուտարեանց *Աղուանից երկիր եւ դրացիք*. 1893 Թիֆլիս էջ 289): Այս խառնակութիւններէն օգտուելով հաւանօրէն Շաքէ կը կազմէ առանձին խանութիւն մը, որուն պետն էր Քիզի խան, որ Լեզգիներուն քիչ մը ընդդիմացաւ, բայց սպաննուեցաւ (*Եսայի կաթ.* էջ 25):

1722ին անգամ մըն ալ Լեզգիները կ'արշաւեն Շամախի, Շաքէ, Արցախ եւ Գանձակ եւ կը կողոպտեն, կը ջարդեն եւ կ'այրեն շատ մը վայրեր եւ գերի կը տանին մեծ թիւով բնակիչներ (*Եսայի կաթ.* էջ 23—26 եւ 35—40, եւ *Աղուանից երկիր եւ դրացիք*. էջ 90):

Քանի մը տարի վերջը, Տաղիստանէն Ղուրթղաշէն կու գայ Հաճի Չէլէպի անուն մէկը, Լեզգիներու բազմութեան մը գլուխը անցած եւ կը գրաւէ Ղուրթղաշէնը, որ ինչպէս տեսնուեցաւ Շամախիի խաներուն հակառակորդ վասալ իշխանութեան մը կեդրոնն էր:

Հաճի Չէլէպիի ծագման մասին երկու կարծիքներ կան: Սարգիս եպս. Ջալալեանց եւ Րաֆֆի կը կարծեն թէ անիկա Ղաբալա (Կապաղակ) գաւառին Սօգիւթլու գիւղէն հայազգի մըն է, որդին վերոյիշեալ Տ. Բարսեղ քհ.ի, զոր թուրքերը Ղարա Քէշիշ (= Սեւ Քահանայ) կը կոչէին: Անիկա իբր թէ մելիք դառնալու ակնկալութեամբ մահմետականութեան յարած էր (Րաֆֆի, *Խամսայի Մելիքութիւնները*, էջ 72—73): Իսկ Մակար եպս. Բարխուտարեանցի համաձայն անիկա որդին էր Շամախիի Հիւսէյին խանէն սպաննուած Մելիքին՝ Մուհամմէտի Տաղիստան ապաստանած Իպրահիմ եւ Ղասում որդիներէն մէկուն (*Աղուանից երկիր եւ դրացիք*, էջ 290), ինչ որ շատ աւելի հաւանական է:

Հանի Ջալէպի, իր բերած Լեզգիներով տէր կը դառնայ ոչ միայն իր պապենական եւ հօրենական կալուածներուն, այլ շրջակայ վասալական իշխանութիւնները կը միացնէ եւ կը կազմէ բաւական ընդարձակ խանութիւն մը, գրեթէ անկախ պարսիկ պետութենէն։

Անիկա կը տիրէ նաեւ Շիրուանի խանութեան որ կը միացնէ իր խանութեան, որով կը կազմէ ընդարձակ գրեթէ անկախ պետութիւն մը, ինչ որ իր դրացիներուն նախանձը կը գրգռէ, կամ երկիւղ կը պատճառէ, ուստի 1752ին իրեն դէմ կը միանան Շուշիի՝ Փանահ, Ղարասաղի՝ Քազըմ, Նախիջեւանի՝ Հայտար եւ Գանձակի՝ Շահվերտի խաները եւ Վրաստանի Թէյմուրազ եւ Հերակլ թագաւորները (Լէօ. Գ. էջ 767)։

Այս վերջինը՝ թերեւս մահմետականութիւնը ընկճելու յարմար առիթ մը գտած ըլլալ կարծելով փոխանակ իր դաշնակիցներուն հետ պատերազմի երթալու, դաւաճանութեամբ զանոնք կը ձերբակալէ։

Այդ միջոցին Հանի Ջէլէպի խանը կը գտնուէր Մինկեաշովր գիւղը (Կուրի վրայ), ուր հաւաքած էր իր բանակը եւ պատերազմի կ'սպասէր։ Ծերունի մը իրեն լուր կուտայ չորս պարսիկ խաներուն ձերբակալութիւնը։ Հանի Ջէլէպի իր թշնամիներուն արգելափակումը յաջողութիւն մը եւ բախտ մը համարելու տեղ, թերեւս իսլամական մոլեռանդութեամբ, կը յարձակի Վրաստանի վրայ, խաները փրկելու համար։ Գանձակի մօտ երկու բանակները կը ճակատին եւ Վրացիք չարաչար կը պարտուին եւ կը փախին։ Իսլամ խաները կ'ազատին, իսկ Հանի Ջէլէպի, կը հետապնդէ Վրացիները մինչեւ Վրաստանի խորերը՝ Թիֆլիսի մօտերը։ Վրացիք որոնց զինուորական ոյժը խորտակուած էր հաշտութիւն կը խնդրեն եւ Հանի Ջէլէպի պայման կը դնէ որ Թէյմուրազ ու Հերակլ հրաժարին մահմետական հողերէն եւ գոհանան միայն վրացական հողերով եւ չխառնուին Ատրպէճանի գործերուն (Լէօ. Գ. էջ 767)։

Անմիջապէս յետոյ Հանի Ջէլէպին կ'սկսի իգործ դնել բռնութիւններ Լեզգիներու միջոցաւ։ Մարդասպանութիւն, աւարառութիւն, տանջանք, կախաղան եւ ամէն տեսակ չարիքներ կը գործադրուին ամբողջ խանութեան մէջ։ Անիկա կը գործադրէ նաեւ կրօնական հալածանք եւ բռնի կը մահմետականացնէ բազմաթիւ Հայ շէն ու բարգաւաճ գիւղեր (1) ինչպէս էին Վանտամ, Նուրբղաշէն, Ջարտուն, Բում, Խաչմազ, Փատառ, Վարտանլու, Էրմանիա, Մուխանց, Օրաբան, Քանքիւտ, Պէզ, Ջայզիտ, Քիշ (Գիս), Կոխմուխ, Մարզ եւայլն, որոնց Հայ տեղանունները եւ բնակչութեան Հայկական սովորութիւնները եւ մականունները (2) ցոյց կուտան անոնց Հայ ծագումը։ Այս հալածանքները տեւած են 1751էն 1783, Հանի Ջէլէպիի իշխանութեան շրջանին։

1760—1770ին Հանի Ջէլէպի խանը օգնեց Կիւլիստանի Մելիք Եուսուֆին եւ Ջրաբերդի Մելիք Ադամին, որոնք կը պատերազմէին Վրաստանի Թէյմուրազ թագաւորին դէմ որ դրժած էր Հայ մելիքներուն տուած իր խոստումը (Րաֆֆի, էջ 72—73)։ Սղնախներու շրջանին Շուշիի ստուարաթիւ Հայութիւնը պաշտպանուած է Հայ զինուորութեան կողմէ իսլամներու յարձակման դէմ (Լէօ. Գ. 609)։

Հանի Ջէլէպիի յաջորդած պէտք է ըլլայ Սէլիմ խան, որ Շուշիի Իպրահիմ խանին (1763—1806) հակառակորդ էր։

Ասոր համար սիրով ընդունեց Մելիք Ռուստամը եւ անոր բնակութեան տեղ տուաւ Դաշ—Պուլաղ անուն գիւղը։

Մելիք Ռուստամ, հոն հաստատուելէն վերջ յարձակումներ գործեց Շուշիի բերդին վրայ եւ շատ վնաս տուաւ Իպրահիմ խանին. (Րաֆֆի, *Խամսայի Մելիքութիւնները*, էջ 134)։

Իպրահիմ խան ըստ թրքական աղբիւրներու, ատեն մը նուաճած է Շաքէն, որ շուտով Ղաճարները ետ կորզած են։ 1796ին—1826ին ռուս-պարսկական պատերազմներուն թատերավայր եղած են այս կողմերը, մինչեւ որ վերջնապէս ռուսերը տիրած են երկիրին։

1805ին արդէն անգամ մը ռուսերը գրաւած էին Շաքէն (*Պատմ. Աղուանից*, Բ. հտ. էջ 129)։

1816ին տակաւին Շաքէի խանն էր Սէլիմ խան որմէ հաւատարմութեան ուխտագիր առած էր իշխան Մատաքով (*Պատմ. Աղուանից*, Բ. հտ. էջ 147)։

Հայերը հակառակ անոր որ Նուխիի եւ շրջակայից մէջ տնտեսական բարգաւաճ վիճակ ունէին, եւ ժամանակին ամէնէն շահաբեր գործերէն մէկը՝ շերամաբուծութիւնը զարգացած էր իրենց մէջ (3), ԺԸ. դարուն վերջը, երկրին խռով վիճակէն զզուած գաղթել սկսան եւ իրենց թիւը շատ պակսեցաւ, այնպէս որ մեր օրերուն շատ քիչ էր։

## Բ.

## ՀԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Հայաստանի մէջ Հայ անկախ իշխանութեան հետք չէր մնացած երբ Թուրքերը, Կ. Պոլսոյ գրաւումէն (1454) վերջ, աննուաճ զօրութիւն մը ցոյց տալ սկսան։ Ջահան Շահ (1437—1467) իր պետութեան համար վտանգ մը տեսնելով ասոր մէջ, աշխատեցաւ զօրացնել իր տէրութիւնը ներքուստ։

Ծայրագաւառ Հայաստանի մէջ այս նպատակով կազմակերպեց տեղական ոյժերը, որոնք մանաւանդ Այրարատի, Սիւնիքի եւ Արցախի մէջ բոլորովին քայքայուած էին Սելջուկեան եւ Մոնկոլեան շրջաններուն, եւ այսպէս սիրաշահիլ փորձեց Հայերը։

Ասոր համար նախընտրաբար «տանուտէր»ներու

(1) *Ասոնց ցուցակը իրենց տուներուն թիւով* (տես. Աղուանից երկիր եւ դրացիք էջ 290—291)։

(2) *Տես. նոյն*, էջ 292։

(3) *Գաղափար մը տալու համար, կը բաւէ յիշել թէ այս խանութեան կը պատկանէին երեք գիւղեր, Վարդաշէն, Նիժ եւ Ճալէթ, որոնք զարգացած շերամապահութիւն ունէին և ամէն մէկ գիւղ իբրեւ հարկ կուտար 60 պաթման մետաքս։*

եւ հին տոհմական ազնուականներու,— որոնց ծագումը կը հասնէր Հայոց պատմութեան այն շրջանին, ուր Զաքարեանք Հայաստանի հիւսիսային նահանգներուն մէջ Հայ իշխանութիւններ կազմած էին— տուաւ *Մելիքի* իշխանութիւն եւ զանոնք պարտաւորեց 1,000էն 2,000 զինուոր պահելու, համեմատ իրենց կարողութեան կամ իրենց հպատակներու թիւին:

Ի փոխարէն այս առանձնաշնորհին Ջահան Շահ բարձրացուց արքունի հարկերը (*Պատմ. Աղուանից*, էջ 213):

ԺԷ. դարուն սկիզբները Սեֆիները, շարունակեցին այս քաղաքականութիւնը, որով կարգ մը Հայ իշխանական տուներ, որոնք իրենց անկախութիւնը կորսնցուցած էին, աւելի սահմանափակ իրաւունքներով վերակազմուեցան, ԺԶ. դարէն սկսեալ, Պարսից Շահին գերիշխանութեան տակ եւ անոր հարկատու եղան:

Մասնաւորապէս Շահ Աբաս, *«Պարսից այդ աշխարհաշէն թագաւորը՝ որի քաղաքական հայեացքները օտարազգիների վերաբերմամբ բոլորովին տարբեր էին իւր նախորդներից, աւելի բարւօք էր համարում իւր հպատակ այլասեռ ժողովուրդներին կառավարել հէնց իրենց ներկայացուցիչների ձեռքով եւ դրանով ամրացնել ամբողջ պետութեան մէջ համերաշխութեան կապերը: Նա առաջինը եղաւ, որ հաստատեց Հայոց իշխանների «մելիք» տիտղոսը, որ կրում էին աւելի հին ժամանակներից: Դրանով Շահ Աբասը կամեցաւ վարձատրել այն մեծ ծառայութիւնները, որ Հայոց մելիքները կատարեցին իւր օսմանցիների դէմ ունեցած յաղթութիւնների մէջ»: (Րաֆֆի, Խամսայի Մելիքութիւնները*, 1906 Վիեննա, էջ 2):

Այսպէս, պարսկական Հայաստանի մէջ ԺԶ. եւ ԺԷ. դարերուն յիշատակուիլ սկսան բազմաթիւ մելիքներ:

Այլեւս «նախարար» եւ «իշխան» բառերը չէին գործածուիր:

Տիրող բացատրութիւնը «*Մելիք*»ն էր, որ զանազան տեսակի իմաստներ ունէր, գրեթէ հիմնովին անհամապատասխան բառին նախնական իմաստին, որ *թագաւոր* կը նշանակէր:

Մելիք էին գիւղապետները եւ քաղաքներու Հայ թաղերու վերակացուները (1), որոնք ժամանակաւոր կերպով պաշտօնի կը կոչուէին գիւղական համայնքէն եւ նահանգապետ *խանէն* կը հաստատուէին, եւ իրենց պաշտօնավարութեան շրջանին երբեմն հարկէ ազատ կը մնային: Ասկէ զատ ոչ մէկ իրաւունք ունէին (Լէօ. *Հայոց Պատմութիւն* Գ. էջ 147): Քաղաքները ունէին իբր Հայ համայնքին եւ թաղերու վերակացուներու պէս *Քալանթարը*, որ կարելի է արտօնուած ազնուական մը համարել:

Ասոնցմէ աւելի բարձր էին այն Մելիքները, որոնք պարսիկ խաները կը նշանակէին իւրաքանչիւր հայաբնակ գաւառի համար: Ասոնք պաշտօնատարներ էին, առանց ազնուականութեան կամ ժառանգութեան իրաւունքի, այլ խանը ով որ ուզէր կը նշանակէր (2): Ասոնք խանին արբանեակ մարդիկ էին, որոնք յաճախ կը կեղեքէին ժողովուրդը (3):

Այս պաշտօնը ձեռք կրնար բերել ոեւէ մէկը, նոյնիսկ եկեղեցական մը, կը բաւէ որ խանը հաճէր (4): Անոնք ալ ճիշդ գիւղական եւ քաղաքին մելիքներուն պէս, միայն իրենց պաշտօնին վրայ գըտնուած ատենն էր որ առանձնաշնորհներ կը վայելէին եւ իշխանութիւն կը վարէին:

Իսկ բոլորովին տարբեր էին անոնք որոնք ԺԶ. եւ ԺԷ. դարուն հաստատուեցան Ջահան Շահի եւ Շահ Աբասի կողմէ, իբր ժառանգական տոհմապետութիւններ, ազատ իրենց ներքին գործերու տնօրինութեան մէջ եւ տէր իրենց երկիրներուն, հարկատու մնալով Շահին:

Մելիքին իշխանութիւնը, թէեւ ժառանգական էր բայց առանց ժողովուրդին համաձայնութեան չէր կրնար պաշտօնավարել: Հանրագրութեամբ մը ժողովուրդը խնդրամատոյց կ'ըլլար Երեւանի պէյլէրպէյին միջոցով Շահին, որ ինքը չէր հաստատեր Մելիքը, այլ կը յանձնարարէր Երեւանի սարտարին որ ինքը հաստատէ, որպէսզի նուիրապետական կարգը պահպանուի:

Մելիքութեան մը սահմաններուն մէջ գտնուող բոլոր հողերը Մելիքին սեփականութիւն չէին, այլ կային նաեւ արքունական հողեր: Մելիքները, ունենալով հանդերձ իրենց ժառանգական կալուածները, կարող էին գնելու անհատական կալուածներ, իրենց դրամով:

Շահերը մասնաւոր ծառայութիւններու համա՛ր Մելիքներուն կը նուիրէին գիւղեր, սակայն այս գիւղերն իբրեւ սեփականութիւն անոնց չէին պատկանիր այլ անոնց արքունական հարկերը միայն Մելիքին կը ձգուէր: Մելիքին կը յաջորդէր սովորաբար իր երէց որդին որ հօրը կենդանութեան ժամանակ կը կոչուէր «Մելիքզադէ»: Բայց առանց *ֆերմանի*— որ զմահ կառավարելու համար կը տրուէր— չէր կրնար յաջորդել իր հօրը: Անորդի Մելիքներուն կը յաջորդէին եղբայրները: Եւ ժողովուրդը հաւատարիմ իր հին աւանդութիւններուն, թոյլ չէր տար որ խանգարուին մելիքական իշխանութեան կարգերը:

Մելիքը ըստ Շահին *ֆերմանին*, ինքնագլուխ եւ միահեծան տէր էր եւ տիրապետող եւ ոչ ոք իրաւունք ունէր անոր գործերուն միջամտելու: Ամէն ոք պէտք էր հնազանդէր Մելիքին, կատարէր անոր հրամանները, որովհետեւ Մելիքը բարձրագոյն իշխանութեան կողմէ նշանակուած իշխանաւոր էր: Իր կամքը եւ սովորութիւնները օրէնքի տեղ անցած էին: Ան անսահման հեղինակութիւն ունէր իր հպատակներուն

(1) *Երեւանի մէջ կար հին թաղ եւ հին Մելիք Լէօ.* Հայոց Պատմութիւն, Գ. էջ 148):

(2) *Կը յիշուի թէ Քանաքեռ գիւղացի Դաւիթ, Մելիք նշանակուած էր Կոտայքի եւ Անբերդի:*

(3) *Կը յիշուի Գեղարքունիքի Մելիք Փարսադանը* «որ էր կարի ագահ եւ յափշտակող, հպարտ եւ գոռոզ» (Զաքարիա Վաղարշապատցի, Ա. էջ 82):

(4) *Յիշուած է Նիգ գաւառի քահանայ Մելիք մը Տէր Յովասափ անունով որ վատ դեր կատարած է զինքն յանդիմանող Սաղմոսավանքի Յովհաննէս եպիսկոպոսը զրպարտելով Երեւանի Սէրտարին առջեւ* (Զաքարիա, Բ. էջ 42):

վրայ՝ զօրս կը դնէր, տուգանքի եւ բանտի կը դատապարտէր, նոյնիսկ մահուամբ կը պատժէր:

Մելիքը պարտաւոր էր արդարադատ ըլլալ, հոգ տանիլ իր երկրին բարօրութեան, որպէսզի բնակիչները ապրելով խաղաղութեան եւ անդորրութեան մէջ օրհնէին պարսիկ բարձրագոյն իշխանութիւնը: Մելիքը կը հաւաքէր արքունական հարկը եւ կը ղրկէր կեդրոնական կառավարութեան: Այս հարկը կը կոչուէր *շահիլուղ*: Ժողովուրդը կը վճարէր նաեւ Մելիքին առանձին հարկ մը, որ կը կոչուէր *«մելիքեանա»* եւ տեսակ մը գլխահարկ էր: Անկէ զատ, Մելիքը կ'ստանար բոլոր բերքերուն վրայ՝ տասանորդ:

Մելիքը պատերազմական գործերու մէջ կամ առհասարակ երկրին կառավարութեան մէջ մասնաւոր կերպով կարեւոր դեր կատարող մարդերը կը վարձատրէր անոնց տալով *իւզպաշիի* (հարիւրապետ) աստիճան:

Այս Մելիքութիւնները բարերար դեր մը կը կատարէին կերպով մը մեղմելով պարսիկ լուծին դաժանութիւնը, եւ հանդիսանալով ինքնավարութիւններ, որոնք կրնային օր մը անկախութեան կորիզ հանդիսանալ:

Բայց բնականոն կեանք չունէր Պարսկաստան եւ ներքին խռովութիւններ կը վրդովէին երկիրը: Մասնաւորապէս, ԺԸ. դարուն սկիզբները Պարսկաստանի մէջ պատահեցան նշանաւոր փոփոխութիւններ, որոնք այս հնօրեայ Մելիքներու կեանքին վրայ իրենց ազդեցութիւնը ունեցան:

Հիւսէյին Շահի (1694—1722), տկար իշխանութիւնը պատճառ եղաւ որ Պարսկաստանի թշնամիները ամէն կողմէ իր վրայ յարձակին:

Աֆղանները ապստամբեցան եւ Ղանտահարի Միր Մահմուտ խանը արշաւեց Սպահան եւ Շահը գահընկէց ընելով, ինք Շահ եղաւ (1722), մինչ կովկասեան լեռնականներ, Տաղիստանի Ալի Սոլթանի եւ Սուրխէյխանի առաջնորդութեամբ, աւերեցին Վրաստանը եւ հիւսիսային Պարսկաստանը, Սեւանայ լիճէն մինչեւ Երասխ գետը (1721—23): Նոյն ատեն (1722—23) Մեծն Պետրոս կը տիրէր Կասպից ծովու եզերքներուն, Տէրպէնտի, Պագուի, Գիլանի, Մազանդարանի եւ Աստրապատի: Նոյնպէս Օսմանցիները տեսնելով որ ռուսերը իրենց սահմաններուն կը մօտենան, կը գրաւեն սահմանակից պարսկական երկու նահանգները, եւ երկու տարուան (1722—1723) մէջ կը տիրեն ամբողջ Ատրպատականի, Նախիջեւանի, Երեւանի, Թիֆլիսի, Գանձակի եւ կը մօտենան Ղարապաղի մելիքական հողերուն:

Տեսնելով որ քայքայուած Պարսկաստանը բաժան բաժան կը դառնայ, Հայ մելիքները խորհեցան թօթափել պարսիկ լուծը եւ Հայ անկախ իշխանութիւն մը հիմնել, Ռուս կայսրերու օգնութեամբ:

Ասոր համար ձեռնարկներ ըրին, ինչպէս ծանօթ է, Գանձասարի վանքին մէջ Աղուանից Եսայի Կաթողիկոսին նախագահութեամբ գաղտնի ժողովներ գումարելով, որպէսզի վրաց գործակցութեամբ մահմետականներէն ձերբազատուին, բայց յուսախաբ եղան: Նատիր Շահ (1736—1746), նկուն Պարսկաստանը վերականգնեց եւ գրեթէ Պարսկաստանէն գրաւուած հողերը վերագրաւելէ զատ, ընդարձակ հողեր կցեց Պարսկաստանի:

Այս Շահը, որուն անձնական բարեկամութիւնը շահած էր Աբրահամ Կրետացի Կաթողիկոս, կովկասեան երկիրները վերագրաւելէն վերջ, իր եղբայրը վերակացու եւ Սէրտար (Սպարապետ) նշանակեց Ատրպատականի եւ իբր *«իշխող եւ հրամանատու, եւ մեծ իվերայ այլոց խաներաց»* (*Աբրահամ Կրետացի*, էջ 57) անոր յանձնեց նաեւ իբր *պէկլէրպէկի* (իշխանաց իշխան) Նախիջեւանը, Երեւանը, Այրարատեան նահանգը եւ Վրաստանը: Ասոնցմէ Երեւանի խանութիւնը շատ ընդարձակ էր, ինչպէս տեսնուեցաւ (տես. վերը, էջ 376), գրաւելով Վրաստանէն մինչեւ Արաքս տարածուող հողերը, մէջը ունենալով Խամսայի Մելիքութիւնները, որոնց վերատեսչութիւնը նոյնիսկ Շահ Աբասի օրերէն Երեւանի խաները կը կատարէին, երբ Երեւան պարսից ձեռքը կը գտնուէր, իսկ երբ Օսմանցիք տիրէին, Նախիջեւանի խանին կ'ստորադասուէին:

Երեւանի խաներուն ենթարկուած գաւառներուն մէջ, կային աւելի կամ նուազ հին եւ քիչ շատ տեւականութեամբ Հայ մելիքութիւններ, որոնցմէ ոմանց պետերը գաւառական մելիքներու այն դասին կը պատկանէին որոնք իբր պաշտօնատար կ'անուանուէին եւ Շահ Աբասէն հաստատուած մելիքներու չափ լայն առանձնաշնորհներ չունէին եւ ոչ ալ ժառանգական էին:

Նատիր Շահի գահակալութեան հանդէսին, Աբրահամ Կրետացի կը յիշատակէ թէ ներկայ եղած են իրեն հետ *«Քալանթար Մելիքջանն եւ Մելիք Յակոբջանն եւ այլազգաց Քալանթարն Ալի-Ղուլին եւ այլ Քատխուտէք Հայոց եւ Մելիքներն. զի յԵրեւան Թ. (9) մհալ (1) գոլով՝ Թ. Մելիք կան. այժմ Թէպէտ հնազանդ են Քալանթարին, եւ դողան առջեւն իբրեւ զնոքար (2), բայց Երեւանայ Մէլիքներացն՝ որք են այսոքիկ. նախ Մելիք Յակոբջանն եւ Մելիք Մկրտումն. Կարբու* (3), *եւ Ղրխպուլախու (4), Շոռկալու (5), Իկտիրու (6), Գառնու (7),*

(1) Մհալ=Մահալ=Մահալէ, *կողմ, շրջանակ, տեղի, թաղ։*

(2) Նօքար Նիւքէր, *ծառայ, պաշտօնեայ։*

(3) *Կարբի, կը գտնուէր Արագածոտն գաւառին Աշտարակի վիճակին մէջ, Յովհաննավանքէն կէս-մղոն հեռու և Երեւանէն վեց ժամ հիւսիս-արեւմտեան կողմը։ Հաւանօրէն 1670ին երբ պարսիկները գրաւեցին վերստին Երեւանը, հոն դրին Մելիք մը* (Բնաշխարհիկ Բառարան, *էջ* 294—5, *Ալիշան*, Այրարատ, *էջ* 177—180),

(4) *Հիներու Կոտայք, Երեւանի մօտ։*

(5) *Հաւանօրէն Շորակեալ պիտի ըլլայ Ղազախ-Բորչալուի մէջ։*

(6) *Իկտիր, Այրարատի Ճակատք գաւառին մէջ, Սուրմառիի մէջ, Պայազիտէն* 10 *ժամ հիւսիս։*

(7) Գառնի *կամ* Գեղամի, *կը գտնուէր Այրարատի Մազազ գաւառին մէջ, Երեւանի հարաւ-արեւմտեան կողմը* 4—5 *ժամ հեռու, Ազատ կամ Գառնի գետին եզերքը։ Եղիշէ զայն կը յիշէ «անմատոյց ամուրն Գառնի» ընելով։*

*Ծաղկնաձորու (1), Գեղարքունոյ* (2), *Ապարանու (*3), *եւ Շիրակւանու* (4), *եւայլ...» (Աբրահամ Կրետացի, էջ* 61—62)։

Ասկէ որոշ կ'երեւայ թէ Երեւանի 9 քաղաքին Մելիքներէն զատ Երեւանի նահանգին մէջ կային նաեւ մելիքութիւններ, որոնց ամբողջութիւնը չէ որ կը յիշատակէ Աբր. Կրետացի, այլ անոնք միայն որոնք իրեն հետ գտնուած են Մուղան, Նատիր Շահի գահակալութեան ատեն։

Նատիր, որ հեռատես վերանորոգիչ մը եւ մեծ վեհապետ մըն էր, ապահովաբար նկատի ունենալով անոնց մատուցած ծառայութիւնները կամ նախատեսելով որ անոնց օտար պետութեան մը — որպէս էր Ռուսաստանը — յարումը ինչ աղէտալի դեր կրնար կատարել, զանոնք սիրաշահիլ փորձեց, անոնցմէ ոմանց հեղինակութիւնը աւելի զօրացնելով եւ անոնց իրաւունքները աւելի ընդարձակելով։

Այսպէս, Նատիր Գեղարքունիքի Թօփուզ Մելիքջան Մելիք Շահնազարեանը, որ օգնած էր իրեն Հայ զօրքով, Կարբիի մէջ, Քէօփրիւլիւ Թօփալ Ահմէտ փաշայի դէմ մղած պատերազմին, ոչ միայն վերահաստատեց իր ժառանգական իրաւունքներուն մէջ, այլ նշանակեց Երեւանի խանէն անկախ վարիչ, անոր ստորադրելով մահմետական կարգ մը իշխողներ։ Նատիր զայն կ'անուանէր *պապա*։ Անոր որդին էր Մանուչար, որ Այրարատեան երկրին եւ Սիւնեաց աշխարհին մէկ մասին տիրեց դարձեալ Նատիրի հրամանով (տես. վերը, էջ 379)։

Նման առանձնաշնորհներ Նատիր Շահ տուաւ նաեւ ուրիշ Հայ մելիքութիւններու, զանոնք ուղղակի իր անձին կապելով, եւ պարսիկ խաներու ստորադասութենէն ձերբազատելով զանոնք։

Դժբախտաբար, անկախութեան այս վերջին պլպլացող կանթեղները, որոնք կը յիշեցնէին հայկական կէս-անկախ ժառանգական իշխանութիւնները, չունին իրենց ամբողջական պատմութիւնը։

Ինչ ինչ երեւոյթներէ կը մակաբերուի թէ Ջահան Շահի (1437—1467) կազմած մելիքութիւնները ընդարձակ եւ ամբողջական գաւառներ կ'ընդգրկէին, սակայն յաջորդ դարերուն հաւանօրէն անոնք կոտորակուած էին մասերու բաժնուելով (5), նոյնպէս նկատելի երեւոյթ է որ շատ վաղանձուկ կեանք ունեցած են այն մելիքութիւնները զորս պարսիկները հաստատած էին Օսմանցիներէ գրաւուած հողերուն վրայ, վասնզի յաճախ շուտով թուրքերը վերագրաւած են այդ հողերը։

* * *

Այս ընդհանուր ծանօթութիւններուն իբր լրացուցիչ եւ ոչ թէ իբր մելիքութիւններու պատմութիւն հոս կուտամ ծանօթ մելիքութիւններու աշխարհագրական դիրքին եւ իրենց տիրող տոհմերուն վրայ համառօտ ծանօթութիւններ, զանոնք չորս խմբաւորումներու բաժնելով։

## Ա. ԽԱՄՍԱՅԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐ

Հայ Մելիքութիւններէն մասնաւոր խումբ մը, թիւով հինգ, եւ հաստատուած վերջին երեք դարերուն Ղարապաղ ընդհանուր անունով ճանչուած նահանգին մէջ, ամէնէն նշանաւորներն եղան։

Այս հինգ մելիքութիւնները կը կազմէին միութիւն մը եւ կը կոչուէին *Խամսայի (6) մելիքութիւններ*։ Վրացիք զանոնք կը կոչէին սովորաբար *Սղնախի մելիքներ*։

Խամսա անունը անոնց անծանօթ էր (Ն. Ադոնց, *Րաֆֆի*, 1937. Փարիզ, էջ 126)։

Այս հինգ մելիքութիւնները կատարեցին շատ նշանակելի դեր եւ եթէ հեռաւոր երկիրներու վրայ յոյս չդնելով մերձաւոր դրացիի հետ իրաւախոհ ըլլալու խոհեմութիւնը ունենային թերեւս տարբեր ճակատագիր մը պիտի սպասէր իրենց։

Այս բացառիկ կարեւորութիւնը որ անոնք ստացան, կը պարտին իրենց աշխարհագրական դիրքին։

Ղարապաղի նշանակութիւնը՝ իբր միջնաբերդ եւ իբր հայկական բարձրաւանդակին պաշտպանութեան կայան, շատ գեղեցիկ կերպով բացատրած է Լէօ. (*Պատմ. Հայոց*, Գ. էջ 492—496), որ Շուշեցի էր եւ կը ճանչնար երկիրը մօտէն։

Հայկական բարձրաւանդակի հիւսիս-արեւելեան մասը, որ հիւսիսէն սահման ունի Կուր գետի հովիտը եւ հարաւէն Արաքսի հովիտը, եւ որ հիւսիսէն հարաւ եւ արեւմուտքէն արեւելք, լեցուն է լեռնային զանգուածներով, կը կոչուէր Ղարապաղ։ Լեռնակոյտերու այս մեծ աշխարհը իր արեւելեան կողմը ունի ընդարձակ տափաստան մը որ կը կոչուի Միլի կամ Ղարապաղի դաշտավայր, իսկ արեւմուտքի կողմը՝ այն ջրաբաշխ սարերը որոնք Սեւանի լիճին արեւելեան կողմը կ'երկարին հիւսիսէն դէպի հարաւ,

(1) *Ծաղկնաձոր կը գտնուի Այրարատի Վարաժնունեաց գաւառին մէջ, Սեւանայ լիճին արեւմտեան ծայրը։ Վերջը կոչուած է Դարաչիչակ.*

(2) *Գեղարքունի, Այրարատեան նահանգի սահմանակից Սիւնեաց նահանգին մաս կը կազմէր։ ԺԶ. դարէն կը յիշուին իր Հայ մելիքները Երեւանի խանին ստորադաս.*

(3) *Կոչուած նաեւ Պաշ Ապարան, Էջմիածին գաւառին մէջ, կը համապատասխանէ Նիգի։ Կեդրոնն էր Քասաղ։*

(4) *Հաւանօրէն Շիրակւան. Բագրատունեաց երբեմնի ոստանը։*

(5) *Օրինակի համար, հին ատեն մի եւ անբաժան միութիւն մը կազմող* Մեծ կողմանք, Մեծ կուանք *և* Ջարաբերդ, *որ երբեմն իշխանական տան մը բնակավայրը եղած էր (տես. վերը, էջ* 349) *Ջահան Շահէն վերջ երկու մելիքութեանց բաժնուած է Ա.* Ջրաբերդ *և Բ.* Թալիշ *կամ* Կիւլիստան (*կամ* Եկիրմիդէօրդ), *որոնք յետոյ միանալով* Ջիւանշիր *գաւառը կազմած են։ Նոյնպէս, Դիզակ, որ երբեմն Աղուանից թագաւորութեան մաս կը կազմէր և վաղեմի իշխանութեան մը կայանը եղած էր (տես. վերը, էջ* 177) *և որ շարունակուած էր մինչեւ* 1271, *Մոնկոլ տիրապետութիւն (տես. վերը, էջ* 349), *ԺԵ. դարուն կիսուն իր մէջ կը պարունակէր Դիզակ եւ Վարանդա գաւառները։ ԺԶ. դարուն Վարանդա ունեցած է իր առանձին Մելիքը, որով երկուքի բաժնուած է։*

(6) Խամսա *կը նշանակէ* հինգ *արաբերէն։*

միանալով Դարալագեազի լեռներուն: Հարաւի մէջ այս լեռներէն կը բաժնուի եւ դէպի արեւելք կ'երկարի Բարգուշատի շղթան, որ Ղարապաղի հարաւ-արեւմտեան եւ հարաւային սահմանագիծը կը կազմէ, բաժնելով զայն Նախիջեւանի գաւառէն:

Այսպէս, այս սահմաններուն մէջ պարփակուած Ղարապաղը կը համապատասխանէր հին Հայաստանի նահանգներէն Ուտիքի մէկ մասին, Արցախի ամբողջութեան եւ Սիւնեաց մեծագոյն մասին (Լէօ. *Պատմ. Հայոց*, Գ. էջ 492):

Լէօ կ'ըսէ թէ զանազան ժամանակներ այս ընդարձակ երկիրին զանազան մասերը այնքան զօրացած են, որ իրենց սեփական անուններով յայտնի դարձած են պատմութեան մէջ, մոռցնել տալով նոյնիսկ ընդհանուր նահանգական անունները: Այսպէս, ժամանակ մը Խաչէն գաւառը շատ անուանի եւ հանրածանօթ էր, ԺԷ. դարուն Ղարապաղի մէկ մեծ մասը կը կոչուէր Մեծ եւ Փոքր Ղափան, իսկ ԺԸ. դարուն անոր մէկ ուրիշ ընդարձակ մասը կը կոչուէր Խամսայի կամ Խամսու երկիր: (Լէօ. Գ. 492):

Ղարապաղ կը կազմէ աշխարհագրական միութիւն մը որ ամբողջական կերպարանք կուտայ նաեւ այդ երկրին կեանքին: Այնպէս որ Ղարապաղ, հակառակ անոր որ բաժնուած էր կարգ մը մանր տեղական տարբերութիւններով խիստ որոշ լեռնագաւառներու, սակայն ընդհանուր առումով, կը ներկայացնէր շատ բնորոշ ընդգծուած ամբողջութիւն մը, տնտեսական, ազգագրական եւ լեզուական տեսակէտէն:

Ղարապաղը հիւսիս-արեւելքէն եւ արեւելքէն զինք շրջապատող Կուր-Արաքսեան եւ մերձ-կասպեան անհուն տափաստաններուն դէմ կը կանգնի իբրեւ հսկայ միջնաբերդ մը, կարծես նախասահմանուած՝ պաշտպանելու հայկական բարձրաւանդակը այս տափաստաններէն արշաւողներուն դէմ։ Այս հսկայ բերդին լիակատար նշանակութիւնը ըմբռնելու համար պէտք է նկատի ունենալ, որ ան կը փակէ այն մեծ ուղին ուրկէ Միջին Ասիական ցեղեր, Կասպից ծովի հիւսիսային եւ հարաւային ափերէն գաղթաշարժ ընելով, եկան Կուր-Արաքսեան արգաւանդ դաշտերը:

Պատմութիւնը շատ մը փաստեր կը հայթայթէ ցոյց տուող թէ այդ արշաւող ազգերու անհուն յորձանքները եկած ընդհարուած են Ղարապաղի լեռնաստանին, եւ փշրուած՝ ետ դարձած են:

Միայն մի քանի գետահովիտներ որոնք անցք կը բանան լեռնաստանէն դէպի տափաստանները, թոյլ տուած են, նեղքելու Ղարապաղի պաշտպանողական գիծը, բայց Հայերը մինչեւ վերջը պահպանած են այդ գիծին ամբողջ երկարութիւնը, գրաւուած պահելով այն լեռնային բարձրութիւնները, որոնք առաջապահ պահակներն էին Ղարապաղի սահմաններուն: Այսպէս, առանց Ղարապաղի լեռնաստանին պահպանութեան, անհնար էր Հայաստանի սիրտին՝ Այրարատեան երկիրին պաշտպանութիւնը, վասնզի Ղարապաղ, անմիջական շարունակութիւնն է այն հզօր պաշտպանողական պատուարին, որ կը ներկայացնէր Գուգարքը (Լոռին եւ յարակից գաւառները)։

Երբ Այրարատեան երկիրը յարձակման կ'ենթարկուէր արեւմուտքէն եւ հարաւէն, իր բնակիչները կ'ապաստանէին, Ղարապաղի լեռնային վայրերը, լքելով իրենց գիւղերը: Այնպէս որ, Ղարապաղ ոչ միայն իր սահմաններուն մօտիկ գտնուող տեղերուն այլեւ Հայաստանի նոյնիսկ հեռաւոր կողմերուն համար պահապան միջնաբերդի դեր կը կատարէր:

Անոր բնակչութիւնը տեղաւորուած էր գետերու մեծ հովիտներու եւ կիրճերուն մէջ, որոնք բնական կը սահմանագծէին կարծես վարչական բաժանումները: Իւրաքանչիւր գաւառ կը գրաւէր ինքնամփոփ եւ ուրիշ վայրերէ բաժնուած գետահովիտ մը:

Սկսելով հիւսիսային կողմէն, Գանձակի սահմաններէն, առաջինն հովիտն է Քեուրակ գետին հովիտը, որ ԿԻՒԼԻՍՏԱՆ կը կոչուէր: Յետոյ կուգայ Թարթառ գետի հովիտը, որ ՋՐԱԲԵՐԴ գաւառը կը կազմէ, Թարթառի հովիտին՝ հարաւէն կցուած է Խաչենագետի հովիտը, ուր է ԽԱՉԷՆ գաւառը, մինչեւ Կարկառ գետը, ուրտեղէն կ'սկսի ՎԱՐԱՆԴԱ գաւառը իր Քոնսալան-չայ գետով:

Այնուհետեւ Ղարաչայ գետէն կ'սկսի ԴԻԶԱԿ գաւառը, որ կ'երկարի մինչեւ Արաքսի հովիտը: Շարունակելով դիմել դէպի հարաւ, կը հասնինք Հագարա գետը, ուրտեղէն կ'սկսի իսկական ԶԱՆԳԵԶՈՒՐ գաւառը: Որոտնա գետի (Բազար-չայ) վերին եւ միջին հոսանքներու վրայ տարածուած է ՍԻՍԻԱՆ գաւառը, որմէ վերջ կուգան ՄԵՂՐԻի եւ ԱԳՈՒԼԻՍի գաւառները, որոնք մաս կը կազմեն Արաքսի հովիտին (Լէօ. *Հայոց Պատմ.* Գ. էջ 494): Ղարապաղի բնակիչները պատսպարուած իրենց անմատչելի լեռներուն եւ մթին անտառներուն մէջ, ոչ մէկ մահմետականի թոյլ չէին տուած բնակութիւն հաստատելու իրենց հողերուն վրայ, (Րաֆֆի: *Նոյն.* էջ 5—6) հակառակ անոր որ Թաթարական եւ Մոնկոլական արշաւանքներէն վերջ Ղարապաղը երեք կողմէն շրջապատուած էր Թաթար բնակչութեամբ (Լէօ. *Պատմ. Հայոց* Գ. էջ 495):

Ղարապաղ կերպով մը մեկուսացած եւ հաւանօրէն աննուաճ մնացած էր եւ կը կառավարուէր իր բնիկ տանուտէրներուն կողմէ (Րաֆֆի, *Նոյն.* էջ 5—6) առանց սակայն անոնց իշխանութիւնը ճանչցուած ըլլալու:

ԺԶ. դարուն վերջերը, շրջապատուած տեսնելով իրենց երկիրը Օսմանցի Թուրքերէ, մելիքները, եւ Էջմիածնի Կաթողիկոսը ու մի քանի եպիսկոպոսներ, դիմեցին Շահ Աբասին եւ առաջարկեցին Հայաստանի տիրելու եւ զիրենք ազատելու թրքական լուծէն: (Առաքել Դաւրիժեցի էջ 16)։

Շահ Աբաս այս թելադրութեան անսաց եւ վերստին սկսան թուրք եւ պարսիկ պատերազմները: Շահ Աբաս յաջողեցաւ գրաւել Սիւնիքը եւ իր հովանաւորութեան տակ առնել Հայ մելիքները, որոնց իշխանութիւնը պաշտօնապէս ճանչցուեցաւ իրմէ:

Այսպէս, Ղարապաղի Մելիքները, իբր կիսանկախ եւ ինքնավար Հայ իշխանութիւններ, իրենց սեփական կեանքը ապրեցան, իբր վասալներ կամ նորտեր, նոյնպէս Շահ Աբասի կողմէն հաստատուած Երեւանի մեծ խանութեան (տես. վերը, էջ 376—7):

Նատիր Շահ, անոնց պետերուն ուղղամիտ ծառայութեան ի վարձատրութիւն ոչ միայն հաստատեց անոնց ժառանգական իրաւունքները, այլ նաեւ այս մելիքները ուղղակի կապեց Շահին Դրան, իրենց հողերուն մէջ տալով անոնց կատարեալ ինքնավարու-

թիւն, տարեկան որոշեալ տուրքի մը հատուցումով (Րաֆֆի, *Նոյն.* էջ 41 եւ Լէօ. *Պատմ. Հայոց*, Գ. էջ 746):

Դժբախտաբար այս առաւելութիւնները Հայերը չկրցան գնահատել, եւ փոխանակ իրենց անմիջական դրացիները ոիրաշահելով աւելի ընդարձակելու իրենց իշխանական իրաւասութիւնները, միշտ իրենց աչքերը ուղղեցին հեռաւոր հիւսիսի քրիստոնեայ պետութեան, որուն գործիք ծառայեցին, յայտնապէս զըրգըռելով Պարսիկները, անսալով քանի մը բախտախնդիրներու կամ բարեմիտ երազատեսներու, որպիսիք էին, Իսրայէլ Օրի, Մինաս վրդ. Տիգրանեան, Յովսէփ Արքեպս. Արղութեանց եւայլն:

Ասոնց անխոհեմ եւ բոլորովին երազային եւ գրգռիչ արարքները, պատճառ եղան որ իսպառ չընջուի ինչ որ Պարսիկներէն ստացուած էր իբր իրաւունք, եւ որ կրնար ամրապնդուիլ եւ ընդարձակուիլ թերեւս, փոխադարձ հասկցողութեամբ:

Արդարեւ, Աղա Մեհմէտ խան Շահը երբ Կովկաս կ'արշաւէր, Հայերը արգիլելու համար գործիք ծառայելէ ռուսերուն, խոստացաւ Խամսայի Մելիքներուն ջնջել Շուշիի Իպրահիմ խանին իշխանութիւնը, եւ Ղարապաղի մելիքներու յանձնել նաեւ Վրաստանը, եթէ անոնք ռուսերու չծառայէին, սակայն Հայերը բնաւ ականջ չկախեցին եւ ռուսերու գործիք եղան եւ չարաչար պատժուեցան (1):

Ղարապաղի հինգ մելիքութիւններն էին

1. Խաչէն
2. Ջրաբերդ
3. Դիզակ
4. Վարանդա
5. Կիւլիստան

որոնց վրայ համառօտ տեղեկութիւններ կուտամ:

# 1. ԽԱՉԷՆ

Խամսայի հինգ մելիքութիւններուն մէջ միայն Խաչէնի իշխողները երկրին բնիկներն էին, իսկ միւս չորսը՝ եկւոր իշխանական տուներ (Լէօ. *Հայոց Պատմութիւն*, Գ. էջ 747):

Այս վաղեմի անունով կոչուած մելիքութիւնը ապահովաբար հին իշխանական տան մը յաջորդութիւնն էր, վասնզի ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 365—367) Խաչէնի կամ Արցախի մէջ նոյնիսկ Լէնկ Թիմուրի շրջանին իրենց գոյութիւնը պահած էին բնիկ իշխանական տուները, ստորաբաժանուած (տես. վերը, *նոյն.*)։

Այս տոհմերէն էին Ջալալեանք (տես. վերը, էջ 347), որոնցմէ ԺԵ. դարուն սկիզբը. 1411ին գրուած յիշատակարանի մը մէջ կը յիշուէր Սայտուն՝ որդի Պարոն Աղբասի (տես. վերը, էջ 366), իսկ Ջահան Շահի ատեն (1437—1467), Սայտունի որդին՝ Մելիք Հապեր կամ Հադեր որ կ'իշխէր ոչ միայն Խաչէնի այլ նաեւ Ջրաբերդի (տես. Մակար եպս. Բարխուտարեանց, *Պատմ. Աղուանից*, Ա. էջ 142 եւ 213. եւ Բ. էջ 34):

Խաչէնի Մելիքութիւնը առանց Ջրաբերդի, կը տարածուէր Խաչէն գետէն մինչեւ Բալու-չայ գետը: Մելիքին բերդերը կը գտնուէին Խաչէն գետի մօտ: Մին կանգնած էր Գանձասարի հռչակաւոր վանքին դէմ, բարձր, անտառապատ լեռան մը գլուխը եւ կը կոչուէր Թարխանաբերդ (հին Խոխանաբերդը) ուր ԺԳ. դարուն սկիզբները, թաթարաց արշաւանքին ատեն ամրացաւ Հասան-Ջալալ իշխանը: Անկէ քանի մը ժամ անդին կը գտնուէր Կաչաղակաբերդ (Սաղսաղան Գալէսի), Ս. Յակոբ վանքին դէմ:

Ջալալեանք Աղուանից Կաթողիկոսութիւնը նաեւ իրենց սեփականած էին (Լէօ. Գ. էջ 498): Այս ընտանիքը բազմացած եւ ճիւղաւորուած էր եւ ըստ աւատական կարգերու Խաչէնի գաւառին հողամասերը բաժնուած էին տոհմին անդամներուն միջեւ, որոնք բնականաբար իրարու հետ խնդիրներ ունեցած էին, եւ պառակտուած:

Այս պատճառով զօրաւոր եւ միացեալ իշխանութիւն մը ըլլալէ դադրած էր: Միայն Հասան Ջալալեանք էին որ դեռ ԺԵ. եւ ԺԶ. դարերուն կը տիրէին ընդարձակագոյն իմաստով Խաչէնի եւ տակաւին քիչ շատ ազդեցութիւն ունէին:

Վաւերագիրներու համաձայն կը յիշուին (տես. Մակար եպս. Բարխուտարեանց, *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 34):

1411ին Սադուն որդի Ալբասի
1480 Վելիջան որդի Սադունի
1499 Հադեր Միլիք " "
1520–1561 Մեհրապ Բէկ որդի Հադերի (2),
Պաղտասար "
Վէլիջան "
1723—1729 Մելիք Գրիգոր
.. Մելիք Բէկ
1791 ✝ Դանիէլ Բէկ

Խաչէնի իշխանները՝ որոնք աւելի ընդարձակ երկիրներու տէր էին առաջ, հետզհետէ աւելի սեղմուեցան եւ անձուկ մտքով Խաչէնի մէջ ամփոփուեցան եւ մաս կազմեցին Խամսայի մելիքութիւններուն:

Մուլքի բէկի ատեն անոնք ունէին միայն

*(1) Ղարապաղի այս անցքերուն և Խամսայի Մելիքութիւններուն վրայ բազմաթիւ եւ ընդարձակ հրատարակութիւններ կան, Րաֆֆիի «Խամսայի Մելիքութիւնները» գործէն մինչեւ Լէոյի Հայոց Պատմութեան Գ. հատորը:*

*Պիտի չխօսիմ ազատագրական այս ձախողած ձեռնարկին և անոր հետեւանքներուն վրայ յանձնարարելով հետաքրքիրներուն կարդալ այս մասին կատարուած բազմաթիւ ուսումնասիրութիւնները եւ հրատարակուած ոչ նուազ հետաքրքրական վաւերագիրները:*

*(2) Րաֆֆի ունի տարբեր ցանկ մը. որ կը ներկայացնեմ.*
*Ջալալ Բէկի Ա. որդի Մեհրապի*
*Վելիջան Ա.*
*Պաղտասար Բէկ*
*Վելիջան Բ. (ըստ Րաֆֆիի՝ Գ.) ամէնքն ալ իբր թէ որդւոց որդի յաջորդութեամբ:*

*Վելիջան Բ.ի յաջորդած է իր եղբայրը Մուլքի բէկ. Վելիջան բէկ (1618 մեռած) եւ Մուլքի բէկ (1716 մեռած, եղբայրները, իրենց միւս եղբօրը՝ Հասան Ջալալեան Երեմիա Աղուանից Կաթողիկոսին (1700 մեռած) հետ, ԺԷ. դարուն վերջերը, նշանաւոր դեր կատարած են, քաղաքային եւ կրօնական իշխանութիւնները իրենց սեփականացնելով:*

պզտիկ հողամաս մը եւ առաջնակարգ տեղ մը չէին գրաւեր:

Մուլքի բէկի երեք որդին՝ Մելիք Գրիգոր (Սարը Մելիք) ժամանակ մը վերջը կրօնաւորեցաւ եւ Խաչէնի իշխանութիւնը վարեց իր եղբայրը՝ Մելիք Ալլահվերտի, որ ապաստան տուաւ Վարանդայի Մելիք Յովսէփի զաւկին Սայի–Բէկի: Մելիք Շահնազար, եղբայրը Մելիք Յովսէփին եւ սպաննիչը անոր ու ընտանիքին, ասիկա իրեն համար վտանգ մը համարելով Փանահ խանին հետ ջանաց սպաննել թէ՛ Մելիք Ալլահվերտին եւ թէ՛ Սայի բէկը, ինչ որ յաջողեցան միայն երբ Մելիք Ալլահվերտիէն երախտաւորեալ Խնզիրիստան գիւղի տանուտէր Միրզա խանի Խաչէնի մելիքութիւնը խոստանալով, դաւով ձերբակալեցին Կաչաղակաբերդի մէջ զանոնք եւ սպաննեցին:

Այսպէս, Հասան–Ջալալեան տոհմին իշխանութիւնը ջնջուեցաւ Խաչէնի վրայէն: Մելիք Ալլահվերտիի մահէն վերջ կը յիշուի իբր մելիք իր երեք եղբօրը՝ Գրիգորի որդին Մելիք բէկը որ 8 որդի թողուց, որոնցմէ մէկն էր Գանձասարի Յովհաննէս Կաթողիկոսը զոր Շուշիի Իպրահիմ խանը սպաննեց: Մելիք բէկի սոսկ տիտղոսով իբր Մելիք, յաջորդած է Դանիէլ բէկ որ հայրն է Պաղտասար Մետրոպոլիտի:

⁂

Փանահ խան՝ իր խոստումին համաձայն Խաչէնի Մելիքութիւնը 1755ին տուաւ Խնզիրիստանի տանուտէր Միրզա խանին: Այս Մելիք Միրզա խանը եւ իր ժառանգները, Մելիք Ալլահվերտի եւ Մելիք Ղահրաման, հաւատարմութեամբ ծառայեցին Շուշիի խաներուն եւ Հայ մելիքներու դաշնակցութենէն բաժնուելով, անթիւ վնասներ հասցուցին անոնց:

Մելիք Միրզա խան՝ որ Մելիք Շահնազարի բոլոր սեւ արարքներուն գործակից եղած էր, 1775ին անոր հետ Դիզակի Մելիք Եսայիի դէմ կռուած ատեն գերի ինկաւ եւ սպաննուեցաւ:

Իպրահիմ խան անոր յաջորդ նշանակեց իր որդին Մելիք Ալլահվերտին, որ հօրը նման հաւատարիմ մնաց պարսիկ խանին:

1806ին Ղարապաղի ռուսերու կողմէ գրաւման ատեն կ'իշխէր Մելիք Ալլահվերտի Մելիք Միրզախանեան:

## 2. ՋՐԱԲԵՐԴ ԿԱՄ ՉԱՐԱԲԵՐԴ

Ջրաբերդի մելիքութեան հողերը մաս կը կազմէին Խաչէնի եւ վաղեմի Մեծ Կողմանքի, Մեծ Կուանքի եւ Չարաբերդի իշխանութեան: Օսմանցիք 1557ին հասան Ջրաբերդ գաւառի դաշտաբերանի գիւղերը, սակայն ջրաբերդցի քաջեր յաջողեցան սպաննել 700 թուրք զինուոր իրենց պետով եւ փրկեցին գաւառը (*Պատմ. Աղուանից*, Բ. հր. էջ 23): Առանձին մելիքութեան վերածուած է 1687էն վերջը: Այս նոր մելիքութիւնը կը տարածուէր Թարթառ գետէն մինչեւ Խաչէնի գետը: Մելիքին ամրոցը՝ Ջրաբերդ կը գտնուէր Թարթառ գետին ափին մօտ, Երից Մանկանց վանքին դէմ եւ անունը տուած էր գաւառին: Բերդը կանգնած էր գրեթէ ջուրի մէջ, ահագին սեպաձեւ ժայռի մը գագաթը, որուն ոտքը քերելով կ'անցնին կատաղի Թարթառը եւ Թրղինը: Այս երկու գետերը, իրար խաչաձեւելով, բերդին թերակղզիի ձեւ կուտան (Րաֆֆի, *նոյն*. էջ 4):

Ջրաբերդի Մելիք Իսրայէլեանները ծագումով Սիւնեաց նահանգէն էին, եւ 1687ին գաղթած էին Ղարապաղ, բազմաթիւ ընտանիքներով, իրենց գլուխը ունենալով Մելիք Եսային (1) որ որդին էր Մելիք Իսրայէլի, որ ըստ աւանդութեան հարուստ աւարով մը եկած էր եւ տիրած Կուանք կոչուած Ձորին, եւ սկսեալ Ոմաստեան լեռներէն մինչեւ Դիւթական գիւղը (այժմ Կաթուղկասար) տարածած էր իր տիրապետութիւնը:

Մելիք Եսայիի (✝ 1728), կը յաջորդէ իր որդին Մելիք Մէջլում եւ ասոր՝ Մելիք Իսրայէլ, որուն որդին եւ յաջորդն էր Մելիք Ալլահղուլի Սուլթանը (2) (✝ 1756), որուն եղբայրը՝ Մելիք Ադամ կամ Հաթամ եղած է իր յաջորդը:

Անոնք զօրանալով, կը տիրեն Խաչէնի, Հաւքախաղացին, Հանդաբերդին, Հաթերքին, Ականայի եւ Ջրաբերդին, եւ այսպէս աւելի եւս կ'ընդարձակեն իրենց իշխանութիւնը:

Ալլահղուլի Սոլթան, դաւաճանութեամբ կ'ըսպանուի Շուշիի Փանահ խանին ձեռքով 1756ին, իսկ Մելիք Ադամ կը պայքարի այդ խանին դէմ։

Ան իր բնակութիւնը կը հաստատէ «Քաղաքատեղ» կամ «Մայրաքաղաք» կոչուած աւերակներու մօտ, հոյակապ պալատի մը մէջ, ուր ԺԲ. դարուն վերջերը կը բնակէր Խաչէնի եւ Շամքորի իշխան Վահրամ Շահ, իսկ իբր ամրոց կ'ընտրէ Ջրաբերդը:

1780ին մեռաւ Մելիք Ադամը որ սարսափեցուցած էր Շուշիի Իպրահիմ խանը: Իր որդին Մելիք Մէջլում, ամէնէն զօրաւոր հակառակորդը հանդիսացաւ Իպրահիմ խանի, որ Գիւլեաթաղ գիւղին մէջ ապրող Ալլահվերտի իւզպաշիի որդին Միսայէլ բէկին խոստացաւ Ջրաբերդի Մելիքութիւնը եթէ Մելիք Մէջլումը սպանէ։ Միսայէլ բէկը փոխանակ Մելիք Մէջլումը սպաննելու ինքն սպաննուեցաւ: Իր եղբայրը Ռուստամ բէկ հազիւ կրցաւ փրկել անոր ընտանիքը եւ ապաստանիլ Շուշի Իպրահիմ խանի մօտ, եւ սկսաւ իր աներոջ Ապրէս աղայի հետ դաւել Մելիք Մէջլումի դէմ:

Մելիք Մէջլում 1786ին ձերբակալուելով իբր ռուսերու գործակից Շուշիի մէջ բանտարկուեցաւ եւ իր մարդոց շնորհիւ ազատելէ վերջ 1787ին գնաց վրաց Հերակլ թագաւորին քով, որ ռուս զօրավար Բուրնաշովի հետ Գանձակի մօտեցած էր, բայց վերա-

(1) *Ըստ Մակար եպս. Բարխուտարեանցի* (Պատմ. Աղուանից, Բ. էջ 51) *Մելիք Եսայի որդին էր Խանածախի Մելիք Հայկին (որդի Մելիք Հայկազնի)։ Ասիկա իբր թէ Ջրաբերդ տեղափոխուած է Ջալալեաններու խորհուրդով:*

(2) *Իր քաջագործութիւններուն համար Նատիր Շահ տուած է Սոլթանութեան տիտղոս։*

հաս ռուսեւթուրք պատերազմը պատճառ եղաւ որ ռուսերը իրենց խոստացած օգնութիւնը չտան:

Միլիք Մեջլում եւ իր բախտակիցը՝ Մելիք Աբով Հերակլի հետ Թիֆլիս գացին, եւ տեսնելով որ Հերակլէն պիտի մատնուին Իպրահիմ խանին, 1789ին, խոյս տուին Թիֆլիսէն եւ գացին Գանձակ, Ճաւատ խանի մօտ, որ սիրով ընդունեց զիրենք:

Մելիք Մեջլում 1796ին մեռաւ Գանձակի պաշարման ատեն:

Րաֆֆի դիտել կուտայ թէ Մելիք Մեջլում իրատես մարդ մը եղած է եւ հաւատք չէ ունեցած ռուսերու վրայ եւ միշտ նախընտրած պարսիկները, որոնք հետզհետէ ընդարձակած են Մելիքներու իրաւասութիւնը, ինչպէս բացատրուեցաւ:

Իր որդին Մելիք Ադամ Բ. վաղաժամ մեռաւ ձգելով աղջիկ մը՝ Սհար–Նազ: Իր կինը իմաստուն Թամար, իր ամուսինին մահէն վերջ կառավարեց Մելիք Իսրայէլեաններու մեծ ժառանգութիւնը եւ իրենց Գանձակ գտնուող հպատակները: Թամար իր աղջիկը ամուսնացուց Նախիջեւանցի Ասրի բէկին որդին Սայի բէկին հետ որ առաւ կնոջը մականունը եւ Մելիք Իսրայէլեաններու ժառանգութիւնը:

Մելիք Մեջլումի՝ Գանձակ ապաստանելէն վերջ Իպրահիմ խան Ջրաբերդի մելիքութիւնը տուաւ Ռուստամ բէկի, բայց որովհետեւ անոր կինը Վարդխաթունը անպատուեց, Ռուստամ Իպրահիմ խանէն բաժնուելով գնաց անոր հակառակորդ Նուխիի Սելիմ խանին քով, որ անոր տուաւ Թաշ-Բուլաղ գիւղը: Յետոյ հաշտուեցաւ Իպրահիմ խանի հետ եւ 1796ին կռուեցաւ Մելիք Մեջլումի եւ Ճաւատ խանի դէմ:

Ղարապաղի մելիքներու վերջին գաղթականութեան ժամանակ Մելիք Ռուստամ չհեռացաւ իր հայրենիքէն, իբր Իպրահիմ խանի բարեկամ, սակայն Ճաւատ խան զայն հալածեց եւ Մրզ Հազի անուն անձի մը առաջնորդութեամբ ասպատակներ ղրկեց անոր վրայ: 1799ին Ռուստամ կռիւի մէջ մեռաւ: Իրեն յաջորդեց եղբայրը՝ Միրզա բէկի որդի Բովշանը որ Իպրահիմ խանի դէմ ելաւ եւ օգնեց ռուսերուն, եւ Ջրաբերդէն Գանձակ գնաց, ուր ձերբակալուեցաւ իբր սպանիչ Մելիք Ադամ Բ.ի բայց քանի մը օրէն արձակուեցաւ:

Մելիք Բովշանը Ցիցիանովի մահէն յետոյ անպաշտպան մնաց եւ գնաց Նուխի (Շաքէ) Թաշ Պուլաղ գիւղը եւ հոն մեռաւ քանի մը տարիէն:

Իր որդին Ալլահվերտի Բ., տոհմին վերջինը եղաւ:

⁂

Մելիք Ադամ Բ.ի՝ Գանձակ եւ Մելիք Բովշանի՝ Նուխի տեղափոխուելէն վերջ Մեհտի խան Ջրաբերդի մելիքութիւնը տուաւ Մելիք-Վանիի որ Աթաբէկեան էր եւ 1804—1813ին անձնուիրութեամբ ծառայած էր ռուսերուն:

Մելիք Վանի, Կիւլիստանի Մելիք Յովսէփ Բ.ի (1) Մելիք Բէգլարեանի եւ Սարգիս Մետրոպոլիտին հետ դիմած է Աբաս Միրզայի խնդրելու համար որ Հայոց խնայէ:

1813—1854, 42 տարի խաղաղութեամբ վարեց Մելիքի պաշտօնը: Մեռաւ 1854ին:

## 3. ԴԻԶԱԿ ԿԱՄ ԴՈՒԶԱԽ

Դիզակ գաւառը երբեմն Աղուանից թագաւորութեան մաս կը կազմէր եւ վաղեմի իշխանութեան մը կայան եղած էր, ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 177):

Այս իշխանութիւնը շարունակուած է նաեւ Մոնկոլ տիրապետութեան տակ մինչեւ 1271:

Հոն տիրած էին Մոնկոլներուն շրջանին կարգ մը իշխաններ (տես. վերը, էջ 349) որոնք հաւանօրէն Աղուանից հին իշխաններու սերունդէն էին։

ԺԵ. դարուն կէսերուն Դիզակի— որ այն ատեն իրեն միացեալ ունէր նաեւ Վարանդայի գաւառը— կ'իշխէր Ախիջան կամ Հախիջան իշխանի որդին Մելիք Պաշին (*Պատմ. Աղուանից*, էջ 213), որուն յաջորդած են իր որդիները Մելիք Ադամ եւ Մելիք Աւան (2), եւ ասոնց Մելիք Փաշիկ կամ Մելիք Փաշա (1576—1604), որ ըստ Առաքել Դաւրիժեցիի (էջ 16) մէկն էր այն Հայ մեծամեծներուն որոնք Սպահան երթալով խնդրեցին Շահ Աբասէն որ փրկէ զիրենք Օսմանեան լուծէն:

ԺԵ. դարուն վերջերը կամ ԺԶ. դարուն սկիզբները Դիզակի Մելիքութենէն բաժնուելով Վարանդա ունեցած է իր յատուկ մելիքները, որով հին ընդարձակ մելիքութիւնը երկուքի բաժնուած է, հաւանօրէն Շահ Աբաս Ա.ի ատեն:

Դիզակի մելիքութիւնը այս բաժանումէն վերջ կը գրաւէր Դիզափայտի լեռներէն մինչեւ Երասխ գետ, տարածուող հողերը:

Դիզակի մելիքներէն Մելիք Սուջում, մին է այն Հայ մեծամեծներուն որոնք Պարսկաստան անցան եւ հոն հաստատուեցան: Իրեն հետ էին Դիզակէն չորս գիւղերու բնակիչները, որոնք Շահ Աբաս Իսպահանի մէջ բնակեցուց (Առաքել Դարիժեցի, էջ 16):

Մելիք Սուջումի նախնիքը Լոռիի Արդու գիւղէն գաղթած էին եւ հաստատուած՝ Տող աւանի մէջ, Գտչի վանքին հանդէպ:

Մելիք Սուջումի յաջորդած է Մելիք Աւան Ա. (*Պատմ. Աղուանից*, Ա. էջ 132 եւ Բ. էջ 37), որ չկրնալով դիմադրել Ջելալի աւազակներու յարձակումներուն 1607ին 50 տուն Հայերով կը գաղթէ Վրաստան ուր թեթեւ հարկ մը վճարելու պայմանով բնակութեան տեղ կ'ստանայ Արդու գիւղը: Ան պարտաւոր պիտի ըլլար օգնելու իր զօրքերով պատերազմի ատեն, եւ պիտի պահէր իր մելիքութեան բոլոր իրաւունքները իրեն հետ բերած ժողովուրդին վրայ: Մելիք Աւան անընդհատ կը կռուի իր տոհմակից Մելիք

(1) *Երեց որդի Մելիք Ֆրէյտունի*
(2) *Մելիք Պաշիի, Մելիք Ադամի և Մելիք Աւանի*

*դամբանները կը մնային (տես. Մակար եպս. Բարխուտարեանց Արցախ, էջ 106—108):*

Էլիզբարի հետ, որ բռնութեամբ խլեր էր Մելիք Աւանէն իր հայրենի ժառանգութիւնը՝ Փամպակի ձորը եւ Լոռիի մէկ մասը: Մելիք Աւան Ա. մեռաւ Վրաստանի մէջ:

Մելիք Աւանի յաջորդեց Մելիք Բախտամ Ա. որուն Ղուկաս անուն վարդապետ որդւոյն զաւակն էր:

Մելիք Աւան Բ. որ չափազանց դառնացած էր Վրաց դէմ 1716ին կը դառնայ Դիզակ, իր ժողովուրդով եւ կը տիրանայ վերստին այս գաւառին (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 37—38): Մելիք Աւան իր նստոցը կ՚ընէ Տող աւանը եւ հայրը՝ Ղուկաս վրդ. վանահայր կ՚ըլլայ Գտիչ վանքին:

Մելիք Աւան կոչուած է նաեւ Մելիք Եգեան, Տողի մէջ կը հիմնէ հոյակապ եկեղեցի մը եւ կ՚ամրացնէ գիւղը պարիսպներով, եւ թուրք հրոսակներէ վրդովուած երկիրը կը խաղաղեցնէ: Սուլթան Հիւսէյին Շահի որդին Ղաքմիզ իրեն կուտայ Մելիքութիւն, վասնզի թուրքերու դէմ կը մաքառի: Յետոյ Նատիր Շահ իր իշխանութիւնը կը հաստատէ ըստ իր ինքնագիր յիշատակարանին (տես, *Արցախ*, էջ 76—77) (1):

Մելիք Աւան ներկայ եղած է Նատիր Շահի գահակալութեան եւ գործակցած է միւս Հայ մելիքներուն ռուսերու հետ յարաբերութիւն մշակելու համար:

Մելիք Աւան, 1724 Յունիս 12ի դաշինքով երբ ռուսերը Ղարապաղը ձգեցին Օսմանցիներուն եւ Սարը Մուսթաֆա փաշա հաստատուեցաւ Գանձակ եւ իր զօրքերը ցրուեց Խամսայի Մելիքութեանց մէջ, իբր Մելիքներուն գահերէցը, առերես բարեկամութիւն ցոյց տուաւ եւ սակայն մելիքներուն հետ մեծ դաւադրութիւն մը սարքեց թուրքերուն դէմ՝ Նատիրի յաղթանակներէն քաջալերուած, եւ 1733ի Բաղկենդանի գիշերը բոլոր թուրքերը ջարդեց:

Իր քոյրը Աննա խաթուն (կինը Վարանդայի Մելիք Հիւսէյինին + 1736) եւ քեռաղջիկը՝ Գայիանէ, հերոսային ընթացք ցոյց տուին նոյն օրը:

Մելիք Աւանը (Եգեան) այս պատճառով վայելեց Նատիր Շահի մասնաւոր համակրանքը Շահը զայն կը կոչէր «*պապալըղ*», (հայրագիր): Աւան մէկ տարի իր ծախքով կերակրեց Նատիր Շահի զօրքերը:

Շահը անոր տուաւ խանութեան աստիճան եւ Խամսայի հինգ մելիքութիւններուն պետ ըրաւ զայն: Անոր մօտ կը հաւաքուէին հինգ մելիքներուն հարկերը եւ անոր միջոցաւ կը յանձնուէին արքունի գանձարանին:

1734ին Մելիք Աւան խան իր հետեւորդներով գնաց Ռուսիա, Աննա Իվանովնա կայսրուհիի (1732—35) տեսն եւ փառաւոր ընդունելութիւն գտաւ եւ արժանացաւ Ժեներալ-Մայորի աստիճանին եւ շքանշաններու:

Եղիսաբեթ Պետրովնա կայսրուհիին տեսն ան կրկին գնաց Ռուսիա եւ կրկին արժանացաւ զանազան պատիւներու եւ շքանշաններու:

Մելիք Աւան խան մեռաւ 1744ին: Իր յաջորդը Մելիք Ադամ միայն մէկ տարի (1744—1745) իշխեց եւ իշխանութիւնը անցաւ իր եղբօրը՝ Մելիք Եսայիի, որ սպաննուեցաւ Շուշիի Իպրահիմ խանէն: Իր գերեզմանին վրայ գրուած է. «*Այս է տապան Մեծին Մելիք Եգանի որդի Մելիք Եսայուն, եւ էր սա իշխան կարգեալ Նատիր Շահէն, ԼԳ (33) ամ տիրեաց երկրիս Դիզակու, եւ արար բազում քաջութիւն եւ յաղթութիւն ընդ անօրէնսն, եւ էր ինքն պարթեւ եւ յոյժ զօրաւոր քան զառաջինսն իւր թէել կենաց սորա եւ կամաւ Աստուծոյ վախճանեցաւ թվ. ՌՄԼ. (=1781)...*»: (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 39):

Ընտանիքին մնացորդ անդամները անցան Ռուսաստան եւ Աժտէրխան, Բեդերսպուրկ ու Մոսկուա հաստատուեցան:

Մելիք Եսայի՝ առաջինն էր Ղարապաղի մելիքներուն մէջ, որ հասկցաւ կանոնաւոր զօրքի եւ ընդհանուր զինուորագրութեան անհրաժեշտութիւնը երկիրին ապահովութեան համար: Ան տուգանքի կը դատապարտէր գիւղացիները եթէ անոնց զէնքերէն մէկը պակաս ըլլար կամ լաւ պայմաններու մէջ պահուած չըլլար: Երկրագործական աշխատանքէ վերջ պէտք էր որ գիւղացիք զինուորական մարզանք ընէին:

Մելիք Եսայի, հարկահաններէն նեղուած, Նատիր Շահի մահէն վերջ, երբ Պարսկաստան անիշխանութեան մատնուեցաւ, հարկը դադրեցուց, սակայն մատնուեցաւ Դաւրէժ նստող Ասիլ Շահին, որ հրամայեց Ղարատաղի կառավարիչ Քազըմ խանին պատժել Մելիք Եսային, որ 7—8 տարի տոկաց Փանահ խանի իր դէմ գործադրած յարձակումներուն:

Մելիք Եսայի իր Սօնա աղջիկը կնութեան տուած էր Վարանդայի դաւաճան Մելիք Շահնազարին որ իր աղջիկը՝ Հիւրիզատը կնութեան տուաւ Շուշիի Իպրահիմ խանին եւ այս պատճառով երկու Մելիքները տարիներով իրարու հետ կռուեցան:

Մելիք Շահնազարի օգնեցին իր գործակիցը՝ Խաչէնի Մելիք Միրզա խանը եւ ապա իր որդին Մելիք Ալլահվերտին եւ Շուշիի՝ Իպրահիմ խանը:

Ասոնք 1781ին պաշարեցին Տող բերդը եւ դաւով Մելիք Եսային բռնելով խեղդեցին:

Իրեն յաջորդեց իր եղբօր՝ Մելիք Ադամի որդին Մելիք Բախտամը, զոր 1785ին Իպրահիմ խան ձերբակալելով Պարսկաստան ղրկեց ուր Արտաւելի բերդին մէջ բանտարկուեցաւ, իբր քաղաքական յանցաւոր. ռուսերը պարսկական հող մտցնելու աշխատած ըլլալու ամբաստանութեամբ (2):

(1) *Իր որդւոյն Մելիք Արամի, «չաու սիրական... Նատիր Շահի» շիրմաքարին վրայ Մելիք Եգեանի համար ըսուած է թէ «չափաղաթ ունէր Նատիր Շահին. որ է Բ. (երկրորդ) հաքիմ (կառավարիչ) էլաւ Ե. (5) մահալին»* (*տես.* Արցախ, *էջ* 75—76, Պատմ. Աղուանից, Բ. *էջ* 39):

(2) *Մելիք Բախտամ թէեւ 20 տարի վերջ արձակուեցաւ եւ Աղա Մէհմմէտ խան Շահէն գրամ տանելով դարձաւ Ղարապաղ, սակայն մինչեւ իր դարձը Շահը սպաննուած էր Շուշիի մէջ, և ասկէ քաջալերուած Իպրահիմ խան թունաւորեց զայն: Իր որդին Մելիք Աբաս եւս չկրցաւ Դիզակի տիրանալ վասնզի Իպրահիմ զայն սպաննել տուաւ: Անոր որդին Մելիք Ղահրաման կամ Բաղր բէկ Դիզակի ժողովուրդին մէկ մասին հետ գաղթեց Վրաստան, իսկ Մելիք Եսայիի որդին Բաղտատ բէկը մնաց Իպրահիմ խանի բանտը՝ իր երկու որդիներուն Ասլանի և Վահանի հետ: Ազատելու համար խալամացաւ սակայն Իպրահիմ խան միշտ կասկածոտ, խեղդեց Բաղտատ բէկը և թունաւորեց Ասլանը: Իսկ Վահանի վախճանը ծանօթ չէ:*

Դիզակ դարձաւ պարսկական գաւառ եւ վերջ գտաւ այս մելիքութիւնը:

## 4. ՎԱՐԱՆԴԱ

Ինչպէս տեսնուեցաւ այս մելիքութիւնը մասն էր Դիզակի, որ երկուքի բաժնուեցաւ:

Դիզակի Յօր ամրոցին մէջ կը յիշատակուի որ իշխած են Իշխան Աջամի, Աւան մեծ իշխան, Թովմաս, Ջալալ եւ Նախիճան իշխանները:

Այս վերջին իշխանի որդին Մելիք Պապին կը հաստատուի Վարանդա գաւառին Քոչիչ կամ Քօշուսէլ գիւղը (1) որ այժմ կը կոչուի Ծովատեղ, եւ առանձին կ'իշխէ նոյն գաւառին վրայ։

Ասկէ վերջն է որ Վարանդա կը դառնայ առանձին մելիքութիւն:

Մելիք Պապին կը յաջորդեն իր երկու որդիները, Մելիք Աւան (յիշուած 1566ին) եւ Մելիք Աղամ (տես. *Պատմ. Աղուանից*, Բ. 40):

Մելիք Աւանի որդին էր Մելիք Փաշա կամ Փաշիկ որ 1576—1586ին իշխանութեան վրայ էր (*նոյն.*) եւ Դիզակի Մելիք Սուջումին հետ Իսպահան գնաց նեղուելով Ջալալիներու ասպատակութիւններէն, բայց յետոյ հայրենիք դարձաւ:

Վարանդայի մէջ մելիքութեան պաշտօն վարած են այս սերունդէն

Մելիք Դանիէլ

եւ Մելիք Մուզաֆֆար որուն օրով մելիքութիւնը փոխանցուած է Սօղի մելիքներու սերունդէն Մելիք Թաշի, նոյնիսկ Վարանդայի բնակչութեան խնդրանքով, ինչպէս կը հասկցուի հրովարտակէ մը 1642 թուականով (2) (տես. *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 41—42):

Շահ Աբաս Ա.ի ժամանակակից էր Մելիք Շահնազար (✝ 1607) որ Գեղարքունիքի Մազրայ գիւղին մէջ կ'ապրէր եւ արդէն մելիքութեան տիտղոս եւ աստիճան ունէր, ժէ. դարուն սկիզբը եւ Առաքել Դաւրիժեցի Գ. տպ. Էջմիածին, էջ 96):

Անոր սերունդէն Մելիք Աբով Ա.ի եւ Մելիք բէկ Ա.ի որդին էր Մելիք Բաղի Ա. որ 1627—1628 թուականներուն Մազրայէն կը տեղափոխուի Վարանդայի Աւետարանոց կամ Չանախչի գիւղը, եւ կը հիմնէ բերդ մը, ուր կը հաստատուի (3)։

Այս մելիքութիւնը կը տարածուէր Բալլա-Չայ գետէն մինչեւ Դիզափայտի լեռնային զօտին:

Մելիք Բաղի Ա. կ'սպաննուի եւ իրեն կը յաջորդէ իր որդին Մելիք Շահնազար Ա. եւ անոր Մելիք Բաղի Բ. որուն իշխանութեան շրջանին Օսմանցիներու թելադրութեամբ, 1721ին Լեզգիները ասպատակեցին Շաքէ, Շիրուան, Գանձակ եւ անցան Երասխ գետը եւ մօտեցան Վարանդայի: Մելիք Բաղի կամ Բաղիր տեսնելով որ անհնար է պատերազմիլ անոնց դէմ, ընծաներ յղելով, կ'ազատէ Վարանդան կոտորածէ եւ գերութենէ եւ ուրիշ վայրերէ անոնց առած գերիներուն մէկ կարեւոր մասն ալ կ'ազատէ փրկագինով (*Եսայի Կաթողիկոս*, էջ 36—38):

Այս եւ անոր նման մի քանի անցքեր այն աստիճան գրաւեցին տեղացի ժողովուրդին համակրութիւնը, որ ամբողջ Վարանդա ընդունեց Մելիք Շահնազարեաններու իշխանութիւնը:

Մելիք Բաղիի յաջորդած է իր եղբայրը՝ Մելիք Հիւսէյին (✝ 1736) որ Վարանդայի ամէնէն փառաւոր Մելիքը եղած է (4):

Իր տապանագիրը (տես. *Պատմ. Աղուանից*, Ա. էջ 138 ու Բ. 44—45) մեծ գովեստներ կը շռայլէ իրեն: Իմէջ այլոց նկատելի է որ կ'ըսուի հոն թէ «*սա ոչ ետ հարկ թագաւորի, ամուր պարիսպ էր աշխարհի. թագ եւ պարծանք Հայոց ազգի, պատերազմեաց հետ Օսմանցի, յոյժ կոտորեաց յազգէն Տաճկի*»:

Այս տողերը ցոյց տուտան թէ անիկա բոլորովին անկախ էր:

Մելիք Հիւսէյինի մահէն (1736) վերջ Վարանդան կառավարել սկսաւ Մելիք Միրզա բէկ Բ. որդին Մելիք Բաղիի եւ հօրեղբօրորդի Մելիք Հիւսէյինի։

Անիկա բռնաբարութիւն մըն էր օրէնքի որ պատժուեցաւ Շահէն մահապատիժով եւ Վարանդայի Մելիք նշանակուեցաւ Մելիք Հիւսէյինի որդին՝ Մելիք Յովսէփ (5), որմէն իշխանութիւնը յափշտակեց իր փառասէր եղբայրը՝ Մելիք Շահնազար Բ.ը (մեռած 1792), սպաննելով զայն եւ իր ընտանիքը:

Միւս չորս Մելիքները այս ոճիրը չներելով գացին Մելիք Շահնազար Բ.ի վրայ որ միացաւ Ջուանշիրցի Սարիչալլու տոհմէն բախդախնդիր Փանահ խան աւազակին հետ, որ Նատիրի մահէն (1747) վերջ Ղարապաղի մէջ ոտքի կռուան մը ձեռք բերել ուզած էր երկու բերդերու շինութեան ձեռնարկելով եւ Հայ Մելիքներէն արգիլուած էր (Րաֆֆի, *Խամսայի Մելիքութիւնները* էջ 45—49):

Փանահ խանի խորհուրդով Մելիք Շահնազար հիմնեց 1752ին Շուշիի բերդը, որ եղաւ կռուան եւ կեդրոն այդ բախդախնդիրին (Chantre. A travers de l'Armenie, Րաֆֆի, *Խամսայի Մելիքութիւնները* էջ 57. եւ *Ազգագր. Հանդէս Ե.* 5—6:)

Փանահի յաջորդեց Իպրահիմ խան որ իր հետ ունենալով Մելիք Շահնազարը ամէն չարիք բրաւ Հայ Մելիքներուն եւ պատճառ եղաւ Ղարապաղի կործանման:

1792ին մեռաւ այս տխրահռչակ Մելիքը եւ

(1) *Այս գիւղը կը գտնուէր հին Արցախի նահանգին միւս Հաբանդ գաւառին մէջ. որ վերջը Վարանդա կոչուած է։*

(2) *Այս հրովարտակը իբր թէ Շահ Աբաս Ա էն տրուած, եթէ կեղծ չէ, պէտք է Շահ Աբաս Բ էն տրուած ըլլայ, իր գահակալութեան տարին։*

(3) *Ե. Լալայեանց* (Ազգագր. Հանդէս Բ. էջ 5—6) *այս տեղափոխութիւնը կը յետաձգէ մինչեւ* 1673, *կովկասեան լեռնականներու արշաւի մը ժամանակին։*

(4) *Ամուսնացած էր Դիզակի Մելիք Աւանին քրոջ Աննա Խաթունին հետ։ Ոմանք կ'ըսեն թէ Մելիք Հիւսէյին ամուսնացած էր Նախիջեւանի խանին աղջկանը Զօհրա խանումին հետ։ Ազգով Թուրք այս կնոջմէն ծնած էր Մելիք Շահնազար Բ.ը որ այնքան սեւ անուն մը թողած է:*

(5) *Պարսիկները զինքը իր հօրը անունով Հիւսէյին կը ճանչնային։*

յաջորդեց Իպրահիմ խանի կարգադրութեամբ իր երկրորդ որդին Հիւսէյին Գ. (1802 ✝) եղբայրը Հիւրի Ջասին, Իպրահիմ խանի կնոջ: Այս կամայականութիւնը նոր պատճառ մը եղաւ երկպառակութեանց: Ջհան Բախշ, Մելիք Շահնազարի երրորդ որդին դիմեց Շահին եւ *ֆէրման* ստացաւ եւ աշխատեցաւ ինքն իշխել, բայց Իպրահիմ խանի աջակցութեամբ Հիւսէյին յաղթեց իր եղբօրը Ջհան Բախշի որ իր միւս եղբօրը Ջհանգիրի (1) հետ փախաւ Շամախի՝ Մուսթաֆա խանի մօտ: Բայց Հիւսէյին ալ չկրցաւ իշխել վասնզի Մելիք Ջումշուտ սպաննեց Հիւսէյինը եւ յաջորդեց իր հօրը, եւ միացաւ միւս Մելիքներուն եւ ամէն կերպով աջակցեցաւ ռուսերու՝ պարսից դէմ (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 45)։

Այսպէս անիկա եւ Մելիք Բէկլարեան Մելիք Աբով Իպրահիմ խանի հետ կը պաշտպանեն Շուշին, երբ Աղա Մամաս խան կը պաշարէ զայն:

Շահը 1797ին կրկին կուգայ Շուշի եւ կը գրաւէ զայն:

Մելիք Շահնազարեան Մելիք Ջումշուտ պահ մը անցաւ Վրաստան եւ Գէորգի թագաւորէն ստացաւ Լոռի գաւառը եւ Բորչալուի մէկ մասը եւ 1805 Մայիս 22ին Լոռին վաճառելով ռուսերուն ինքն կրկին դարձաւ Ղարապաղ, ուր 1806ին կ'իշխէր դեր-գնդապետի աստիճանով Վարանդայի: Մելիք Ջումշուտ մեռաւ 1812ին Ապրիլ 25ին:

Իրեն կը յաջորդէ եղբայրը Մելիք Ջհան Բաշխ որ կը մեռնի 1822ին։ Ասոր յաջորդած է իբր վերջին իշխող Մելիք Խուդաք որ 1833ին կը մեռնի:

## 5 · ԿԻՒԼԻՍՏԱՆ

Այս Մելիքութիւնը կը գրաւէր Քիւրակչայ գետէն, այսինքն Գանձակի սահմաններէն մինչեւ Թարթար գետը տարածուող հողերը:

Հին ժամանակներուն զանազան անուններով կոչուած է: Այսպէս, երբեմն կը կոչուէր *Մեծ-Կողմանք*, *Մեծ-Կուանք*, *Իքիրմի-տէօրդ* (իր 24 գիւղերու համար), *Թալիշ* (համանուն գիւղին անունով) եւ վերջապէս *Կիւլիստան* նոյն անուն գիւղին անունով:

Մելիքին ամրոցը կը գտնուէր Կիւլիստան գիւղին մօտ, անմատչելի լեռան մը գագաթը: Ունէր ուրիշ ամրոց մըն ալ Թալիշ աւանին մօտ, Հօռեկայ վանքին նանդէպ:

Հին ատեն, ինչպէս բացատրուած է արդէն, Դօփեանց երեք բաժանումներէն (տես. վերը, էջ 365) Այտինեցւոց բնակավայրն էր այս գաւառը։

Այտին 1455ին հաստատուած էր Նիժ եւ Սօլթան Նուխի, (տես. վերը, էջ 366) Ջահան Շահի հրովարտակով ստանալով Մելիքութիւնը: Իրեն յաջորդած է իր որդին Ղարա Հասան Իւզպաշին, եւ ասոր իր որդին Վարդան Իւզպաշի որ կ'ընդարձակէ իր սահմանները սուրով:

Իր որդին Դաւիթ Իւզպաշին, Մելիք Սաւչումի հետ գացած է Իսպահան, եւ կրկին ետ դարձած է Ղարապաղ:

(1) *Չորրորդ որդի Մելիք Շահնազարի։*

Ասոր որդին էր Աբով Իւզպաշին որ Սեւ Աբով ալ կը կոչուէր:

Ասիկա զզուած Ջէլալիներու արարքներէն Ջալալեան մելիքներու խորհուրդով կը ձգէ Նիժը եւ իր յիսուն տուն ազգականներով 1600ին կը տեղափոխուի Ջիւանշիր:

Աբով Իւզպաշին քիչ ատենուան մէջ կը փայլի իր քաջութեամբ: Ջալալեաններու օժանդակութեամբ կը նորոգէ Ջիւանշիր եւ Հօռեկայ բերդերը եւ կ'ամրացնէ զանոնք պարիսպներով, տեղացի Հայերու օժանդակութեամբ:

Ապա կը յաջողի ձեռք բերել գաւառին մելիքութիւնը:

Այսպէս, ուտէացի, Նիժ գիւղէն, եկուոր այս անձը կը գրաւէ կալուածները Կիւլիստանի մէջ 1632—1640ին իշխող Աբրահամ Իւզպաշիի կամ Իպրահիմ Կաւուրի:

Սեւ Աբով, որ թուրքերը կը կոչէին Գարա Իւզպաշի (Սեւ հարիւրապետ), ԺԷ. դարուն սկիզբները բոլորովին աղքատ եւ միայն եօթն ընտանիք հետեւորդ ունենալով Ղարապաղ եկած եւ վրացներու տակ բնակած էր Թարթար գետին ձախ ափերուն մօտ, Թալիշէն քիչ մը հեռու:

Իր մէկ քաջագործութեան ի վարձ Բարդայի խանէն ստացաւ Թալիշ գիւղը իբր բնակավայր:

1632ին իրեն յաջորդեց իր երէց որդին Մելիք Բէկլար որ եղաւ իսկական հիմնադիրը Կիւլիստանի Մելիքութեան, վասնզի ասիկա Աբրահամ Իւզպաշիէն խլեց *Վերի Շէն, Ներքին Շէն, Էրքէջ* եւայլն գիւղերը եւ վերջապէս Կիւլիստան բերդը եւ իր բնակութիւնը հոն հաստատեց:

Իրեն յաջորդեց երէց որդին Աբով Բ. (✝ 1728), (այլ անունով *Կաղ Աբով*) որ քաջ եւ յանդուգն սակայն աւառու եւ յափշտակիչ իշխան մը եղաւ: Առեւանգութեամբ ամուսնացած ըլլալով Գանձակի Մահմաս խանի միակ աղջկան Ղամար Սօլթանին (մեռած 1753) հետ, զայն քրիստոնեայ մկրտելէ վերջը, ժառանգեց խանին գիւղերը եւ հարստութիւնը: Իրեն յաջորդած է ըստ Մակար եպս. Բարխուտարեանի Մելիք Իսախան (յիշուած 1701 եւ 1727 թուականով վաւերագիրներով, (*Պատմ. Աղուանից*, Բ: էջ 50), իսկ ըստ Րաֆֆիի՝ Մելիք Աբով Բ.ի եղբայրը՝ Թամրազ (Թէյմուրազ) որ իր եղբօր որդւոյն Յովսէփի (Եուսուֆ) անչափահասութենէն օգտուելով իշխանութիւնը յափշտակած է: Թամրազ կը յիշուի 1716, 1724—25 թուականով վաւերագիրներու մէջ, որով յայտնի շփոթութիւն մը կայ մեկնութեան կարօտ:

Թամրազ սպաննուեցաւ Մելիք Յովսէփէն որ այսպէս տիրացաւ իր իշխանութեան:

Մելիք Յովսէփ կամ Եուսուֆ կը մեռնի 1774ին: Իրեն կը յաջորդէ Բէկլար Բ. իր որդին (1775—...? որ Լեզգիներու դէմ մղուած կռիւի մը մէջ սպաննուեցաւ Գանձակի մօտ: Իր որդին Ֆրէյտուն անչափահաս ըլլալով Բէկլար Բ.ի եղբայրը Աբով Գ. իշխանութիւնը առաւ: 1786ին Շուշիի Իպրահիմ խանէն դաւով մը ձերբակալուեցաւ եւ Շուշիի բերդին մէջ բանտարկուեցաւ, Մելիք Մէջլումի հետ։ Փախստական 1787ին Վրաց Հերակլ թագաւորին եւ

ռուս զօրավար Բուրնաշովի դիմեցին, ռուս զօրքով իրենց երկիրներուն տիրանալու յոյսով, բայց չյաջողեցան:

Իպրահիմ խան իր տեղը Կիւլիստանի Մելիք նշանակեց ուրիշ մը:

Մելիք Աբով հաստատուեցաւ Բօլնիս, եւ ապա 1795ին Իպրահիմ խանի հետ հաշտուելով դարձաւ Ղարապաղ, եւ բնակեցաւ Կիւլիստան:

Իր որդին Մելիք Ֆրէյտուն ստացաւ Բօրչալուի մէկ մասը, եւ Սողչա-Ղալան, իսկ իր հօրեղբայրը՝ Մելիք Աբովը ստացաւ Բօլնիսը:

Վրաստան գաղթող Մելիքներուն մէջ Մելիք Աբով դիրք գրաւեց իր քաջութեամբ, եւ իր շուրջ հաւաքեց ուրիշ տեղերէ Վրաստան ապաստանող Հայեր, որոնց մէջ էին Ախալցխայէն բերուած 1,000 ընտանիքները:

Մելիք Աբով մեռաւ 1808ին:

Մելիքներու իրաւունքները կրճատուած էին եւ այլեւս իշխանութիւն մը չէին ներկայացներ:

Մելիք Բէկլարեանք 1797—1809 Վրաստան մնալէ վերջ դարձան իրենց նորտերով Ղարապաղ եւ Կիւլիստանը ետ ստացան Իպրահիմ խանէն եւ իբր կալուածատէր հոն ապրեցան:

## Բ· ԳԱՆՁԱԿԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ղարապաղի արեւելեան կողմը կը գտնուէր Գանձակի գաւառը, առանց շատ որոշ սահմանով անջատուած ըլլալու, վասնզի Խամսայի մելիքութիւններէն Մելիք Բէկլարեաններու սեփական Կիւլիստանը կամ Իքիրմիտօրդը Գանձակի ալ մաս կը համարուէր:

Գանձակ, երբեմն Հայ եւ իսլամ իշխանութիւններու ոստանը, հայաշատ գաւառ մըն էր, ուր Հայեր նպաստաւոր պարագաներէ օգտուելով Ղարապաղի օրինակին վրայ, կազմած էին ժառանգական մելիքութիւններ, որոնք աւելի բարեբախտ եղած են Գանձակի խաներուն հետ չունենալով այն հակառակութիւնը որ ունէին Ղարապաղի մելիքները եւ Շուշիի խաները:

1579ին, Օսմանցի թուրքերը պահ մը առաջացան մինչեւ Գանձակ եւ հոն տիրապետեցին, Գանձակի հետ գրաւելով Զարաբերդը, Զարեքի գետէն մինչեւ Երասխ:

1607ին Շահ Աբաս վերագրաւեց Գանձակը եւ կոտորեց թուրքերը: Կործանեց նաեւ հին քաղաքը եւ անկէ քիչ հեռու հիմնեց նորը, որ պիտի կոչուէր Աբբասապատ:

Շահ-Աբաս առաւ եւ կործանեց նաեւ Շամքօրը:

Շահ Աբաս, Գանձակ գաւառին կառավարութիւնը յանձնեց պարսիկ խանի մը, որուն ստորադրուած էին նաեւ քանի մը Հայ մելիքութիւններ (Րաֆֆի, *Խամսայի Մելիքները*, էջ 120):

Ասոնք են,

### 1· ԳԱՐԴՄԱՆ (ՈՍԿԱՆԱՊԱՏ)

Արցախի Գարդման գաւառը վաղուց առանձին իշխանութեան մը կայան եղած է (տես. վերը, էջ 173)։

Շահ Աբաս 1601ին անոր մէկը մասը, Ոսկանապատը կեդրոն ունենալով մելիքութեան մը վերածեց Գեղարքունեաց Մեծ Մազրայի իշխողներուն ընտանիքէն իրեն սիրելի Նազար (վերակոչուած Շահ Նազար, այսինքն «Շահի-աչք») անուն անձի մը տալով զայն:

Նազար, Մելիք Բախիէն շատ առաջ Մազրայէն Ոսկանապատ տեղափոխուած եւ հետզհետէ իրեն ենթարկած եւ իշխած էր Միրզիկ, Մուռուք եւ Բրաջուր գիւղերուն (*Արցախ*, էջ 272—278):

Մելիք Շահնազարի յաջորդած են ըստ Եր. Լալաեանցի եւ Մակար եպս. Բարխուտարեանցի,

Մելիք Յովսէփ Ա.

Մելիք Եաւրի (մեռած 1720)

Մելիք Յովսէփ Բ. (մեռած 1730)

Մելիք Գաբրիէլ (մեռած 1780)

Մելիք Յովսէփ Գ. (մեռած 1826) (1)

Սակայն 1601ին Մելիքութեան բարձրացած Մելիք Շահ Նազարի եւ 1720ին մեռած Մելիք Եաւրիի միջեւ միայն մէկ Մելիքի մը (Յովսէփ Ա.) գոյութիւնը խնդրական է:

Հաւանօրէն Անգեղակոթի ժողովին մասնակցող Ասատուրի որդի Սարուխան բէկ եւ իր եղբայրը՝ Նազար, որոնց համար յատկապէս կը շեշտուի թէ Ոսկանապատ գիւղէն էին, այս տոհմէն կրնան ըլլալ:

Մելիք Շահնազարեան տոհմին պատկանող միւս յիշատակեալ մելիքներուն մասին ոչ մէկ տեղեկութիւն կայ: Րաֆֆի (*Խամսայի մելիքութիւնները* էջ 120) անցողակի կը յիշէ այս մելիքներէն Մելիք Յովսէփը, որ ունէր գեղեցիկ աղջիկ մը զոր Գանձակի Ջաւատ խանը ուզած է իր հարէմը առնել: Մելիք Յովսէփ կամ Եուսուֆ ազատելու համար իր աղջիկը՝ ընտանեօք խոյս կուտայ դէպի Շուշի, սպանելէ վերջ խանին լրտեսը՝ Ղարանց պէտը:

Մելիք Եուսուֆ կը մնայ Շուշի, մինչեւ որ ռուսերը կը գրաւեն Գանձակը եւ կ'սպաննեն Ջաւատ խանը (3 Յունուար 1804):

Մելիք Շահնազարեանները այդ թուականէն վերջ ապրած են Ոսկանապատ իբր հողատէր-կալուածատէրներ (*Ազգագր. Հանդէս*, Ն. 266—267):

(1) *Ասոր եղբայրն էր Բոչար բէկ (մեռած* 1840) *և զաւակներն էին Բէկլար բէկ և Նասրի բէկ։*

## 2. ԲԱՐՍՈՒՄԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆ

Այս խանութիւնը հաստատուած է Գանձակի Ջաւադ խանէն (1756—1804), որ Մլզնաբերդէն մինչեւ Եօթն Աղբիւր տարածուող հողերը նուիրած է Մելիք Ռոստոմի:

Այս սահմաններուն մէջ էին Հանգշափոր, Քարատակ, Վերին եւ Ներքին Ղութուլներ, որոնք այժմ աւերակ են (*Ազգագրական Հանդէս*, Ե. էջ 268):

Մելիք Ռուստոմի նախնիքը Լոռի բնակած են իբր կալուածատէրներ: Իրենցմէ մին կը մտնէ վրաց արքունիքը իբր թաւադ (իշխան) եւ ապա կը դիմէ Շահ Աբասի եւ անկէ խան տիտղոսը կ'ստանայ եւ կը կոչուի *Թաւադ խան*, վրացի եւ պարսիկ տիտղոսներ անուն դարձնելով:

Իր որդին կը կոչուէր Ռոստոմ, իսկ անոր որդին Այտին, որոնք միայն անունով ծանօթ են:

Այտինի որդին Մելիք Ռոստոմ, Ջուանշիր գաւառի Գիւլ-Եարաղ գիւղի Մելիք դառնալով Պարսկաստանէն գաղթած էր հոն եւ ամուսնացած Կապասցի Ապրէս աղայի Վարդ խաթուն աղջկան հետ, որ Իպրահիմ խանը ինքն կնութեան առնել կ'ուզէր:

Անոր մեծ եղբայրն էր Միսայէլ բէկը, որ ինչպէս տեսնուեցաւ Իպրահիմ խանի տուած խոստումէն զլացած, փորձեց սպաննել Ջրաբերդի Մելիք Մէջլումը, այդ մելիքութիւնը ինքն առնելու համար, սակայն բռնուելով գլխատուեցաւ:

Երբ Մելիք Մէջլում Վրաց Հերակլ թագաւորին հետ կը մեկնի Թիֆլիս, Իպրահիմ խան Ջրաբերդի Մելիք կը նշանակէ Մելիք Ռոստոմը, եւ զայն իրեն գործիք կը դարձնէ (տես. վերը, էջ 384):

Իր կինը երբ անպատուուեցաւ Իպրահիմ խանէն, Մելիք Ռոստոմ, ինչպէս տեսնուեցաւ դիմեց անոր հակառակորդ Նուխիի Սելիմ խանին, որ անոր ընծայ կուտայ Դաշ-Բուլաղ գիւղը, ուրկէ Ռոստոմ շարունակ կը յարձակի Շուշիի բերդին վրայ եւ բաւական վնասներ կը պատճառէ:

Քիչ ժամանակ վերջը Մելիք Ռոստոմ Ղարապաղէն եւ Նուխիէն 300 ընտանիք առնելով կը գաղթէ Գանձակի խանութեան սահմանները եւ կը հաստատուի վերոգրեալ շրջանակին մէջ:

Մելիք Ռոստոմ կ'ապրի Գանձակի մէջ եւ շատ սիրելի կ'ըլլայ Ջաւադ խանին:

Անոր նախանձելով խանին շրջապատողները, կ'սպաննեն զայն 1794ին (1):

1800ին Մելիք Ռոստոմի ժողովուրդը, Լեզգիներու յարձակումներէն ստիպուած, կը հետեւի անոր փեսին Մելիք Բեկլարեան Աբով Գ.ի օրինակին եւ կը գաղթէ Բոլնիս, իսկ ուրիշ մաս մը՝ Թիֆլիս, ուր Հաւլաբարի Շամքորեցւոց թաղը կը կազմեն:

Բոլնիսի մէջ կը մեռնի Մելիք Ռոստոմի որդին Ստեփան, իսկ անոր որդի Ապրէս ժողովուրդին մէկ մասին հետ կը դառնայ Բարսում գիւղը եւ այնտեղ կը բնակի, տիրանալով Մելիք Ռոստոմեաններու կալուածներուն, որոնք կը մնան իր ժառանգորդներուն:

## 3. ԳԵՏԱՇԷՆ

Գետաշէն կամ Չայքենտ, իր շրջակայ գիւղերով կը վերաբերէր Մելիք Մնացականեաններուն, որոնց պատմութիւնը բոլորովին մութ է: Մակար եպս. Բարխուտարեանց (*Պատմ. Աղուանից*, Ա. էջ 150) կը կարծէ թէ Կիւրիկեան Բագրատունիք, մելիքութեան ծագումէն վերջ Գարդման գաւառի մի քանի վայրերուն ինչպէս Գետաշէնի մէջ, բնակած եւ իշխած են:

Տեսնուեցաւ թէ Բարսում գաւառին Մելիք Ռոստոմեանները արդէն այդ աւանդութիւնը պահած էին (տես. վերը, այս էջ): Այս տունէն կը յիշուի միայն Մելիք Ետիգարի որդի Մելիք Մնացականը (Րաֆֆի, *Խամսայի Մելիքութիւն*, էջ 120):

Իսկ այս տոհմին վերջին Մելիքը եղած է Մելիք Սարգիս Բ. որ քաջ անձնաւորութիւն մը եղած է եւ մասնակցած է Ջաւադ-խանի պատերազմներուն, նախ Լեզգիներու դէմ եւ ապա Ռուսերու դէմ: (Ե. Լալայեան, *Ազգագր. Հանդէս*, Ե. 269):

## 4. ՄԵԾ ԲԱՆԱՆՑ ԵՒ ԽԱՉԱԿԱՊԻ ԳԻՒՂ

Այս մելիքութեան պետերն ալ Կիւրիկեան Բագրատունիներու սերունդին կը պատկանէին (*Պատմ. Աղուանից*, Ա. էջ 150):

Խաչակապ Արցախի Գարդման գաւառին մէջ գիւղ մըն է, Կիրանցի հիւսիսային կողմը:

Այս մելիքութիւնը ենթակայ էր Գանձակի խաներուն (Րաֆֆի, էջ 120): Հոս կ'իշխէին Մելիք Մատթէոսեանները, որոնք կը բնակէին Մեծ-Բանանց եւ Խաչկապ գիւղերը: Յայտնի չէ թէ այս մելիքութեան հետ կապ ունին Խաչկապի Մելիք Մովսէսը, 1668ին յիշուած եւ Հարցհանգիս եւ Խաչակապ գիւղը բնակող՝ Մելիք Սիմաւոնը (Սիմէոն) (տես. *Արցախ*. էջ 45 եւ *Պատմ. Աղուանից*, Ա. 150 եւ Բ. 57—58):

(1) *Մարմինը կ'ամփոփուի Գանձակի Ս. Յովհաննէս Մկրտիչ Մայր-եկեղեցիին գաւիթը, սա տապանագիրով.*

«Անմոռաց յայս տապան քաջ անուանի. հանգչի մարմին Մելիք Ռոստամի, Յազգէն Բագրատունի Հայկազանց տոհմի, Տիրող Բարսում, Գանձակ նահանգի, ծնեալ 1722, վախճանեալ 1794 ամի» (Ազգագր. Հանդէս, Ե. էջ 268): *Կը նշանակէ որ Մելիք Ռոստոմեանք ինքզինքնին կը նկատեն հաւանօրէն Լոռիի Կիւրիկեան Բագրատունիներու սերունդ, եւ իրենց գրաւած գաւառը կը կոչեն Բարսում:*

## 5. ՄԻԱՓՈՐ ԳԱՒԱՌ

## (ՄԵԾ ՂԱՐԱ ՄՈՒՐԱՏ)

Ղազախի գաւառին մէջ կը գտնուէր այս գիւղը, որ կեդրոնն էր նախնեաց Գարդման գաւառին երեք գաւառակներէն (Միափոր, Տաւուշ եւ Զակամ) մէկուն՝ Միափորի եւ կը գտնուէր Արցախի Գարդման գաւառին եւ Գեղամայ լճին միջեւ:

Ըստ Զաքարիա Սարգաւագի (Ա. էջ 23–26) Շահ Աբաս Ա. Թիֆլիսէն դարձած ատեն Միափոր գաւառի Ղարա-Մուրաս գիւղացի հովիւ Արայի կուտայ հովարտակով իբրեւ ժառանգութիւն որդւոց որդի *Միափոր=Փառխոս* գաւառին մելիքութիւնը, որ կապ մը ունի թերեւս Փառխոսի թագաւորութեան հետ (տես. վերը, էջ 176):

Զաքարիա կը հաւաստէ թէ 1637ին նոյն գիւղին մէջ գահակալած է այս հովուութենէ մելիքութեան բարձրացած Մելիք Արայի համանուն թոռը (Մակար եպս. Բարխուտարեան, *Պատմ. Աղուանից*, Ա. էջ 151 եւ Բ. էջ 57):

Այս արմատէն սերած են ըստ ոմանց Մելիք Սարգիսեանները, որոնց պապերը շատ կանուխէն Ղարա Մուրասէն տեղափոխուած են Շուլաւեր (Մակար եպս. Բարխուտարեանց *նոյն.* Բ. էջ 57):

Ուրիշ տեղեկութիւն չկայ, այս մելիքութեան վրայ:

*
* *

## ՏԵՐՊԵՆՏ

## (ԽԱՉ-ՄԱՍ)

Ըստ Սարգիս եպս. Հասան Ջալալեանի Կապ-եանի Փիլիպպոս թագաւորի (տես. վերը, էջ 175–176) յաջորդներէն Յովհաննէս եւ Գրիգոր թագաւորները, թաղուած են մերձ կասպեան Ղուբայի խաչ-մաս գիւղի գերեզմանատունը (1) բայց Մակար եպ. Բարխուտարեանց չէ գտած անոնց շիրիմները *(Աղուանից երկիր եւ դրացիք* էջ 134 եւ *Աղուանից Պատմութիւն*, Բ. էջ 15):

Կը պատմուի որ այս երկու թագաւորները մեռած են խազրաց եւ Սեւ Հոնաց թագաւորներուն հետ (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 15):

Այս հեռաւոր վայրին մէջ յայտնի չէ թէ անոնք իշխողներ էի՞ն թէ ապաստանեալներ:

Անոնց սերունդէն կը կարծուի Պալա-Ղազարն, որ անպարտելի քաջութեամբ պաշտպանած է խաչ-մաս գիւղի Հայերը արշաւող Լեզգիներու դէմ, իբր խաչ-մասի բնիկ տէրը եւ իշխանը (*նոյն.*)։ Ան կը տիրէր ոչ միայն խաչ-մասի շրջակայքին (2) այլ նաեւ ամբողջ գաւառին իբրեւ պապենական սեփականութիւն։ Շրջակայ մահմետականները շատ անգամ յարձակած են անոր վրայ եւ ճիգ թափած են իսլամացնելու զինքն եւ իր հպատակները, սակայն միշտ յաղթուած են, ատոր համար զինքն կոչած են Պալա (*Պէլա*=փորձանք) Ղազար:

Իրեն յաջորդած է իր որդին Զաւաշ բէկ, որ ունէր երեք որդի, Պալա-բէկ, Յովսէփ բէկ եւ Պետրոս բէկ: Ասոնցմէ առաջինը անզաւակ էր, իսկ երկրորդը Յովսէփ բէկ (✝ 1 Սեպտ. 1862) որ իր տապանաքարին վրայ կը կոչուի «երեւելի եւ մեծանուն Նոր-խաչմազու կալուածատէր Հայկազն տոհմին Ղազարեանց Յովսէփ բէկ Զաւաշ Բէկեանց» սպաննուած է թշնամիներու դաւով: Եղած է չափազանց քաջ անձ մը:

Իսկ Պետրոս բէկ մեռած է միայն աղջիկ մը ձգելով իբր ժառանգ:

Այսպէս վերջ գտած է այս իշխանութիւնը:

## Գ. ԳԵՂԱՄԱՅ ԵՐԿԻՐԻՆ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Կար ուրիշ Հայ մելիքութիւններու խումբ մը Ղարապաղի արեւմտեան կողմը անոր դրացի Գեղարքունեաց (Կէօք-չայ) մէջ որ ընդարձակ իմաստով շուրջ բոլորն էր Սեւանայ լճին, եւ ժամանակին համաձայն ընդարձակուած կամ սահմանափակուած էր: Գեղարքունիք մաս կը կազմէր Սիւնեաց նահանգին, թէեւ Արցախէն ալ մասեր երբեմն անոր խառնուած էին:

Այս շրջանակին մէջ գտնուող մելիքութիւնները, որոնք ԺԶ. դարուն կազմուած են, ստորադասուած էին Երեւանի եւ երբեմն ալ Նախիջեւանի խաներուն։ Հաւանօրէն Սեւանայ լճին հիւսիսային կողմը՝ Գեղամայ երկրին մելիքութիւնները հին իշխանութիւններու շարունակութիւնն էին:

Հոս այս շրջանին մէջ կային հետեւեալ մելիքութիւնները:

### 1. ԾԱՐ

Ծար եւ Սոդ երկու գաւառներ իրարու դրացի երկու շրջանակներ էին, մին Սիւնեաց եւ միւսը՝ Արցախի նահանգներուն մէջ:

Այսպէս, Սոդք կամ Սոդից գաւառը (հիմա Զոթ) Սիւնեաց նահանգին Գեղարքունի կոչուած գաւառին չորս գաւառակներէն մին էր եւ ունէր 47 գիւղեր, իսկ Ծար Արցախի նահանգին վերին գաւառ-

(1) *Հետաքրքրական է որ իրենց գերեզմանաքարերուն վրայ* «Յովհաննէս Կրէյար եւ Գրիգոր Կրէյար» *գրուած է։*

(2) *Մակար եպս. Բարխուտարեանց, իր* Աղուանից երկիր եւ դրացիք, *(էջ* 132) *գործին մէջ կ'ըսէ թէ Ղազար կը տիրէր Խաչ-Մասի եւ ինն մահմետական գիւղերու. մինչ* Պատմ. Աղուանիցի, *(Բ. էջ* 15—16) *մէջ ամբողջ գաւառին։*

ներէն մին էր: Գաւառին գլխաւոր վայրը՝ Ծար գիւղաքաղաք մըն է որ երկար ատեն եղած է Դոփեանց իշխանանիստը:

Այս երկու գաւառներու վրայ Ջահան Շահի ատեն (1437—1467) կ'իշխէր Դոփեանց Շահանշահ իշխանին որդին Ուլուբէկ, (*Պատմ. Աղուանից*, Ա. էջ 213 եւ Բ. էջ 25) որ ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 366) Դոփեանց իշխանական տոհմին երեք ճիւղերէն կը պատկանէր Ուլիբէկեանց տան (1): Ուլուբէկ մելիքութիւն ստացած էր Ջահան Շահէն Գեղարքունեաց եւ Ծար գաւառներու վրայ եւ բնակութիւն հաստատած էր Գեղարքունեաց Մեծ Մազրա աւանին մէջ: Քաջութեամբ մեռաւ պաշտպանելով հայրենիքը եւ ժողովուրդը, (*Պատմ. Աղուանից*. Բ. 25):

Մելիք Ուլուբէկի կը յաջորդէ իր որդին Մելիք Աբով Ա. որուն կը տրուի «*իշխող տանն Գեղամայ*" տիտղոսը:

Իրեն յաջորդած է Մելիք բէկ Ա, իր որդին, որուն մելիքութիւնը կը հաստատուի Շահ Թահմազ Ա.էն 1557ին:

Շինարար մելիք մը եղած է: Ունեցած է հինգ որդի, որոնցմէ անդրանիկը՝ Մելիք Շահնազար Ա. կը յաջորդէ իր հօրը (*Պատմ. Աղուանից* Բ. էջ 26):

1601ին, Մելիք Շահնազար, Շահ Աբասի (1585—1629) շնորհներուն կ'արժանանայ եւ վարձատրութիւններ կ'ընդունի:

Առաքել Դաւրիժեցի (էջ 97) կը գրէ թէ «*Ելեալ Շահն ի Թիֆլիսու գնաց ի գաւառն Գեղամայ եւ բանակեցաւ անդէն բանակն արքունի, եւ ինքն Շահաբաս իջեւանեցաւ ի տան Մելիք Շահնազարին, որ էր ի գիւղն Մազրայ (2), բնական ինոյն գեղջէն: Եւ էր Մելիք Շահնազարս յազգէն Հայոց եւ հաւատով քրիստոնեայ, իշխան հզօր եւ փառաւոր, որ արար հիւրընկալութիւն Շահին որպէս վայել է թագաւորի՝ եւ էր ինքն բարեկամ եւ մտերիմ եւ արգոյ առաջի թագաւորին: Վասն որոյ եւ թագաւորն պատուական եւ ազնիւ զգեստուք շքեղացեալ խիլայեաց եւ պարգեւեաց նմա զիշխանութիւն մէլիքութեան գաւառին, եւ այլեւս դաստակերտս եւ գեղօրայս իւր նմա եւ եղբարց նորա: Եւ հաստատուն նոմոս գրեաց եւ կնքեաց թագաւորական կնքով եւ ետ նոցա զի անփոփոխ լիցի ժառանգութիւն այն նոցա եւ զաւակաց նոցա յազգէ յազգ մինչեւ յաւիտեանս*»:

Շահ Աբասի շնորհած վայրերը լոս Շահին հրովարտակին էին Ալթունթախտ, Գիւրճի Վերան, Միրապատ, Մեծ Ենկիջա, Փոքր Ենկիջա, Ամարաաք, Փոքրարաք, Մաքար, Ղանղուլեղդարա, Դրախտիկ եւ Գիւնի:

Մելիք Շահնազար վայելած է Շահին մտերմութիւնը (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 26–27) ինչպէս կ'երեւի Շահին անոր ուղղած մէկ նամակէն:

Մելիք Շահնազարի մասին կը խօսին երկու ժամանակակից յիշատակարաններ, մեծ գովեստով· Մին կ'ըսէ թէ «*իվերջացեալ ժամանակիս ոչ գոյր նման սորա իշխան իազգս Հայոց. զի է յոյժ փարթամ գոյիւք եւ առատ ինչիւք*» (Լէօ, Գ. էջ 804), «*պատուեալ եւ մեծարեալ ի խրոխտ կայսերէն պարսից՝ իՇահ Թամազէն (3) եւ իՇահ Խուտայբանտայէն (4) եւ իՇահ Իսմայիլէն (5) եւ այլ իշխանացն այլազգեաց՝ իԽանէ եւ իՍուլթանէ, բազում անգամ փառաւք խիլայեալ*» (նոյն):

Արցախի Փառիսոս գաւառի Ղուլալի գիւղին Աւետարանին մէջ (տես. *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 27) 1575 թուականին կը յիշուի ինքը՝ իբր «*պարոնաց պարոն եւ զիշխանաց իշխան*» եւ իր հայրը՝ «*զպարոն Մելիք բէկն*»:

1606ին կը մեռնի «*տէր եւ իշխան երկրիս Գեղամայ*" Մելիք Շահնազարը եւ իրեն կը յաջորդէ որդին Մելիք Նաւրին:

Անոր իշխանութեան շրջանին Հին Նախիջեւան եւ Երեւան կը գրաւուին պարսիկներէն: Մելիքին եղբայրը Քամալ բէկը նշանաւոր կը հանդիսանայ Օսմանցիներու դէմ մղուած պատերազմին մէջ եւ այս առթիւ կ'ստանայ Ղարաախազ գիւղի թագաւորական հարկը գիւղով միասին (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 28) 1605ին (6):

Շահ Աբաս Մելիք Նաւրիի բաշխած է Գեղամայ գաւառին հողերը, ինչպէս կը հասկցուի Ղորչի Մուամմէտ Ղուլի բէկին ուղղուած 1607 թուական հրովարտակէն (տես. *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 28):

1610ին Մելիք Քամալ կը յաջորդէ իր եղբօրը Մելիք Նաւրիի որ «*անողորմ մահուամբ մեռած*" *էր* (*նոյն*. 28):

Անոր կը յաջորդէ 1620ին իր որդին Մելիք Շափուրը եւ այս վերջինին 1650ին իր եղբայրը՝ Մելիք Աբով Բ.ը որ Ղարանլուխ Դարայի դաշտը շահելով, տիրած է իր պապենական իրաւունքներուն եւ սեփականութիւններուն:

Իրեն յաջորդած են կարգով

Մելիք Բէկ Բ.

Մելիք Շահնազար Բ. որ 1695ին կը շինէ եկեղեցի մը իր կնոջ Խանզատէի հետ (*Պատմ. Աղուանից*, Բ. էջ 29):

Անոր օրով Շուշիի Մէյտի խանը կը յափշտակէ Ծար գաւառի մէկ մասը: Իր որդին եւ յաջորդը Մելիք Բէկ Գ. կը դիմէ Շահ Սուլթան Հիւսէյինին որ 1708ին կը հրամայէ Շուշիի եւ Երեւանի խաներուն որ Ծարը ետ դարձնեն:

(1) *Ոմանք կը համարեն սերունդ Սոդ. հաստատուած Ծարի Հասան Բ. իշխանին (Եսայի Կաթողիկոս).*

(2) *Մազրա գիւղը հաստատուած է Սոդի դաշտին մէջ.*

(3) *Թագաւորած է* 1525—1576

(4) » » 1577—1588

(5) *Թագաւորած է քանի մը ամիս* (1589)

(6) *Մակար եպս. Բարխուտարեանց* 1013 *Հիճրէթի թուականին համապատասխան նշանակած է* 1650, *որ տպագրական վրէպ է հաւանօրէն, փոխանակ* 1604—5 *պէտք է ըլլայ.*

Ասոր յաջորդած է Աղաջան բէկը (1), եւ ասոր իր որդին Միանսար որ ժամանակակից է Նասիր Շահի:

Մինասար կ'սպաննուի եւ Գեղարքունեաց գաւառները կ'աւերուին հետզհետէ, մինչեւ Մելիք Պիւլպիւլի ժամանակ, երբ 1804ին Ցիցիանովի զօրավարութեամբ ռուսերը պարսից վրայ կը քալեն:

Այս միջոցին Գեղարքունեաց եւ Ծարի Մելիք Բարսեղը, (որու որդին ըլլալը յայտնի չէ), 500 տուն սեփական ժողովուրդով կը գաղթէ Գանձակի կողմերը, զզուած պարսիկ բռնակալութենէն։

Ծարի բնակիչներն ալ կը ցրուին զանազան վայրեր:

## 2 · ՍՈԴ

Գեղամայ երկիրին մելիքութիւնը որ իր մէջ կը պարունակէր Ծար եւ Սոդ գաւառները, ինչպէս կ'երեւի, վերջէն երկուքի բաժնուած է, եւ Սոդ կազմած է անջատ մելիքութիւն մը, որուն կազմութեան պարագաները անծանօթ կը մնան: Առաջին յիշատակուած մելիքն է Մելիք Բաղր Ա. որդին Գեղամայ երկրին Մելիք Բէկ Ա.ի (1557) եւ թոռն Մելիք Աբով Ա.ի:

Այս Մելիքը որ Սոդի կ'իշխէր, 1627—1628 թուականներուն Մարզայէն կը տեղափոխուի Վարանդայի Աւետարանոց կամ Ջանազչի գիւղը, իսկ Սոդի մէջ մելիքութիւնը հաւանօրէն շարունակուած է, որով թէ Սոդի եւ թէ Վարանդայի մէջ երկու նոյն տոհմէն (Մելիք Շահնազարեան) մելիքութիւններ գոյութիւն ունեցած են:

Այսպէս Մելիք Բաղրի Վարանդա տեղափոխուելէն վերջ կը յիշուի Սոդի մէջ,

Մելիք Բէկ Բ. ...
Մելիք Միրզա Բէկ Բ. (1650—1670)
Մելիք Միրզա խան (1671—1694)

Սոդի Շահնազարեաններու յաջորդներէն մին էր, ապահովաբար Թօփուզ Մելիքեան Մելիք Շահնազարեան, Գեղարքունեաց Մելիք որ մասնակցած է Հայ զօրքով (տես. վերը, էջ 379 եւ 393), Քէօփրուլու Թօփուզ Ահմէտ փաշայի դէմ Նասիր Շահի Կարբիի դաշտին վրայ մղած ճակատամարտին:

Մելիքը վարձատրուեցաւ ոչ միայն իր հայրենի ժառանգական իրաւունքը ստանալով, այլ նաեւ նշանակուեցաւ Երեւանի խանէն անկախ կառավարիչ նաեւ մահմետական տիրապետողներու վրայ (Լէօ. Գ. 714): Պատմուեցաւ (տես. վերը, էջ 379) թէ անիկա ինչպէս զոհ գնաց իր բարերարութեան եւ ինչպէս Նասիր նոյն պաշտօնը տուաւ անոր որդւոյն Մանուչարի, որ նոյնպէս սպաննուեցաւ Նասիրի մահէն (1747) վերջը:

Մանուչարէն վերջ անյայտ կը մնան Սոդի իշխողներուն անունները:

⁂

Ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 401) նոյն այս Մելիք Շահնազարեան տոհմէն սերած էր Արցախի Գարդմանի գաւառը հաստատուած ուրիշ մելիքութիւն մը, որ ենթակայ էր Գանձակի խանութեան:

## 3 · ՂԱՓԱՆԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ղափանը, Սիւնեաց Բաղք եւ Ձորք գաւառներուն կը համապատասխանէ, եւ Կապանի կամ Բաղաց թագաւորութեան որորանը եղած է (տես. վերը, էջ 263):

Խոր ձորերու, եւ լեռնային հանգոյցներու, վիթխարի գագաթներու անտառոտ աշխարհ մըն է ան, հռչակուած մանաւանդ իր անմատչելի բերդերով. որոնց թիւը կը հասնէր եօթնի, եւ այդ պատճառով իսկ Ղափանը կը կոչուէր «Եօթնաբերդ գաւառ»: Հոն կ'ապրէր տոկուն եւ քաջ ժողովուրդ մը, որ Բաղաց թագաւորութեան ջնջուելէն վերջ ենթարկուեցաւ մահմետական տիրապետութեան, բայց կառավարուեցաւ իր մելիքներով, դրացի ուրիշ լեռնագաւառներուն պէս:

ԺԷ. դարուն Ղափան կը պարունակէր ոչ միայն Ձորք եւ Բաղք (Կապան) գաւառները, այլ նաեւ Սիւնեաց նահանգին կարեւոր մէկ մասը, ինչպէս նաեւ ընդարձակ տարածութիւններ հիւսիսային կամ բուն Ղարապաղէն: Բուն Ղափանը, կը կոչուէր Փոքր Ղափան, իսկ Մեծ Ղափանը այնքան ընդարձակ էր որ մինչեւ իսկ Գանձակը անոր մէջ կ'առնուէր: Այսպէս, Ղափանը այն ժամանակուան սահմաններով շատ խոշոր հայաբնակ կեդրոն մըն էր (Լէօ. *Պատմ. Հայոց Գ.* էջ 665—666), որ իր մէջ կ'առնէր նաեւ այսօրուան Զանգեզուրի շրջանակը, իր բաժանումներով:

Այս բազմահայ միջավայրին մէջ, որ միեւնոյն ատեն առեւտրական կեդրոն մըն ալ էր, հայկական ազատագրութեան գաղափարը ծնունդ առաւ (*Նոյն*), եւ իրագործուեցաւ Դաւիթ Բէկի ջանքերով:

Ընդարձակ առումով Ղափանի շրջանի մէջ կային կարգ մը Հայ մելիքներ որոնք իրենց օրհասի օրերը կ'ապրէին երբ Դաւիթ Բէկ ամբողջ երկիրը միացնելով իր իշխանութեան տակ հայկական իշխանութիւն մը կազմեց, որ դժբախտաբար չկրցաւ երկար ապրիլ:

Այս շրջանի մէջ Դաւիթ Բէկէն առաջ գոյութիւն ունէին հետեւեալ Հայ մելիքութիւնները:

*(1) Աղաջանի եղբայրը Միրզա Ջան բէկը Շահին Արքունիքին մէջ կը ծառայէր։ Ասոր որդին է Ծատուր բէկ և Թոռը՝ Դաւիթ բէկ որ Փարիզի մէջ ուսում առած է, և Նափոլէոնի կողմէ դեսպան ղրկուած է Պարսկաստան, և ապա* 1806*էն* 1822 *Պարսից դեսպան եղած է Փարիզի մէջ։ Մեռած է* 1831*ին:*

## 1. ԱՆԳԵՂԱԿՈԹ

Անգեղակոթ կը գտնուէր Սիւնեաց Ծղուկ գաւառի՝ Սիսիանի շրջանին, (1), Շաղատ եւ Շաքի գիւղերուն մէջտեղ: Մէկ մասը Պազար-Չայի ձախ ափին վրայ է, իսկ միւսը՝ քիչ մը զառիվեր բարձրաւանդակի մը: Երբեմն մեծ գիւղաքաղաք էր, այսօր պարզ գիւղ մը:

Ծղուկ գաւառը կը կոչուէր նաեւ Սիւնիք կամ Սիսական, իբր Սիւնեաց իշխաններու բուն նստոցը:

Սիսական անունն է որ հաւանօրէն այլափոխուելով Սիսիան եղած է եւ տրուած է Ծղուկի դաշտային մասին, (Երուանդ Լալայեան. *Ազգագր. Հանդէս Գ.* էջ 107):

Այս գաւառին մէջ, պարսիկ տիրապետութեան տակ, գոյութիւն ունեցած է Հայ մելիքութիւն մը որուն կեդրոնն էր Անգեղակոթ գիւղը, որ կը գտնուէր գաւառը արեւմուտքէն արեւելք կտրող Որոտնայ գետին վրայ:

Այս մելիքութեան նախահայրը կը համարուի Մելիք Շահրազ կամ Սահրազ (2), որուն ոստանն էր Անգեղակոթը որ միջոց մը դարձաւ քաղաքական շատ կարեւոր կեդրոն մը, վասնզի 1699ին Իսրայէլ Օրիի թելադրութեամբ հոն գումարուեցան շրջակայ մելիքները եւ տանուտէրները, Հայոց տէրութիւնը վերականգնելու մասին խորհրդակցելու համար:

Ուրեմն այս մելիքութիւնը հաստատուած էր արդէն գոնէ ժէ. դարուն վերջերը:

Մելիք Սահրազի յաջորդած են Մելիք Ամիրխան եւ ապա Մելիք Նարին որոնց մասին տեղեկութիւններ չկան, (*Ազգագր. Հանդէս*, Գ. էջ 117):

Մելիք Նարինի որդին եւ յաջորդը Մելիք Սատար, 1749ին կ'սպաննուի Նախիջեւանի Հայտար խանէն զրպարտութեամբ, ուրիշ Հայ իշխաններու հետ (Չամ. Գ. էջ 843):

Անոր որդին Մելիք Սահրազ Բ. Ագուլեցիները եւ Ղարապաղցիները առաջնորդած է Շուշի որպէսզի հոն հաստատուին, բայց ինքն մնացած է Անգեղակոթ, իսկ երբեմն նաեւ Բռնակոթ, որ վերջը եղաւ Մելիք Թանգեան մելիքներու ոստանը:

Մելիք Սահրազ Բ ի յաջորդեց Մելիք Դաւութ, որ պայքարի մտաւ նոր հաստատուած Բռնակոթի մելիքներուն հետ, մինչեւ որ ռուսերը տիրեցին երկիրին եւ վերջ տուին այս մելիքութեան:

## 2. ԲՌՆԱԿՈԹ

Բռնակոթ նոյնպէս Սիւնեաց Ծղուկ կամ Սիսիան գաւառին մէջ էր, վտակի մը մօտ:

Բռնակոթի մելիքներուն նախահայրն էր Մելիք Ստեփան, որ Անիի մէջ զօրապետութեան պաշտօն ունենալով մականուանուած էր Մելիք Սարտար: Յայտնի չէ թէ ի՞նչ պատճառով գաղթած է Բռնակոթ։

Անոր սերունդէն Մելիք Թանգի Ա. նշանաւոր կը հանդիսանայ եւ տոհմը իր անունով կը կոչուի Մելիք Թանգեան։

Անոր ժամանակ քուրդ խումբ մը կը յարձակի Բռնակոթի վրայ եւ կը թալանէ եւ կը վիրաւորէ իր հայրը:

Մելիք Թանգին վիրաւոր հայրը կը փախցնէ Տաթեւ ուր կը մեռնի ան: Ինքն կը մնայ Շնհեր մինչեւ որ Բռնակոթ կը խաղաղի։ Սակայն քիչ վերջը, իր եղբօրորդին Մանուչարի քուրդ կնոջ մը սիրահարուելուն պատճառով գաւառին քուրդերը կ'ըմբոստանան եւ կրկին կը խռովի երկիրը:

Նոյնպէս անգամ մը՝ իր եղբայրը՝ Փանումը (Ստեփան) կը փորձէ առեւանգել Անգեղակոթի Սահրազբէկեաններու հարսը եւ այս պատճառով կ'սպաննուի Փանումը: Մելիք Թանգի Ա. ասիկա իմանալով կ'ուզէ փախչիլ, սակայն Սահրազբէկեան Նազարը զայն կ'սպաննէ: Մելիք Թանգի Ա.ի կինը կը դիմէ Շուշիի Իպրահիմ խանին բողոքելու համար իր ամուսնոյն սպանութեան համար եւ կը խնդրէ իր որդին՝ Թանգունը Մելիք հաստատել:

Իպրահիմ խան կը կատարէ այս խնդրանքը, որով Սիսիանի երկու մելիքական տուները իրարու կը դէմ կը պայքարին: Մելիք Սահրազեան՝ Մելիք Դաւութ վրէժ լուծելու համար Նախիջեւանի խանին քով կ'ապաստանի եւ անկէ կուգայ Բռնակոթ եւ կրակի կուտայ Մելիք Թանգեաններու տունը:

Մելիք Թանգի Բ. երբ կը դառնայ Շուշիէն, եւ կը տեսնէ իր հօրենական տունը հրկիզուած, կը յարձակի Սահրազբէկեաններու տան վրայ եւ կը քանդէ:

Անկէ վերջն է որ կը յարի ռուսերուն եւ կը մասնակցի ռուս-պարսկական պատերազմներուն, որմէ վերջ Պարսկաստանէն եկած գաղթականները կը բնակեցնէ Ուզ, Ալելու, Մազրա, Թազագիւղ, Շաղատ, Անգեղակոթ եւ Բալաք գիւղերը:

Կատարած է նաեւ կարգ մը շինարարութիւններ:

Մելիք Թանգի Բ.ի յաջորդած է եղբայրը, Մելիք Ղուկասը, որ միայն երկու տարի իշխած է, վասնզի Ռուսերը վերջ տուած են այս մելիքութեան

*(1) Սիսեան կը կոչուէր Որոտնայ գետին (Պազար-Չայ) վերին եւ միջին հոսանքներու վրայ տարածուող հողամասը, և Զանգեզուրի մաս կը կազմէր (Լէօ. Գ. էջ 494): Այս շրջանին արեւելեան-հարաւային մասը կը կոչուէր Ծղուկ և արեւմտեան հիւսիսայինը՝ Այլախ (յետոյ Բազարքենդ):*

(2) *Հաւանօրէն որդի Մելքոնի (տես. Լէօ.* Հայոց Պատմ. Գ. 523)։

(Ե. Լալայեան, *Ազգագր. Հանդէս*, Գ. էջ 116—119):

Սիսիան այն վայրերէն մին է որ Սիւնեցի Դաւիթ Բէկի իշխանութեան ենթարկուած է:

1724—25 թուականներուն Դաւիթ Բէկ բնաջնջած է գաւառին թուրքերը եւ գրաւած է Որոտնայ մեծ եւ անառիկ բերդը (Լէօ, Գ. էջ 677 եւ 685), բայց Նախիջեւանի խանը օգտուելով Դաւիթ Բէկի զբաղած ըլլալէն Բարկուշատի կողմերը, յարձակած է Սիսիանի վրայ եւ շատ վնաս հասցուցած է:

Ղարապաղի Փանահ խանը. ինչպէս Բարգուշատը, Ղափանը եւ Զանգեզուրը, նոյնպէս նաեւ Սիսիանը գրաւած եւ Նախիջեւանի սահմանները հասած եւ բոլորովին անկախ եղած է, նոյնիսկ դրամ հատանելով իր անունով (Լէօ. Գ. էջ 762):

Ֆաթալի խան երբ պարտուած Սիսիանի ճանապարհով կը նահանջէր, Տաթեւի վանքին մէջ ամրացած Հայերը անձնատուր ըլլալ տալով, վանքը կը կողոպտէ եւ Մելիք Բաբան որ այդ Հայերուն պետն էր, գերի կը վարէ, սակայն Քերիմ խանի ապստամբութեան պատճառով թէ՛ իր աւարը եւ թէ՛ գերիները կը թողու Նախիջեւանի խանին, որ կ'սպաննէ Մելիք Բաբան (Լէօ. Գ. 765):

## 3. ՏԱԹԵՒ

Սիւնեաց նահանգին մէջ էր այս անունով նշանաւոր վանքը որ տուած էր նաեւ իր անունը շրջանին, որուն կեդրոնն էր Որոտնայ բերդը, որ Կապանի թագաւորութեան կը պատկանէր մինչեւ 1104, երբ Սենեքերիմ թագաւոր սպաննուեցաւ եւ Կապանի հետ Որոտնայ բերդն ալ անցաւ թուրքերուն: Այս բերդը կը գտնուէր համանուն վանքին արեւելեան-հիւսիսային կողմը, գետին անմիջապէս աջ ափին բարձրացող լերան վրայ, որուն երեք կողմը գահավէժ ժայռեր են եւ միայն մէկ կողմը դէպի առաջ թեքուելով փոքրիկ հարթութիւն մը կը կազմէ։ Լերան բունգաւաքը, որ նոյնպէս երեք կողմէն պատած էր բնական ժայռերով, եւ միայն մէկ կողմէն մատչելի էր, կը գտնուէր միջնաբերդը: Այդ բաց կողմն ալ փակուած էր հաստ պարիսպով մը (*Ազգագր. Հանդէս*, Գ. էջ 154):

1219ին Իւանէ Աթաբէկ տիրեց այս բերդին, իսկ Թաթարներու տիրապետութեան շրջանին Լիպարիտի որդի Սմբատ Օրբէլեանը կողմնակալ Բաչու Նոյի հաւանութեամբ վերստին տիրեց ամբողջ Որոտնայ երկրին (Չամ. Գ. էջ 246) եւ ինչպէս տեսնուեցաւ (տես. վերը, էջ 352) տուաւ իր եղբօր Տարսայիճին, որ զայն կառավարեց մինչեւ իր յաջորդելը Օրբէլեանց իշխանութեան եւ Վայոց Ձոր երկրին:

Այս Օրբէլեան տոհմէն մնացին իշխողներ ո՛չ միայն Որոտնայ, այլ եւ Տաթեւի մէջ մինչեւ մեր ժամանակները, նախապէս իբր իշխող տէրեր եւ վերջին ժամանակները սոսկ իբրեւ կալուածատէրեր (տես. Երուանդ Լալայեանց, *Ազգագր. Հանդէս*, Գ. էջ 153):

ԺԸ. դարուն սկիզբը հոս գոյութիւն ունէր Դաւիթ անունով Մելիք մը որ հաւանօրէն Օրբէլեան մըն էր:

Դաւիթ Բէկ երբ Ղափան կուգայ Վրաստանէն եւ կը յաղթէ Ղարաչօրլու եւ Ջիւանշիր թուրք ցեղերուն, Տաթեւի բնակիչները իրեն կը դիմեն, եւ կը խնդրեն զիրենք ազատել իրենց Մելիքէն, որ շատ կը նեղէր զիրենք: Մելիք Դաւիթ երբ իրենք ըմբոստացած էին իրեն դէմ, փախած էր Դաւրէժ եւ հոն իսլամացած էր, առնելով Բաղր անունը, իսկ իր որդիները անուանած էր Շահ Ղուլի (Շահի ստրուկ): Մելիք Բաղր ըստ Լէօյի (Գ. 675), Հայերու բոլոր գաղտնիքները պարսից կը յայտնէր, եւ կը յարձակէր Հայ գիւղերու վրայ եւ կը կողոպտէր զանոնք։ Անգամ մը խաբէութեամբ իր մօտ ճաշի հրաւիրելով Հայ զինուորականութեան պետերէն 55 հոգի, կը գլխատէ զանոնք եւ գլուխները Թահմազ Շահին կը ղրկէ: Հայ զինուորականութիւնը որոշեց այդ վտանգաւոր դաւաճանը մէջտեղէն վերցնել, սակայն ձեռնարկը այնքան դժուար էր որ Ղափանի բանակը 1723ին կոչ ըրաւ Աւան Իւզպաշիին որ միանալով իրեն կռուի Բաղրի դէմ (Լէօ. Գ. 633):

Դաւիթ Բէկի պատմիչին համաձայն Աւան 50,000 (!!) Հայ զօրքով կուգայ կը պաշարէ Որոտնայ բերդը, սակայն չի կրնար գրաւել (*Ազգագր. Հանդէս*, Գ. էջ 153 եւ Լէօ. Գ. 675): Նոյն տարին, Դաւիթ Բէկ կը պաշարէ այդ բերդը, եւ շնորհիւ յորդ անձրեւներուն որոնք փլցուցեր էին պարիսպին մէկ մասը, ներս կը մտնէ (Չամ. Գ. էջ 787) եւ կը բնաջնջէ այլազգիները (Ալիշան, *Սիսական*, էջ 217—218):

Դաւիթ Բէկ գերի կը վարէ նաեւ Մելիք Բաղրը:

Դաւիթ Բէկ անոր երեք օր (1) ժամանակ կու տայ, ապաշխարելու համար եւ ապա Շնհէրի անապատին դուռը կախել կուտայ (Եր. Լալայեանց, *Ազգագր. Հանդէս*, ԺԲ. էջ 181—182):

Տաթեւի Մելիքութեան հողերը Դաւիթ Բէկի իշխանութեան կ'ենթարկուին:

## 4. ՔՇԱԹԱՂ

Քաշաթաղ, (2) որ կը համապատասխանէ նախնեաց Աղահէճ գաւառին, կը գտնուէր, Հագարա-

(1) *Ըստ Շահումեանի հաւատուրացը 12 օր շարունակ եկեղեցիին մէջ բարձր ձայնով կը կրկնէր ժողովրդական աղաղակը «Հոյը Լուսաւորչի հաւատին, վա՜յ ուրացողին»,* (*Լէօ. Գ. էջ* 676).

(2) *Քըլթաղ յիշուած է նաեւ Քըլթաղք կամ Քաշաթաղք ձեւով.*

գետին (1) աւազանին մէջ: Քաշաղի կամ Մաղաւուզի կեդրոնն էր Խանածախ (2), ուր ԺԶ. դարուն վերջերը հաստատուած էր մելիքութիւն մը, որուն գլուխը կը գտնուէր Մելիք Հայկազն որդի Հախնազարի որ ուրիշ Հայ մելիքներու եւ Հայ երեւելիներու հետ գնաց Սպահան (*Առաքել Դաւրիժեցի*, էջ 16):

Մելիք Հայկազն Հախնազարեան եւ իր ընկերները Շահ Աբասը վստահեցուցին որ շատ դիւրաւ կարելի է գրաւել թուրքերէն՝ Այրարատեան դաշտը, Դաւրէժէն մինչեւ Կարս: Արդարեւ Շահ Աբաս 1603ին Դաւրէժէն մինչեւ Երեւան առաջացաւ: Այս արշաւանքի միջոցին մեծ ծառայութիւններ մատոյց Մելիք Հայկազն: Շահը ի վարձատրութիւն շնորհեց իրեն հայրենի գաւառին իշխանութիւնը, մասնաւոր պատիւներով:

Մելիք Հայկազն 1611ին հովանաւորեց եւ պաշտպանեց Սիւնեաց Մեծ Անապատի հիմնադիրները (Հ. Ներսէս վրդ. Ակինեան, *Մովսէս Գ. Տաթեւացի Հայոց Կաթողիկոսն եւ իր ժամանակը*, 1936 Վիեննա, էջ 185), եւ վանքը, ինչպէս նաեւ 1615ին հիմնարկեց իր իշխանութեան սահմաններու մէջ Հօշանց անապատը (*նոյն*.): 1617ին Մելիքսեդեկ Կաթողիկոսը մահէ ազատեց բարեխօսելով Շահին (նոյն 47—48 եւ *Առաքել Դաւրիժեցի*, էջ 217):

Մովսէս Տաթեւացի Կաթողիկոսին մեծ պաշտպանը եղած է: Ներսէս Մոկացի զայն կը ներբողէ (*Հայապատում*, ԺԴԸ):

Մինչեւ հիմա կը մնայ Մելիք Հայկազնի գերեզմանը Խանածախի մէջ (տես. *Բնաշխարհիկ բառարան* 331):

Ըստ Ե. Լալայեանի կը պատմուի թէ շատ խիստ եւ չարասիրտ մարդ մըն էր Մելիք Հայկազն: Ցանցաւորները դնել կուտայ եղեր կողովի մէջ, եւ բերանը փակել տալով, գլորել կուտայ եղեր մօտակայ բարձր լերան գագաթէն, որ մինչեւ հիմա կը կոչուէր Դաշ-Մելիք (= վա՛յ Մելիք) առնելով յանցաւորներու բացականչութիւններէն (*Ազգագր. Հանդէս*, Դ. էջ 14)։

Իր խստութենէն զերծ չէ մնացած նոյնիսկ որդին, որ ուզած էր հօրը մելիքութիւնը անոր կենդանութեան իսկ ստանձնել եւ գացած էր Շահին քով, իսլամութիւնը ընդունած եւ Ալլահվէրդի անունով ու պարսիկ զօրքով եկած էր հօրը դէմ:

Սակայն մինչեւ իր Խնածախ հասնիլը Մելիք Հայկազն կը մեռնի եւ որդին Մելիք կը դառնայ: Կը շինէ մզկիթ մը որ մինչեւ հիմա կը մնայ։

Անիկա անժառանգ մեռնելով, իրմով վերջ կը գտնէ Խանածախի մելիքութիւնը, (*Ազգագրական Հանդէս*, Դ. էջ 14)։

Մակար եպս. Բարխուտարեանց ուրիշ կերպով կը ներկայացնէ (տես. *Պատմ. Աղուանից*, Բ. էջ 51):

Ան կը պատմէ թէ Մելիք Հայկազն երբ Պարսկաստան գացած է իր անդրանիկ որդին Հայկ Բէկն չէ ուզած հեռանալ իր հայրենիքէն ու ժողովուրդէն եւ մնացած է Խանածախ գիւղը, եւ ժողովուրդին ընտրութեամբ կառավարիչ եղած է: Քիչ վերջը մելիքութիւն ստացած է Շահ Աբասէն եւ ձեռք առած՝ իշխանութիւնը:

Մելիք Հայկ. իր հնարագիտութեամբ, անվեհեր քաջութեամբ, եւ անձնուն հաստատակամութեամբ ոչ միայն սարսափ կ'ազդէ արտաքին թշնամիներուն, այլ իրեն կը գրաւէ Մեծ-Սիւնեաց մելիքներուն եւ ժողովուրդին համակրութիւնը:

Կը կրկնապատկէ իր զօրքերուն թիւը եւ կը հաստատէ բարեկամական յարաբերութիւն սահմանակից մելիքներուն եւ Նախիջեւանի խանին հետ։

Անիկա կ'ազատէ Մեծ եւ Փոքր Սիւնիքը Ջալալիներու աւերումներէն (*նոյն*. էջ 51):

Մակար եպս. Բարխուտարեանց կ'անգիտանայ անոր իսլամացումը եւ իր հօր դէմ ելլելը: Ան նաեւ այս տոհմը շարունակուած ցոյց կուտայ Մելիք Հայկով, անոր որդին եւ յաջորդը նշանակելով Մելիք Եսային, որ իր նախնեաց ընտիր յատկութիւններուն հետ ունէր նաեւ սքանչելի գեղեցկութիւն:

Բայց որովհետեւ ուրիշ աղբիւրներ այս Մելիք Եսային ցոյց կուտան Խնածախի Մելիք Իսրայէլին, որդին, (տես. *Պատմ. Աղուանից* Ա. էջ 146 եւ Աճառեան, *Անձնանունների Բառարան* Բ. էջ 180), հարկ է կամ նոյնացնել Մելիք Հայկը Մելիք Իսրայէլի հետ կամ ընդունիլ թէ անոնք իրարու յաջորդած են (3):

1686ին, Մելիք Եսայի, (✝ 1728) տեղափոխուեցաւ Ջրաբերդ գաւառը, եւ հիւրընկալուեցաւ տեղւոյն իշխող Ջալալեաններէն (*Պատմ. Աղուանից*, էջ 146) բնակութեան տեղ ստանալով Մոխրաթաղ գիւղը: Իսկ իրեն ընկերացող ժողովուրդը բնակեցաւ մօտակայ գիւղերը, մասնաւորապէս Մեծշէն: Յետոյ ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 396) ան տիրացաւ գաւառին: 1699ին Անգեղակոթի ժողովին մասնակցած է Էմիր Բէկ որդի Մարտիրոսի որ չենք գիտեր թէ Մելիք Հայկազնի սերունդէն է թէ ուրիշ տոհմի մը կը պատկանի:

Էմիր Բէկ զժտուած էր Անգեղակոթի Մելիք Սաֆրազին հետ սակայն Իսրայէլ Օրի զայն հաշտեցուց եւ երկու մելիքները իրարու խնամիացան (Լէօ. Գ. էջ 523—526):

Իսրայէլ Օրի զայն կը յիշատակէ իր կայսրնտիրին մատուցած 22 Սեպտ. 1699 թուականով տեղեկագիրին մէջ (Լէօ. Գ. էջ 537—538): Ան մէկն էր 27 Մայիս 1703 թուականով Զարին շնորհակալութիւն յայտնող գիրը ստորագրողներուն (Լէօ. Գ. էջ 578):

(1) *Այս գետը կը գծէր Դիզակի մելիքութեան հարաւային սահմանը։ Անկէ կ'սկսի բուն Զանգեզուրի գաւառը, որ նախնեաց Հաբանդ գաւառն է և Հայաստանի անառիկ շրջաններէն մէկը եղած է։ Անոր բնակիչները բարբարոսներու արշաւանքին առեն կ'ապաստանէին արհեստական քարայրներու* — Տակերու — *մէջ։ Այս պատճառով գաւառին ամէնէն հին բնակավայրը կոչուած է «Տակերի Ձոր» որ վերջը վերածուած է Զագեձորի, իսկ Զանգեզուր բառը իբր թէ աւաղաւաղումն է «Զանգը գոռ» բառին, որ առնուած է Նոր-Գորիսին մօտ գտնուող վանքի մը զանգակին շատ հեռուն արձագանգող ձայնէն* (Ե. *Լալայեան*, Ազգագր. Հանդէս, Ե. *էջ* 7—8)։

(2) *Ստեփաննոս Օրբէլեան Բ. էջ* 267 Խոնածախ *կը յիշէ Հաբանդ գաւառին մէջ*: Խնածախ *ձեւով ալ յիշուած է։ Րաֆֆի կ'ըսէ թէ այս գիւղը Շուշիէն 2 ժամ հեռու էր։*

(3) *Շատ հաւանական է որ* «Գաղտնիք Ղարապաղի» *անուն յերիւրածոյ վաւերագիրին ստեղծած առասպելներէն մէկն էր Մելիք Հայկի պատմութիւնը որ ուրիշ աղբիւրով մը չէ հաստատուած։*

## 5. ԲՐԻՏԻՍԻ ՄԵԼԻՔՈՒԹԻՒՆ

Շահ Աբասի դիմող Հայ մեծամեծներու շարքին Առաքել Դաւրիժեցի (էջ 16) կը յիշատակէ նաեւ «*Մելիք Բաբէն ի Բրիտիս գեղջէ*»:

Եթէ կարելի ըլլար ճշդել Բրիտիս գիւղին վայրը, դիւրին պիտի ըլլար լուծել աշխարհագրական դիրքը այս մելիքութեան:

Դաւրիժեցիի 1896ի Գ. տպագրութեան հրատարակիչը, յատուկ անուններու բառարանին մէջ այս անունը վերածած է *Բրիտինի* չեմ գիտեր ի՞նչ տուեալներու վրայ: Իսկ Էփրիկեան իր *Բնաշխարհիկ Բառարանին* մէջ (էջ 417) առանց ոեւէ փաստի Դաւրիժեցիի յիշատակած Բրիտիս գիւղը՝ Աղուանից Աշխարհին մէջ ցոյց կու տայ, մինչ միակ տեղը ուր այս գիւղը կը յիշուի, Դաւրիժեցիի վերոգրեալ տողերն են, ուրկէ կարելի չէ բնաւ հետեւցնել թէ այս գիւղը կը գտնուի Աղուանից Աշխարհին մէջ:

Աւելի հաւանական է որ այս անունը կապ ունենայ *Բրտինիք* եւ *Բրտի այրք* անուններուն հետ, որոնք Սիւնեաց նահանգին մէջ կը գտնուին եւ կը համապատասխանեն Դաշքենտի, ուր կը գտնուին շինութեանց եւ պարիսպներու աւերակներ եւ արհեստական անձաւներ: Մովսէս Կաղանկայտուացի (տպ. 1860 Ա. էջ 417) կը յիշէ Գեղամայ երկրին մէջ, «*Անապատ Բրտի այրից*» կոչումով (Ալիշան. *Սիսական* էջ 72—73)։

Ալիշան *Բրտի այրքը* համապատասխան կը դնէ *Դաշքենտ* գիւղին, սակայն Դաշքենտ գտնուելով Սիւնեաց Հաբանտ գաւառին այսինքն Զանգեզուրի մէջ չէր կրնար Գեղարքունի գաւառին մէջ ըլլալ այս գիւղը (*Բնաշխարհիկ Բառարան*, էջ 550) այլ Հաբանտ (հիմա Զանգեզուր) գաւառին մէջ, որուն կեդրոնն է Գորիս, հարաւակողմը Շուշիի:

Զանգեզուրի շրջանին մէջ ապագային գոյութիւն ունեցող չորս մելիքութիւններէն մէկուն հետ կարելի է թերեւս նոյնացնել:

Դժբախտաբար ուրիշ յիշատակութիւն մը չունինք այս մելիքութեան վրայ:

## 6. ՀԱԼԻՁՈՐ ԵՒ ԲԵԽ

Հալիձորի եւ Բեխի մէջ հաստատուած էին Մելիք-Փարսադանեանները, որոնք սերած են, ըստ ոմանց Սիւնեաց Զագիկ իշխանէն, իսկ ըստ այլոց Ծատիկ (Աստուածատուր) իշխանէն, որ Վրաստանէն եկած եւ հաստատուած է Ղափան: Այս տոհմին առաջին պատմական անձը կը համարուի Մելիք Փարսադան Ա. որուն անունով կը կոչուի այս տոհմին երեք ճիւղը:

Մելիք Փարսադան Ա.ի յաջորդած է իր որդին Մելիք Պալի (1), կամ Պալասան, որ ունէր երեք զաւակներ, որոնք էին Մելիք Փարսադան Բ., Աստուածատուր իշխան եւ Շահում կամ Շիկօ:

Փարսադան Բ. ունեցած է երկու որդի՝ Սաֆրազ եւ Պալի, եւ անունը անծանօթ աղջիկ մը: Զաքարիա Վաղարշապատցի (Ա. էջ 82) ասոր համար գրած է թէ «*էր կարի ագահ եւ յափշտակող, հպարտ, զոռող*»:

Աստուածատուր իշխան ունեցած է միայն մէկ զաւակ, Դաւիթ Բէկ, Ղարապաղի ազատութեան հերոսը, որ ամուսնացած չէր, որով յաջորդ չունեցաւ։

Իսկ Շահում կամ Շիկօ ունէր որդի մը Ստեփան իշխան Շահումեան որ Դաւիթ Բէկի պատանեկան ընկերը եւ յետոյ անոր զօրավարը եղաւ: Անոր սերունդը շարունակուած է Մելիք Ստեփանեան անունով:

Մելիք Փարսադան Բ.ի աղջիկը ամուսնացած էր Շիկահողցի Վարդիկի որդի Նուպարին հետ: Նուպար թէպէտ ծագումով ազնուական չէր, բայց վիթխարի եւ քաջ մարդ մըն էր որ փեսայանալով Մելիք Փարսադանի, ստացած էր Բերդաքար եւ Կռնասու բերդ ամրոցները եւ պաշտօն՝ պաշտպանելու Փարսադանին հողերուն հիւսիսային սահմանները (*Ազգագր. Հանդէս*, ԺԲ. էջ 179)։

Մելիք Փարսադան Բ.ի երեց որդին Սաֆրազ բնաւ համամիտ չէր որ իր քոյրը կնութեան տրուի Նուպարի պէս անձի մը, երկու նշանաւոր բերդերով, ուստի երբ իր հայրը զինքն չլսեց, անիկա զինու զօրութեամբ ուզեց ետ խլել բերդերը, սակայն Մելիք Փարսադան զայրացած իր որդւոյն յանդգնութեան վրայ, Նուպարի օգնական զօրք ղրկեց որ լաւ դաս տայ անոր: Սաֆրազ արժանապատուութիւնը վիրաւորուած գնաց Կ. Պոլիս եւ պալատական ծառայութեան մէջ մտաւ, եւ ապա անցաւ Հնդկաստան եւ մեծ հարստութեան տիրացաւ:

Այս եղելութիւնը ծանր տպաւորութիւն ձգեց Դաւիթ Բէկի վրայ, որ իր հօրը՝ Աստուածատուրի մահէն յետոյ մնացած էր Մելիք Փարսադանի անմիջական իշխանութեան տակ: Ուստի ան ալ կը հեռանայ եւ կ'երթայ Վրաստան ու կը մտնէ Վրաց թագաւորին ծառայութեան մէջ:

Մելիք Փարսադան այս երկուքին հեռանալէն վերջ, Խնձորեսկ գիւղէն Մխիթարը կը կոչէ եւ իր զօրքին սպարապետ կը կարգէ։

Այսպէս, մի քանի տարի Մելիք Փարսադան, Մխիթարի եւ Նուպարի հետ կը պահպանէ իր երկիրը, սակայն յանկարծ Չալաբ-Եալլու թուրքերը կը յարձակին Նուպարի վրայ եւ կը պաշարեն Կռնասու բերդը: Նուպար ընտանիքին անդամները ժողովուելով կը փախչի Թիֆլիս բերդին պաշտպանութիւնը գիւղացիներուն ձգելով, Թուրքերը կը գրաւեն բերդը: Շատ մը կիներ Թուրքերու ձեռքը չիյնալու համար բերդին գագաթէն վար կը նետուին եւ իրենց արիւնով կը ներկեն քարերը: Այս պատճառով բերդը կը կոչուի Կարմրաքար:

Երբ Թուրքերը Կռնասու բերդը թալանելով կը

(1) *Պալասան ձեւով յիշուած է իր որդւոյն տապանին վրայ*. (Ազգագր. Հանդէս ԺԲ. էջ 188).

հեռանան, Նուպար կը դառնայ իր տեղը եւ աւեր-ւած բերդը կը շինէ:

Սակայն Թուրքերու հետ ընդհարումները կը շարունակուին եւ Թուրքերը միշտ կը նեղեն Հայերը: Այսպէս, անոնք կ'սպաննեն Նուպարի կրտսեր եղբայ-րը՝ Յովհաննէս Բէկը՝ Շովեր գիւղը (Շիկահողի մօտ) իր նշանածին գացած ատեն, Սէիտլար (յետոյ Չինար-լըզ) գիւղէն անցնելու ատեն: Մխիթար, այս սպանու-թեան վրէժը լուծելու համար Ստեփան Շահումեանի առաջնորդութեամբ կը ղրկէ Ռանջղարու Ձորը՝ գիւ-ղին ճամբան բռնելու համար, իսկ ինքը կը յարձակի Սէիտլար գիւղին վրայ, որուն 300 տունի հասնող բնակչութիւնը կը ջարդէ, տուները կը հրկիզէ եւ մեծ աւարով կը դառնայ իր բանակը որ կը գտնուէր Պը-ռըւըքումբ գիւղին մօտ:

Թուրքերը ալ աւելի գրգռուած կը շարունա-կեն Հայերուն չարիքներ հասցնել: Ասոր վրայ կը հասնի Լեզգիներու յարձակումները Ղարապաղի վը-րայ (1721 եւ 1722):

Երբ Դաւիթ Բէկ Վրաստանէն Ղափան կուգայ, ինչպէս ուրիշներ նոյնպէս նաեւ Մելիք Փարսադան Բ.ը, կ'ուզէ համոզել, որ միանայ իրեն, ռուսերուն գործակցելու համար:

Մելիք Փարսադան կը մերժէ: Դաւիթ Բէկ զայն կը ձերբակալէ, եւ կը բանտարկէ, իր Տէր Աւետիս փեսին եւ Մխիթար սպարապետին հետ:

Մելիք Փարսադան ի վերջոյ կը համաձայնի իր խնամի Նուխիի Վարդաշէն գիւղին իշխող Օհան Իւզպաշիի խորհուրդով եւ կը գործակցի: Մելիք Փարսադան կ'սպաննուի իր բարեխօսութեամբ Դաւիթ Բէկի ձեռքով ազատուած Օրտուպատի Մե-լիք Մուսինէն (1724 ✝) կամ Մուսունէն կամ ըստ Լէօի (էջ 672) Ագուլիսցիներէն:

Իր հողերը կը կցուին Դաւիթ Բէկի իշխա-նապետութեան: Ն. Ադոնց (տես. Րաֆֆի, էջ 139) Մե-լիք Փարսադանի գաւառատիրութիւնը կը ժխտէ:

Ամէն պարագայի, եթէ նոյնիսկ անիկա իսկա-կան Մելիք մըն էր իր իշխանութիւնը վերջ գտած է Դաւիթ Բէկի տիրապետութեամբ Ղափանի մէջ:

## Ե. ԴԱՒԻԹ ԲԷԿԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## ԿԱՄ

## ՂԱՓԱՆԻ ԱՆԿԱԽ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Մելիքները եթէ ոչ ինքնաբերաբար գոնէ ար-տաքին թելադրութիւններով, աշխատած էին Հայոց քաղաքական անկախութիւնը վերահաստատել, յոյս դնելով Ռուս Ցարերու բարեացակամութեան, ինչպէս նաեւ Վրաց գործակցութեան վրայ:

Արդարեւ երազ մը, որ պահ մը յաջողեցաւ իրականացնել Դաւիթ Բէկ, գրեթէ առանց ոեւէ արտա-քին օգնութեան սոսկ Հայոց սեփական ոյժերով եւ անձնական նախաձեռնութեամբ ու հերոսական դիւ-ցազնութեամբ:

1721ին եւ յաջորդ տարիներուն կովկասեան լեռնականներուն արշաւանքները եւ հասցուցած չա-րիքները ունեցան իրենց հակազդեցութիւնը Սիւ-նիքի եւ Արցախի Հայ բնակչութեան վրայ, որ ինքնա-պաշտպանութեան դիմեց եւ զինեալ դիմադրութիւն ցոյց տուաւ: Այսպէս երեւան եկաւ Հայ զինուորութիւն մը, որ կորիզը ըլլալ կոչուած էր յետոյ Հայ ազա-տագրութեան, օգտուելով Հայ մելիքներու եւ Վրաս-տանի կէս-անկախ թագաւորութեան գոյութենէն:

1722ին Գանձակի մօտ կանգնած էին Վրացի եւ Հայ զօրքերը, որոնք կ'ակնկալէին ռուսական օգ-նութիւն ընդդէմ մահմետականներու: Վրաց Վախթանգ թագաւորն էր գործին վարիչը, եւ իրեն հետ ունէր Աղուանից Եսայի Կաթողիկոսը որ գործակցութիւն մը առաջ բերելու համար գնաց Մելիքներուն մօտ, իսկ Վրաց Վախթանգ թագաւորը իր ծառայութեան մէջ գտնուող Դաւիթ Բէկը (1) ղրկեց Սիւնիք:

Վախթանգ թագաւոր, ինչպէս Ն. Ադոնց (2) կ'ըսէ *«հաւատում էր անվերապահօրէն կայսերա-կան խոստումներին եւ պատրաստութիւն էր տես-նում պատշաճ գործակցութիւն բերելու ռուսական զէնքին: Նա վայելում էր Հայերի կատարեալ վըս-տահութիւնը»*:

Դաւիթ Բէկ եկած էր կարծիքները շօշափելու եւ նախապատրաստելու տեղական ուժերը գործակցե-լու ռուսերուն եւ ոչ որպէս ղեկավար ապըս-տամբութեան (հմմտ. Ն. Ադոնց, *նոյն.* էջ 135) այլ իբր պաշտօնեայ Վրաց թագաւորին— որ միանգամայն պարսկական զօրաց հրամանատարն էր— խաղաղեցնե-լու խռոված գաւառը: Վախթանգ քանի որ 1722ին Շահին հրամանով ընդհանուր պետ նշանակուած էր Ատրպատականի, Վրաստանի եւ Հայաստանի, իրաւունք ունէր Սիւնիք ղրկել իր կողմէ պաշտօնատար մը անոր տալով որոշ յանձնարարութիւններ, առանց կասկածի տեղի տալու: Եւ Վախթանգ ասկէ կ'օգտուէր, մանա-ւանդ որ արդէն 1722ին Սիւնիքի ազդեցիկ անձերուն, ինչպէս Տաթեւի Սիմէոն արքեպս.ին, Բաղտասար մետ-րոպոլիտին, Սարգիս արքեպս. Հասան-Ջալալեանին, Տաթեւացի Մելիք Մանուչար Ուռպելեանի կողմէն իրեն խնդրանք եղած էր.— *«բնակիչք Սիւնեաց ի* 1722 *ամին գրեցին զթուղթ աղաչանաց առ Շահ-նաւազ իշխան՝ առաքել ԶՕՐԱՒՈՐ ՈՔ ԶԻ ԻՇԽԵՍ-ՑԷ ԻՎԵՐԱՑ ԳԱՒԱՌԻՆ ԵՒ ՅԱՆԴՈՐՐՈՒ ՊԱՀԵՍՑԷ ԶՀԱՅՍ ՈՐՔ ԻՆՄԻՆ»*: (Ն. Ադոնց՝ *նոյն.* էջ 135):

(1) *Դաւիթ Բէկը աւանդութեան մը համաձայն Ղա-փանի Մելիք Փարսադան Բ.ի եղբօր՝ Աստուածատուրի որդին էր որ ընտանեկան վէճի մը պատճառով (տես. վերը, էջ 409) Վրաստան գացած էր և պետական ծառայութեան մէջ մտած* (Ե. *Լալայեան.* Ազգագր. Հանդէս ԺԲ. *գիրք, էջ* 177—179).

(2) *Պրոֆ. Ն. Ադոնց ունի քննական ուսումնասիրու-թիւն մը* «Դաւիթ Բէկ» վէպի պատմական հիմք եւ գա-ղափարախօսական արժէքը, *խորագրով* Րաֆֆի (Յակոբ Մելիք Յակոբեան) կեանքը, գրականութիւնը, յիշողութիւններ, *հատորին մէջ Րաֆֆիի հարիւրամեակին առթիւ հրատարակուած, Փա-րիզ* 1937*ին (տես. էջ* 122—148). *Այս ուսումնասիրութեան մէջ բաղմահմուտ բանասէրը Դաւիթ Բէկի պատմութիւնը լուրջ քննական վերլուծումի մը ենթարկած է և շատ մը կէտեր ճշդած. Ասկէ օգտուած եմ այս հատուածին մէջ:*

Դաւիթ Բէկ Հայերու այս խնդրանքը եւ զինքը ղրկող Վախթանգ թագաւորին հրահանգը գործադրելու համար, 1722 աշունէն մինչեւ 1724ի աշունը պարտաւորուեցաւ անընդհատ երկու տարի կռուիլ արձակազէնի կռիւներով՝

Ա. Ներքին դաւաճաններու կամ Հայ անկախութեան ծրագիրին հակառակողներուն

Բ. Քոչուոր Թուրքմէններուն

Գ. Զանգեզուրի եւ Գենուազի շրջանին մէջ ապրող մի քանի թուրք գեղերու, եւ վերջապէս

Դ. Պարսիկ բանակներուն դէմ:

Արդէն տեսնուեցաւ թէ ան ինչպէս վարուեցաւ ընդդիմադիր Տաթեւի Մելիք Դաւիթին հետ որ խաբանալով Բաղր անունը առած էր (տես. վերը, էջ 407)։

Անոր սեփական Շնհէր, Խոտ, Եայինի, Սուարանց, Տանձատափ եւ Տաթեւ գիւղերը Դաւիթ Բէկ ինքն գրաւեց:

Նոյնպէս տեսնուեցաւ թէ անիկա ինչպէս վարուեցաւ իրեն ազգական Հալիձորի Մելիք Փարսադանի հետ (տես. վերը, 410) մինչեւ որ անիկա համաձայնեցաւ իրեն գործակցելու:

Ան չարաչար պատժեց նաեւ Քիւրտլար գիւղը որուն պարսիկ բնակիչները կը նեղէին Տաթեւացիները: Դաւիթ Բէկ սուրէ անցուց անոնց մէկը մասը եւ մնացեալները ստիպեց որ Պարսկաստան քաղթեն:

Դաւիթ Բէկ այս ուղղութեամբ գործեց մինչեւ վերջը:

Իսկ Քոչուոր Թուրքմէններուն հետ վարուեցաւ նոյնպէս խստութեամբ:

Ինչպէս յայտնի է Վախթանգ կ'սպասէր ռուսերուն Դանձակի մէջ 1722ի աշնան: Դաւիթ Բէկ հաւանօրէն Դանձակէն եկաւ Սիւնիք, մօտաւորապէս այն օրերուն երբ քոչուորները սարերէն կ'իջնեն դաշտերը, եւ որովհետեւ եկած էր անդորրութիւնը պահպանելու, գործ ունեցաւ նոյնիսկ եկած օրերուն թուրքմէն քոչուորներուն հետ, որոնք ըստ իրենց վաղեմի սովորութեան— որ կը շարունակուէր մինչեւ մօտ ատենները— Կուրի ափերէն ամէն ամառ կը բարձրանային Արցախի եւ Սիւնիքի ճամբով մինչեւ Նախիջեւանի եւ Դարալագեազի լեռները եւ լեռ ելլելու ատեն կը կողոպտէին եւ կը փճացնէին կանանչ արտերը եւ իջած ատեն՝ կը քշէին կը տանէին, իրենց հօտերուն խառնելով, Հայ գիւղերու աւարները։

Այս պատճառով այս կիսավայրենի ցեղերու տեղափոխութիւնները տեղի կուտային նոյնիսկ երբեմն արիւնահեղ բախումներու:

Դաւիթ Բէկ պատրաստ զտած 400 մարդով, յարձակեցաւ Իւչքէբէի մօտ վրան լարող Ղարաչորլու թուրքերուն վրայ եւ զանոնք ոչնչացուց: Այս առաջին հարուածը, որ անակնկալ մըն էր թուրքերուն համար, ազդանշան մը եղաւ երկու բնակակից ժողովուրդներու միջեւ կռիւներու:

Իսկ այն ցեղապետները որոնց դէմ կռուեցաւ Դաւիթ Բէկ էին Ասլամազ Ղուլին եւ Ֆաթալի Սուլթան ու Աղասի երկու եղբայրները— որոնք 12 հովիւ ունէին եւ անհամար հօտ— որոնք իբր քոչուորներ կը նեղէին Հայերը:

Ասոնք կը կոչուին երբեմն Զանգեզուրի, երբեմն Բարկուշատի իշխողներ ինչ որ կը նշանակէ թէ անոնք Բարկուշատի իրենց ձմերանոց դաշտերէն կը բարձրանային Զանգեզուրի լեռները ամառը (Աղոնց *նոյն*. էջ 136):

Իսկ այս կռիւներու մէջ յիշատակուած Լուազցի Սաֆի Ղուլին եւ Գացակաց գիւղի Սայիլը, տեղական բէկեր են, թերեւս մեր մելիքներուն նման քանի մը գիւղի սեփականատէր, բայց ոչ պետական պաշտօնեաներ (Ն. Աղոնց, *նոյն*.):

Դաւիթ Բէկ զանոնք հարուածեց: Այսպէս ամէնէն առաջ Բուխուրութ լերան վրայ զարկաւ Բաղաբերդի (Բաղակուաքար) եւ Ղալաարասի տէր, Ասլամազ Ղուլին որ ապաստանեցաւ իրեն պաշտպանող Ջեւու բերդը (1), որուն վրայ կը յարձակի Դաւիթ Բէկ իրեն միացող Հայ զինուորներով։ Մխիթար սպարապետ կ'երթայ Գեղուայ գետին ուղղութեամբ, Ստեփան Շահումեան Օխչա չայի ուղղութեամբ, Տէր Աւետիքը Ղուրղուլուի կողմէն, իսկ ինքն Դաւիթ Բէկ, կ'սպասէ Թամաքէշի եկեղեցիին առջեւ: Երկու օրուան պաշարումէ մը վերջ կը գրաւուի եւ կ'սպաննուի Ասլամազ Ղուլին եւ բնակչութիւնը կը պարտաւորուի հեռանալ:

Այս յաղթութենէն վերջ Դաւիթ Բէկ կ'երթայ Մեղրի, Օրտուպատ եւ ապա Ագուլիս:

Բոլոր այս շրջաններու Հայերը իրեն հպատակութիւն կը յայտնեն:

Դաւիթ Բէկի այս զսպողական ձեռնարկներուն Նախիջեւանի խանը,— որուն իշխանութեան տակ էր երկիրը— բնաւ չմիջամտեց. հակառակ անոր որ նախայարձակը Դաւիթի մարդիկն էին եւ թալանած էին այս թուրք ցեղերը: Նոյնպէս, Երեւանի խանին եղբայրը, Հայերը անպարտ հռչակած եւ նոյնիսկ իրեն գանգատող թուրքերը պատժած էր, երբ ան 1742 աշնան Օրտուար կամ Օրտուպատ եկած էր, օգնութեան հասնելու համար իր եղբօրը, որ Երեւանը լքած էր Օսմանցիներուն (1 Հոկտեմբեր 1724):

Թերեւս Հայերը իրենց դէմ չհանելու դիւանագիտական հաշիւն ալ այս ընթացքին մէջ բաժին մը ունէր, բայց իրողութիւնը սա է որ քոչուորներու հետ Դաւիթ Բէկի եւ իրեններուն ընդհարումները քաղաքական կասկած չյարուցին:

Դաւիթ բէկ բուռ մը քաջերով, առանց ապըստամբական ցոյցերու եւ առանց իր վրայ կասկած հրաւիրելու իբր նախապատրաստութիւն կը մաքրէր ռազմագիտական դիրքերը, այդ վայրերը տեղաւորուած թուրք խառնարած եւ թափառական ցեղերէն, այնքան վարպետութեամբ որ երկիրին վերին իշխանութեան վարիչները չէին լարուիր Հայոց դէմ:

Դաւիթ բէկ որ պաշտօն ունէր նաեւ իբր նախապատրաստութիւն շօշափել մելիքներուն, եկեղեցականներուն եւ ազդեցիկ անձերուն տրամադրութիւնները եւ մեկուսացնել նախապէս վտանգաւոր կամ անվստահելի անձերը, այդ գործն ալ խոհեմութեամբ կատարեց, այնպէս որ երբ դէպքերը աննպաստ դար-

(1) *Այս բերդը կը գտնուէր Օխչի գետին վրայ, հին Բաղաբերդի և Աչաղուի մօտ։*

ձուածք մը առին, Հայերը իր պատճառով չվտանգուեցան:

Երբ Հայերը ռուսերուն գործակցութեան նախապատրաստելու համար զինքը ղրկող Վախթանգին եւ Եսայի Կաթողիկոսին յոյսերը ի դերեւ ելան, Դաւիթ բէկ, Նախիջեւանի խանին եւ Երեւանի խանին եղբօրը ընթացքէն օգտուելով խոհեմութիւն համարեց զէնքերը վար դնել, վասնզի որեւէ յոյս չկար ռուսական օգնութեան:

Մեծն Պետրոս, լքած էր իր արշաւանքին ծրագիրը եւ դարձած էր Աստրախան, յայտնելով որ մինչեւ որ չտիրէ Կասպից ծովի եզերքին, չկրնար օգնութեան հասնիլ եւ կ'ուզէր որ Վախթանգ միջնորդէր Պարսից Շահին մօտ, որպէսզի անիկա զիջէր այդ ծովեզերքը ռուսերուն, բան մը որ անկարելի էր որ կարենար Վրաց թագաւորը:

Վախթանգ յուսահատ Գանձակէն դարձաւ Թիֆլիս, ուր ինքզինքը գտաւ աւելի տխուր կացութեան մը առջեւ, վասնզի թուրքերը կը յարձակէին Վրաստանի վրայ եւ ռուսերը քիչ մը զօրք միայն կը ղըրկէին պաշտպանելու համար զինքը (Ն. Ադոնց, *նոյն* էջ 137), եւ զայն բոլորովին կը լքէին. Օսմանցիներու հետ դաշինք կնքելով 1723ին, Վրաստանը անոնց ձգելու պայմանով: Այնպէս որ Վախթանգ հարկադրուեցաւ ապաստանիլ Ռուսիա (1724): Օսմ. բանակը գրաւեց Երեւանը, կատարեալ յուսահատութեան մատնեց Հայերը, որոնց իբր մխիթարութիւն Մեծն Պետրոս հրաւէր կ'ուղղէր գաղթել Կասպից ծովուն եզերքները։

Այս պայմաններուն մէջ Դաւիթ բէկ ստիպուեցաւ չափաւորել իր եռանդը եւ երկու տարի (1724—1726) անգործ մնալ:

1726ին սակայն պարտաւորուեցաւ պայքարիլ անհամեմատ աւելի զօրաւոր թշնամիի մը դէմ, վասնզի նոյն թուականին Օսմ. բանակը մտաւ Ղափանի սահմանները:

Եւ սկսաւ կռիւներու նոր շարք մը որոնց մէջ Դաւիթ բէկ իսկական հերոս մը հանդիսացաւ:

Այս շրջանը տեւեց երկու տարի (1726—1728): Առաջին անգամ Դաւիթ բէկ Վանանդ գիւղին մօտ իր վրայ յարձակող թուրք երեք փաշաներուն կը յաղթէ, անոնցմէ երկուքը կ'սպաննէ եւ երրորդը կը փախցնէ:

Յաջորդ տարին Օսմ. բանակը դարձեալ կ'արշաւէ Դաւիթ բէկի վրայ որ Թահմազ Շահէն օգնութիւն կ'ուզէ։ Շահը կը հրամայէ երեք խաներուն օգնել Դաւիթին:

Ճակատամարտը դարձեալ Վանանդի դաշտին վրայ տեղի կ'ունենայ: Օսմ. զօրքը փախուստի կը մատնուի: Պատերազմէն վերջ Դաւիթ Բէկ կ'սպաննէ պարսիկ երեք խաները, իբր դաւաճաններ, վասնզի անոնք փորձած էին Թուրքերուն օգնել:

Դաւիթ Բէկ կը յարձակի նաեւ Նախիջեւանի խանին վրայ որ անցք տուած էր Թուրքերուն: Պատերազմը բաւական երկար կը տեւէ եւ Հայերէն բաւական թիւով մարդիկ կը ջարդուին:

Դաւիթ Բէկ ստիպուած է կը քաշուի եւ հաշտութիւն կը կնքէ Նախիջեւանի խանին հետ այն պայմանով որ Ապրակունիսի Ս. Կարապետ վանքին արեւմտեան կողմը գտնուող երկիրը խանին մնայ, իսկ արեւելեան կողմը տարածուող հողերը՝ Դաւիթ Բէկին, այնպէս որ Դաւիթ Բէկի ձեռքը կ'անցնի Դարալագեազը ուրկէ սահմանը կ'անցնէր մինչեւ Ղաբաղըլաղի հիւսիսային կողմը բարձրացող լեռը, Սաղսաղանի սարը եւ Դիզափայտ:

Երբ Դաւիթ Բէկի կը հարցնեն թէ ինչո՞ւ Ղարապաղին ալ չի տիրեր, կ'ըսէ թէ ի՞նչ պէտք կայ, չէ՞ որ ան Հայ մելիքներու իշխանութեան տակ է:

Այսպէս, Դաւիթ Բէկ մաքրելով երկիրը թուրքերէն եւ մասամբ պարսիկներէն, կ'սկսի կառավարել խաղաղութեամբ:

Սակայն իր իշխանութեան վեցերորդ տարին Օսմանցիները ահագին բանակով մը, միանալով Նախիջեւանի խանին, կուգան դարձեալ Դաւիթ Բէկի վրայ: 200,000 հոգինոց թշնամի բանակը կը հասնի Ուղուրչայի մօտ: Հայերը կը քանդեն Ուղուրչայի վրայ ձըգուած կամուրջը, սակայն Նախիջեւանի Հայերը ցոյց կուտան գետին հունը եւ թուրք բանակը գետը կ'անցնի:

Դաւիթ Բէկի դէմ շարժող այս բանակը ոչ միայն կը բաղկանար Օսմ. կանոնաւոր բանակէն այլ իրեն հետ ունէր տեղական զինուած ոյժեր, որոնք միայն թուրքերէ չէին բաղկանար այլ նաեւ Հայերէ: Դաւիթ Բէկ իր դէմ ունէր ոչ միայն Ֆաթալի խանը, այլ նաեւ օրինակի համար Զաւնտուրի Հայ զօրքը, որ քիչ առաջ իրեն կը հպատակէր:

Գրեթէ ամբողջ Հայ զինուորութիւնը լքեր էր Դաւիթ Բէկը Հալիձորի բերդին մէջ, միայն 17 հաւատարիմ մարդերով, վասնզի Օսմանեան ահարկու ոյժին առջեւ ընդհանուր սարսափ եւ վհատութիւն տիրած էր։

Դաւիթ Բէկ չվրդովուելով Զաւանտուրցիներու, Մեղրեցիներու, Ղափանցիներու դաւաճանութիւններէն, սկսաւ պաղարիւնութեամբ նոր ոյժեր հաւաքել, եւ հերոսական պայքարի նոր միջոցներ գտնել, ամրանալով Հալիձորի մէջ:

1727 գարնան սկիզբները սկսան ընդհարումները: Օսմանցիք ահագին թիւով եկան Հալիձորի վրայ ուր բուռն դիմադրութենէ մը վերջ պաշարուեցաւ Դաւիթ Բէկ (Լէօ. Գ. 688):

Մխիթար եւ Տէր Աւետիք, Դաւիթ Բէկի երկու մեծ աջակիցները, իրենց 300 զօրքով բերդէն դուրս խոյացան եւ յաջողեցան հերոսական կռիւով մը ոչնչացնել Օսմանեան դրօշի տակ գործող բանակը, բաղկացած քանի մը տասնեակ հազար մարդոցմէ:

Հալիձորի այս յաղթանակը Հայոց յոյսերը կ'արծարծէր կրկին, ելքուած ազատագրական շարժումը նոր թափ մը կ'առնէր: Դաւիթ Բէկ, որ կը խորհէր Օսմանցիները Ղափանէն վռնտել, կ'արշաւէ Մեղրի, ուր կը նստէր առանձին Օսմ. բանակ մը փաշայի մը հրամանին տակ:

Եւ որովհետեւ Արաքսի միւս եզերքը Օրտուպատի դիմացը, Շահ Թահմազ բանակ մը ունէր Օսմանցիներուն դիմադրելու համար, Դաւիթ Բէկ, դիմում ըրաւ հասարակաց թշնամիին դէմ միասին կռուելու: Այն նպատակով Մխիթարը եւ Տէր Աւետիքը ղրկեց, պարսիկ բանակին հրամանատարին, որ անհեռատես եւ վախկոտ մէկը ըլլալով, յիսուն մարդէն աւելի չտուաւ: Ասով հանդերձ Մխիթար եւ Տէր Աւե-

ջիք, յանդգնեցան գրաւել Մեղրին, ուր Օսմանցիք 22,000 զօրք ունէին:

Անոնք յաջողեցան մեծ կոտորած տալ եւ փախցնել Օսմ. զօրքը եւ մեծ յաղթանակ մը տանիլ (Լեօ. Գ. 691):

Թուրքերը մէկ երկու փորձ եւս ըրին Ղափան մտնելու սակայն չյաջողեցան (Լեօ. Գ. 691—2):

Այսպէս, Դաւիթ Բէկ յաջողեցաւ բոլոր թըշնամիները վանել, եւ իր յաղթանակին հռչակը օգտագործել:

1725էն սկսեալ Սղնախներու զինուորութիւնը բանակցութեան մէջ էր Պարսից Շահին հետ հաշտուելու եւ Օսմ. բանակին դէմ միասին կռուելու համար: Դաւիթ Բէկ անշուշտ գիտակ եւ մասնակից էր այս բանակցութիւններուն: Հիմա առիթը նպաստաւոր էր, ուստի Մխիթարը եւ Տէր Աւետիքը՝ Արաքսի միւս եզերքը ղրկեց պարսիկներէն օգնութիւն խնդրելու համար:

Շահը՝ Դաւիթ Բէկը ճանչցաւ կատարեալ եւ կիսանկախ իշխան ամբողջ Ղափանի վրայ, անոր ստորադրելով տեղական թուրք բէկերը եւ խաները:

Դաւիթի տրուած է նաեւ, իբր թէ, դրամ հատելու իրաւունք (1):

Շահին հրովարտակին համաձայն տեղական թուրք իշխողները եկան հնազանդելու անոր՝ իրենց զօրքերով:

Ղափան այսպէս դարձաւ անկախ Հայ իշխանութիւն մը, որուն պետը Դաւիթ Բէկ, համերաշխեցնելով Հայ եւ Պարսիկ շահերը, ձեռնարկեց Արաքսի ամբողջ հովիտը մինչեւ Նախիջեւան Օսմանցիներէ մաքրելու:

Ան Մեղրիէն անցաւ Կրհիվան եւ անկէ արշաւախումբ մը ղրկեց Օրտուպատի վրայ Մխիթարի եւ Տէր Աւետիքի հրամանատարութեամբ: Անոնք յանկարծակի յարձակմամբ յաջողեցան վանել Օսմանցիները եւ հալածել մինչեւ Ագուլիս, որ նոյնպէս գրաւուեցաւ (Լեօ. Գ. 693—694), սակայն Ագուլիսցիք դաւաճանեցին Դաւիթ Բէկի դէմ եւ Ագուլիսի քաղաքապետ Մելիք Մուսին սպաննեց Մելիք Փարսադանը, որ անոր կեանքը փրկած էր (*նոյն.* 694):

Ագուլիսի օրինակը վարակիչ եղաւ եւ Չաւընդուր եւս Օսմանցւոց հնազանդեցաւ, սակայն շուտով զղջաց՝ պատուհասին սարսափով, եւ հաւատարմութիւն խոստացաւ: Դաւիթ Բէկ, Չաւնդուրի Թորոս իշխանին մահուան վրէժը լուծելու համար: Բարկուշատի Ձաքալի խանին վրայ յարձակեցաւ, սակայն պարտուեցաւ եւ Ստեփան Շահումեանն ալ գերի ինկաւ Մխիթարի անփութութեան պատճառով: Ստեփան Շահումեան յաջողեցաւ փախչիլ եւ ճամբան Արծուանիկի դաւաճան Մելիք Ֆրանկիւլը սպաննելով դարձաւ Հալիձոր:

Երբ լուր առնուեցաւ թէ Օրտուպատի կողմէն Օսմանցիք յարձակած են Կալերեցի Պապ զօրավարին վրայ եւ ան փոխանակ կռուելու անոնց բազմութենէն վախցած ու փախած է, Դաւիթ Բէկ՝ Ստեփան Շահումեանի հետ գնաց Տաշտոն, ուր հասած էին թուրք հրոսախումբերը, որոնք սարսափահար անկանոն կերպով փախան այս ու այն կողմ:

Դաւիթ Բէկ գլխատեց Պապ զօրավարը եւ անոր տեղը Կալերի կառավարիչ դրաւ Ստեփան Շահումեանը:

1728ին Դաւիթ Բէկ մեռաւ եօթն տարուան իշխանութենէ մը վերջը, առանց կարենալու ամրապընդել իր փոքր Հայկական տէրութիւնը:

Իրեն յաջորդեց իր զէնքի ընկերներէն Մխիթար, որ ունէր զինուորական մեծ արժանիքներ, սակայն իբր վարիչ չունէր Դաւիթի կարողութիւնը:

Եղիա Բէկ Փարսադանեան, որ կը յաւակնէր ինքն յաջորդել Դաւիթ Բէկի, մարդիկ կը ղրկէ Ձաքալի խանին եւ կը համոզէ որ Հալիձորի վրայ յարձակի:

Ձաքալի խան, Չալար-Եանլուի խանին հետ կը յարձակի Հալիձորի վրայ: Եղիա Բէկ Փարսադանեան կը միանայ թուրքերուն եւ կը կտրէ բերդին միակ աղբիւրին գաղտնի պահուած ակը: Մխիթար խոյս կու տայ Խնձորեսկ եւ Հալիձոր անձնատուր կ'ըլլայ: Մխիթար 1,500 մարդ վարձելով կուգայ թուրքերը կը կոտորէ, Չալար-Եանլուի խանը կ'սպաննէ եւ իր որդիներն ալ գերութենէ կ'ազատէ:

Եղիա կը փախի Շնտուէն գիւղը սակայն բռնուելով ողջ ողջ կ'այրուի:

Այս յաղթութենէն վերջ Մխիթար կ'ակնկալէր որ Հայերը պիտի հնազանդէին իրեն, մինչդեռ հակառակը կը պատահի: Տէր Աւետիք թշնամացաւ Մխիթարի հետ, թերեւս նախանձով եւ Օսմանցիներուն յարեցաւ, եւ թուրքերը անոր վրայ յոյս դնելով մտան Ղափան, եւ պաշարեցին Հալիձորը, որ նստոցն էր Մխիթարի: Տէր Աւետիք, գնաց Օսմ. բանակ անձնատուութեան պայմաններու մասին խօսելու համար:

Մխիթար չհանդուրժելով գիշերանց հեռացաւ Հալիձորէն: Օսմ. բանակը մտաւ Հալիձոր եւ հակառակ փաշային տուած խոստումին թէ բնակիչներուն պիտի չվնասէ, քարուքանդ ըրաւ բերդը եւ սոսկալի կոտորած մը կատարեց:

Տէր Աւետիք խղճահար հեռացաւ գնաց Երուսաղէմ, իսկ Մխիթար ամէն ճիգ թափեց Դաւիթ Բէկի գործը շարունակելու: Առանց յուսահատելու, կազմակերպեց նոր զօրք, յարձակեցաւ զանազան ուղղութեամբ, եւ նոր յաղթանակներ շահեցաւ: Ան առաւ Օրտուպատը, եւ իր նոր կայանը, Խնձորեսկ բերդը, փոխադրեց այդ քաղաքին աւարը:

Սակայն Խնձորեսկի բնակիչները, Օսմանցիներու երկիւղով վատաբար սպաննեցին Մխիթարը (1730) եւ անոր գլուխը Դաւրէժ փաշային ղրկեցին:

Դաւիթ Բէկի իշխանութիւնը այսպէս վերջ գտաւ, եւ իր զինուորներէն մաս մը գացին Հայոց Սղնախները, որոնք այդ միջոցին իրենց վերջին օրերը կ'ապրէին:

(1) *Այս իրաւունքը իբր թէ կիրարկած է Դաւիթ Բէկ Հալիձորի մէջ հատանելով դրամ, որուն մէկ երեսին վրայ դրոշմուած էր Թահմազ Շահին անունը, իսկ միւս կողմը՝ իբր, այսպէս «Քրիստոսի ծառայ Դաւիթ»* (Ազգագր. Հանդէս, ԺԲ. էջ 185)*։ Դժբախտաբար այս դրամէն չէ գտնուած, այնպէս որ Ե. Լալայեանի այս հաւաստումը խնդրական է։*

# Զ· ԴԱՒԻԹ ԲԷԿԻ ՍՏՈՐԱԴԱՍ ԿԱՌԱՎԱՐՉՈՒԹԻՒՆՆԵՐ

Ինչպէս տեսնուեցաւ Դաւիթ Բէկ Ղափան հաստատուելէն վերջ իր տիրապետութիւնը տարածեց դէպի հարաւ Արաքս գետին ուղղութեամբ եւ աշխատեցաւ այդ գետը ունենալ սահման:

Այսպէս, անիկա տիրեց Ագուլիսի, Օրտուպատի, Մեղրիի, Զաւնտուրի եւ Բարգուշատի շրջաններուն, եւ իբր սահմանագլուխի իշխանութիւններ զանոնք յանձնեց իր ստորադասներուն, իբր վասալներ կամ կառավարիչներ:

## 1· ԶԱՒՆԴՈՒՐ

Մեղրիի շրջանին արեւելեան լեռնոտ մասը եւ երբեմն ամբողջ գաւառը կը կոչուէր Գենուազ (Ն. Ադոնց, *Րաֆֆի*, էջ 130): Անոր արեւմտեան կողմը կը կոչուէր Զաւնդուր եւ Օխչի գետին միջին հովիտին մէկ մասը կը գրաւէր: Կեդրոնն էր Շիկահող:

Դաւիթ Բէկ երբ այս շրջանին տիրեց, անոր վարչութիւնը յանձնեց, իբր զինուորական հրամանատարի՝ Թորոսին (1), որ գաղթած էր Սողանլուէն Սիւնիք եւ հաստատուած Թորոսայ-Ձոր բռնուած տեղը, որ կը գտնուէր Եմաղլու գիւղին հանդէպ եւ կը տարածուէր Խտրանծէն մինչեւ Բարկուշատ գետը:

Ապա կռուելով Եմաղլուցի Մամաս աղայի հետ, կ'սպաննէ զայն եւ կը տեղափոխուի Զաւնդուրի Խոր-Ձոր կոչուած տեղը, եւ յետոյ այդ տեղէն Եղուարդ գիւղը, իր իշխանութեան տակ ունենալով Ագարակ, Խտրանց, Վժանիս, Ջէյվա եւ հիմա աւերակ Գեղարքունին, Ղարաբաբա, Գրջըրխանա եւ այլ գիւղեր (*Ազգագր. Հանդէս*, ԺԲ. էջ 189):

Հալիձորի Մելիք Փարսադան Բ. (✝ 1724) որ բարեկամն էր Թորոս իշխանին անոր կը ղրկէ Քարամ անունով վրացի իշխան մը որ փախած էր վրաց թագաւորէն եւ եկած ապաւինած էր իրեն: Թորոս անոր կուտայ հարկահաւաքի պաշտօն եւ երբ անիկա իր հաւատարմութեամբ ու քաջութեամբ սիրելի կը դառնայ՝ իր միակ դուստրը՝ Ծաղիկը անոր կնութեան կուտայ:

Դրացի գաւառին՝ Բարկուշատի Մելիքը՝ Ֆրանկիւլ, որ երկու կին ունէր Ծաղիկն ալ կնութեան ուզած սակայն մերժուած եւ յանդիմանուած էր Թորոսէն: Ֆրանկիւլ ասկէ ազդուած Բարկուշատի Խանլըխլար գիւղը նստող ցեղապետ Ֆաթալլիի հետ կը դաւէ Թորոսի դէմ: Թորոս յաղթած է 1723ին Զաւըն-դուրի խաներու 18,000 նոգ եւ Ֆաթալի խանի 12,000 նոգ բանակներուն, բայց Դ. անգամ Ֆաթալի բազմաթիւ զօրքով կուգայ կը բնակի Եղուարդի ներքեւ Թորսայ Ձորին մէջ:

Թորոս իր փեսին Քարամի հետ կը յարձակի Ֆաթալիի վրայ եւ սաստիկ ջարդ տալով զայն նահանջի կը մատնէ, սակայն Մելիք Ֆրանկիւլ զայն կը զարնէ կռնակէն: Թորոս կը մեռնի կռիւին մէջ բայց իր զինուորներն ալ կատաղօրէն կռուելով, կը վիրաւորեն Ֆաթալին եւ կ'սպաննեն անոր եղբայրը Աղասին, Նարգիզլու չամի (Նարգէսներու դաշտ) վրայ, 1724ին (Զամ. Դ. 786—788):

Թուրքերն ալ կրակի կուտան Եղուարդ գիւղը, եւ Թորոսի մեծ որդին կ'սպաննեն եւ կրտսեր որդին՝ Հերումը գերի կը տանին:

Թորոսի կը յաջորդէ, իբր Զաւնդուրի հրամանատար Նուպարը (2) որ Դաւիթ Բէկի Ղափանի տիրանալէն վերջ, անոր ծառայութեան մէջ մտած էր։

Իսկ Նուպարի կը յաջորդէր Դաւիթ Բէկի հրամանով Տէր Աւետիքը, որ պարտաւորուեցաւ հոն մաքառիլ Բարգուշատի Ֆաթալի ցեղապետին հետ, մինչեւ Դաւիթ Բէկի մահը:

## 2· ԲԱՐԿՈՒՇԱՏ ԿԱՄ ՔԻՒԲԱՐԱ

Բարկուշատ կը կոչուէր Որոտն գետին ստորին հոսանքը, Սահմանակից էր Զաւնդուրի:

Նախապէս այս շրջանը մասն էր հին Հաբանդ գաւառին եւ կը կոչուէր Ձոր Բարկուշատի: Վերջը կոչուեցաւ Շնհէրի Ձոր:

Այս գաւառակը կը բաղկանար Սեւաքար, Ղափնի, Ըրկենաց, Արծուանիկ, կամ Երեցվանիկ Ջէյվա, Խտրանց եւ Ագարակ գիւղերէն։

Կեդրոնն էր Երեցվանիկ:

Դաւիթ բէկի Վրաստանէն Ղափան եկած ատեն այս շրջանին ոչ թէ գաւառապետը այլ պաշտօնով մելիքն էր Ֆրանկիւլ անունով անձ մը (Ն. Ադոնց, *Րաֆֆի*, էջ 138—139), որ Դաւիթ Բէկի ձեռնարկի համաձայն չէր եւ անոր համար շատ սեւ գոյներով ներկայացուած է Րաֆֆիի կողմէն, հակառակ անոր որ բնաւորութեամբ բարի մարդ ըլլալը կը շեշտուի (*Դաւիթ Բէկ* էջ 680) (3)։

Ինչպէս տեսնուեցաւ դրացի Զաւնդուրի կառավարիչ Թորոսի աղջկան Ծաղիկի հետ ամուսնանալ չկրնալու համար, ինչպէս թշնամացաւ անոր հետ եւ անոր սպանութեան պատճառ եղաւ:

Ֆրանկիւլ՝ Ֆաթալի ցեղապետին հաճոյանալու համար կ'իսլամանայ եւ կ'ստիպէ նաեւ իր զա-

(1) *Րաֆֆի զայն կը կոչէ «իշխան», Ն. Ադոնց* (*էջ* 139) *կը ժխտէ անոր իշխանի կամ գաւառապետի հանգամանքը:*

(2) *Տես. իր Նախընթաց կեանքին մասին վերը, էջ* 409:

(3) *Ն. Ադոնց* (*Րաֆֆի, էջ* 145) *կ'ըսէ թէ բոլոր անոնք որ հակառակ էին Դաւիթ Բէկի ձեռնարկին «դաւաճաններ չէին, այլ «հայրենիքի բարիք ցանկացող» մարդիկ, որ իրենց գիծն ունէին. «Քիչ ուժերով մեծ գործ կատարելու» ինքնավստահութիւնը հակառակ էր անոնց փորձառութեան որ կը թելադրէր «քիչ զոհողութեամբ» խուսափիլ մեծ վտանգներէն,* (Նոյն)։

*Հետեւաբար իր մասին ըսածները պէտք չէ նկատել բոլորովին ճշմարիտ:*

ւակները որ իրեն հետեւին։ Երեք որդին Ռուստամ կը համակերպի բայց կրտսերը՝ Դաւիթ՝ ոչ։ Մելիք Ֆրանկիւլ՝ Ֆաթալիի կ'ըսէ թէ «քանի որ մահմեդական եմ, պէտք է որ իմ որդիս ալ մահմեդական ըլլայ, եթէ ոչ անիկա իմ ժառանգս չի կրնար ըլլալ»։ Ֆաթալի կ'ուզէ համոզել Դաւիթը եւ մեծ պարգեւներ կը խոստանայ։ Դաւիթ 18—19 տարեկան երիտասարդ, կը մերժէ անոր առաջարկը։ Ֆաթալի կը դիմէ բռնութեան եւ զայն կը բանտարկէ, սպառնալով ողջ ողջ այրել։

Խանին կիները՝ Տաթեւի Մելիք Բաղրի (ուրացող Դաւիթ) աղջիկը Սիրուն Նանը (Սոռունան), իր առերես խալամացած Հայ ներքինին ձեռքով Դաւիթը Ղարապաղ կը փախցնէ։

Մելիք Ֆրանկիւլ կ'սպաննուի Ստեփան Շահումեանէն (*Ազգագր. Հանդէս*, ԺԲ. էջ 193—194) ի պատիժ իր դաւաճանութեան եւ ուրացութեան եւ կը թաղուի գերեզմանատունէն կէս մղոն հեռու համբու մը վրայ եւ մինչեւ մօտ տարիներս ամէն անցորդ կը մօտենար այդ անարգ մարդու շիրիմին եւ կը թքնէր վրան։

Ժամանակ մը վերջ այս շրջանէն Ագարակի վրայ Մելիք նշանակուած է Զաւնդուրի հրամանատար Թորոսի գերի տարուած Հեքում որդւոյն երկրորդ զաւակը՝ Քարամը, որ արտասովոր ոյժ ունէր, եւ սարսափելի ձայն որ «եօթն սարէն այն կողմը» կը լսուէր։ Ան նաեւ վարպետ որսորդ էր։ Կ'ըսուի թէ 100էն աւելի մարդ եւ 96 հատ ալ գայլ սպանած էր։

Քարամ՝ Մուստաֆա փաշայի մօտ ծառայութեան կը մտնէ եւ իբր հետեւակ զօրքի պետ կ'երթայ Գանձա եւ Լեզգիներու դէմ մղուած կռիւներուն մէջ մեծ քաջութիւն ցոյց կուտայ։

Մուստաֆա փաշան իմանալով որ Մելիքի թոռ է, զայն Մելիք կը կարգէ Քիւբարա գաւառամասի, Ագարակի վրայ։

Մելիք Քարամ դառնալով իր վիճակը երկար կռիւներ կ'ընէ Բարկուշատի բէկերուն դէմ, որոնք տաս կը նեղէին Քիւբարայի բնակիչները։

Անգամ մը ցնծութեամբ Շուշի բերդը, ճաշկերոյթի ժամանակ Մելիք Քարամը ընդհարում կ'ունենայ Մելիք Շահնազարի հետ եւ զայն կաւաս կ'անուանէ, այն պատճառով որ ան իր աղջիկը տուած էր Փանահ խանին կնութեան եւ իր գոյութիւնը անով կը պահէր։

Խանը ասիկա լսելով մեծ տուգանքի կը դատապարտէ Մելիք Քարամը։ Իրեն յաջորդած են իր զաւակները։

Այս տոհմը Քարամին անունով կոչուած է Քարամեան։ Այս տոհմէն նշանաւոր եղած է նաեւ իր քաջութեամբ Մելիք Քարամի թոռը՝ Մելիք Հայրումը։

Քարամեաններու սերունդները ԺԹ. դարուն սկիզբը տակաւին կ'ապրէին Տանձաթափա կամ Ղարաբաբա գիւղին մէջ։ (տես. *Ազգագր. Հանդէս*, ԺԲ. էջ 181—192)։

## 3. ՄԵՂՐԻ—ԳԵՆՈՒԱԶ

Մեղրի, Ագուլիս եւ Օրտուպատ գրաւուած էին Դաւիթ Բէկէն։ Մեղրի կը գտնուէր Ղափան գաւառին հարաւակողմը եւ Ագուլիսի եւ Օրտուպատի հետ կը պատկանէր Արաքսի հովիտին (Լէօ. *Հայոց Պատմ.* էջ 494) (1)։

Մեղրի շրջանը կամ ինչպէս ժողովուրդը կ'ըսէ մահալը, հին Արեւիքն է, համանուն գետի հովիտին մէջ, որուն արեւելեան լեռնոտ մասը եւ երբեմն ամբողջ գաւառը, կը կոչուի Գենուազ։

Մեղրիի շրջանը հաւանօրէն Նախիջեւանի պարսիկ խաներու իշխանութեան տակ էր։

Հակառակ անոր Րաֆֆի, այնպէս կը ներկայացնէ որ այս շրջանին մէջ կային Հայ մելիքութիւններ, որոնք Դաւիթ Բէկի եւ Ղարապաղի մելիքներու շարժումներուն մասնակցած են (Րաֆֆի, *Խամսայի մելիքութիւնները*, էջ 313) բայց այդ կողմերը Հայ մելիքներ չեն եղած, եւ Գենուազի կամ Մեղրիի «իշխան» Ստեփան Շահումեանը եւ Ագուլիսի Մելիք Մուսինը ո՛չ գաւառապետներ էին եւ ոչ ալ իշխաններ, ինչպէս դիտել կուտայ Ն. Ադոնց։

Ստեփան Շահումեան, Դաւիթ Բէկի գործակից մըն էր, որ անոր կողմէն Մեղրի ղրկուած էր իբր զինուորական հրամանատար, Արաքսի սահմանագլուխին պաշտպանութեան համար։

Իսկ Մելիք Մուսին հաւանօրէն Ագուլիսի Հայոց Մելիք (քաղաքպետ) մը եւ ոչ թէ ժառանգական Մելիք մըն էր։

Մուսին, Ագուլիսի երկու՝ պարսկական եւ թրքական կուսակցութիւններու բաժնուած բնակչութեան, թրքականին պարագլուխն էր։

Դաւիթ Բէկ որ սաստիկ հակառակ էր թուրքերուն, կ'ուզէ գլխատել Մուսինը, սակայն Մելիք Փարսադան կը միջամտէ, ըսելով թէ Հայ է, մեղք է, կարելի է խրատել եւ շահիլ իրենց կողմը։

Դաւիթ Բէկ կը յարգէ Մելիքին խնդրանքը։

Հակառակ ասոր վեց տարի վերջ Մելիք Մուսին, կը փորձէ դաւանակալ Դաւիթը սպաննել սակայն Մելիք Փարսադանէն կը նշմարուի եւ կը յանդիմանուի իբր ապերախտ։

Մելիք Մուսին փոխանակ պատասխանելու հրացանը կ'արձակէ անոր դէմ եւ զայն կը տապալէ եւ կը փախչի, (1724) (2)։ Դաւիթ Բէկ կը հետապնդէ

(1) *Զանգեզուր ռուսական գաւառին չորրորդ մասն էր Մեղրի, որ կը գտնուէր Սիսիան գաւառին հարաւ-արեւելեան կողմը, Օխչի գետի հովիտին մէջ գտնուող Ղափան գաւառին հարաւակողմը։*

(2) *Այս դաւաճանութիւնը այլապէս ալ պատմուած է։ Կ'ըսուի թէ Մելիք Մուսին երբ կը լսէ թէ Դաւիթ Բէկ Ագուլիս կուգայ կ'ապաստանի Ս. Թովմայի վանքը անոր ընդդիմանալու համար։ Դաւիթ Բէկի յանձնարարութեամբ Մելիք Փարսադանը կը բարձրանայ վանքին պատին վրայ և այնտեղէն կը յորդորէ Մելիք Մուսինը որ անձնատուր ըլլայ։ Սակայն Մելիք Մուսին կը պատասխանէ հրացանով և վար կը գլորէ Մելիքը։*

*Ասիկա տեսնելով Դաւիթ Բէկ՝ քանդել կուտայ վանքին պատը բայց Մելիք Մուսին իրեններով կը փակուի վանքին մէջ։ Դաւիթ Բէկ եկեղեցիին պատն ալ քանդել կուտայ։ Մուսին կը բռնուի և դուրս հանուելով կ'սպաննուի* (Ազգագր. Հանդէս, ԺԲ. էջ 188—189).

Մուսինը, բայց չկրնար գտնել, միայն անոր հօտն ու նախիրը կը քշէ կը տանի Հալիձոր:

Մուսին փախած էր Վարդաշէն, Օհան Իւզպաշիի քով, որմէ Դաւիթ կը պահանջէ որ կամ սպաննէ այդ դաւաճանը եւ գլուխը իրեն ղրկէ կամ ձերբակալէ ու իրեն յանձնէ, հակառակ պարագային սպառնալով երթալ իր վրայ: Օհան Իւզպաշին կը պատասխանէ թէ բռնեցի եւ խեղդեցի Վարդաշէնի լճակին մէջ:

Մուսին եղած էր չափազանց խիստ ու դաժան մարդ մը, այնպէս որ եթէ մէկը անոր տան մօտէն անցնելուն պզտիկ աղմուկ մը հանէր, դուրս կ'ելլէր եւ սաստիկ կը գանակոծէր զայն:

Անիկա ունեցած է Անթառամ անունով աղջիկ մը որ ամուսնացած էր Ագուլիսի իշխաններէն մէկուն՝ Մելիք Ադամի որդի Ստեփանի հետ, որուն սերունդները կային։

Ագուլիսի իբր իշխող կը յիշատակուի նաեւ Նայի, որ երբ Պարսից թագաւորը՝ Ազատ խան, Նախիջեւանը նուաճելէ վերջ կ'ուզէ նաեւ Ագուլիսը կողոպտել, քաջութեամբ կ'ընդդիմանայ, բայց չկրնալով երկար ատեն տոկալ կը յաղթուի եւ կ'սպաննուի 1732ին (Զամ. Գ. 853. Աճառեան *Բառարան Անձնանունների*, Գ. էջ 131):

## Է. ԴԱՒԻԹ ԲԷԿԻ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԻՆ ԲԵԿՈՐՆԵՐԸ

Դաւիթ Բէկի անկախ իշխանութիւնը վերջ գտնելէն յետոյ նախկին կարգերը վերահաստատուեցան Ղափանի մէջ, եւ իսլամ խաները իրենց իշխանութեան ենթարկեցին երկիրը եւ միայն մի քանի Հայ տանուտէրներ մնացին, ստորադրուած իսլամ իշխողներու եւ կրցան ատեն մըն ալ քաշքշել իրենց գոյութիւնը, մինչեւ որ հետզհետէ ընկնուեցան դրացի իսլամներու յարձակումին առջեւ եւ բոլորովին անհետացան ասպարէզէն:

Ասոնք էին.

### 1. ՀԱԼԻՁՈՐ ԵՒ ԲԵԽ

Ինչպէս տեսնուեցաւ Դաւիթ Բէկի մահէն (1728) վերջ, Հալիձոր եղաւ իր իշխանութեան կեդրոնը, մինչեւ Մխիթարի սպանութիւնը (1730):

Անկէ վերջ երկիրը ենթարկուեցաւ մահմետականներու տիրապետութեան. բայց տեղ տեղ մնացին Հայ գաւառատէրեր:

Այսպէս, Հալիձոր, որ Մելիք Փարսադանեաններու կալուածն էր, պաշտպանուեցաւ Մելիք Փարսադան Բ.ի (✝ 1724) թոռան Այվազ-բէկի (1) եւ Ստեփան Շահումեանի որդի (2) Ղուկասի կողմէ, ընդդէմ Օսմանցիներու որոնք միանալով Դիւզալուի (3) խանի եւ այլ պարսիկներու հետ կը յարձակին Հալիձորի վրայ, որպէսզի Դաւիթ Բէկի երկիրներուն տիրապետեն: Ղուկասը եւ Այվազ-բէկը տեսնելով որ անոնց զօրքը չափազանց շատ է, շրջակայ Բաշարանց, Փուխրուտ, Փիր Մազրա, Բրդիկանց ու Հանզ գիւղերու բնակիչները կը հրաւիրեն իրենց միանալու եւ ետ մղելու թշնամիները:

Կալեր գիւղի մօտ Դեօլնուկի դաշտը տեղի կ'ունենայ արիւնահեղ կռիւ մը, ուր հայերը կը յաղթեն եւ կը քշեն մահմետականները մինչեւ Խանազեախի դաշտը, ուր կը գտնուէր Վարդանաձորի մօտ եւ հոն կ'սպաննեն Ալիգաբուի խան՝ Միրզա Սայիլը:

Մելիք Ղուկաս եւ Այվազ բէկ ժամանակ մը խաղաղօրէն կը կառավարեն երկիրը շարունակ աշխատելով մաքրելու զայն մահմետականներէն:

Այս տեսակէտով նշանաւոր հանդիսացած է Բաբա անուն Կարհուան գիւղի տանուտէրը (տես. *Ազգագր. Հանդէս, ԺԲ*. էջ 198—9):

Ժամանակ մը վերջ երբ Նասիր Շահ կուգայ Գեազանու դաշտը (Երասխի եզերք), Մելիք Ղուկասը, Այվազ բէկը, Մելիք Բարամը (4) անոր ընդ առաջ կ'երթան, իրենց զօրքերով:

Նասիր ինչպէս միւս Մելիքներուն բրած էր ասոնք ալ հաստատեց իրենց իշխանութեան մէջ, ճանչնալով անոնց մելիքական իրաւունքները։

Ապա Շահը գնաց Մուղան ուր մնաց երեք ամիս: Դարձին նոյն մելիքները կրկին զայն դիմաւորեցին, եւ զայն հիւրընկալեցին Ողուր դաշտին մէջ, ուր ամբողջ գիշեր մը խրախճանք կատարուեցաւ:

Շահը կը մնայ այդ դաշտը երեք օր եւ այնքան կը սիրէ այդ վայրը որ կ'որոշէ հոն քաղաք մը հիմնել, ուստի հոն կը ղրկէ 400 պարսիկ ընտանիքներ քուրդ իշխանի (Սուլթան) մը առաջնորդութեամբ որ կը հիմնէ Ողուր քաղաքը։ Մելիք Ղուկաս, տեսնելով որ Դաւիթ Բէկի ջանքերը թուրքերը վանելու համար կը փճանայ, 30 կտրիճներով կ'ամրանայ այդ քաղաքին մօտ բարձրացող Ղըռ-Ղալայի բերդը եւ գիշերները կը յարձակի Ողուր քաղաքին վրայ, եւ կը քանդէ, կը կողոպտէ եւ կ'ապաստանի իր բերդը:

Քուրդ Սուլթանը ամէն միջոց ի գործ կը դնէ զայն ձերբակալելու բայց չի յաջողիր: Վերջապէս

(1) *Որդին էր Պալի Բ.ի որ իբր թէ յաջորդած էր իր հօրը։ Ոմանք զայն կը ներկայացնեն Սաֆրազի որդին: Իսկ Ե. Լալաեան* (Ազգագր. Հանդէս, ԺԲ. էջ 178) *կ'ըսէ թէ Մելիք Փարսադանեաններէն ոմանք կ'ըսեն թէ Շահումը Մելիք Պալիի որդին չէ, այլ Եկդատտա գիւղի (այժմ Թխկուտ գիւղ) Մելիք, ինչ որ հաւանօրէն աւելի ճիշդ է. Թէպէտ Մելիք Ստեփաննեաններու ճիւղագրութիւնը այդպէս ցոյց կու տայ։ Նկատելի է որ* «Դաւիթ Բէկի պատմութեան» *մէջ Ստեփան կոչուած է Վարդանխեան* «իշխան Շահումեան» (Դաւիթ Բէկ. *Հրատ. Գուլամիրեանի էջ* 30)։ *Այս պարագային Մելիք Ստեփաննեաններու նախնական բնակավայրը կ'ըլլայ Եկդատտա (=Թխկուտ) ուրկէ փոխադրուած են Առաջաձոր:*

(2) *Ըստ Ե. Լալայեանի Ստեփան Շահումեանի թոռը և ոչ որդին* (Ազգագր. Հանդէս, ԺԲ. էջ 201)։ *Ստեփան Շահումեանի որդին էր Օհան Իւզպաշին* (Նոյն.):

(3) *Կարճեւան գիւղի հանդէպ, Արաքսի աջ ափին, քաղաք մըն էր, Բիւրդաշտ քաղաքի մօտ:*

(4) *Մելիք Բարամ, Զանգուրի Թորոս իշխանին Հեթում որդւոյն զաւակն էր եւ Բիւքարայի Ագարակի մելիք (տես. վերը, էջ* 415)։

երկու տարի վերջը կը դիմէ Մելիք Այվազի եւ Մելիք Բարամի միջնորդութեան եւ անոնց հետ կ'երթայ Ղըրղալայ բերդին դուռը, երդում կ'ընէ որ ոչ մէկ վնաս պիտի հասցնէ Մելիք Ղուկասի եւ նախկին տարիներէն յետնեալ հարկերը պիտի չպահանջէ, միայն թէ անիկա երթայ Էնանան վիճակին Առաջաձոր գիւղը եւ հոն հանգիստ ապրի, կառավարելով այդ շրջանը:

Մելիք Ղուկաս կ'ընդունի այս պայմանը, դուրս կ'ելլէ Ղըռ-Ղալայէն եւ կ'երթայ Առաջաձոր, միայն իր երեսուն կտրիճները ձգելով բերդին մէջ, որպէսզի ամէն պատեհութեան պատրաստ ըլլան։

Երեք օր յետոյ, Մելիք Ղուկասի որդի Մելիք Յովհանջանն ու Մելիք Ոսկանը գիշեր մը կը նշմարեն որ երկու թուրք մտած են իրենց տունը: Կը ձերբակալեն եւ կը բանտարկեն սենեակ մը: Անոնք կը խոստովանին որ ղրկուած էին Քուրդ Սուլթանէն Մելիք Ղուկասը սպաննելու:

Մելիք Ղուկաս սաստիկ զայրացած, իրեն 24 գիւղերէն 500 հոգի կը հաւաքէ եւ կը յարձակի Ողուր քաղաքին վրայ, Քուրդ Սուլթանին կինը եւ որդիները գերի կը բռնէ, քաղաքը կը կողոպտէ, կը քանդէ եւ կրակի կուտայ: Սուլթանը եւ իր ընտանիքն ալ կ'սպաննուին:

Կ'սպասուէր որ Նատիր Շահ զօրք ղրկէր պատժելու համար Մելիք Ղուկասին յանդգնութիւնը, սակայն ճիշդ այդ օրերուն Նատիր Շահ սպաննուեցաւ (✝ 1747), եւ Պարսկաստան ներքին յուզումներու մատնուեցաւ, եւ մոռցուեցաւ Ղուկասի խնդիրը: Այնպէս որ անիկա հանգիստ մնաց Առաջաձորի մէջ: Իրմէ վերջ Առաջաձորի մէջ իբր մելիք իրեն յաջորդեց իր որդին Մելիք Յովհանջան, եւ ասոր որդւոց որդի յաջորդաբար Մելիք Ստեփան, Մելիք Սողոմոն եւ Տէր Մովսէս:

Այս տոհմը, ճանչցուած է Մելիք Ստեփանեան անունով փոխանակ Շահումեանի:

Մելիք Ղուկասէն վերջ Հալիձորի մէջ մելիքութիւն բռաւ Մելիք Պալիի որդին Մելիք Փարսադան Գ.ը:

Ասոր օրով Զանգուրի Աբիլբաշ խանը կ'ուզէ Բեխ գիւղի «Վերի-հարթ» բարձունքին վրայ բերդ մը շինել, որուն արգելք կ'ըլլայ Մելիք Փարսադան Գ.:

Նոյն ատեն Շուշիի Իպրահիմ խանին մարդիկը Բազաւուրն գիւղէն բռնի կը տանին Թումանեանց աղջիկը խանին հարէմը: Սակայն Մելիք Փարսադան Գ. վրայ կը հասնի եւ կ'ազատէ աղջիկը: Մելիք Իպրահիմ կը պատրաստուի յարձակելու Մելիք Փարսադանի վրայ, ինչ որ կ'ահաբեկէ ասոր հպատակները որոնք կը միջնորդեն հաշտեցնելու համար երկուքը: Իպրահիմ խան սուտ խոստումով Մելիքը իր քով բերելէ վերջ, կը դրժէ իր երդումը եւ կը կուրցնէ Մելիք Փարսադան Գ.ը, եւ կը խլէ անոր բոլոր գիւղերը, բացի Հալիձորէն եւ Բեխէն:

Փարսադան Գ. դառնալով Հալիձոր, կը հրաժարի մելիքութենէն, նշանակելով Մելիք իր որդին Յովհաննէսը, եւ ինքն կ'առանձնանայ Բեխ, ուր բաւական երկար կ'ապրի:

Մելիք Յովհաննէսի ժամանակ Ղափանի կը տիրապետեն ռուսերը, Մելիք Յովհաննէս եւ իր որդին Մելիք Գալուստ կը կառավարեն իրենց ժողովուրդը իբր ռուս պաշտօնեայ: (Մելիք Փարսադանեաններու մասին այս տեղեկութիւնները քաղուած են Ե. Լալայեանէն տես, *Ազգագր. Հանդէս, ԺԲ.* էջ 176—202):

## Զ· ԳՈՐԻՍ

Խնածախէն քիչ մը հարաւ կը գտնուէր Գորիս, հին անունով Զոգեձոր, որուն մելիքութիւնը նոր է, եւ սերած՝ Հին Գորիս բնակող Խոջա Լազարի որդի Լալայէն, որ Լազարի երեք որդիներուն միջինն էր (1): Նեղուած հողի սակաւութենէն, Լալայի երեց եղբայրը՝ Պարոն կը դիմէ Շահին գթութեան: Շահը անոր կու տայ Նոր Գորիսի մօտերը հողեր:

Քիչ յետոյ Թուրքմէն թափառականներ կը յարձակին Հին Գորիսի վրայ եւ բնակիչները կը կոտորեն, կը թալանեն եւ կը ցրուեն: Այս միջոցին Լալայի որդին Բաղր կը մեռնի, թողլով երկու որդիներ Յովնան եւ Ամիր անուն: Ասոնք ազատելու համար թափառականներու հալածանքէն կ'ապաստանին Վարանդա, Ջանախչի (Աւետարանոց) գիւղը: Մելիք Շահնազարեաններու քով։ Հոն Յովնան նշանաւոր կը հանդիսանայ իր քաջութեամբ եւ կ'ամուսնանայ Շուշեցի մեծատան մը աղջկան հետ:

Գորիսցիք կ'երթան կը խնդրեն Յովնանէն որ իրենց մելիք ըլլայ: Անիկա կը վարանի: Գորիսցիք կը դիմեն Մելիք Շահնազարի եւ կը կրկնեն իրենց խնդրանքը: Մելիք Շահնազար Փանահ խանէն կ'առնէ Գորիս, Խոտ, Շնհէր, Հալիձոր, Քարունհունջ, Ալի Ղուլիքենտ, Տաթեւ, Մաղանջուղ, Կոռու գիւղերը եւ անոնց Մելիք հաստատել կու տայ Յովնանը, որ կուգայ իր բնակութիւնը կը հաստատէ նախ Զագեձորի մէջ եւ ապա կը հիմնէ Նոր Գորիս գիւղը եւ կը տեղափոխուի։

Մելիք Յովնան, իբր քաջ մարդ կը հալածէ թափառական Թուրքմէնները որոնք պարբերաբար կը յարձակէին Նոր Գորիսի վրայ։

Իրեն կը յաջորդէ Մելիք Յովսէփը, որ թոյլ մարդ մըն էր, մինչ իր եղբայրներէն մէկը՝ Սէին կամ Հիւսէյին քաջ, առատաձեռն եւ խելացի անձ մըն էր, որուն կը յանձնէր Մելիք Յովսէփ գործերը: Անիկա այնքան մեծ ժողովրդականութիւն կ'տանայ որ վերջապէս ժողովուրդին խնդրանքով մելիքութիւնը անոր կը փոխանցուի:

Հիւսէյինի մեծ եղբայրները սակայն կը նախանձին եւ կռիւի մը մէջ անոր երկու մատը կը կտրեն եւ աչքը կը կուրցնեն, սակայն եւ այնպէս Հիւսէյին կը յաղթէ եւ Մելիք կը դառնայ: Եղբայրները՝ Հիւսէյինի դէմ կը հանեն Խոտ, Շնհէր եւ Հալիձոր գիւղերը սակայն Մեհտի խան 1805ին հրովարտակով կ'ազդարարէ որ հնազանդին Մելիք Հիւսէյինին։

Մելիք Հիւսէյինի շրջանին Նախիջեւանի խա-

(1) *Երէցը՝ Պարոն Նախահայրը վաճառական Պարոնեան ընտանիքին և կրտսերը՝ Աւագ որուն սերունդները՝ Աւագեան պարզ գիւղացիներ են։*

Ան երկու խումբերով կը յարձակի Քարաւէնի եւ Քարահունջի վրայ: Քարաւէն անձնատուր կ'ըլլայ իսկ Քարահունջը կը դիմադրէ: Մելիք Հիւսէյին կը հասնի օգնութեան եւ կը վանէ Նախիջեւանի խանին զօրքերը։

1815ին Մելիք Հիւսէյին կը մեռնի եւ անոր կը յաջորդէ որդին Մելիք Ռոստոմ, որ 1815—1818, երեք տարի մելիքութիւն կ'ընէ եւ անորդի կը մեռնի: Իրեն կը յաջորդէ եղբայրը՝ Մելիք Յարութիւն կամ Մելիք Թիւնին (✝1880), որ մինչեւ 1827 ռուսական գրաւումը մնաց իր պաշտօնին վրայ եւ յետոյ եղաւ *Մինպաշի*, այսինքն Զանգեզուրի կառավարիչ (տես. Ե. Լալայեան *Ազգագր. Հանդէս*, Դ. էջ 8—10, ուրկէ ամփոփուած են Մելիքհիւսէյինեաններու մասին տեղեկութիւնները):

## 3· ՏԵՂ

Զանգեզուրի մելիքութիւններէն մէկ ուրիշն է Տեղի մելիքութիւնը, որուն կը տիրէին Բարխուտարեանները:

Մելիք Բարխուտարեաններու նախահայրն էր Մելիք Բարխուտար Ա. որ Լոռիէն գաղթած էր Զանգեզուր, նախ Կոռնձոր եւ ապա Տեղ գիւղը, բայց որովհետեւ Տեղը ամրոց չունէր՝ ուստի կարճ միջոցէ վերջ, տեղափոխուած է Խնձորեսկ գիւղը, իշխելով այս երկու վայրերուն շրջակայ գիւղերուն վրայ։

Մելիք Բարխուտար Ա. շատ քաջ մարդ, շատ անգամ հալածած է Նախիջեւանի խանին ասպատակ զինուորները:

Ասիկա կ'ըմբոստանայ Նախիջեւանի խանին դէմ եւ կը մերժէ հարկ տալ: Նախիջեւանի խանը զայրանալով զօրք կը ղրկէ: Սաղու Ղալի մօտ վեց օրուան անընդհատ կռիւէն վերջ երբ վառօդը կ'սպառի, սուրով կը կռուին: Իր բոլոր զինուորները, մօտ 600 հոգի կը մեռնին, կը մնան միայն Մելիք Բարխուտարը եւ եղբայրը՝ Ղարա Պէյը, որոնք ճարահատ անձնատուր կ'ըլլան եւ կը գլխատուին 1748ին:

Մելիք Բարխուտարի որդին պատանի Դաւիթ Բեկը, վրէժ լուծելու համար 300 ձիաւորով, կը յարձակի անակնկալ կերպով Նախիջեւանի վրայ եւ կ'սպաննէ խանը: Խանին ժառանգորդները կը հետապնդեն զայն եւ ան կ'ստիպուի տեղէ տեղ փախչիլ անձը ազատելու համար:

Այս միջոցին անոր քով կու գայ Ղարապաղի Փանահ խանը եւ կը համոզէ որ առժամապէս իրեն յանձնէ երկիրին կառավարութիւնը մինչեւ որ խանին մարդիկը զինքը հալածելէ դադրին եւ չափահաս ըլլայ: Դաւիթ Բեկ կը համաձայնի: Փանահ ժամանակ մը կը կառավարէ Խնձորեսկն իր շրջականերով եւ յետոյ կ'անցնի Ղարապաղ՝ Մելիք Շահնազարի մօտ:

Դաւիթ Բեկ կ'ստանձնէ իշխանութիւնը եւ Մելիք տիտղոսը ստանալու համար կ'երթայ Թեհրան բայց առանց կարենալու Շահէն հրովարտակ առնել կ'ստիպուի դառնալ վասնզի Նախիջեւանի խանին մարդիկը հետամուտ էին զինքը սպաննելու:

Իր պաշտօնը կը վարէ Շուշիի Իպրահիմ խանին պաշտպանութեան տակ, ինչպէս կը հասկցուի իր շինած ապարանքին դրան վրայ գտնուած սա արձանագրութենէն *«Թվ. ՌՄԼԹ* (=1790) *իվայելումն Մելիք Բարխուտարի որդի Դաւիթ Բէկս շինեցի այս ամարաթս Իբրայիմ խանի ժամանակ»*:

Դաւիթի ծառաներէն Ղասում, Մելիք Բարխուտարի ստացած հրովարտակը գողնալով կը փախչի Իպրահիմ խանի մօտ որ զայն սիրով կ'ընդունի եւ Տեղ գիւղը անոր կը նուիրէ: Դաւիթի որդին, Մելիք Բարխատուր Բ. կ'երթայ Թեհրան, թէ՛ մելիքութեան հրովարտակ ստանալու եւ թէ Իպրահիմ խանի յափըշտակութեան դէմ բողոքելու համար, սակայն հոն կը մեռնի, իշխանութիւնը ձգելով իր որդւոյն՝ Միրզա Բէկին, որ վերջին մելիքը կ'ըլլայ: (տես. *Ազգագր. Հանդէս*, Դ. էջ 11—13):

## 4· ԽՆՁՈՐԵՍԿ

Ինչպէս տեսնուեցաւ Խնձորեսկ կը պատկանէր Տեղի Մելիք Բարխուտարեաններուն, որոնք հոն փոխադրած էին իրենց նստոցը:

Խնձորեսկ կը թուի թէ Մելիք Բարխուտարեաններէն գրաւուելէ առաջ ունէր իր յատուկ մելիքները:

Առնենք միայն մէկուն՝ Մելիք Փարամազի անունը պահուած է, անեկտոտային դէպքի մը յիշատակութեամբ:

Իբր թէ կիրակի օր մը գիւղացիները կը հաւաքուին Մելիք Փարամազի դրան առջեւ եւ կը խնդրեն որ դուրս ելլէ իրենց դատերը տեսնելու: Մելիքը չուզեր դուրս ելլել եւ կը հրամայէ որ յաջորդ կիրակին գան: Երբ գիւղացիները շատ կը թախանձեն՝ Մելիքը մերկ դուրս կու գայ եւ կը բարկանայ թէ «հալաւս (շապիկ) լուացալ էն, հալա չորացալ չի, հի՞նչ ըք շահլա տանըմ»: (տես. *Ազգագր. Հանդէս*, Դ. էջ 14):

Հաւանօրէն ժառանգական հողատէր մելիքութիւն մը չէր եւ Մելիք Փարամազ գիւղապետ Մելիք մըն էր.

## Գ·

## ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա·

### ՎՐԱՍՏԱՆ

Վրաստան՝ Հայաստան չէ, բայց տեսնուեցաւ թէ ինչպէս Սելջուկ տիրապետութեան շրջանէն սկսեալ այս երկիրին պատմութիւնը սերտ կապերով միացած էր Հայաստանի պատմութեան, թէ՛ Հայերը եւ թէ՛ Վրացիք հասարակաց թշնամիներուն դէմ միասին մա-

քառած եւ իրարու նեցուկ եղած էին: Վրաստան ԺԵ. դարէն վերջ պարսիկ գերիշխանութեան տակ փոխարքայութեան մը վերածուած էր, սակայն Հայաստանէն մասեր իր փոխարքաներուն իշխանութեան տակ էին, հետեւաբար այս տեսակէտով իբր Հայաստանի գէթ մէկ մասին կառավարիչը կը շահագրգռէ մեզի, երբ նոյնիսկ նկատի չունենանք այն գործակցութիւնը եւ կապերը զորս ունեցած են Վրացիք Հայոց հետ նաեւ այս շրջանին.

Վրաստանի «թագաւոր»ները Պարսիկները *վալի* (կուսակալ) կը կոչէին, թէեւ անոր տուած էին ինչ ինչ առանձնաշնորհներ, ինչպէս ճղայ (արքայական գլխանոցի զարդ մը) կրելու իրաւունք (Աբրահամ Կրետացի, *Պատմագրութիւն.* էջ 48):

Վրաստան՝ Թուրք եւ Պարսիկ սահմանագլուխին վրայ, խաղալիք դարձած էր այս երկու իսլամ պետութիւններուն միջեւ: Իր թագաւորները՝ նոյնիսկ երբեմն իսլամացած եւ նուաստ վիճակի ենթարկուած են եւ հազիւ կրցած են իրենց կէս-անկախ գոյութիւնը քաշքշել:

Ալեքսանդր թագաւորի (1413—1444) անխոհուրդ կարգադրութեամբ երբ Վրաստան երեք մասերու կը բաժնուէր եւ իր միութիւնը կը քայքայուէր (տես. վերը, էջ 374) Պարսկաստան ընդհակառակը Ջհան Շահի (1437—1467) ատեն կը վերակազմուէր եւ մեծ պետութեան մը կը վերածուէր եւ կը ձգտէր երբեմն իր տիրապետութեան ենթարկուած երկիրներուն— որոնցմէ մին էր Վրաստանը — տիրանալ, մինչ թուրքերը, Փոքր Ասիոյ տիրապետելէ եւ Կ. Պոլիսը գրաւելէ (1453) վերջ կը ձգտէին Կովկաս արշաւել Վրաստանը ոտնակոխ ընելով:

Հայաստանի եւ Վրաստանի տիրապետութեան համար մրցակից այս երկու պետութիւնները որոնք ինչպէս տեսնուեցաւ (տես. վերը, էջ 81—82) 250 տարի մաքառեցան իրարու դէմ, փոփոխակի յաջողութիւններով, ինչպէս Հայաստանը նոյնպէս Վրաստանը աւերեցին, միայն սա տարբերութեամբ որ Վրաստանի մէջ չկրցան տեւական տիրապետութիւն մը հաստատել, շնորհիւ երկրին աշխարհագրական դիրքին եւ իսլամ զանգուածներ իր սահմաններուն մէջ հաստատուած չըլլալուն:

Վրաստան երկու մահմետական մեծ պետութիւններու սահմանին վրայ միակ քրիստոնեայ իշխանութիւնն էր, որուն դէմ անոնք լեցուած էին նաեւ կրօնական ատելութեամբ: Հետեւաբար Վրաստան տառապեցաւ ընդմէջ թուրք եւ պարսիկ պետութիւններուն, որոնք յաճախ զայն կոխոտեցին: Ընդհանուր կերպով երկրին արեւելեան եւ հարաւ-արեւելեան մասերուն կը տիրէին Պարսիկները եւ արեւմտեան ու հարաւ-արեւմտեան մասերուն Թուրքերը, որոնք ԺԵ. դարուն առաջած էին արեւմտուքէն եւ տիրաբար հաստատուած Սեւ Ծովու վրացական եզերքին վրայ, հոն բռնի իսլամացնելով քրիստոնեայ բնակչութեան մէկ մասը:

Յաջորդ ԺԶ. դարուն մահմետականացումը աւելի լայն չափերով գործադրուեցաւ եւ ԺԷ. եւ ԺԸ. դարերուն, Վրացիք հալածուեցան տեւականօրէն հրդեհներով, ջարդերով եւ գերեվարութիւններով, մինչ պարսիկները ԺԵ—ԺԸ. դարերուն կ'արշաւէին արեւելեան Վրաստան եւ կ'ստիպէին ազնուականները եւ նոյնիսկ թագաւորները ուրանալ իրենց կրօնքը:

Ուզուն Հասան (1467—1477), ինչպէս Երուսաղէմ պահուած Գանձագիրքի կամ Տաղարանի մը (թ. 1193) ոտանաւոր յիշատակարանը կը պատմէ, գործադրած է խիստ հարկապահանջութիւն եւ կեղեքում, ինչպէս նաեւ հալածանք քրիստոնէից դէմ, զանոնք հարկադրելով կապոյտ նշան կրել իսլամներէն զանազանուելու համար, մեռելները լռելեան տանելու, եւ եկեղեցիներու զանգահարութիւնը դադրեցնելու եւ 1476ին՝

*«Հասան փատշահըն մեծ Սուլթան*
*յամէն դիմաց եհան հրաման*
*որ զօրք բազում ժողովեցան*
*վասն աւերման Վրաց տանն*
*հարիւր Ռ* (1,000) *թիւ էր համակ,*
*իձիաւոր եւ իհետեւակ,*
*Տփխիս մըտին խիստ համարձակ*
*առեալ արին զնա աւերակ,*
*Բագրատ թագաւորն Վրաց տան,*
*գընացեալ էր ի Լակզաստան* (*Լազիստան* ?)
*վասն կռուոյ եւ բարկութեան,*
*մնացեալ աշխարհն անտիրական»*

Եւ միամիտ գրիչը այս աղէտը աստուածային պատուհաս մը կը համարէ *«վասն չարեաց Վրաց ազգին»* որոնք Սուլթանը կաշառելով Երուսաղէմի մէջ Գողգոթան Հայերէն յափշտակած էին:

Բայց Ուզուն Հասանի տիրապետութիւնը շատ կարճ տեւեց, վասնզի երբ իմացաւ որ Թուրքերը կու գան, փախաւ եւ Թուրքերը մտան Վրաստան ու գրաւեցին Թիֆլիսը, եւ սոսկալի ջարդ մը տուին, ինչպէս նոյն յիշատակարանը կը պատմէ:

Տասը տարի վերջ (1486) Թիֆլիս գրուած ձեռագիր Շարականի մը յիշատակարանին մէջ Մկրտիչ Երէց կ'ըսէ թէ Հասան Բէկ անուն խան մը *«գերեաց զՎրաց տուն եւ աւերեաց զքաղաք Փայտակարան»* (Ձեռագիր թ. 1657. Երուսաղէմ):

Ասիկա ընդհանուր պատկեր մըն էր վասնզի միշտ Վրաստան անգամ մը պարսից եւ ուրիշ անգամ մը օսմանցիներու կողմէ կը հարուածուէր եւ այսպէս երկու մեծ ոյժերու միջեւ կը տարուբերէր, երբեմն նպաստաւոր պարագաներէն օգտուելով իր իշխանութիւնը Վրաստանէն դուրս ալ մինչեւ Կարնոյ մօտերը տարածելով, ինչպէս կը հասկցուի Վենետիկ Մխիթարեանց վանքը պահուած ձեռագիր Աւետարանի մը յիշատակարանէն, ուր կը պատմուի թէ գիրքը գնուած է 1511ին Կսկիմի (= Թեսկիմ) մէջ *«իՎրաց ազգէ, որ գերեալ էին եւ տարեալ»* *«յիշխանութեան Սպերու պրն. Կիդեվանին որ տիրեաց իՎրաց ազգէ»* (*Ցուցակ.* Ա. հր. էջ 646):

Վրաստանի վրայ իրենց տիրապետութիւնը տեւականացնելու համար այս իսլամ պետութիւնները զայն բռնի իսլամացնելէ զատ աշխատեցան ուրիշ միջոցներու ալ դիմել:

Այսպէս, պարսիկները՝ ԺԶ. դարուն երկրորդ կէսին աշխատեցան վրացիները տանիլ Պարսկաստան եւ անոնց տեղ բերել մահմետական գաղթականներ, վրացիները ընկճելու եւ Վրաստանի արքունիքը հըսկողութեան տակ պահելու համար (Լէօ. Գ. էջ 89): Ուստի հայաշատ Բորչալու եւ Ղազախ գաւառներուն

մէջ 35,000ի չափ մահմետականներ տեղաւորեցին:

Բնիկները տեղի տուին եկուորներուն եւ ցրուեցան. իսկ մնացող սակաւաթիւ Հայերը կազմեցին առանձին գիւղեր եւ ապրեցան թուրքերու հետ, որոնք կը կառավարուէին անկախ խաներով: Սակայն յետոյ Պարսիկ կառավարութիւնը այդ Թուրքերը ինքն հպատակեցուց Վրաց թագաւորներուն եւ ջնջեց անոնց անկախութիւնը (Լեօ. *նոյն.*) բայց Վրացիք ալ անոնց ինքնավարութիւնը պահեցին, թուրք գիւղերը կառավարելով *աղալար*ներով իսկ Հայ գիւղերը՝ *մելիք*ներով: Սակայն երկիրը պատերավայր ըլլալով թուրք եւ պարսիկ պատերազմներու բնակչութիւնը միշտ շարժման մէջ էր, այնպէս որ դարձաւ կէս-թափառական խաշնարածներ, առաջնորդութեամբ իրենց Աղալարներուն եւ մելիքներուն, որոնք ի հարկին կռիւներ ալ կը մղէին իրենց հետեւորդներով: Անոնք այսպէս դարձան կատարեալ իշխողներ (Լեօ. Գ. էջ 90) եւ սկսան հարկ եւ տուրք առնել: Ուրեմն առաջ եկաւ տիրողներու դասակարգ մը նման վրացի ազնուականներու, տըրկացնող ժողովուրդը, միակ տարբերութեամբ մը որ ասոնք իրաւունք չունէին իրենց մարդիկը ծախելու (Լեօ. Գ. 90):

Աղալարները որովհետեւ իրենց միջեւ ալ վէճեր կ'ունենային, մասնաւորապէս հողերու շուրջ, անոնց պետեր տրուեցաւ վարչական եւ դատաստանական իրաւունքներով: Այդ պետերը կ'ընտրուէին իւրաքանչիւր գաւառամասի աղալարներէն եւ վրաց կառավարութեան կողմէ կը հաստատուէին: Ասոնք կը կոչուէին *վէքիլ* կամ *սուլթան* եւ շրջապատուած էին ձրիակերներով, որոնք զինուորական կազմակերպութեան անունը ունէին բայց իրապէս կեղեքիչներ եւ աւազակային խումբեր կը կազմէին (Լեօ. Գ. 90):

Պարսից գաղթաւորման ծրագիրը իր նպատակին չծառայեց այլ ընդհակառակը նպաստեց անիշխանութիւն առաջ բերելու եւ անկարգ տարրերը ըստուարացնելու, իբր թէ բաւական չըլլային Կովկասը բաժան բաժան ընող խաները, որոնք անկախութեան ձգտելով երբեմն թշնամիներու ալ կը ծառայէին, ինչպէս թուրքերու որոնք կը քաջալերէին Վրաստանի, Տաղիստանի եւ Շիրուանի տիրոզները, որպէսզի ապըստամբին: Եկաւ ատեն մը որ Պարսկաստան ամբողջ Կովկասը լքել պարտաւորուեցաւ խաներուն, որոնք երբեմն նոյնիսկ Պոլսոյ Սուլթանին հպատակութիւն յայտնեցին:

Վրաստան ալ, նման պարսիկ խանութիւններուն երբեմն Պարսկաստանէն կորզուած եւ Թուրքիոյ կցուած է:

Այսպէս, 1578ին անիկա անգամ մը հնազանդեցաւ Սուլթան Մուրատ Գ.ի (1574—1594), երբ Լալա Մուսթաֆա փաշա, Կարսի Թոխմախ խանին յաղթելէ վերջ, տիրեց երկրին եւ զայն երեք կուսակալութիւններու բաժնեց:

1. Թիֆլիսի կուսակալ դրաւ Մեհմէտ փաշան,
2. Կախեթի՝ Ալեքսանդր թագաւորը,
3. Սոխումի՝ Հայտար փաշան:

Օսմ. բանակը առաջացաւ մինչեւ Շամախի, նոյնիսկ Տէրպէնտ: Լալա Մուսթաֆա փաշա Թիֆլիսի մէջ միջնաբերդ մը շինեց անշուշտ ի նախատեսութիւն պարսիկ հակայարձակումի մը եւ ամրացուց երկիրը շատ մը ամրոցներ շինելով եւ մինչեւ Տէրպէնտ պահակներ դնելով: Մուսթաֆա փաշայի նախատեսութիւնը արդարեւ ճիշդ էր, վասնզի նոյնիսկ յաջորդ տարին (1579) պարսիկ գահաժառանգը՝ Միրզա Համզա վերագրաւեց Վրաստանը, պաշարեց Թիֆլիսը եւ սպառնաց Էրզրումի եւ Պաղտատի (Լեօ. Գ. էջ 198):

Սուլթան Մուրատ 1579ին Սինան փաշայի հրամանատարութեամբ բանակ մը ղրկեց Վրաստան որ յաջողեցաւ մինչեւ Թիֆլիս առաջանալ, բայց պարսիկ բանակին առջեւէն փախաւ Կարին:

1578—1590 կռիւը փոփոխակի յաջողութիւններով շարունակուեցաւ Վրաստանի շուրջ եւ Կովկասի մէջ: Վերջնական յաղթանակը մնաց Օսմանցիներուն որոնք տիրեցին բոլոր Կովկասի: Սակայն վրացիք շուտով չհաշտուեցան Օսմ. տիրապետութեան հետ:

Սիմոն թագաւոր որ իսլամացած էր Շիի աղանդով եւ յետոյ զղջացած, ապստամբեցաւ: Դաւրէժի կուսակալ Ճաֆար փաշա 1598ին պատժելու համար ապստամբ թագաւորը, Վրաստան արշաւեց եւ Սիմոն թագաւորը գերի բռնելով Կ. Պոլիս տարաւ եւ կեղեքեց Վրաստանը:

Բայց Շահ Աբաս երբ յաջողեցաւ թուրքերուն յաղթել եւ վերստին գրաւել Վրաստանը 1608ին, շատ անգթութեամբ վարուեցաւ, վասնզի ջարդեց ոչ-պատերազմիկ 100,000 վրացիներ եւ ուրիշ 100,000 վրացիներ փոխադրեց Պարսկաստան, եւ հաստատեց Պարսկաստանի ամէնէն հեռաւոր մէկ գաւառին մէջ, ուր դեռ անոնց սերունդները կը մնան եւ կը խօսին իրենց շրջանին հին վրացերէնը: Շահ Աբաս օրինականացուց նաեւ վրաց թագաւորներուն իսլամանալը եւ գահաժառանգներու մանկութենէ պարսից արքունիքին մէջ դաստիարակուիլը, այնպէս որ Վրաստանի արեւելեան մասին երկու թագաւորութիւնները, Քարթալինիա եւ Կախեթ ունեցան շարք մը իսլամ վրացի թագաւորներ, որոնցմէ ոմանք իրենց մոլեռանդութեամբ եւ հալածանքներով տխուր անուն մը ձգեցին Վրաց պատմութեան մէջ (Լեօ. Գ. էջ 265—266):

Շահ Աբաս անգամ մըն ալ աւերեց Վրաստանը եւ միայն ռազմագիտական հանճարը Գէորգ Սաաքացէի, Վրաստանի մեծ վարչապետին (Դիդի Մուուրավի = Didi Moouravi) կրցաւ փրկել երկիրը կատարեալ աւերումէ:

Անիկա յաջողեցաւ 1617ին, բոլորովին բնաջնջել Շահ Աբասի բանակները եւ Պարսկաստանի տուաւ այնքան վճռական հարուած մը որ անիկա երբեք ի վիճակի չեղաւ վերստին աւերելու Վրաստանը, որ կ'ուզէր բոլորովին ջարդուփշուր ընել հակառակ ամէն արգելքի:

Նոյն դարուն, թուրքերը շարունակեցին միշտ աւերել վրացական փոխ-արքայութիւնը Սոմխէթի, այսինքն հարաւային եւ հարաւ-արեւմտեան Վրաստանի:

Անոնք քանդեցին քրիստոնէական մեծ յիշատակարաններ, հողի հաւասարեցուցին շքեղ արուեստով հոյակապ Մայր Եկեղեցիներ՝ լի անգին հարստութիւններով:

Շահ Աբասի մահէն վերջ տիրող անիշխանու-

թիւնը Պարսկաստանի մէջ եւ ճէլալի աւազակներու գործունէութիւնը Թուրքիոյ մէջ, որով Անատոլուն Օսմ. տիրապետութենէն կը բաժնուէր, յոյսեր տուին Վրաստանի վերականգնումին, ԺԷ. դարուն առաջին կիսուն:

Թէյմուրազ Ա. (1629—1634) Կախեթի թագաւորը օգտուելով տիրող անիշխանութենէն, ինքն ալ փորձուեցաւ աւարառութիւններ եւ կողոպուտներ գործադրելու, նման պարսիկ խաներու եւ անոնց դէմ իբր փոխ-վրէժ, ուստի իր եւ Իմերեթի օգնական զօրքերով ասպատակեց Ղարապաղ եւ մինչեւ Գանձակ առաջացաւ:

Գանձասարի Աղուանից Կաթողիկոսը, Վրաց թագաւորին հետ տեսակցութիւն մը կ'ունենայ, եւ ամբողջ երկիրին կողմէ խօսելով կը ջանայ Վրաց իշխաններուն եռանդը աւարառութիւններէն աւելի օգտակար ձեռնարկի մը ծառայեցնել, ուստի խորհուրդ կու տայ Թէյմուրազին, որ օգտուելով թուրք եւ պարսիկ պատերազմէն, իր 40,000 զօրքերով կը նուաճէ Ատրպատականը: Այդ պարագային Կաթողիկոսը խոստանար օգնել, իրեն ստորադրեալ իշխաններուն զօրքերը տրամադրելով:

Կաթողիկոսը կը հաւատար թէ յաջողութիւնը ապահով էր քանի որ պարսիկները յոգնած էին: Բայց Վրաց թագաւորը որ աւելի աւարին հետամուտ էր քան թէ իր երկիրին եւ քրիստոնէութեան փրկութեան, կողոպտեց Կաթողիկոսը եւ անոր վանքը եւ զինքն ալ հետը գերի տարաւ Գորիս (Brosset. Histoire de la Georgie. հտ. Բ. 1856. էջ 64. կամ Լէօ. Գ. էջ 498—499):

Բայց Գանձասարի Կաթողիկոսին գաղափարը, Հայ-Վրացի գործակցութեամբ մը, վերականգնելու Հայոց եւ Վրաց անկախութիւնը, երբ Թէյմուրազ չհասկցաւ իր յաջորդները, վերջապէս եկաւ ժամանակ մը, որ ըմբռնեցին, բայց դժբախտաբար ուշ էր: Իրենց ճիգերը ուրիշ բանի մը չծառայեցին եթէ ոչ երկիրը ռուս տիրապետութեան ենթարկելու:

Ռուսերը արդէն սկսած էին շահագրգռուիլ հարաւային Կովկասով (իրենց Անդրկովկասը) եւ տեղեկութիւններ կը հաւաքէին Վրաստանի եւ Ղարապաղի Հայ մելիքներուն մասին եւ նոյնիսկ Վրաստանի արքունիքին հետ յարաբերութեան մէջ էին:

Քարթլինայի Վախթանգ Ե. Շահնաւազ թագաւորին (1658—1676) որդին Արչիլ 1707ին Մոսկուա էր եւ հոն մեռաւ։

Վախթանգի յաջորդեց իր որդին Գէորգի ԺԱ. Շահնաւազ (1676—1709) որ անհանդարտ նկարագիր մը ցոյց տուաւ, գրեթէ միշտ ներքին յամառ եւ աւերիչ պատերազմներ մղելով Հերակլ Ա.ի դէմ, որ կը կոչուէր Նազար Ալի խան եւ մահմետականացած Վրացի թագաւորներուն մէջ նշանաւոր էր: Գէորգի այս կռիւներուն մէջ շատ անգթութիւններ ցոյց տուաւ, շատ ստորնութիւններ գործեց, բայց չկրցաւ իր գահը պաշտպանել Քարթլինայի մէջ: Պարսից Շահը զինք Վրացի զօրագունդով մը Սպահան կոչեց եւ ղրկեց Ղանտահար (Աֆղանիստան) պատժելու համար ապըստամբ Միր-Վէյսը:

Գէորգ ԺԱ., որ պարսիկները կը կոչէին Գուրգին խան, Ղանտահարի մէջ պարսիկ զօրք հաւաքեց, որպէսզի ճնշէ Սիւննի Աֆղանները, եւ յետոյ անցնի Պելուճիստան:

Գուրգին խան ամէն աւեր եւ չարիք գործեց Ղանտահարի մէջ եւ ինքն զեխութեան մէջ անցուց իր կեանքը:

Իսրայէլ Օրի, 1707ին, իբր դեսպան Պարսկաստան եկած ատեն, Մոսկուայի մէջ Գէորգ ԺԱ.ի եղբօրը Արչիլի հետ, իսկ Սպահանի մէջ իրեն հետ համաձայնած էր:

Միր-Վէյս, որ Սպահան կը մնար, յաջողեցաւ Հիւսէյին Սուլթան Շահը (1694—1722) համոզել թէ Իսրայէլ Օրիի դեսպանութիւնը դաւադրութիւն մըն էր Ռուսիոյ Զարի գլխաւորութեամբ եւ Հայոց ու Վրացիներու գործակցութեամբ, եւ Գուրգին խան ալ մասնակից էր անոր:

Հիւսէյին Սուլթան Շահ, փոխանակ Գուրգին խանը պաշտօնանկ ընելու, Միր-Վէյսը հաստատեց իր նախորդ պաշտօնին մէջ որպէսզի Գուրգին խանին դէմ մաքառի եւ այսպէս երկուքը զիրար չէզոքացնեն, բայց Միր-Վէյս աւելի ճարպիկ, առանց պայքարի դաւով մը սպաննեց Գուրգին խանը (1709) եւ ջարդեց վրացի զօրագունդը: Քիչ վերջ կազմեց բանակ մը եւ ապստամբեցաւ: 1711ին պարսիկ բանակ մը ղըրկուեցաւ Ղանտահար սակայն ջարդուեցաւ եւ փախաւ (Լէօ. Գ. 592):

Աֆղաններու այս յաջողութիւնը կարծես ազդանշան մը եղաւ ոտքի հանելու համար Պարսկաստանը շրջապատող Սիւննի մահմետականները, մաքառելու համար Շիի Պարսիկներուն դէմ:

Կովկասի մէջ Սիւննի Լեզգիները, նոյնը ըրին ասպատակելով պարսկական հողերը եւ գերելով բնակչութիւնը (1711):

Այս խառնակութեան օրերուն Գէորգի ԺԱ. թագաւորին յաջորդեց Վախթանգ Զ. որ ազատագրութեան գաղափարին մարմնացումը եւ Վրաստանի լաւագոյն թագաւորներէն մէկը եղաւ (Brosset եւ Լէօ. Գ. 598—9):

Վախթանգ հազիւ երեք տարի թագաւորած էր երբ Պարսկաստան գնաց Շահէն իր պաշտօնին հաստատութիւնը ստանալու համար: Հիւսէյին Շահ զայն հարկադրեց ընդունիլ մահմետականութիւնը եւ առնել Հիւսէյին Ղուլի խան անունը: Յետոյ զայն նշանակեց պարսկական զօրքի հրամանատար եւ ղրկեց Խորասան Աֆղաններուն դէմ կռուելու համար։ Իր տեղը Քարթլինիայի մէջ թագաւորեց Բակուր Շահնազ (1716—1719):

Վախթանգի կողմէ Շամախի ղրկուած վրացի մը՝ Փարսադան բէկ ռուս դեսպան Վոլինսկիին միջոցով Զարին օգնութիւնը խնդրեց: Թէեւ ոչ մէկ քաջալերութիւն գտաւ (Լէօ. Գ. 599), սակայն 1719ին, Վախթանգ Պարսկաստան ձգելով իր Հիւսէյին Ղուլի խան անունը եւ մահմետականութիւնը, վերստին Քարթլինիայի գահը բարձրացաւ եւ հինգ տարի (1719-1724) կրկին թագաւորեց, եւ ցոյց տուաւ արժանաւոր թագաւորի մը կարողութիւնները:

Անիկա իրեն նպատակակէտ ըրաւ ազատել Վրաստանը Պարսկական լուծէն եւ վերահաստատել անոր անկախութիւնը Ռուսիոյ օգնութեամբ: Անոր համար ժամանակը նպաստաւոր կը թուէր վանզի

Պարսկաստան քայքայումի մէջ էր, զանազան խռովութիւններով։

Վախթանգ, նկատելով որ Հայերու մէջ ալ կար այսպիսի տրամադրութիւն մը, մօտեցաւ Հայերուն, եւ անոնց հետ գործակցութիւն մը ստեղծելու աշխատեցաւ։

Անիկա յոյսը Ռուսիոյ վրայ դրած, չօգնեց պարսիկ Շահին, որ Վախթանգին եւ Բագուրին դիմեց, մեծ խոստումներով, երբ Աղուանները 1722ին ջարդեցին պարսիկները Գիւլնապատի ճակատամարտին մէջ եւ պաշարեցին Սպահանը։

Բագուր տրամադիր էր օգնութեան հասնելու բայց Վախթանգ արգիլեց, այն յոյսով թէ Ռուսերը շուտով պիտի գան եւ Վրաստանը պիտի փրկեն պարսկական լուծէն, քանի որ Մեծն Պետրոս խոստացեր էր 1722 Հոկտեմբերին Շամախի գալ իր բանակով (տես. վերը, էջ 411)։

Վախթանգ զոր Շահը կարգած էր հրամանատար Կովկասի պարսիկ բանակներուն (տես. վերը, էջ 410) անդորրութիւնը պահպանելու համար երկիրին մէջ, Թամասպ Շահին հրամանով Լեզգիներուն արշաւանքին դիմադրելու պաշտօն ստացած էր սակայն կռուելու պէտք չունեցաւ վասնզի 1722 Մայիսին անոնք ինքնին ետ քաշուեցան։

Վախթանգ, Սեպտեմբերին կրկին եկաւ Գանձակ իբր թէ Լեռնականներուն ապստամբութեանց վերջ տալու համար, սակայն իր բուն նպատակն էր Մեծն Պետրոսի հրահանգին համաձայն Շամախի գտնուիլ, միանալու համար Ռուս բանակին (Ն. Ադոնց, *Րաֆֆի*, էջ 132)։

Վախթանգ— ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 410)— իրեն հետ ունէր Աղուանից Եսայի Կաթողիկոսը, որ ինքն ղրկած էր Ղարապաղ, մելիքներու եւ Հայ զինուորութեան (Սղնախ) գործակցութիւնը ապահովելու, իսկ երկիրը կազմակերպելու համար Ղափան ղրկած էր իր Հայ զօրավարը Դաւիթ Բէկը, որ առանց զգալի ընելու իր նպատակը, անդորրութիւնը հաստատելու պատրուակով երկիրը կը մաքրէր իսլամներէ եւ հակառակորդ տարրերէ (տես. վերը, էջ 411—412)։

Մեծն Պետրոս, 1722ին արշաւեց դէպի Կովկաս, եւ տեղացի լեռնական իշխաններ իրարու ետեւէ հնազանդութիւն յայտնեցին Չարին։ Մեծն Պետրոս այս կերպով կ'սպառնար Պարսկաստանի գոյութեան, ինչ որ հակառակ էր թրքական շահերու։ Օսմանցիք՝ գիտակ անշուշտ Վախթանգի Չարին հետ ունեցած յարաբերութիւններուն, 1723ին գրաւեցին Թիֆլիսը, Ռուսերը կանխելու համար։ Վախթանգ փախաւ Իմերէթի կողմերը եւ երբ Մեծն Պետրոս լքեց Կովկասը եւ Տէրպէնտէն ետ դարձաւ, բոլորովին յուսահատ, իր ընտանիքով գնաց Մոսկուա (1724), վասնզի վստահելով Ռուսիոյ, Թուրքիոյ եւ Պարսկաստանի կողմէ զինքն սիրաշահելու համար տրուած խոստումներուն բնաւ կարեւորութիւն չէր տուած, եւ չարաչար յուսախաբ եղած էր, մանաւանդ 1724 Յունիս 12ին կնքուած թուրք եւ ռուս դաշինքին համաձայն թուրքերու ձգուած տեսնելով Վրաստանը, Սորին Տաղիստանը, Ատրպատականը, Նախիջեւանը, Երեւանը, Գանձակը, Ղարապաղը եւ նոյնիսկ Շիրվանի մէկ մասը (Րաֆֆի, *Խամսայի մելիքութիւնները*, էջ 30)։

Քիչ վերջը Նատիր Շահ երբ վերահաստատեց պարսիկ ոյժը եւ յաջողութեամբ առաջ տարաւ իր արշաւանքները, քանի մը տարուան մէջ հետզհետէ ետ առաւ այն բոլոր հողերը, զորս Ռուսերը եւ Օսմանցիք գրաւեր էին, ինչպէս Վրաստանը, Երեւանը, Նախիջեւանը, Գանձակը, Ատրպատականը։ Նոյնիսկ առանց պատերազմի Աննա Իվանովնա Չարուհին (1732—1735), Նատիրի դարձուց Գիլանը, Մազանդարանը, Աստրապատը, Պագուն եւ Տէրպէնտը։

Վրաստան բոլորովին նուաճուած էր եւ 1736ին Մուղանի գումարուած աշխարհաժողովին, ուր Նատիր, Շահ պիտի հռչակուէր, կը մասնակցէր Կախեթի վալին Իմամ Ղուլի խանին (Վրաց Դաւիթ Գ. թագաւորը) որդին՝ իսլամացած Ալի Միրզա խանը (Րաֆֆի, *նոյն*. էջ 40)։

1747ին երբ Նատիր սպաննուեցաւ եւ Պարսկաստան վերստին քայքայուեցաւ, Վրաց Հերակլ թագաւորը անկախ եղաւ, օգտուելով Պարսկաստանի անիշխանութենէն։ Քարթալինայի եւ Կախեթի թագաւորները յաջողութեամբ կռուեցան շրջակայ սահմանակից իշխաններու դէմ։ Հայերը ասկէ քաջալերուած աշխատեցան որ Վրաստան զօրեղանայ եւ տարածուի նաեւ իր սահմաններէն անդին, եւ 1749ին յաջողեցան համոզել Երեւանի եւ Գանձակի խաները, որ Թէյմուրազ թագաւորին դիմեն եւ խնդրեն անոր պաշտպանութիւնը, ներքին թշնամիներուն դէմ, որոնք ազգամիջեան պատերազմներու պատճառ կը դառնային։

Այսպէս, Վրաստան դարձաւ աւատապետութիւն մը, իրեն ստորադաս ունենալով հարկատու իսլամ խաներ եւս։

Նատիրի զօրավարներէն Ազատ խան որ տիրած էր Ատրպատականի (1751) եւ իրեն հնազանդեցուցած՝ Նախիջեւանի խանութիւնը (Լէօ. Բ. էջ 725) փորձեց նուաճել նաեւ Երեւանը, ինչ որ չէր ուզեր թոյլ տալ Վրաստանի Թէյմուրազ թագաւորը, որպէսզի խռովարարները չմօտենան Վրաստանի սահմաններուն։ Հետեւաբար անոր դէմ ելաւ եւ պարտութեան մատնեց զայն (Լէօ. Գ. 725) եւ քշեց մինչեւ Արաքսի եզերքը։ Հերակլ գրաւեց Երեւանը։ Ազատ խան հաշտութիւն կնքեց Հերակլի հետ Արաքսը սահման որոշելով։

Վրացիք կռուեցան նաեւ Փանահ խանին դէմ երբ դեռ անիկա Շուշիի տիրացած չէր (*նոյն*. էջ 763)։ 1750ին Թէյմուրազ եւ Հերակլ Փանահ խանը վանեցին Գանձակէն Կիւլիստանի Մելիք Թամրազին եւ Գանձասարի Կաթողիկոսին հետ։ Թէյմուրազ հետապնդեց զայն եւ Բարտա գիւղին մօտ ջարդեց թուրքմէն Սամաս խանին եւ Բարգուշատ գաւառի մէջ՝ Փանահ խանին բանակը։ Փանահ գերի ինկաւ բայց ինչպէս բացատրուեցաւ, (տես. վերը, էջ 383) փոխանակ ոչնչացուելու խոշոր կաշառքով ազատ ձգուեցաւ եւ նոյնիսկ դաշինք կնքուեցաւ հետը։

Քարթալինայի Թէյմուրազ եւ Կախեթի՝ Հերակլ թագաւորները, առանց իրենց *Վալի* տիտղոսը նետելու, անկախ դարձած, Հայերը իրենց հետ ունենալով, բարձրացուցին Վրաստանի հեղինակութիւնը թէ՛ դիւանագիտութեամբ եւ թէ՛ զէնքով։

Անոնք մասնակցեցան Ղարաբաղի Հայ մելիքներուն եւ Շուշիի Իպրահիմ խանին միջեւ մղուած պայքարներուն, ինչպէս նաեւ պարսիկ խաներու իրարու դէմ մղած կռիւներուն:

Տեսնուեցաւ թէ ինչպէս 1752ին Թէյմուրազ եւ Հերակլ դաշնակցեցան պարսիկ խաներու դաշնակցութեան ընդդէմ Շիրուանի Հաճի Չելէպի խանին (տես. վերը, էջ 390), ինչպէս անոնք դաւեցին իրենց դաշնակիցներուն եւ ինչպէս պատժուեցան Շիրուանի խանէն որ զիրենք հետապնդեց մինչեւ Թիֆլիս եւ պարտադրեց հաշտութիւն մը որ կը հարկադրէր Վրաստանը իր երկրին սահմաններուն մէջ ամփոփուիլ եւ հրաժարիլ ուրիշ հողերէ եւ չխառնուիլ պարսիկ խաներու գործերուն:

Վրաստանի հեղինակութիւնը խորտակուած էր իր բանակին հետ, Կովկասի հարաւային կողմը, եւ թէեւ Հաճի Չելէպի մեռաւ, բայց Տաղիստանի իշխողները դեռ երկար ատեն յարձակումներ գործեցին Վրաստանի վրայ եւ Վրաստան սպառեց իր ոյժերը այդ գիշատիչներուն դիմադրելու դժուար եւ տեւական գործին մէջ:

Վրաստան իր մատնուած այս նուաստութենէն դուրս գալու ուրիշ միջոց չունէր երբ ոչ արտաքին օգնութեան ապաւինիլ: Եւ ո՞ւր կրնար դիմել երբ ոչ կրօնակից Ռուսերուն որոնք արդէն անգամ մը խոստացած էին իրենց օգնութիւնը: Ուստի 1752ին Թիֆլիսի մետրոպոլիտ Աթանաս Ամիլախորին ղրկեցին Պետրպուրկ Եղիսաբէթ Զարուհիէն օգնութիւն խնդրելու համար (Brosset. *նոյն.* էջ 170. Լեօ. Գ. 768):

Իսկ 1760ին Թէյմուրազ (1) Քարթլինիան իր որդւոյն Հերակլի ձգելով գնաց Ռուսաստան քրիստոնեաներու փրկութիւնը աղերսելու համար, քանի որ համոզուած էր որ առանց Ռուսիոյ օգնութեան Վրաստան մինակը պիտի չկարենար տոկալ իր շուրջը եռացող մահմետականներուն միջեւ: Հայերն ալ նոյն եզրակացութեան եկած էին արդէն եւ ատոր համար Յակոբ Շամախեցի Կաթողիկոս, Վրաց թագաւորին հետ իրենն ալ կոնդակ մը ղրկած էր, Ռուսիոյ օգնութիւնը խնդրելու համար։

Դժբախտաբար Ռուսիա դրական օգնութիւն մը չընծայեց Վրացիներուն եւ Հայերուն, եւ երբ Վրաստան ԺԸ. դարուն վերազարթնում մը ունեցաւ, շնորհիւ Հերակլ Բ. թագաւորին (1760—1798 †), ասիկա աւելի կը պարտի Հերակլի իմաստութեան, որ կրցաւ ըմբռնել Հայ եւ Վրացի գործակցութեան կարեւորութիւնը, որ ոյժ մը եղաւ իրեն, անգամ մըն ալ զօրացնելու Արեւելեան Վրաստանը։

Հերակլ զինուորական բազմաթիւ արշաւներով քանի մը անգամ հարուածեց պարսիկները եւ թուրքերը եւ վերջ տուաւ անոնց վրիժառութիւններուն:

Հերակլ Բ.ի երկարատեւ իշխանութեան (1760—1798) շրջանին Վրաստան վերածնաւ իր աւերակներէն, եւ շնորհիւ իր ոյժին ապահովուեցաւ պարսիկներու, թուրքերու եւ լեռնականներու դէմ: Այս ապահովութիւնը նպաստեց գիտութեանց եւ արուեստներու, արդէն Վախթանգ Զ.ի (1703—1737) օրերէն սկսած վերածնունդին: Գրականութիւնը վերստին թռիչք առաւ եւ կը թուէր թէ «սեւ ժամանակներ»ը (2) անցած էին:

Հերակլ վերստին իրեն հարկատու դարձուց Երեւանի եւ Գանձակի խաները: Անոնց եւ իր միջեւ ծագած անհամաձայնութիւնները կը կարգադրէր յաճախ Սիմէոն Երեւանցի (1763—1780) Կաթողիկոս, Հերակլի բարեկամը (3):

Հերակլի օգնեցին նաեւ Հայ մելիքները, սակայն անիկա ընչաքաղցութեամբ անոնց պատուհասը եղող Շուշիի Իպրահիմ խանին դաշնակիցը եղաւ:

1769ին Եկատերինա Բ. կայսրուհին երբ կոչ ըրաւ Պալքանեան ժողովուրդներու եւ Վրաստանի օգնելու Ռուսիոյ, խոստանալով քրիստոնեայ ժողովուրդներու ազատագրութիւնը մահմետական լուծէն, Հերակլ ընդ առաջ գնաց այս հրաւէրին:

1770ին ռուս զօրաբաժին մը մտաւ Վրաստան եւ Հերակլի զօրքերուն հետ Թուրքիոյ դէմ կռուեցաւ (Լեօ. Գ. 773)։

Վրաստան այլեւս չէր կրնար առանց Ռուսիոյ պաշտպանութեան իր տկար ոյժերով դիմադրել թուրք եւ պարսիկ պետութիւններուն, ուստի 1783 Յուլիս 24ին Գիորգիեւսկ բերդին մէջ Հերակլ ընդունեց Ռուսիոյ հպատակութիւնը։ Կատարինէ Բ. կայսրուհին կը խոստանար այս դաշինքով յարգել Վրաստանի անկախութիւնը, պաշտպանել իր ոյժերով անոր հողային ամբողջութիւնը եւ նոյնիսկ ետ առնել անոր կորսնցուցած երկիրները, եւ ընդարձակել անոր սահմանները:

Այս նպատակով Թիֆլիսի մէջ տեւականօրէն պիտի հաստատուէր ռուսական զօրաբաժին մը (Լեօ. Գ. 843):

Վրաստան կը ճանչնար իր կողմէն ռուս Զարերու հովանաւորութիւնը եւ կը հրաժարէր Թուրքիոյ եւ Պարսկաստանի հետ ոեւէ դաշինք կնքելու ազատութենէն:

Յունուար 1784ին Հերակլ մեծահանդէս կ՚ընդունէր Զարուհիին դեսպանը՝ Թոմարան եւ հաւատարմութեան երդում կ՚ընէր։

Ռուսական այս հովանաւորութեամբ զօրացած, Արեւմտեան Վրաստանի մէջ, Իմէրէթի Սողոմոն Մեծ թագաւորը (1752—1782), իսկ Արեւելեան Վրաստանի մէջ Հերակլ Բ. թագաւորը, կ՚ընդարձակէին իրենց թագաւորութիւնները, եւ կը նուաճէին վրացի իշխանները, որոնք միշտ խռովութեան մէջ էին:

Պարսիկները եւ Թուրքերը՝ Վրաստանի ռուսական հովանաւորութեան տակ մտնելուն մէջ վտանգ տեսնելով իրենց համար, բուռն զայրոյթով լեցուեցան Վրաստանի դէմ:

*(1) 1761ին Բեթերպուրկի մէջ մեռած է։*

*(2) Վրացիք այսպէս կը կոչէին բարբարոսներու արշաւանքներու շրջանը։*

*(3) Հերակլի այն փայլուն և յաջող օրերուն, Յովսէփ Էմին Համատանցի Հայը որ Հայ ազատագրութեան գաղափարով խանդավառուած էր, 1763ին կը հասնի Թիֆլիս և Հերակլի կը պարզէ իր ծրագիրը Հայ և Վրացի գործակցութեան մասին: Սիմէոն Կաթողիկոս կը հակառակի Յովսէփ Էմինը ներկայացնելով «Վտանգաւոր մարդ» մը։*

Վրացի ծագումով Սիւլէյման Փաշա, Ախալցխայի ժառանգական իշխողը, իբրեւ Թուրքիոյ ճորտ, ամէնէն շատ վախցաւ ռուս-վրացական դաշինքէն, կարծելով թէ Ախալցխան պիտի խլուի իրմէ իբրեւ վրացական երկիր: Ուստի դիմեց Պոլիս եւ օգնութիւն ուզեց, սակայն Բ. Դուռը պատերազմէն զգուշացաւ, միայն գաղտնօրէն զինք խրախուսեց որ աշխատի Հարաւային Կովկասի տեղական իշխողներով կազմելու ուժեղ միութիւն մը ռուսերու դէմ։

Թուրքերը այս նպատակով Կովկաս ղրկեցին գործակալներ, համիսլամական քարոզչութեան համար: Լեզգիներ այս ազդեցութեան տակ աւելի յաճախ յարձակիլ սկսան Վրաստանի վրայ, քաջալերուելով Սիւլէյման Փաշայէն:

Վրաստանի ամենադաժան թշնամին Աւարիայի Ումմա կամ Օմար խանն էր, Շուշիի Իբրահիմ խանին աներձագը, որ 25,000 լեռնականներով Վրաստանի զանազան մասերը կ'աւերէր, մինչ Իբրահիմ խան, Հերակլի դաշնակիցը, անտարբեր կը մնար: Հակառակ ատոր 1784ին Հերակլ օգնեց Իբրահիմի, երբ Տերպէնտի Ֆաթալի խանը անոր վրայ յարձակեցաւ:

Հերակլ չպաշտպանեց նաեւ Հայ մելիքները երբ Իբրահիմ խան զանոնք դաւով ձերբակալեց (տես. վերը, էջ 384):

1786ին Օմար խան նոր արշաւանք մը բրաւ եւ կրկին աւերեց Վրաստանը, որ իզուր ռուսական օգնութիւն կ'ակնկալէր:

Հերակլ ուզեց Սիւլէյման փաշայի հետ հաշտութեան համար բանակցութեան մտնել, սակայն Իբրահիմ խան արգելք եղաւ:

Հերակլ ի վերջոյ յաղթեց թուրքերուն, որոնք հարկադրուեցան չարշաւել այլեւս վրացական նահանգները:

Բայց Սողոմոն թագաւորի մահը եւ Հերակլի ծերութիւնը, ինչպէս նաեւ իրենց զաւակներուն անկարողութիւնը եւ ներքին խարդաւանքներ, կը տկարացնէին Վրաստանը, որուն վախճանը անխուսափելի եղաւ, երբ Աղա Մահատ խան ներքինին Պարսկաստանը միացուց իր մականին տակ, եւ 1794ին հրաւէր բրաւ Վրաստանի թագաւորներուն եւ Ղարապաղի, Շիրվանի ու Երեւանի խաներուն որ հնազանդին իրեն:

Անոնք չանսացին։ Հերակլ զինակցեցաւ կրկին Իբրահիմ խանի հետ, սակայն իր դէմ հանեց Գանձակի Ճաւատ խանը (Լէօ. Գ. 878) Շուշիի խանին թշնամին, որ Աղա Մուհամմէտ խանի միացաւ եւ առաջարկեց որ արշաւէ Վրաստան:

Շահը նախ Իբրահիմ խանի դէմ գնաց, Հերակլ իր դաշնակիցին օգնելու համար իր Ալեքսանդր որդւոյն հրամանատարութեամբ զօրք ղրկեց: Ասոնք յաջողեցան ետ մղել պարսիկ առաջապահ զօրքերը՝ Ղարապաղի սահմաններէն դուրս: Աղա Մուհամմէտ խան վերակազմեց իր բանակը եւ կրկին յարձակեցաւ Կովկաս: Իր եղբայրը Ալի Ղուլի խան բանակով մը դիմեց դէպի Երեւան, երկրորդ բանակ մըն ալ առաջացաւ դէպի Մուղանի դաշտը Թալիշի, Շամախիի, Նուխիի խաներու դէմ կռուելու համար, իսկ երրորդ՝ բանակ մը ինքն անձամբ առաջնորդեց դէպի Շուշի (1795 Օգոստոս) եւ զայն պաշարեց առանց գրաւել կարենալու (Լէօ. Գ. 871—880):

Ուստի Շուշին պաշարուած ձգելով անցաւ Վրաստան, Իբրահիմ խանի զինակիցին դէմ կռուելու համար:

Ծերունի Հերակլ, մատնուած իր զօրավարներէն կը դիմադրէ իր պահակազօրքով Աղա Մուհամմէտ խանի Կրցանիսի մէջ, Թիֆլիսի մօտ: Իր թոռը, Սողոմոն Բ. Իմէրէթի թագաւորը, հոն էր իր պզտիկ բանակով ։ Զօրավարը Ձէռէթէլի (Tseretheli), որ կը հրամայէր Իմէրէթի բանակին, նոյնպէս զայն մատնեց եւ դարձաւ Իմէրէթ իր բանակին կէսէն աւելիով: Հակառակ ատոր, բուռ մը մարդով այս ծերունի ռազմագէտը յաղթեց Աղա Մուհամմէտ խանի, որ բռնեց Պարսկաստանի ճամբան, կարծելով որ Հերակլը մեծ բանակ մը ունի իր հետ:

Բայց մի քանի մատնիչներ, գաղտնօրէն պարսիկները բերին Թիֆլիս, ուրկէ թագաւորը հազիւ թէ ժամանակ ունեցաւ փախչելու: Թիֆլիսը այրեցաւ եւ կործանեցաւ մինչեւ իր հիմերը: Բայց այս վերջին անգամն էր որ Թիֆլիս պիտի մատնուէր այս տեսակ վիճակի մը, վասնզի ռուսերուն մուտքը արդէն վճռուած էր վերջնապէս Հերակլ թագաւորէն:

Ուրիշ միջոց չկար: Թիֆլիս գումարուած ժողովը, ուր վրացական բոլոր իշխանապետութեանց ներկայացուցիչները ներկայ էին, վճռաբանելու համար Վրաստանը միակ մականի մը տակ միացնելու հարցին շուրջը, ոչ մէկ եզրակացութեան հասած էր, այնքան մեծ էր անհամաձայնութիւնը արքայական ընտանիքին անդամներուն եւ այլ իշխաններուն միջեւ, որքան մեծ էր անկումը եւ տկարացումը Վրաստանի:

Հակառակ ատոր Շահին Պարսկաստան դառնալէն վերջ 1796ին Հերակլ Գանձակի վրայ արշաւեց:

Կովկասի մէջ ռուսերու հեղինակութիւնը վտանգուած էր, եւ Հերակլ յուսահատ կը մտածէր Պարսկաստանի հնազանդութիւն յայտնել:

Այս տագնապալի պահուն ռուսերը, 1796 Ապրիլ 18ին Վալերիան Զուբովի հրամանատարութեամբ առաջանալ սկսան, եւ Մայիս 10ին Տէրպէնտը գրաւեցին:

1796 Նոյեմբեր 6ին Եկատերինա կայսրուհին մեռաւ եւ ամէն ինչ տակնուվրայ եղաւ: Իր յաջորդը հրամայեց ռուս բանակներուն աւելի առաջ չերթալ:

Հերակլ յուսահատութեան մատնուեցաւ, եւ այս դժբախտ պայմաններուն մէջ մեռաւ 11 Յունուար 1798ին եւ իրեն յաջորդեց իր որդին Գէորգի ԺԲ. արեւելեան Վրաստանի գահուն վրայ, մինչ Իմէրէթի մէջ կ'իշխէր Սողոմոն Բ. թագաւոր:

Թուրքերը եւ պարսիկները հասկնալով որ Վրաստանի վրայ ռուսական հովանաւորութիւնը անխուսափելի էր, դիւանագիտական գործակալներ ղրկեցին,, արգիլելու համար այդ բանը, մեծ խոստումներ տալով Վրաստանի:
Վրացիք, դարերու ընթացքին միշտ խաբուած, երբեք չուզեցին հաւատալ այդ խոստումներուն:

1799ին կնքուեցաւ դաշինք մը Գէորգի ԺԲ.ի եւ Պօղոս Ա. Ձարին միջեւ որով Վրաստան կը մտնէր Ռուսիոյ հովանաւորութեան ներքեւ: Այս դաշինքով Վրաստան կը դառնար Ռուսիոյ վասալ իշխանութիւն մը: Երկու վեհապետները կը մեռնին գրեթէ միեւնոյն ատեն դաշնագիրը վաւերացնելէ առաջ:

Պօղոս Ա.ի յաջորդը Աղեքսանդր Ա. 1801ին Ուկազով մը Վրաստանը կը յայտարարէ *կցեալ* Ռուսիոյ:

Բեթերսպուրկի վրացական դեսպանները բողոքեցին եւ մեկնեցան ռուս մայրաքաղաքէն, երբ արդէն ռուս բանակները սկսեր էին մտնել Վրաստան, ուր կը գտնէին բազմաթիւ կողմնակիցներ, որոնք կը նախընտրէին ռուսական տիրապետութիւնը թուրք եւ պարսիկ տիրակալութիւններէն: Գիորգի ԺԲ.ի եղբայրը Աղեքսանդր իշխան, Վրաստանի Ռուսիոյ միացման չհամակերպելով, իզուր մաքառեցաւ Ռուսիոյ դէմ:

Գիորգի ԺԲ.ի որդւոյն Դաւիթի քանի մը ամիսներու թագաւորութենէն վերջ, Վրաստանի արքայական Բագրատունի հարստութեան անդամները դրկուեցան Ռուսիա:

Վրաց Կաթողիկոսն ալ նոյն բախտի արժանացաւ:

Իսկ արեւմտեան Վրաստանի մէջ, Սողոմոն Բ. թագաւորը չուզեց հնազանդիլ կամաւորապէս: Ռուսերը սոսկալի պառակտում ձգեցին, բնակչութեան, կղերին, ազնուականութեան եւ արքայական հարստութեան անդամներուն միջեւ: Երկար տարիներ թագաւորը հերոսաբար դիմադրեց ռուսական արշաւանքին, բայց տեսնելով որ ամէն ինչ վերջացած էր, փախաւ Թուրքիա եւ իր վերջին օրերը անցուց Տրապիզոն:

1828 Սեպտ. 14ին, Ադրիանուպոլսոյ դաշնադրութեամբ վերջնապէս Վրաստան իր ամէն մասերով կը միանար Ռուսիոյ:

Վրաստան այլեւս կը կորսնցնէր իր անկախութիւնը եւ մաս կը կազմէր ռուս կայսրութեան մինչեւ 1918:

## Բ.

# ԹՐՔԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## Ա.

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹՐՔԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ

Օսմանեան Թուրքերը Հայաստան մտան արեւմուտքէն եւ հետզհետէ ընդարձակեցին իրենց տիրապետութիւնը (տես. վերը, էջ 81—83) եւ եղաւ ժամանակ մը, որ նոյնիսկ անոր ամբողջ տարածութեան տիրացան:

Թրքական վարչութիւնը Հայաստանի մէջ ինչպէս բացատրուած է (տես. վերը, էջ 84—85) Պարսկականէն մեծ տարբերութիւն մը չունէր: Գլխաւոր տարբերութիւն այն էր որ պարսիկները Հայաստանի մէջ հաստատած էին ժառանգական խաներ իբր իշխող, իսկ թուրքերը ոչ-ժառանգական եւ յաճախ փոփոխուող կուսակալներու յանձնած էին երկիրին վարչութիւնը:

Կուսակալութիւնները Թուրքիոյ մէջ կերպով մը կապալառութիւններ էին, որոնք Բ. Դուռը կուտար աւելի շատ վճարողին, զայն ազատ ձգելով որ ուզածին պէս կեղեքէ:

Հայաստան թրքական տիրապետութեան ենթարկուելէն վերջ, թուրքերը երկար ատեն Հայաստանի մէկ ընդարձակագոյն մասէն կազմած էին *Էրմէնիստան Էյալէթի* կոչուած կուսակալութիւնը, որուն կեդրոնավայրն էր *Կարին* կամ *Էրզրում* քաղաքը, որուն անունը վերջը կուսակալութիւնը առաւ, Սուլէյման Գանունիի (1520—1566) «Գանուննամէին» համաձայն (տես. վերը, էջ 54) ըստ Էվլիա Չէլեպիի:

Վերջը Օսմ. պետութիւնը վարչական բաժանումներուն մէջ նոր փոփոխութիւններ ըրաւ եւ Էրզրումի էյալէթէն անջատեց եւ կազմեց Կարսի, Վանի, Պիթլիսի, Պայազիտի եւ Տիարպէքիրի կուսակալութիւնները:

Էյալէթը կամ փաշայութիւնը կը բաժնուէր *սանճագ*ներու կամ *լիվա*ներու որոնք կառավարչութիւններ էին: Ասոնց պետերը կը կոչուէին *միւթէսէլլիմ* կամ *միւսէլլիմ* որ փոխանորդի իմաստ ունէր: Վերջը այս բառը փոխարինուած է *գայմագամ* բառով որ տեղապահ կը նշանակէ:

Լիվաները (գաւառ) բաժնուած էին *գատըլըգ*ներու կամ *գազա*ներու (թեմ), իսկ *գատըլըգ*ները՝ *նահիէ*ներու զորս Ինճիճեան վիճակ կը կոչէ, իսկ վերջը՝ լրագրութեան մէջ գիւղախումբ կը թարգմանէին:

Փաշայութիւններուն մէջ ամբողջ իշխանութիւնը կը գտնուէր կուսակալ փաշային ձեռքը:

Թրքական սահմաններու մէջ ալ դատական գործերը կը վարէին մահմետական կրօնաւորները:

Փաշան իր տրամադրութեան տակ ունէր զինեալ ոյժ, ծագած խռովութիւնները եւ անկարգութիւնները զսպելու համար:

Հին ատեն փաշան ինքն կը նշանակէր սանճագներու պետերը, կը բաժնէր հարկը սանճագներու վրայ եւ զայն կը գանձէր սանճագներու կառավարիչներուն ու մասնաւոր հարկահաւաքներու միջոցով:

Փաշաները թէպէտեւ կ'ընդունէին կեդրոնական կառավարութեան հեղինակութիւնը եւ Կ. Պոլսոյ Սուլթանին կը հպատակէին, սակայն միշտ կը ձգտէին անկախօրէն վարել գործերը, եւ ըստ քմաց կառավարել: Երբեմն ասով ալ չգոհանալով բոլորովին անկախ ըլլալ ուզած եւ մերժած են ճանչնալ Սուլթանին իշխանութիւնը եւ ապստամբած են:

*Էրմէնիստան Էյալէթի* իրարու յաջորդող փաշաներուն եւ իրեն ստորադաս լիվաներու ստորադաս փաշաներուն անունները տալ, աւելորդ է եթէ հնար իսկ ըլլայ, վասնզի ամէնքն ալ միօրինակաբար ունեցած են, նոյնատեսակ գործունէութիւն մը եւ միակ նպատակ մը՝ կեղեքել:

Եւ այս անխուսափելի էր քանի որ փաշաները յաճախ կաշառքով կ'առնէին կուսակալութիւնները որոնք կարծես անուրդով կը ծախուէին, եւ շատ տուողին կը տրուէին: Շահագործութիւնը այնքան սաստիկ էր որ նոյնիսկ կեղծ պաշտօնատուութիւններ ալ կը կատարուէին:

Այսպէս, 1643ին Սեբաստիոյ կուսակալութիւնը տրուեցաւ Նասուհ փաշա զատէ Հիւսէյին փաշայի, միեւնոյն ատենը գաղտնի հրաման տալով ութ տարիէ իվեր նոյն պաշտօնը վարող Իպրահիմ փաշային որ տեղէն չշարժի, այնպէս որ այս վերջինը, քաջալերուած վեզիրէն՝ զօրահաւաք կ'ընէ եւ կը պատրաստուի

դիմադրել նոր կուսակոլին, որ Կեսարիոյ մօտ, իր զօրքերով կը յաղթէ Իպրահիմ փաշայի եւ զայն կ'ըսպաննէ եւ վրէժը լուծելու համար վեզիրին նենգութեան, իր բանակով կը քալէ Պոլսոյ վրայ եւ մինչեւ Սկիւտար կ'առաջանայ, սակայն չի կրնար Պոլիս մըտնել, այլ գերի իյնալով կը գլխատուի (*Հայ-Կեսարիա* էջ 610—611):

Յաճախ փաշան պաշտօնանկ կ'ըլլար իր պաշտօնը աւելի շատ տուողի մը տրուելու համար: Ասոր համար երկար պաշտօնավարութիւն չէին կրնար ունենալ կուսակալները:

Գաղափար մը տալու համար թէ որքան կարճ էր փաշաներու պաշտօնավարութիւնը, կ'արժէ ակնարկ մը նետել Վանի փաշաներու ցուցակին վրայ (տես. Գարեգին վրդ. Սրուանձտեանց, *Մանանայ* էջ, 342—344) ուր կը տեսնուի թէ գրեթէ ամէն տարի փաշաները փոխուած են եւ նոյնիսկ կան որ հազիւ քանի մը ամիս պաշտօնավարած են:

Այս կացութիւնը շատ լաւ ներկայացուցած են ժամանակակից երկու պատմիչներ, Առաքել Դաւրիժեցի եւ Գրիգոր Դարանաղցի: Դաւրիժեցին տեղ մը (էջ 569) կ'ըսէ թէ Տիարպէքիրը *«իվեց ամիսն ինն փաշայի ետուն»*: Գր. Դարանաղցի (էջ 14—15) եւս կ'ըսէ թէ *«կաշառովք տային զիշխանութիւն գաւառապետութեանց եւ աշխարհակալութեանց եւ դատաւորութեանց եւ տակաւին դեռ իտեղին ոչ էին հասեալ, մանդուլ առնէին եւ զտեղին նոր այլ ումեմն տային»*:

Սուլթանը *«յորժամ... տայր քաղաք մի փաշայի մի, կամ պարոնի մը, յետ Ժ,* (= 10) *աւուր կամ Ի* (=20) *աւուր մայրն կամ քոյրն, կամ իւր կինն, կամ վէզիրն, տային այլ փաշային եւ առնէին բազում կարմիր դահեկան»* (Դաւրիժեցի, էջ 569) հետեւաբար անմիջապէս որ պաշտօնի ձեռնարկէին, կ'սկսէին կեղեքել իրենց տուած դրամը առնելու համար:

Առաքել Դաւրիժեցի, (էջ 569) կը գրէ թէ *«կայր որ փաշայն կուգայր, կայր որ փաշա վաքիլն կուգայր, նոքա որ կուգային, գիտէին որ բանի յետքն փուչ էր, նոքա այլ կու սկսանէին իկողոպտել եւ իթալանել զքաղաքն եւ զերկիրն»*:

Այս էր ահա գլխաւոր գործը կուսակալներուն, թալանել, որչափ կարելի էր:

Հայաստան թրքական վարչութեան տակ խուզելի ոչխար մը եղած էր, որ դժբախտաբար անդորրութեան եւ խաղաղութեան բարիքներն ալ չէր վայելեր վասնզի միշտ պատերազմներու ալ թատերավայր եղած է: Անոնք երկու տեսակ էին. Ա. Արտաքին եւ Բ. Ներքին:

Արտաքին թշնամիներու, պարսիկներու եւ ռուսսերու դէմ մղուած պատերազմներուն պիտի չանդրադառնամ, վասնզի արդէն անոնց մասին գրուած է (տես. վերը, 81—84): Իսկ ներքին պատերազմներն ալ իրենց կարգին երկու տեսակ էին:

Ա. Անոնք որ կուսակալները իրարու դէմ կը մղէին,

Բ. Անոնք որ կուսակալները կեդրոնական իշխանութեան դէմ կը մղէին:

Կուսակալներու իրարու դէմ մղած կռիւները, որոնք տեղական բնոյթ ունէին եւ սահմանափակ ծաւալ, ոչ նուազ վնաս կը պատճառէին ժողովուրդին, որ այդ կռիւներու միջոցին կը տուժէր, քանի որ երկիրը ոտնակոխ կ'ըլլար եւ պատերազմի դաշտ:

Կուսակալներու իրարու դէմ մղած պատերազմներուն գլխաւոր շարժառիթը իշխանութեան տիրացումն էր:

Դարանաղցի, որ ինչպէս տեսնուեցաւ պատմած է թէ կուսակալները ինչպէս իրարու կը յաջորդէին, կը յարէ թէ *«յորժամ յետինն գայր, առաջին եկեալն չտայր մտանելոյ եւ նստելոյ իտեղին եւ երկոքինն մարտնչէին ընդ միմեանս իվերայ տեղոյն: Եւ զօրաժողով լինէին, իհողագործ ռամկացն ժողովէին եւ մեծ բանակ լինէին, ...: Եւ եղեն իբրեւ զձկունս մեծամեծք եւ փոքունք, որ զմիմեանս կլանեն .... եւ զմիմեանս կու սպառէին առանց օտար թշնամեաց, այլ թշնամիք եղեն առ միմեանս եւ առ ազգայինս իւրեանց եւ այսպէս չարանալով՝ բնաջինջ արարին զամենայն աշխարհն Անատօլու»* (Դարանաղցի, էջ 15):

Իսկ կեդրոնական իշխանութեան դէմ անոնց դիրքը բնականոն չէր, վասնզի Օսմ. պետութիւնը չէր կրցած ամրապինդ եւ կեդրոնացեալ իշխանութիւն մը հաստատել երկիրին մէջ: Պետութեան ամէն մասերուն, ինչպէս նաեւ Հայաստանի մէջ կային շրջաններ որոնք կատարելապէս նուաճուած չէին, եւ կեդրոնին իշխանութիւնը կա՛մ բոլորովին կը մերժէին, եւ կա՛մ միայն անուանական կերպով կ'ընդունէին, եւ գրեթէ ինքնիշխան կը վարուէին:

Հայաստանի մէջ այս իշխանութիւնները սովորաբար քրտական էին: Անոնց ծագումը մինչեւ արաբական շրջան կը բարձրանար եւ այդ շրջանի էմիրութիւններու կը նմանէին:

Անոնց վրայ առանձին պիտի խօսուի իսորեւ:

Անոնց գոյութիւնը կարծես թէ օրինակ ծառայած է կարգ մը կուսակալներու որոնք իրենց կարգին ուզած են ինքնիշխան ըլլալ եւ չճանչնալ կեդրոնի իշխանութիւնը:

Կեդրոնը, բնական է, չէ հանդուրժած այս ըմբոստութիւններուն, վասնզի իր հասոյթի աղբիւրը կը պակսէր, հետեւաբար, այս ապստամբ կուսակալները նուաճելու աշխատած է: Ապստամբ կուսակալներէն ոմանք զէնքով դիմադրած են եւ այսպէս տեղի ունեցած են կեդրոնին եւ կուսակալներուն միջեւ բաւական մեծ բախումներ:

Մասնաւորելով խօսքը թրքական Հայաստանի վրայ, գտնուած են ապստամբ կուսակալներ որոնք ոչ միայն Սուլթանին չեն հնազանդած եւ անոր դէմ զէնք շարժած են, այլ Հայաստանը բոլորովին անկախօրէն կառավարած են, եւ այս տեսակէտով անկախ իշխանութիւններ կրնան նկատուիլ, առաւել կամ նուազ տեւական:

# Ա· ՃԷԼԱԼԻՆԵՐ

Օսմ. Հայաստանը գրեթէ Կ. Պոլսոյ կառավարութենէն ամբողջապէս անջատուած է առաջին անգամ ԺԶ. դարուն վերջին եւ ԺԷ. դարուն առաջին տարիներուն, վասնզի այդ տարիներուն կեդրոնական իշխանութիւնը տկար թուած է եւ բոլոր գաւառները ըմբոստացած են:

Ժամանակին Սուլթանն էր Մէհէմմէտ Գ. (1595—1603) որ ըստ Հայ պատմիչին *«ոչ կարէր վարել թագաւորութիւն»* վասնզի չունէր *«փոյթ եւ հոգ վասն աշխարհի շինութեան: Այնչափն յիմարեալ էր եւ արբեալ եւ թմրեալ էր յիմարական գինեաւն, որ ոչ զիւր հալն գիտէր եւ ոչ զաշխարհի վտանգն...: Գրեթէ ոչ գոյր թագաւոր եւ արքայ եւ գլխապետ եւ հոգաբարձու աշխարհաց, բայց միայն ժանտ անուն էր ի վերայ երկրի տէրութեան իւրոյ: Բարձեր էր իրաւունք դատաստանաց եւ քննութիւն եւ դատ առնել զրկելոց* (*Դարանաղցի*, էջ 13—14):

Հետեւաբար, դժգոհութիւնը ընդհանուր էր եւ այս պատճառով հրդեհ մը որ ծայր տուած էր Հայաստանէն տարածուեցաւ Ասիական բոլոր գաւառներուն մէջ Պուրսայէն մինչեւ Պաղտատ, Տրապիզոնէն մինչեւ Դամասկոս:

Թուրք եւ պարսիկ 1575—1585 տասնամեայ պատերազմին հետեւանօք իբրեւ *«ամայի մնաց երկիրն Արարատու իւրովք մանաւոր գաւառօքն, քանզի Շահն գնաց ի Թաւրէզ եւ ոչ է ձեռնահաս, եւ Սարտարն Օսմանցւոց մեռաւ, եւ ինքեանք իմէջ իւրեանց ի խռովութեան կան, զի ոչ են միաբանք, վասն որոյ պարոնայք ոմանք՝ որք խրախուսեալ յուսային իզօրութիւնս անձանց իւրեանց, գային եւ տիրէին երկրին Արարատու՝ այսինքն Երեւանայ: Որպէս պարոն՝ զոր Բոնաքրլու՝ Մահմատ ասէին, եկեալ տիրացաւ աշխարհին:*

*Եւ զկնի սորա այլ ոմն Ջալալի փաշայ՝ զոր Թօփալ Օսման փաշայ ասէին, որ էր Ջիալ փաշայի որդին՝ սա եկեալ մարտեաւ ընդ Բանաքրլու Մահմատին իգաւառին Կոտէից, որ այժմ ասի Ղըրխբուլաղ՝ մերձ ի գիւղն Առինճ եւ փախոյց զԲանաքրլու Մահմատն»* (*Դաւրիժեցի, էջ* 79—80):

Թօփալ Օսման փաշա, իր շուրջը հաւաքելով սրիկայ անձեր, հազարի չափ Կարսին կայան կ'ընէ եւ կ'սկսի կեղեքել ամբողջ շրջանը:

Այսպէս, Այրարատի ստորոտէն ծագում առած այս շարժումը եւ անկէ տարածուեցաւ բոլոր Հայաստան, Միջագետք եւ Փոքր Ասիա, եւ այս ընդարձակ տարածութեամբ երկիրը ասպատակութեանց եւ յուղկահարութեանց ենթարկուեցաւ:

Հայ ժամանակակից պատմիչներէն Ճէլալին (1) կոչուած այս աւազակները, որոնք մեծ մասամբ ապստամբ թուրք կուսակալներ էին (1590—1608), անլուր խժդժութիւններ գործեցին, ասպատակութիւններով, կողոպուտներով եւ աւերածութեամբ:

Այս ըմբոստական շարժումներուն ամէնէն ծանրը եղաւ այն որ Գարա Եազըճը Ապտիլ Հալիմ եւ իր եղբայրը Տէլի Հասան յարուցին:

Ասոնք պահ մը յաջողեցան կորզել Սուլթանէն Ասիական բոլոր նահանգները:

Գարա Եազըճը Եէնիչէրիներու Սէկպան (որսորդ) զունդին պետերէն էր, որ 1597ին ապստամբեցաւ: Ան ինքզինք կը ներկայացնէր Beni Cheddat ընտանիքէն սերած եւ զրոյց հանած էր թէ Մարգարէն իրեն երեւցած եւ խոստացած՝ Փոքր Ասիոյ վեհապետ տութիւնը (Jonquiére Ա. 224):

Գարա Եազըճի ծագումով *«ոչ մի թագաւորական տոհմէ էր եւ ոչ իմեծ ազգէ, այլ գռեհիկ եւ ոչինչ քան զամենայն մարդիկ»* (*Դաւրիժեցի*, էջ 569):

Ան Զոռում գիւղաքաղաքէն սովորական մըն էր, որ կրօնական ուսմանց ուսանող (սօֆտա) եղած էր եւ ատեն մը Եդեսիա մոլլայի մը աշակերտած եւ յետոյ եղած էր հրացանակիր եւ զինուորութիւն ըրա- (Դաւրիժեցի, էջ 632):

Երբ ապստամբութեան դրօշը բարձրացուց շուտով *«ժողովեաց զընկերս՝ ապստամբեալ ի թագաւորէն, բազմացոյց զզօրս իւր, մինչ զի... ասէին թէ յամենայն աւուր զայսչափ ծախս ունէր, այս է իմի օրն, զերեսուն մոթ գարի տայր երիվարացըն, եւ այս Միջագետաց մոթն է, որ ամէն մոթ երկու հարիւր քան եւ չորս լիդրն գայ Հոռոմանց լդրովն, եւ չորս հարիւր լիդր հաց, հարիւր եւ տասն ոչխար, ԼԸ. լիդր բրինձ, տասն լիդր իւղ, եւ Շ. ղուրուշ ռոճիկ, զի օրն Ռ. ղուրուշ ծախք ունի ասէին»* (*Դաւրիժեցի*, էջ 632—633):

Իր զօրքը կը բաղկանար 20,000 թուրքերէ եւ թուրքմէններէ (*Այվազովսքի*, Ա. 550):

Ապստամբը *«ապականեաց զբազում գաւառս»* (*Դարանաղցի*, 24): Երեք տարի, բազմաթիւ փորձեր եղան այս ապստամբը ընկճելու համար, սակայն չյաջողեցան (*Դաւրիժեցի*, 570. 630. 86. 569) եւ նոյնիսկ անիկա տիրեց Փոքր Ասիական զանազան քաղաքներու եւ խարաջն (գլխահարկ) ինքն առնել սկսաւ եւ իր զօրքերուն բաժնեց (*Դաւրիժեցի*, էջ 86. եւ 632—3):

Այս մեծ ապստամբութիւնը որ մինչեւ մայրաքաղաքին դուռները ծաւալած էր հարկադրեց Սուլ-

(1) *Այս ապստամբութեան առաջին ազդանշանը տուած է քուրտ Ճէլալի ցեղին պատկանող Թօփալ Օսման փաշա, ուստի բոլոր ժամանակակից աւազակները, որոնք ո՛չ միայն Արարատեան անտէր երկրին այլեւ Օսմանեան պետութեան ամէն մասերուն վրայ երեւան եկան, Ճէլալի կոչուեցան: Սակայն գիտելի է որ ժամանակով հազիւ* 60—70 *տարի առաջ,* 1517*ին Թոգատի կողմերը ծագած է ապստամբութիւն մը կրօնական բնոյթով, Ճէլալ անուն աղանդաւորի մը կողմէ որ անձաւի մը մէջ ամրացեալ իր արբանեակներով, կ'ըսէր թէ կ'սպասէր Մահտիին և աշխարհի կատարածը մօտ էր* (Այվազովսքի, Ա. 340): *Այս աղանդին հետեւողներն ալ Ճէլալի կը կոչուէին, ուստի կրնայ ըլլալ որ բոլոր Փոքր Ասիան չփոթի մատնողները, իբր ասոր յաջորդներ, Ճէլալի կոչուած ըլլան:*

քանը դիմելու արտասովոր միջոցներու, մանաւանդ որ «ժողովեցան գանգատաւորք եւ գնացին առ Սուլթան Մահմատն թէ երկիր եւ քաղաք ամենեքեան աւերեցան իյոչինչ ումերքէ» (*Դաւրիժեցի*, էջ 569):

Սուլթանը Եդեսիոյ վրայ կը ղրկէ մեծ վեզիրը, երբ արդէն Գարա Եազըճիի օրինակէն քաջալերուած Օսմ. պետութեան ասիական բոլոր գաւառներուն մէջ զանազան նոր ըմբոստութիւններ եւս ծագեցան եւ անիշխանութիւնը համատարած հանգամանք մը առաւ, վասնզի ըմբոստութիւններ ըմբոստութիւններու կը յաջորդէին, եւ հազիւ մէկը զսպուած ուրիշ մը աւելի ծանր ձեւով կ'առնէր: Անոնք աւազակային հեղեղներ էին, որոնք իրենց քաջագործութեանց ասպարէզ ըրած էին մասնաւորապէս Կիլիկիայէն մինչեւ Արարատ տարածուող երկիրները:

Այս գիշատիչ տարրերը, փաշաներու եւ կուսակալներու օժանդակութեամբ— որոնց ձեռքին տակ զինուորական ոյժեր կային կեդրոնացած— միասնական ապստամբութիւն մը չէր որ կը յարուցանէին, այլ անիշխանական վիճակէն եւ կեդրոնին տկարութենէն կ'օգտուէին:

*«Ոչ թէ իմիատեղ էին, այլ յատուկ յատուկ շրջէին եւ աւար հարկանէին, սպանանէին եւ հրձիգ առնէին, զմանկունս եւ զկանայս խայտառակէին: Ոչ թէ քրիստոնէից միայն առնէին, մանաւանդ տաճկաց առաւել անողորմաբար գործէին զամենայն չարիս»* (*Դարանաղցի*, էջ 143):

Գաղափար մը տալու համար թէ անոնք ինչ մեծ չարիք եւ ինչ մեծ աւեր պատճառեցին, կը բաւէ ըսել թէ ըստ ականատեսներու վկայութեան *«իյԱմթայ* (Տիարպէքիր) *կէս աւուր հողէն որ ելնաս, մինչ իմեծ քաղաքն Ստամբօլ աւերութիւն է, ուր ուրեք գըտանի շինութիւն»* (*Դաւրիժեցի*, էջ 569. հմտ. նաեւ *Գր. Դարանաղցի*, էջ 15):

Այսպէս, ընդհանուր կազմալուծում մը առաջ եկաւ, երկիրը մէկ ծայրէն միւսը մատնելով աւարառութեանց եւ կոտորածներու աննկարագրելի անկարգութեանց, այսպէս *«իմերձակայից Կոստանդնուպոլսի՝ մինչեւ յԵրեւան քաղաք, իԲաղտատայ մինչեւ ցԴամուր Ղափուն, զԱպիտակ ծովու մէջն, եւ Սեաւ ծովու մէջն, այս եզերքն զորս ծրագրեցի, զոսցա մէջն զայսքան աշխարհս յաւեր եւ յապականութիւն դարձուցին* (Դաւ. էջ 82):

Հայաստան, Փոքր Ասիա եւ Սուրիա, ԺԶ. դարուն վերջերէն սկսեալ ամբողջութեամբ ոտքի վրայ էին, եւ ամէն կողմ ապստամբները ինքնիշխան կը գործէին:

Գարա Եազըճիի պէս եւ անոր հետ *«իզեղօրէից քրտաց» «քուրտ Մահմուտ»*՝ կոչուած *«Սարտար»* (*Դաւ.* 86 եւ *Դարանաղցի*, 33—34) 1595էն 1614, Դաւրէժի մէջ Ներքինի Ջաֆար փաշա 1598էն 1601 (*Դաւ.* 632 եւ *Դար.* 30—31), Երզնկայի շուրջ Քէօսէ Սաֆար եւ Զօրպապաշի Ղարաղաշ 1599էն 1603 (*Դաւ.* 86. 633—4. *Դար.* 41), Բաբերդի շրջանին մէջ Էֆիզ փաշայի երկու եղբայրները (*Դար.* 41. 46. 47 եւ 147) եւ Դալէնտէր (*Նոյն.* 42—43), Կիւմիւշխանէի մէջ Իպրահիմ պէկ (*Դար.* 41—42), Կամախի մէջ՝ Շիրին պէկ (*Դար.* 143) եւ Քուրտ Ղայեա. Զափուօղլու 1608էն 1615 (*Դար.* 34—35), Սեբաստիոյ մէջ՝ կուսակալ Ահմէտ փաշա 1601էն 1604 (*Դաւ.* 86 եւ 634 եւ *Պատմ. Սեբաստիոյ* 229), Խարբերդի եւ Բալուի մէջ՝ Թաւուլ եւ իրեն եղբայրը 1603էն 1608 (*Դաւ.* 86 եւ 636, *Այվազովսքի Ա.* 550. *Դար.* 143), Քիլիսի եւ Հալէպի շուրջը Զափոլատցի կամ Ջանփոլատ Օղլու Ալի փաշա 1605էն 1608 (*Դաւ.* 635), Սուրիոյ մէջ Մաժան Օղլու 1605էն 1635 (*Դար.* 86. 642. *Դար.* 266) Կեսարիոյ կողմերը Հիւսէյին փաշա (1599) (*Դաւ.* 633) Տիվրիկի եւ Կամախի կողմերը Քէօռ Օղլու եւ անոր գործակիցը Քուրտ Քզիր Օղլու Մուսթաֆա բէկը (1591) (*Դար.* 32-33, եւ *Դար.* 86), եւ այլ զանազան վայրերու մէջ Դալուճասիպի Եօլայ Սըղմազ կամ Օլասըխմազ (1604), (*Դար.* 46), Շէյթան Զաքուչի՛ (1604), Ինջազան (1634) (*Դաւ.* 86 եւ 634), Կուլազարին (1605) (*Նոյն.*) Թանղրի Թանիմազ, Դօկապախան Զըխլախ, Քեասաքեաս, Քըլու, Ղարասաճաք, Աղաջտափիր, այլանդակ մականուններով յելուզակները, ապստամբութիւններ յարուցած էին եւ անոնցմէ ոմանք մանաւանդ մեծ ծաւալ ստացած, ինչպէս օրինակի համար Ջանփոլատ Օղլու Ալի փաշա, որ մինչեւ Դամասկոս եւ Երուսաղէմ (*Դար.* 101—102) ասպատակած եւ սարսափ սփռած էր (Jonquiére Ա. 236. *Այվազովսքի* Ա. 576):

Անոնք *«ամենեքեան Ջալալիք էին որք ոչ հնազանդէին թագաւորին եւ ոչ իտեղի ուրեք զկայ առեալ բնակէին, այլ աշխարհաւերք եւ աշխարհակործանք էւ ուր եւ լսէին զհամբաւ շինութեան, դիմեալ անդր հասանէին, աւարեալ կողոպտէին եւ զշինուածսն հրդեհեալ այրէին»* (*Դաւ.* 87):

Գարա Եազըճիի դէմ ղրկուած վեզիրը չկարենալով յաղթել գործը իրաւախոհութեամբ կարգադրած էր, գուցէ կաշառքով ապստամբէն շահուելով:

Այս համաձայնութեամբ Գարա Եազըճին Ամասիոյ կուսակալ կարգուեցաւ (Jon. Ա. 224) եւ *«տիրեաց Թոխաթոյ եւ Ամասիոյ եւ Մարզուանու՝ Զօռումու»* (*Դաւ.* 634, հմտ. *Դար.* 25) եւ քիչ յետոյ վերստին զէնք առաւ եւ միացաւ Պաղտատի կուսակալ Տէլի Հասանին հետ եւ կազմեց ընդարձակ պետութիւն մը որ Պաղտատէն մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը կը տարածուէր:

Գարա Եազըճի յաղթելէ վերջ Հասան փաշա եւ Հաճի Իպրահիմ վեզիրներուն (*Դար.* 634), ինքզինքին սեփականեց Շահ (= թագաւոր) տիտղոսին հետ վեհապետական բոլոր իրաւունքները եւ ըստ իր հրովարտակներուն մէջ *«Ես յաղթեցի այս երկիրներուն մէջ Օսմ. զօրութեան եւ տիրապետութիւնը ինծի կը պատկանի այսօր անվիճելի կերպով* (Jonquiére, 224):

Յաղթական կը սոնքար, երբ իր վրայ եկաւ Սօքքօլու Հասան փաշան որ Սեփէթլիի մէջ վերջապէս յաղթեց Գարա Եազըճի (*Նոյն.* Ա. 224) որ խոյս տուաւ Ճանիկի լեռները, Սեւ ծովու եզերքները, ուր մեռաւ իր ստացած վէրքերէն, վրէժ լուծելու պարտականութիւնը թողլով իր եղբօրը Տէլի Հասանի (Jon. Ա. 774, *Այվազովսքի*, Ա. 550. *Դար.* 26) որմէ անբաժան մնացին եւ մինչեւ վերջը օգնեցին Շահվէրտի, Եուլարգափտը (կամ Եուլարքէստի) եւ Դաւիլ (կամ

Պասիլ) ապստամբ զօրավարները (*Այվազովսքի*, Ա. 550, *Պատմ. Սեբաստիոյ* 229)։

Հասան պէկ կը յաղթէ Սօքքօլու Հասան փաշային եւ զայն մինչեւ Թոքաթ կը քշէ։ Հոն այդ քաղաքին խրամներուն մէջ կ'սպաննուի Հասան փաշա եւ քաղաքը կ'իյնայ (1602ին) ապստամբներու ձեռքը (*Jon.* Ա. 225, *Դար.* 30)։ Ապստամբները ասկէ յետոյ շատ զբաղեցուցին թուրք բանակը եւ շատ չարիք հասցուցին Փոքր Ասիոյ բնակչութեան (*Այվազովսքի*, Ա. 551)։ Իր վրայ ղրկուած Խոսրով՝ Տիարպէքիրի փաշան եւ Դամասկոսի ու Հալէպի փաշաները ջախջախուած են եւ Թէօքաթիան՝ Փոքր Ասիոյ արեւմտեան բաժինի մէջ եւ այնքան մօտ Կ. Պոլսոյ, պաշարուած է յաղթականներէն, 1603ին։

Օսմ. պետութեան ջանքերը, Հայաստանէն զօրք ճարելու համար անօգուտ կը դառնան եւ աւելի կը սաստկացնեն անիշխանութիւնը, վասնզի զօրքը փոխանակ ապստամբի վրայ երթալու կողոպուտի նետամուտ կ'ըլլայ եւ թալանի կու տայ Երզնկան, Կամախը, Տիվրիկը եւ մերձակայ գաւառները (*Դար.* 37—38)։

Զինու զօրութեամբ գլուխ չկրնալով ելլել այս սոսկալի հակառակորդին հետ, Բ. Դուռը փորձեց կաշառք եւ ներողութիւն։ Տելի Հասանը, ոսկիով շլացնելով եւ Պոսնայի կուսակալութիւնը անոր տալով համոզեց զէնքերը վար դնելու (1603) (*Jon.* Ա. 225, *Այվազովսքի*, Ա. 551 եւ *Դար.* 92)։

Ան համակերպեցաւ երթալու Մաճառներուն դէմ պատերազմի։ Իր ապստամբ հորդաները, բաղկացած ոչ միայն ապստամբ զինուորներէ, այլ թուրքերէ եւ թուրքմէններէ, քալեցին քրիստոնէից դէմ եւ կորսուեցան մեծ մասամբ Մաճառներուն դէմ մղուած կռիւներուն մէջ (հմմտ. *Jon.* Ա. 225, *Դար.* էջ 92 եւ *Հայ Կեսարիա*, էջ 606)։

Ճէլալիներու կամ Ցէտայիներու մեծ ապստամբութիւնը բոլորովին Տելի Հասանի հնազանդութիւն յայտնելով չվերջացաւ։ Բոլոր ապստամբները զէնքերը վար դրած չէին եւ չորս նոր պետեր, Գալէնտէր Օղլու, Խալիլ, Սաչլու եւ Գարա Սայիտ, կը տարածէին իրենց իշխանութիւնը Պարսից սահմանագլուխէն եւ Սիւրիայէն մինչեւ Վոսփորի եզերքները, մասնաւորապէս Սարուխան (*Այվազովսքի*, Ա. 569. *Jon.* 226)։

Քիւրտերը Ճան Բօլատի հրամանին տակ միացած, ինչպէս Տիւրզիները՝ Էմիր Ֆախրէտտին Մանն Օղլուի, եւ դաշտային եւ լեռնային Կիլիկիոյ բնակիչները՝ Ճիմշիտ փաշայի եւ Սելեւքէի բնակիչները Միւսէլլի Չավուշի, կազմած էին բոլոր Լիբանանի եւ Տաւրոսի լեռներուն բնակիչներէն բաղկացած դաշնակցութիւն մը ընդդէմ թրքական տիրապետութեան (*Jon.* Ա. 226. եւ *Պատմ. Սեբաստիոյ*, 230)։

Կ. Պոլսոյ շրջանակներուն մէջ իր իշխանութիւնը սահմանափակուած, Սուլթանը եւ իր հաւատարիմները, Օսմ. պետութեան գոյութեան սպառնացող այս անիշխանութեան վերջ տալու եւ կեդրոնի հեղինակութիւնը Անատոլուի վրայ վերահաստատելու համար ամէն ջանք ըրին, սակայն չյաջողեցան։

Ղրկուած բանակները յաջորդաբար պարտուեցան եւ բովանդակ Անատոլուն վերածուեցաւ պատերազմի դաշտի եւ սրածութիւններ, կողոպուտներ, աւարառութիւններ եւ սաստիկ հարկապահանջութիւններ իրարու յաջորդեցին։

Խռովայոյզ վիճակը արգելք եղաւ երկրագործական աշխատութեանց եւ զարհուրելի սով մը ծայր տալ սկսաւ որ 1599էն 1610 տեւեց (*Դաւ.* 88—92 եւ *Դար.* 35—37) այնքան սաստիկ որ ոչ միայն շուները եւ կատուները կերած են այլ մեռած մարդիկը եւ նոյնիսկ ողջերը (*Դաւ.* 88—89)։

Այնպէս որ չարիքը ամէն համեմատութենէ դուրս էր եւ աղէտը՝ համատարած, Երկիրը, ներքուստ եւ արտաքուստ վտանգուած, տնտեսապէս քայքայուած եւ կործանման դուռը հասած էր։

Ամէն տեսակ միջոցներ գործադրուեցան, վերջ տալու համար ապստամբութեան։

Ամէնէն յաջողը եղաւ վէզիր եւ սպարապետ Ճղալի Օղլու Սինան փաշան որ 1604ին ընդհ. ներում շնորհելով եւ խոստումներ ընելով ապստամբները կրցաւ իր շուրջը համախմբել եւ Պարսից դէմ երթալ եւ զանոնք պատերազմին մէջ առաջ քշելով բնաջնջել մասամբ, բայց անոնք որ ողջ մնացին, դարձան եւ շարունակեցին իրենց աւազակային արարքները (*Դար.* 45—46 :

Այսչափ աղէտներէն վերջ հազիւ Պոլիս սթափեցաւ եւ ազդու միջոցներ ձեռք առաւ երկիրը խաղաղեցնելու եւ Ճէլալիները ընկճելու եւ սովին դարման տանելու համար։

Այս ծանր բայց կենսական գործը յանձնուեցաւ 1607 Յունուարին Եպարքոս կարգուած Գույուճու Մուրատ փաշայի, որ մեկուկէս տարուան ընթացքին յաջողեցաւ ամէնքն ալ զսպել եւ 1608 Դեկտ. 18ին յաղթական փառքով մայրաքաղաք մտաւ, իբրեւ յաղթութեան նշան առջեւէն տանելով Ճէլալիներէն գրաւուած 400 դրօշներ, իւրաքանչիւրը իր խմբապետին անունով մակագրուած (*J. M. Jouannin et Jules Van Gauer, Turquie, Paris* 1850, էջ 193, *Դար.* 18 եւ 142—144 եւ *Այվազովսքի*, Ա. 580, *Պատմ. Հայ Կեսարիոյ*, էջ 617)։

## Բ. ԱՊԱԶԱ ՓԱՇԱՅԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## (1623—1627)

1623ին Սեբաստիոյ կուսակալի պաշտօնէն Էրզրում կը փոխադրուի կեդրոնին հրամանով Ապազա փաշա որ էր «*սիրող քրիստոնէից, մանաւանդ եւս առաւել Հայոց*» (*Դար.* 222)։

Այս անձը Սուլթան Օսման Բ.ի (1617—1622 Մայիս 15 ✝) երախտաւորեալն էր, ուստի անոր արեան վրէժխնդիր եղաւ երբ Ենիչէրիները Սուլթանը սպաննեցին անոնց անկարգութեան վերջ տալ փորձած ըլլալուն համար։

Ապազա զէնքի դիմեց, միացնելով մնացորդները Ճան Բօլատի եւ Գալէնտէր Օղլուի գունդերուն (*Jon.* Ա. 240)։ Իր զայրոյթը մասնաւորապէս Ենիչէրիներու դէմ էր (*Դար.* 212—215, *Այվազովսքի*, Ա. 631), որոնցմէ կարեւոր թիւով կային Կարին «*վասն պահապանութեան ընդդէմ Պարսից*» «*ոմանք իբր*

*նակչաց եւ ոմանք յարքանուստ եկեալ„* “*պակճի* (1) *եւ նոպաթճիք* (2)„ անուններով:

Ասոնք հոն ալ կը գործէին իրենց ծանօթ բոլոր անկարգութիւնները (*Դար.* 212—213) մանաւանդ Սուլթան Օսմանի մահէն վերջ:

Ապազա փաշա նախ յորդորներ տուաւ «*զուլում*» չընելու եւ ապա սպառնաց եւ երբ տեսաւ թէ անոնք կը շարունակեն իրենց ընթացքը ամէնքն ալ քաղաքէն վանեց (*Դար.* 215—216)։

Պոլսոյ Ենիչէրիները ճնշում բանեցուցին եւ Ապազա փաշա պաշտօնանկ եղաւ եւ դարձեալ Սեբաստիոյ կուսակալ նշանակուեցաւ (*Նոյն.* 217), սակայն մերժեց հնազանդիլ:

Ենիչէրիները՝ Եպարքոս Խալիլ փաշան— որուն սիրելին եւ որդեգիրն էր Ապազան (*Դար.* 222) — ճնշեցին, զայն կամակից ամբաստանելով: Խալիլ փաշա խնդրեց Ապազայէն որ Պոլիս գայ, սակայն անիկա քաջալերուած Սուլթան Օսմանի մօրմէն, ըմբոստութեան դրօշ պարզեց եւ Կարինէն մինչեւ Էնկիւրի արշաւեց կոտորելով քաղաքները: Ապազա ունէր 40,000 զօրք (*Այվազովսքի*, Ա. 631) սակայն Էնկիւրիի միջնաբերդը եօթը ամիս պաշարելէ յետոյ չկրցաւ գրաւել (*Դար.* 220 — 221)։

Սուլթան Մուրատ Դ. (1622 — 1639) մեծ վէզիր եւ սպարապետ անուանեց Չէրքէզ Մուհամմէտ փաշան եւ ղրկեց Ապազայի դէմ, վասնզի շատ մը փաշաներ որ նախապէս ղրկուած էին կա՛մ պարտուած էին կա՛մ անոր կողմը անցած էին (*Այվազովսքի*, Բ. 10):

Չէրքէզ Մուհամմէտ փաշա (*Այվազովսքի*, Բ. 19) կամ անոր զօրավարներէն մէկը Հաֆըզ փաշա (*Jon.* Ա. 241) 26 Մայիս 1624ին յաղթեց Ապազայի, Կեսարիոյ մօտ, վասնզի անիկա իր կողմը շահած էր գաղտնաբար Ապազայի յարող կուսակալներու մեծ մասը (*Այվազովսքի*, Բ. 10) կամ անոր համար որ Ապազայի գործակցող Թուրքմէնները դաւաճանեցին իրեն (*Jon.* Ա. 241):

Ապազա, Էնկիւրիի պաշարումը լքելով ապաստանեցաւ Կարին ուր «*շատ զօրս գումարեաց քան զառաջինն եօթնապատիկ*» (*Դար.* 222): Հաֆըզ փաշա, տեսնելով որ կարելի պիտի չըլլայ զայն ընկճել, համաձայնեցաւ զայն Էրզրումի վալիութեան մէջ վերահաստատել պայմանով որ Կարնոյ միջնաբերդին մէջ Ենիչէրիներու 10 գունդ պահակազօրք դրուի եւ անոնց չարիք չգործուի (*Jon.* Ա. 241. *Այվազովսքի*, Բ. 10): Ասիկա մեծ յաջողութիւն մը նկատուեցաւ:

Ապազա՝ 1627ին անգամ մըն ալ ապստամբեցաւ Խալիլ փաշա վէզիրին պատճառով եւ Խուսրէֆ փաշայի հնարքով, հնազանդութիւն յայտնեց եւ Պոսնայի կուսակալ կարգուեցաւ (*Jon.* Ա. 242, *Այվազովսքի*, Բ. 17—20, *Դար.* 223 եւ 227, *Դաւ.* 573. 639—640)։

Ապազա փաշայի ընդարձակ ապստամբութիւնը որ Էրզրումէն մինչեւ Էնկիւրի Ասիական Թուրքիան շփոթի կը մատնէր եւ մասնաւորապէս իրեն նպատակ ունէր սպառնալ Ենիչէրիներու գոյութեան, անհետեւանք չէր կրնար մնալ:

Դարձեալ պատեհութենէն օգտուելով զանազան բռնակալներ, ինչպէս Տէլի Իլաճի, Տաղլար Տէլիսի, Տէրէլի Խալիլ, Իլիաս փաշա՝ մականուանեալն Սօլագ Օղլու, Անատոլուի զանազան մասերուն մէջ երեւան եկան, բացի Տիւրզիներէն, որոնք արդէն 30 տարիներէ իվեր Էմիր Ֆախրէտտին Մա՛ան Օղլուի կամ Պէն Մա՛անի իշխանութեան տակ անկախ դարձած էին, եւ տակաւին դար մը պիտի պահէին իրենց անկախութիւնը (հմմտ. *Պատմ. Հայ Կեսարիա*, էջ 609—610)։

## Գ. ՇԷՅԽ ՕՂԼՈՒ ՕՍԼՈՅԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## (1785 — 1787)

*Giovanni Battista Boetti* անուն Եւրոպացի մը, ծնած ի *Piazzan Montferrat,* անառակ երիտասարդութենէ մը վերջ, որ լի էր կնամեծար արկածախնդրութիւններով, դարձի կու գայ եւ կը մտնէ Ռավեննայի Դոմինիկեանց վանքը:

Դոմինիկեանք զինքը կը ղրկեն իբր քարոզիչ, Մուսուլ, ուր կը պայքարի տեղւոյն եպիսկոպոսին հետ, որ զայն բանադրել կու տայ Պապին:

Boetti այն ատեն կը նետէ կրօնաւորական սքեմը եւ կը յղանայ հսկայական ծրագիրը նոր կրօնքի մը առաքեալը դառնալու եւ Փոքր Ասիան գրաւելու:

Երկար տարիներ կ՚ուսումնասիրէ Անատոլուն եւ Իրանը, կ՚առնէ գլխաւոր քաղաքներու յատակագիծերը, կ՚այցելէ եւրոպական մեծ նաւարանները, կը բանակցի հարուստ Պարսիկի մը հետ՝ Tabeb Labileh հետ, կը գնէ կէս միլիոնի զէնքեր եւ պաշարներ, եւ այսպէս գետինը պատրաստելէ վերջ կ՚սկսի իր քարոզութեանց 1785 Մարտին Ամատիէի մէջ: Անիկա ինքզինք կը ներկայացնէ Մահտի որ իբր թէ յանձնարարութիւն ունէր Մուհամմէտէն յիշեցնելու միւսլիմաններուն անյեղլի սկզբունքները ճշմարիտ հաւատքին, որոնք անտեսուած էին եւ իր պերճախօսութեամբ կը յափշտակէր բոլոր ժողովուրդը ուր որ կը հանդիպէր:

Քանի մը ամսուան մէջ յաջողեցաւ բոլոր Քուրտերը գրեթէ իրեն կապել, եւ յարձակմամբ գրաւել Հայաստանի լեռնադաշտին ռազմական ամէնէն կարեւոր կայանը եւ մայրաքաղաքը Կարինը:

Մարգարէն առաւ Մանսուր անունը եւ սկսաւ յաղթական քալել դէպի Սեբաստիա եւ դէպի Զմիւռնիա:

Փոքր Ասիան տակնուվրայ եղաւ։

Բ. Դուռը ահաբէկ՝ դեսպաններ ղրկեց այս բախտախնդիրին ամէն գնով զայն Փոքր Ասիայէն ետ դարձնելու պաշտօնով:

Giovanni Boetti անյայտ պատճառներով համակերպեցաւ եւ լքեց իր ծրագիրը, որ այնքան յաջող սկզբնաւորութիւն մը ունեցած էր, եւ յանկարծ ետ դարձաւ եւ գնաց պատերազմիլ Կովկասի ճակատը ռուսերուն

(1) *Պէկճի= պահապան։*

(2) *Նոպէթճի= պահակ:*

դէմ (1787) եւ այսպէս փակուեցաւ այս ապստամբութիւնը (1) (*Jon.* Ա. հր. 317—318):

## Բ.

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆՆՈՒԱՃ ՄԱՍԵՐԸ

Թրքական Հայաստանի անբաղձալի կացութիւնը որքան արտաքին նոյնքան ներքին ազդակներ ունէր: Ինչպէս տեսնուեցաւ Հայաստան լիովին չէր նուաճուած եւ չունէր տեւական եւ հաստատուն վարչութիւն: Երկիրը յանձնուած էր կուսակալներու որոնք մէկ օրէն միւսը իրենց պաշտօնէն զրկուելու հաւանականութիւնը աչքի առջեւ ունենալով կեղեքելու եւ կարելի եղածին չափ շուտով հարստանալու մտածումէն զատ ուրիշ հոգ չունէին:

Թուրք պետութիւնը քայքայուած մեքենայ մըն էր, որուն վարիչները չէին կառավարեր երկիրը այլ կը թալանէին:

Թուրքերը փոխանակ պետութեան կազմը զօրացնելու կը սահմանէին այնպիսի օրէնքներ որոնք կազմալուծումը աւելի կը շեշտէին:

Հազիւ Օսմ. պետութիւնը Հայաստանի տիրած եւ պարսիկները վանած էր արեւմտեան Հայաստանէն երբ ԺԶ. դարուն Սուլթան Սելիմ Բ, (1566—1575) հողային օրէնք մը դրաւ որուն համաձայն ոչ-իսլամներու ձեռքը գտնուած հողերը կը համարուէին նուաճուած հողեր եւ մասնաւոր հարկ վճարելու պայմանով կը տրուէին զանոնք նախապէս օգտագործողներուն: Յետոյ կը զատուէին նուաճուած երկիրներուն մէջ, ընդարձակ հողամասեր, որոնք կը տրուէին զինուորականներուն եւ պետական պաշտօնեաներուն իրենց մատուցած ծառայութեանց ի վարձատրութիւն: Ժամանակի ընթացքին այդ հողամասերը կը դառնային նոր տէրերուն ժառանգական սեփականութիւնը:

ԺԷ. դարուն այս կերպով արդէն գոյութիւն առած էին մեծ թուով խոշոր կալուածատէրեր:

Մի քանի փաշայութիւններու մէջ այդ կալուածատէրերու մեծամասնութիւնը կը բաղկանար թուրք ազնուականներէ, Շէյխերէ եւ Բէկերէ, ինչպէս նաեւ քուրդ բէկերէ, եւ բնիկ աղաներէ: Կալուածատէրերը գիւղացիներէն կ'առնէին անոնց բերքին տասանորդը: Սահմանափակուած էր անձնական ազատութիւնը, գիւղացիներուն, որոնք ճորտական դրութեան մէջ կը պահուէին, եւ տարապահակի կ'ենթարկուէին։

Ոչ-իսլամները պարտաւորուած էին տալու գլխահարկ, որմէ զերծ էին իսլամները եւ այլ տուրքեր:

Այսպէս, Թրքական Հայաստանի մէջ երեւան կու գային ինքնավար շրջաններ, իբր հետեւանք Սելիմ Բ.ի հաստատած օրէնքին կամ հին առանձնաշնորհներուն:

Այս ինքնավար շրջանները զուտ տեղական-ժառանգական էին:

Անոնցմէ ոմանք լայն իրաւունքներ ունէին, իսկ ուրիշներ սահմանափակ: «*Անցեալ դարուն մինչեւ 40 թուականներուն վերջը՝ Փոքր Ասիոյ այլեւայլ գաւառներուն վրայ Սուլթանին իշխանութիւնը պարզ անուանական էր։ Իրականին մէջ՝ երկիրը զանազան իշխաններուն եւ բէգերուն կը վերաբերէր, որոնք տարուէ տարի Սուլթանին գանձուն որոշ տուրք մը կը վճարէին, բայց իրենց երկիրին վրայ իշխանութիւնը անձամբ վարելով: Զինուորական ծառայութեան ենթարկուած չէին, սակայն ի հարկին Սուլթանը կրնար անոնցմէ օգնական գունդեր խնդրել եւ այս պարագային իրենք կը պարտաւորուէին որոշ թուով զինուոր տալ:*

*Պատահած է որ այս իշխանները եւ բէգերը իրենց իշխանութեան դէմ Սուլթանին կողմէ սպառնալիք եղած միջոցին միացած եւ համախումբ ոյժերով Սուլթանական իշխանութեան դէմ ըմբոստացած ըլլան: Իսկ Հայկական գաւառները քուրտական իշխաններու ձեռքով կը կառավարուէին որդւոց որդի:*„ (Տոքթ. Լեփսիուս, Der Christliche Orientին մէջ «*Քուրտեր եւ Հայեր*» յօդուածը 1904 Նոյեմբեր):

Օսմ. պետութեան ամէն մասերուն տիրող ինքնիշխան պետերէն, անոնք որ Փոքր Ասիա հաստատուած էին թուրքեր էին եւ կը կոչուէին՝ *Տէրէպէյի*՝ իսկ Հայաստանի մէջ իշխող քուրտ ցեղապետները՛ բէկ եւ իրենց տիրած ինքնավար շրջանները՝ *հիւքիւմէթ*:

Ըստ Պետրիէնի (քուրտ) Սուլթան Սելիմէն մինչեւ Մահմուդ, Տէրէպէյական իշխանութիւնը մնաց կանգուն իր աւազակային դրութեան մէջ: Սուլթան Մահմուդ (1808—1839) պաշտօնապէս ճանչցաւ Տէրէպէյական իշխանութիւնները, եւ դրկեց իւլէմաներէն կազմուած ժողով մը որ գծեց ամէն մէկ Տէրէպէյի իշխանութեան սահմանը: Տէրէպէյերը ունէին իրենց անկախութեան Ֆէրմանները: (Յակոբ Տահպազեան «*Քիւրտօ-Հայ պատմութիւն*, էջ 64):

Այս գրեթէ ինքնիշխան շրջաններէն զատ կային *խաս*, *հարէմէյն*, *օճաքլըք* եւ վերջապէս *Ֆէրմանլը* կոչուած մարզեր, որոնք ընդհանուր պետական կազմին մէջ առանձնայատուկ տեղ կը գրաւէին: *Խաս*, կը կոչուէին արքայական ընտանիքէ կիներու եւ Եպարքոսին յատկացուած մարզերը որոնց տուրքերը այդ կիներուն եւ Եպարքոսին կը պատկանէին: Անոնք ժառանգական չէին:

*Հարէմէյն* կը կոչուէին այն վայրերը որոնց հասոյթները յատկացուած էին Մէքքէի եւ Մեդինէի նուիրական քաղաքներու մզկիթներուն, իսկ *օճաքլըք*, այն վայրերը որոնց տուրքերը ամբողջ կամ մասամբ յատկացուած էին իբր ռոճիկ սահմանագլուխ քաղաքներու զօրքերուն։

*Ֆէրմանլը* կը կոչուէին այն քաղաքները կամ գիւղերը որոնք ապահարկ կացուցած էին բոլոր տուրքերէն կամ անոնց մէկ մասէն, եւ ատոր համար հրովարտակ (*ֆէրման*) ստացած էին։

(1) *Giovanni Boetti* *չորս տարի* (1787—1791) *ռուսերու դէմ կռուելէ վերջ, վերջապէս գերի ինկաւ։ Կատարինէ Չարուհին լաւ վարուեցաւ անոր հետ և բնակեցուց* *Soloveich*, 100.000 *ֆրանք տարեթոշակով։ Ապրեցաւ մինչեւ* 1798, *առանձնացած, տեղւոյն Հայ Կաթոլիկներու վանքը:*

Առանց սակայն իշխանութիւններ չէին:

Միայն *Հիւքիւմէթ*ներ եւ *Տէրէպէյութիւն*ներ (ձորապետութիւն ըստ Օսմանեանի), երբ տէրութիւններ կամ իշխանապետութիւններ չէին զէթ ցեղապետի մը կամ բռնակալի մը հեղինակութեան տակ ինքնավար էին, եւ կը ներկայացնէին երբ ոչ կառավարութիւն մը զէթ անոր ստորոգելիներէն մէկ մասը ունեցող իշխանութիւններու կերպարանքը, որով կարելի չէ անգէս թողուլ, անոնցմէ անոնք որ Հայաստանի մէջ գոյութիւն ունեցած են:

## Ա. ՀԱՅ ԱԶԱՏ ՀԱՄԱՅՆՔՆԵՐ

Թրքահայաստանի մէջ նախկին իշխանութիւններու մնացորդներ այլեւս չկային կամ չափազանց աննշան եւ անզօր էին:

Միայն մի քանի լեռնային փոքրիկ գաւառներ ապաստան տուած էին Հայկական կէս-անկախութիւններու, որոնց յենարանն էր հին իշխանական կարգը:

Թուրք կառավարութիւնը ստիպուած էր հանդուրժել այսպիսի դրութեան մը իր երկիրին մէջ, քանի որ Հայերը չէին միայն, որ արծիւի բոյներու մէջ պզտիկ ազատութիւններ կը պահէին:

Այդպիսի վայրեր ունէին նաեւ ուրիշ ազգեր, Օսմ. պետութեան ամբողջ տարածութեան վրայ եւ զանոնք նուաճելու փորձեր եղած էր բայց չէր յաջողած: Ազատութիւնը շատ սուղ արժած էր այդ լեռնականներուն, որոնք անջատուած կը մնային ամբողջ աշխարհէն, եւ զգոյշ եւ կասկածոտ էին, ինչպէս նաեւ մշտապէս զինուած եւ իրենց բոլոր ուշադրութիւնը իրենց զէնքին եւ կռիւին տուած:

Հայ լեռնականները յաճախ կը միանային դրացի, նոյնպէս անկախ թուրքմէն ցեղերուն հետ, հասարակաց շահերու պաշտպանութեան տեսակէտով եւ հաւաքաբար կը պաշտպանէին իրենց առանձնաշնորհները: Ապրելով միեւնոյն պայմաններուն մէջ, միեւնոյն ըմբռնումներով եւ գաղափարներով, լեռնական Հայերէն շատերը կորսնցուցին իրենց ազգային կերպարանքը, մոռնալով մայրենի լեզուն, նոյնիսկ քրիստոնէութիւնը:

Ամենանշանաւորը անոնց Զէյթունն էր, որ իրաւական տեսակէտով սոսկ Թէրմանլը քաղաք մըն էր (Լէօ. Գ. էջ 149) Հայաստանէն դուրս, Կիլիկիոյ մէջ: Իսկ ուրիշ լեռնային ազատ համայնքներ ալ կային ստորադրուած յաճախ քուրտ *հիւքիւմէթ*ներու առանց ուղղակի կառավարութեան կեդրոնին հետ կապ ունենալու:

Այս պատճառով ալ ասոնց վրայ մեր ամբողջ ծանօթութիւնը կը բաղկանայ մի քանի աշխարհագրական անուններէ:

Այս Հայ ինքնավար շրջաններէն յիշատակելի են հետեւեալները:

(1) *Գաւառին մասին աշխարհագրական տեղեկութեանց համար տես.* Ա— Դօ. Վանի, Բիթլիսի եւ Էրզրումի վիլայէթները 1912 *Երեւան, էջ* 70—75:

## 1. ՄՈԿՍ

Վանի լիճին հարաւի լեռնային գաւառներէն մէկն է Մոկսը (1) ուր Բագրատունեաց թագաւորութեան ատեն, իշխանութիւն մը գոյութիւն ունէր, ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 158—161) բայց կարելի չէ ենթադրել թէ այդ իշխանութիւնը շարունակուած ըլլայ մինչեւ թրքական տիրապետութիւն: Բայց անհաւանական չէ որ Մոկսի Հայերը, իրենց յոյժ լեռնային եւ սոսկալի ապառաժուտ երկիրին մէջ ծուարած անձնուաճ մնացած ըլլան: Հ. Ղուկաս Ինճիճեան իր *Աշխարհագրութեան* մէջ (Ա. հտ. էջ 160) կ'ըսէ թէ Մոկս կամ Մոգս գաւառը այնքան դժուարամատոյց վայր մըն էր, որ բնակիչները — միայն Հայ եւ Քուրտ — հարկադրուած էին *«ընդ կոշկօք խիտ առ խիտ բեւեռել բեւեռս կոչեցեալ քէֆքէֆ կամ քափքափ առ ի չսահիլ ի գնալն»*:

Հին ատեն աւելի ընդարձակ սահման մը կ'ընգրկէր այս գաւառը, ուր Հայերը կը կառավարուէին գրեթէ ինքնիշխան, բայց միշտ շուրջը գտնուող բռնակալներու յարձակումներուն ենթարկուած:

Օսմ. տիրապետութեան սկիզբները այս գաւառը Ճէզիրէի պէյին իշխանութեան ենթարկուած էր, սակայն շարունակ կռիւի մէջ էր դրացի Շատախի (հին Ջերմաձոր) եւ Ոստանի քուրտ բէկերուն հետ, որ կ'երեւի թէ ընկնել կ'ուզէին այս լեռնական աննուաճ Հայերը:

Այս պայքարը կը թուի թէ բաւական երկար տեւած է, վասնզի տակաւին 1524ին կը շարունակուէր անիկա, ինչպէս կը հասկցուի, Մոկսի Առինչ գիւղին մէջ նոյն թուականին գրուած Աւետարանի մը յիշատակարանէն:

Այդ յիշատակարանին մէջ գրիչը կ'ըսէ թէ

*«Գրեցաւ եւ կատարեցաւ... Ս. Աւետարանս յերկրիս արքունական որ Մոկս կոչի, յաստուածապահ գեղս յԱռինչ,... քանզի մեծաւ ահիւ եւ դառնութեամբ գրեցի զԱւետարանս, քանզի թշնամիք են միմեանց աէրն Մոկաց եւ տէրն Ջերմաձորոյ (2) եւ Ոստանին եւ մերձ եւ սահմանակից էին միմիեանց Առինչ եւ Ջերմաձոր, եւ յորժամ երեկոյ լինէր՝ իմանանել արեգական՝ փախչէինք ի ձերպըս վիմաց եւ ծառաստանս եւ ի թուփս անկանէինք, եւ իյահէ ոչ (որ) կայր իբրու, ի հարամի ճեղգոյ (3) եւ ինեծելէ, եւ բազում աւուրս ի գրել Աւետարանիս՝ զայս ահիւ եւ աշխատութեամբ տանէի : . . . . . . . . . . . . . .*

*Քանզի յառաջներորդ անգամ Եզտին անուն հեռն բերեալ էր իյերկիրս՝ Մոկս, եւ բազում գերի ճառ եւ աւար արարեալ էր, եւ այրեցեալ էր*

(2) *այսինքն Շատախի.*

(3) *հետեւակ զօրք:*

*վանքս եւ անապատս, գիւղս եւ գաւառս, եւ բազում քրիստոնեայք սրախողող արարեալ էր երկրորդ Յուլիանո՛ս, եւ զպատուհասն Յուլիանոսի առցէ, ամէն»* (*Հայապատում* էջ 590):

Մոկս, յետոյ ենթարկուած է Ճուլամերկի կամ Հեքեարիի քիւրտ համանուն ցեղապետին: ԺԸ. դարուն, ինչպէս Ինճիճեան կը հաստատէ, այդ վիճակին մէջ էր դեռ:

Հին ատեն աւելի ընդարձակ սահման մը կ'ընդգրկէր անիկա:

Հայկական հին Մոկաց նահանգին մէկ մասը, ինչպէս *Մոկս*, *Շատախ* (հին Ջերմաձոր), *Նորդուզ* կամ *Նոր Տուղ*, *Պոհտան*, *Կէցան* եւ *Սպարկերտ* գաւառները, Վանի փաշայութեան անուանական իշխանութեան տակ աննուաճ կը մնային:

Միրշտ Հայ մը *մէլիք* եւ *«գլխաւոր հրամատար»* եղած է Ճուլամերկի պէյին հրամանով եւ *«զամենայն իշխանութիւն իգործ ածէ, բաց ի յարհնեղութենէ»* (Ինճիճեան, *նոյն* էջ 161):

*Մոկս* կամ *Մէքս* գաւառին կեդրոնը բերդաքաղաք մըն էր ուր կը նստէր պէյը: Շինուած էր լեռան մը ստորոտը: Այս քաղաքէն երեք ժամ հեռու, անոր հարաւակողմը, դաշտավայր տեղ մը կը գտնուէր *Յաղին* անուն գիւղ մը հայաբնակ որ միայն 40 տուն բնակիչ ունէր:

Հին ատեն այդ գիւղը ունէր քարաշէն բերդ մը, որ շինած էր իր ծախքով անուանի Հայ մելիքը՝ Յովիկ կամ Յովհաննէս, ծախսելով 200,000 դահեկան:

Յովիկ շատ հարուստ էր եւ ճարպիկ, որ զօրք հաւաքելով իշխեց նաեւ ուրիշ քիւրտ պէկերու վրայ եւ երբ ուզէր զանոնք կը փոխէր եւ ուրիշ շատ մը կարգադրութիւններ կ'ընէր, իբր Ճուլամերկի պէյին փոխանորդը կամ ներկայացուցիչը:

Խիզանի եւ Շիրուանի քիւրտ պէկերը նախանձելով իր վրայ յարձակեցան եւ պաշարեցին զինք այս բերդին մէջ ուր միշտ կ'ամրանար ինքը, եւ հնարքով մը դաւադրաբար հրազէնով սպաննեցին զայն, եւ գրաւելով բերդը գտան պարիսպներուն մէջ անօթներով դրամ, ատոր համար քակեցին մինչեւ հիմերը պարիսպին 1773ին, պահուած դրամները գրաւելու համար:

Այս Հայ իշխանութիւնը զուցէ ատով վերջացած է:

## 2 · ՇԱՏԱԽ (ՋԵՐՄԱՁՈՐ)

Մոկսի արեւելեան կողմը, դարձեալ Վանի լճին հարաւակողմի լեռնային երկրամասին մէջ էր Շատախ (1), հին Ջերմաձորը, ուր նաեւ կը նստէր Հայ մելիք մը որ ստորադասուած էր դրացի Մոկսի մելիքին պէս Ճուլամերկի պէկին:

Ինչպէս տեսնուեցաւ այս երկու դրացի Հայ մելիքները փոխանակ իրարու գործակցելու իրարու հետ մաքառած են, կորզելու համար իշխանութիւնը իրարու ձեռքէ:

Ըստ Ինճիճեանի Շատախ *«ունի մէլիք յազգէս Հայոց, եւ իգործ ածէ զամենայն իշխանութիւն եւ զդատաւորական պաշտօն, զի ոչ թողուն քուրտ պէյից նստիլ աստէն, որպէս եւ իՄոկս»*: Ո՞վ է չձգողը անորոշ է, սակայն հաւանօրէն Հայերն են, որոնք պահած էին Հայ մելիքով կառավարուելու առանձնաշնորհը, բայց յայտնի չէ մինչեւ երբ:

## 3 · ԽԻԶԱՆ ԿԱՄ ՀԻԶԱՆ

Խիզան, որ կը համապատասխանէ Աղձնեաց հին Դզեխ գաւառին, կը գտնուէր Բաղէշի հարաւ-արեւելեան եւ Վանի հարաւ-արեւմտեան կողմը, դրացի Մոկսի, եւ նոյն ձեւով կը կառավարուէր, երբեմն Բաղէշի քիւրտ խանութեան եւ աւելի յաճախ Ճեզիրէի քիւրտ իշխանութեան գերիշխանութեան տակ: Երկար ատեն եղած է քիւրտ անկախ *հիւքիւմէթ* մը (Ինճիճեան, *Աշխ.* էջ 179), որ նոյնիսկ գոյութիւն ունէր ԺԵ. դարուն Ուզուն Հասանի (1471—1477) ժամանակ, ինչպէս կը հաստատէ Ջոզեֆա Բարբարո ուղեւորը, որ այս կողմերը շրջած է 1471—1478 թուականներուն:

Այդ ուղեւորը 1474 Ապրիլ 3ին մեկնած է Խիզանէն, որ կը պատկանէր կ'ըսէ Հասան պէյի (Ուզուն Հասանն է) հպատակ իշխանի մը:

Ջոզեֆա Բարբարո որ իր հետը ունէր Ուզուն Հասանի դեսպանը, Խիզանէն միայն կէս օրուան ճամբայ հեռու, բարձր լերան մը վրայ յարձակում կը կրէ քիւրտերէն, որոնք կ'սպաննեն դեսպանը, Բարբարոյի քարտուղարը եւ ուրիշ երկու հոգիներ ու կը վիրաւորեն զինք եւ մնացեալ ուղեկիցները: Բարբարո, մինակը կը փախի ձիով եւ իրեն կը հետեւին անոնք որ վիրաւորուած էին (տես. Յովհաննէս Յակոբեան, *Ուղեգրութիւններ*, Ա. հտ. էջ 183):

Աւազակութեան որջ այս իշխանութիւնը շարունակուած է երկիրը Օսմ. տիրապետութեան ենթարկուելէն վերջն ալ, եւ զարմանալի է որ իր իշխանութիւնը քրտօ-հայկական բնոյթ ունեցած է, վասնզի քիւրտ պէյը իրեն օգնական ունեցած է Հայ իշխանաւոր մը որ իրեն հետ կը յիշատակուի:

Ասիկա կը հաստատուի Երուսաղէմ պահուած երկու ձեռագիրներու (թ. 1663 եւ 1460) յիշատակարաններով, երկուքն ալ շարական եւ գրուած Խիզան, 1601 եւ 1602 թուականներուն:

Առաջինին մէջ գրիչը Էջմիածինի եւ Աղթամարի կաթողիկոսներէն վերջ կը յիշատակէ թուրքերու Սուլթան Մէհէմմէտ Գ.ը (1594—1603) եւ պարսից Շահ Աբասը (1587—1629) եւ անմիջապէս կը յարէ *«եւ իմերոյս պարոնութեան Միր Հասանին եւ առաջիկայ Նայիպ* (1) *Խաչատուրին»*.

(1) *Գաւառին նկարագրութիւնը տես. Ա.— Դօի գործը* էջ 61 65.

(1) *Տեղակալ կամ փոխանորդ կը նշանակէ հոս.*

Իսկ երկրորդին մէջ որ նոյն գիծին (Սարգիս Քհ.) գործն է, նոյն ձեւով կը յիշատակուին կաթողի-կոսներ եւ առանց թուրք եւ պարսիկ տիրապետներու խօսքը ըլլալու ուղղակի կ'աւելցուի *«ի պարոնու-թեան Միր Հասանին եւ առաջիկային ԻՒՐՈՑ Նա-յիպ Խաչատուրին»*: Ոեւէ տարակոյս չկայ ուրեմն թէ Խաչատուր ուղղակի Միր Հասանին փոխանորդը կամ օգնականն էր եւ կը կատարէր Մոկսի եւ Շատախի Հայ մելիքներուն դերը:

Այս կերպով կրնայ մեկնուիլ Խիզանի մէջ ծաղկող Հայ մտաւոր շարժումը եւ գրչութեան զար-գացումը (1):

Խիզան կը ներկայացնէր ԺԷ. դարուն սկիզ-բը, ինչպէս այս յիշատակարաններէն կը հասկցուի ապահով վայր մը, վասնզի երբ Վանի Ահմէտ փա-շան եւ Ճեզիրէի Միր Շարաֆը կ'սպաննեն Բաղէշի Շարաֆ խանը եւ անոր երկիրը կ'աւերեն, *«Մնացեալ Բաղէշ քաղաք անտէր եւ անիշխան իբրեւ զորբ տղայս ցրուեալ եւ հեռացեալ բնակիչք նորա յա-մենայն տեղիս որպէս զձագ հաւուց, որ եւ աստ ի քաղաքս Հիզան շատք եւ բազումք եկին յամե-նայն երկրէ եւ քաղաքէ որ եւ եղեւ սղութիւն եւ պակասութիւն ամենայն իրաց. քանզի չափ ցո-րենոյն ի ԺԲ. շահի եւ կորեկն եւ գարին Ե—Զ շահի եւ զառաջիկայն ոչ գիտեմք թէ որպէս լի-նելոց է:»*

Ինչ որ որոշ է Խիզան թափանցած են հետզհետէ Քիւրտերը եւ իրենց բռնակալութիւններով եւ կեղե-քումներով պատճառ եղած են Հայերու թիւին անհա-մեմատ պակսելուն, եւ վերջապէս անոնց բոլորովին անհետանալուն 1915ի եղեռնին ատեն:

## 4· ՍԱՍՈՒՆ

Ինչպէս յայտնի է Սասուն Հայաստանի մէջ առանձնայատուկ վայր մը եղած է իր անմատչելի լեռնային դիրքով (2): Ան օրօրանը եղած էր Թոռնիկ-եաններու (տես. վերը, էջ 153—155 եւ 270—273), որոնք երկար ատեն անընկճելի մնացած են եւ պահած են իրենց իշխանութիւնը:

Սասուն հին ատեն Աղձնեաց նահանգին մաս կը կազմէր եւ կը կոչուէր *Գաւառ*: Սասուն եւ Խոյթ մեր պատմութեան մէջ գրեթէ միշտ անջատ յիշուած են:

ԺԵ. դարուն առաջին կիսուն Սասունի կը տիրապետէր Գարագոյունլու Գարա Օսման թուրքմէ-նը, որ անընդհատ կը կռուէր Քիւրտերու հետ, որոնք Սասուն մտած էին առաջին անգամ ըստ վաչկատուն ցեղերու յատուկ սովորութեան, իրենց հօտերուն արօ-տավայր դարձնելու համար գաւառը: Շէրէֆ էտ-տին Բաղէշցի Քիւրտ պատմագիրը կը հաստատէ Քիւրտերու երկուոր ըլլալը Սասունի մէջ (Վ. Տոմաշէկ, *Սա-սուն եւ Տիգրիսի աղբերակաց սահմանները*, ՀԱ. 1896, էջ 299):

Քիչ ժամանակ վերջը, Ակգոյունլու Գարա Եուլուկի թոռը՝ Ուզուն Հասան, որ Եփրատի արեւել-եան կողմի երկիրները նուաճած եւ Ամիթը մայրա-քաղաք ըրած էր, միառմի գրաւեց Իսկէնտէրի նախկին երկիրները, ընդ որս Մուշը, Բաղէշը, Խլաթը, Բագրե-ւանդը, եւ Սասունը (Չամ. Գ. 502):

Օսմանցի թուրքերը սակայն հետզհետէ կ'առա-ջանային եւ կը հասնէին Հայաստան:

Օսմանեան աճարկու զօրութիւնը սանձահարե-լու համար Նիկողոս Ե. Պապը (1447—1455) խաչա-կրութիւն մը կազմելու աշխատեցաւ: Իր յաջորդը՝ Կալիստոս Գ. (1455—1458) Լուի Բոլանիացի վար-դապետը Մերձաւոր Արեւելք (Levant) ղրկեց, որպէսզի իրագործելու համար այս ծրագիրը միացնէ Քրիստոն-եաները եւ իսլամ այն իշխանները որոնց անկախու-թեան վտանգ կ'սպառնար Օսմ. պետութիւնը:

Խաչակրութեան ղեկավարը պիտի ըլլար Բուր-գանտիոյ Փիլիպպոս դուքսը: Պապին պատուիրակը 1459ին Մերձաւոր Արեւելքի իշխաններուն մէջ գէթ թուղթի վրայ կրցաւ ստեղծել խայտաբղէտ նիզակակ-ցութիւն մը որուն մէջն էին յոյն, վրացի, մահմետա-կան իշխաններու շարքին նաեւ «Գիթիարացիք եւ Սասունցիք» (Տոմաշէկ ՀԱ. 1896 էջ 300) որոնք Ուզուն Հասանի երկիրին սահմաններուն մէջ կ'ապրէին:

Ըստ Տոմաշէկի (ՀԱ. 1896 էջ 300) Լուկկա-րիի (Annali di Raûsa, Վենետիկ, 1605 էջ 110) շատ արժանահաւատ տեղեկութեան մը համաձայն *«Հեթում եւ Ռուբէն՝ Գիթիարացւոց եւ Սասունցւոց պատ-գամաւորներն»* էին, այս բանակցութեանց մէջ: Բնա-գիրը որ իբր ծանօթութիւն, մէջ բերած է Տոմաշէկ, հետեւեալն է. «Haiton e Rubino, ambasciadore delle reipubliche de Githiarani et Sassoni (տես. ՀԱ. 1896 էջ 300):

Ինչպէս կը տեսնուի հոս Սասուն կը դառ-նայ *հանրապետութիւն*, ինչ որ կը նշանակէ թէ Սասուն այն ատեն անկախ էր կամ գէթ ինքնավար:

ԺԷ. դարուն Վենետիկցի վաճառականի մը տեղեկութեան համաձայն, *Սանսոն* անուն ամրոց մը կը յիշուի, Արծն եւ Այքու (Հասզու) ամրոցներու հետ: Նոյնպէս Քրտական Հասզուի շրջանակին մէջ *Ձէլէք* եւ *Բէֆէնտիւր* ամրոցներէն զատ յիշուած է *Սասուն* անուն ամրոց մը, որ ըստ Տոմաշէկի թերեւս Խարզան գաւառի շրջակայքի այսօրուան համանուն տեղն է (ՀԱ. 1896 էջ 301):

Չալտիրանի ճակատամարտէն (1514) վերջը երբ Սուլթան Սելիմ տիրեց Հայաստանի Սասունի բէ-կը, Մուհամմէտ՝ ուրիշ Քիւրտ բէկերու օրինակին հե-տեւելով անցաւ Օսմանցիներու կողմը եւ Պարսիկնե-րը Խարզանէն եւ Խաբիրէն (Ջէզիրէ՞) վանեց (Տոմա-շէկ, ՀԱ. 1896 էջ 301):

Սասուն՝ մին էր Տիարպէքիր Վիլայէթին այն 8 գաւառներուն որոնք Քիւրտ լեռնական կէս-անկախ աւարառու ցեղապետներու տրուած էր (Տես. վարը): Օսմանեան տիրապետութեան շրջանին Հասզուն, այսինքն Խարզան եւ Սասուն, կը ներկայացնէին այն շրջանները

(1) *Տես. Յ. Քիւրտեանի* Խիզանի Գրչագրական եւ Մանրանկարչական դպրոցը: *Նման շարժում մըն ալ ԺԶ—ԺԷ. դարուն նոյն հեղինակը երեւան հանած է Մոկաց Բոլոնենց գիւղին մէջ:*

(2) *Գաւառին մասին աշխարհագրական տեղեկութիւն-ներու համար տես. Ա— Դ. նոյն էջ* 119—142:

մէկը որ ոչ հարկ կը վճարէր եւ ոչ զինուոր կուտար: Իր Հայ եւ Քուրտ բնակիչները կը վայելէին հաւասար ազատութիւններ, եւ յաղթանդամ եւ քաջասիրտ մարդիկ էին, կռուի եւ անեղ պատերազմի մէջ, եւ վերին աստիճան նախանձախնդիր իրենց իրաւունքներուն պաշտպանութեան:

Երբ ԺԸ. դարուն կէսերուն Ալատին պէյ, Մուշի Քուրտ իշխողը, որ նոյնիսկ Բաղէշի աւատապետ Քուրտ խանը իրեն հնազանդեցուցած էր, յաւակնեցաւ Սասունին ալ տիրել եւ իրեն հնազանդեցնել: Սասունցիք ասոր չհանդուրժեցին ու ըմբոստացան 1741ին յանկարծ ասպատակելով Մուշի շրջակայ գիւղերը, զանոնք աւարի տուին: Յետոյ բարձրանալով իրենց լեռները ապաստանեցան Բռնաշէնի մօտ Ս. Աղբիւրիկ կոչուած մենաստանը որ բերդանման շինուած մըն էր:

Ալատին պէյ քանդեց այս մենաստանը եւ բոլոր զարդերը եւ գիրքերը կողոպտեց:

Բայց քանի մը տարի վերջ, ապահովաբար խոհեմութիւն համարեց հաշտուիլ Սասունցիներուն հետ եւ արտօնեց վերաշինել այս վանքը:

Սասունցիներու, մանաւանդ ոմանց, մազերուն ստուարութիւնը, կ'ահաբեկէր տեսնողները: Թէեւ ունէին իրենց սեփական Քուրտ իշխող բէկ մը անկախ սակայն այդ բէկին իշխանութիւնը բնդարձակ էր եւ Սասունցի Հայերը, անոր ստորադրեալ բայց ազատ էին։

Սասունի լեռնականները Հայ եւ Քուրտ, երկուքն ալ կը համարուէին մինչեւ ԺԹ. դարուն վերջերը մէկ *Աշիրէթ* (ցեղախումբ) եւ կը կոչուէին Սասունցի եւ *ամիզատէ* (հօրեղբօրորդիներ) (տես. Յ. Տահպազ *Քրտո-Հայ Պատմութիւն*, էջ 107), որով գաւառին բնակչութիւնը թէեւ կրօնքով բաժնուած երկու մասի ցեղով միացեալ կը համարուէր, եւ կը կազմէր աւատութիւն մը, նման ուրիշ Քուրտ շրջաններու:

Մշեցիք Սասունի մահմետական Քուրտերը կը կոչէին *Սասնցիք*, իսկ Հայերը՝ *Դաւռցիք*:

Սասուն ԺԶ. դարուն ենթակայ էր Հազզուի (1) որ Ռուզկեան Քուրտերու կեդրոնն էր:

Հին ժամանակներու Սասունը՝ կը կազմէր այժմեան Խարզան գաւառն՝ Զոկով միասին, եւ Հազու գաւառն համանուն վայրով միասին: Այսօրուան Սասունը ենթարկուած է Բաղէշի սանճագին, իսկ հին Սասունը՝ Սղերդի սանճագին (Տոմաշէկ, *նոյն*.): Երբեմն ալ ենթակայ էր Մուշի:

Ոչ մէկ փաշա կամ պէյ մինչեւ 1895 կրցած էր նուաճել Սասունը, իր աշխարհագրական դիրքին եւ բնակչութեան ռազմիկ ըլլալուն համար, մինչեւ որ Սուլթան Համիտ քանդեց այդ Հայ եւ Քուրդ համերաշխ միութիւնը, որ պահուած էր այդ լեռներուն վրայ, եւ ջարդեց քրիստոնեայ Սասունցիները, 1894 Օգոստոս 30ին, որովհետեւ Սասունցիք Քուրտերու կողմէ իրենց դէմ գործուած յարձակումներուն փոխադարձած էին 1894 Յուլիս 24ին, եւ պարտութեան մատնած՝ զանոնք:

Բաղէշի կուսակալը Հասան Թահսին փաշա՝ Սուլթան Համիտի հրամանով Համիտիյէ Քուրտ հեծելազուններով եւ 30,000 կանոնաւոր զօրքով արշաւեց Սասուն, զանոնք ապստամբ նկատելով:

«Հայերը ջարդուեցան առանց հասակի եւ սեռի խտրութեան» ինչպէս կը վկայէ Անգլիոյ ներկայացուցիչը Շիբլի:

Տասը տարի վերջը, 1904ին, անգամ մըն ալ Սասուն կռուեցաւ թուրք բռնակալ կառավարութեան դէմ Անդրանիկի, Սերոբ Աղբիւրի, Գէորգ Չաւուշի գլխաւորութեամբ:

Սուլթան Համիտ, դարձեալ կանոնաւոր զօրք ղրկեց Սասունի դէմ, եւ կրկին ջարդեց Սասունցիները:

1915ին Սասուն բոլորովին Հայերէն պարպուեցաւ:

## 5. ԻՍԵԱՆ ԿԱՄ ԻՍՔԵԱՆ

Տիարպէքիրի վիլայէթի մէջ գտնուող, ըստ Վ. Տոմաշէկի (տես. ՀԱ. 1896 էջ 301), ուր եւ ըստ Հ. Ինճիճեանի (*Աշխարհ.* Ա. էջ 210—211), աւելի բազմաթիւ կէս-անկախ աւատութիւններէն մին էր *Իսեան* կամ *Իսքեան*, որուն մասին խօսուած է վերը, (տես. էջ 85):

Ինճիճեան (*Աշխ.* Ա. 243) կ'ըսէ թէ *Իսեան* կը նշանակէ ապստամբութիւն, իսկ *Իսքեան*՝ բնակութիւն:

Այս գաւառը անուանի *«ինքնագլուխ ապըստամբ»* էր Տիարպէքիրի փաշայէն: Գաւառը ունէր զանազան գիւղեր, որոնց բնակիչները գրեթէ առհասարակ Հայեր էին, բայց քիչերը կը խօսէին աղճատեալ հայերէն մը: Անոնք առհասարակ քրտախօս էին։ Գրեթէ անուանական քրիստոնեաներ էին, ոչ եկեղեցի ունէին եւ ոչ քահանայ, շատերը նոյնիսկ խաչակնքել չէին գիտեր, եւ միայն տարին անգամ մը Խաչի տօնին խմբովին կ'երթային Հազրու Այն Իպրիգի եկեղեցին եւ հոն կը մնային երեք կամ չորս օր: Պատարագ ընել կուտային եւ իրենց ուրախութիւնը կ'արտայայտէին անդադար հրազէն արձակելով: Յետոյ կ'երթային Ս. Առաքելոց վանքը։ Տարեկան պաշտամունքնին այս էր:

Հայերը մահմետականներէն կ'որոշուէին միայն ներմակ փաթթոց կապելով իրենց գլուխը:

Գաւառը ունի երկու մեծ լեռներ, իրարմէ հեռու մէկ օրուան ճամբայ: Այս լեռները որոնք կը կոչուին գաւառին անունով, իրենց ապաստանի վայրերն էին:

Երկու լեռներուն միջեւ կային երկու աւաններ անպարիսպ, մին քրտաբնակ, միւսը հայաբնակ:

Քուրտերը առհասարակ հեծելազօրք եւ տեգաւոր էին եւ իրենց զաւակները տղայութենէն այս ձեւով կը կրթէին: Իսկ Հայերը առհասարակ հետեւակ էին եւ հրացան կը գործածէին, եւ լաւ նշանառու-

(1) Հ. Ինճիճեան (Աշխարհագր. Ա. էջ 231) *կ'ուղղագրէ Խզու կամ Հզու, որ գաւառ մըն էր հարաւ-արեւելքը Սասունի: Գաւառին կեդրոնն է համանուն քաղաքը։ Ըստ Ինճիճեանի Աղձնեաց նահանգին* Գրզեղ *գաւառին կը համապատասխանէ Խզու կամ Հզու, սակայն Հիւբշման* (Հին Հայոց տեղւոյն անուններ, *էջ* 170) *համաձայն չէ։*

ներ: Իրենց տղաքը հինգ տարեկանէն կը վարժեցնէին զէնք գործածելու։

Անոնք աւելի աւազակութեամբ կ'ապրէին քան արհեստով: Մարմնով յաղթանդամ, բարձրահասակ եւ զօրաւոր էին, եւ լաւ կռուողներ: Միշտ զինեալ կը շրջէին: Գիշերային աւազակային արշաւներու ատեն սպիտակ հագուստ կը հագնէին, ձիւնին վրայ չտեսնուելու համար:

Կռիւներու ատեն իրենց ինչքերը կը թաղէին գետնափոր գաղտնի տեղեր իրենք Հայ եւ քուրտ միասին կ'ամրանային լեռները, եւ պատնէշներ կը շինէին: Անոնք պատերազմը ուրախութեամբ կը դիմաւորէին:

Այս շրջանը Օսմ. պետութիւնը չէր կրցած նուաճել մինչեւ ԺԹ. դար:

1782ին Տիարպէքիրի կուսակալը 4,500 զօրքով 8 օր կռուած եւ բան մը չկարենալով ընել դարձած է ետ, 500 զինուոր կորսնցնելով:

1785ին դարձեալ զօրք ղրկուած է աւելի քիչ թիւով, սակայն նոյնիսկ չեն համարձակած յարձակելու:

1798ին սպաննեցին Իսքեան աղան, երկրին տէրը, որուն յաջորդեց իր որդին:

Այս Իսքեան աղային երկիրը կը կոչուէր *Պանօքցոց երկիր* ուր կը գտնուէին *Հազրօղին*, *Բասքէ*, որ մեծ աւան մըն էր քուրտերէ եւ Հայերէ բնակուած: Անոնք սուրեր կը շինէին, (տես. Ինճիճեան, (*Աշխարհ.* Ա. էջ 243—245)։

## 6. ՍԱՎՈՒՐ

Տիարպէքիրի վիլայէթին մէջ գտնուող կէսանկախ աւատութիւններէն մին էր նաեւ *Սավուր*, որուն Հայերը իրենց ազատութիւնը կը պահէին քուրտերու հետ միացած:

Ինճիճեան (*Աշխարհագրութիւն*, Ա. էջ 230) Սավուրի համար կ'ըսէ թէ «*գաւառ ինքնագլուխ եւ անկախ բնակիչք նորա ըստ մեծի մասին յազգէս Հայոց, որք են արք հզօրք եւ սաստիկ պատերազմողք, իսկ իքրոյ սակաւք*»:

Գլխաւոր աւանը գաւառին նոյնպէս Սավուր կը կոչուէր եւ կը գտնուէր Մերտինի մօտ, Տիարպէքիրի հարաւակողմը: Տիգրիս գետին վրայ, Սուլտան Եայլագի կոչուած լեռներուն արեւելեան ստորոտը, Ինճիճեան կը հաւաստէ թէ հոն կար, քայքայուած բերդ մը:

## Բ. ՔՐՏԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐ ՇՐՋԱՆՆԵՐ

Տեսնուեցաւ թէ ինչպէս Օսմ. կայսրութեան Փոքր Ասիոյ բաժինին մէջ երեւան եկան *Տէրէպէյութիւններ*, իսկ Հայաստանի մէջ *Հիւքիւմէթներ*:

Սակայն այդ ձորապետները եւ բռնապետները այնքան բազմաթիւ էին որ կարելի չէ թուել զանոնք: Դրեթէ պետութեան ամէն մասերուն մէջ կային անոնցմէ, վասնզի զօրաւոր եւ ազդեցիկ անձեր կը փորձէին տիրանալ հողերու եւ չճանչնալ կեդրոնական իշխանութեան հեղինակութիւնը, կամ անուանապէս ճանչնալով իրենց շրջանակին մէջ տէր ու տիրական դառնալ:

Սուլթանը շարունակ պարտաւորուած էր զբաղիլ մէկօրէն միւսը բուսնող եւ երբեմն կարճ կեանքով ապստամբներուն հետ, որոնցմէ մէկը հազիւ ընկճուած ուրիշ մը երեւան կուգար։

Մասնաւորապէս քուրտ ցեղապետներ բնաւ օրինապահ եւ հնազանդ հպատակներ չէին։

Որչափ ատեն որ Հայաստան պարսիկ տիրապետութեան տակ էր նոյնիսկ ԺԴ. ԺԴ. ԺԵ. եւ ԺԵ. դարերուն քուրտերը երկիրին տէրն էին:

Երբ Պարսկական պետութիւնը վերակազմուեցաւ ԺԵ. դարուն քուրտերը անուանապէս հնազանդեցան Շահ-Իսմայիլի: Ամբողջ քրտական շրջանները, մասնաւորապէս Միջագետքը, Տիարպէքիրը կեդրոն ունենալով, կը կառավարէր Կուսագեուլու Մահմուտ բէկը, Շէյխ Իսմայիլի կողմէ, որ անոր տուած էր այս շրջանը իբր իր ազգականին, վասնզի իր քեռայրն էր եւ շատ անձնուէր՝ իրեն հանդէպ (տես. Յովհ. Յակոբեան *Ուղեգրութիւններ* Ա. հտ. էջ 291)։

Գաղափար մը տալու համար թէ որքան ընդարձակ էր այս նահանգը, ըսենք թէ Տիարպէքիրէն զատ, որուն այդ շրջանին Կարա Ամիտ կ'ըսէին, անոր մաս կը կազմէին Մարտին, Ուռֆա (Եդեսիա) Ճէզիրէ, Հասան Քէֆ, Սղերդ եւ Խարբերդ եւայլն: (The Taavels of a Merchan tine Persia տես. Յովհ. Յակոբեան *Նոյն.* էջ 292)։ Անոնք ալ ստորաբաժնուած էին ինչպէս Հասան Քէֆ (1) որ կը կազմէր իր կարգին աւատապետութիւն մը, որ ըստ այդ վաճառական ճանապարհորդին որ 1511—1520ին շրջած է Պարսկաստանի մէջ, պետն էր այդ հողամասերուն բազմաթիւ քուրտ իշխաններուն, եւ կը հպատակէր Պարսից Շահին (*Նոյն.* Ա, հտ. էջ 294—295) եւ իր իշխանութեան տակ ունէր մինչեւ Սղերդ եւ Սասուն տարածուող հողերը (*Նոյն.* 296):

Այս քրտական երկիրներուն մէջ ուր անկարգօրէն կ'իշխէին այս քուրտ իշխանները երբ Շահը բարեկարգութիւն հաստատելու եւ աւազակութիւնը բառնալու ձեռնարկեց, քուրտերը յամառօրէն դիմադրեցին եւ նախամեծար համարեցին Օսմ. Սուլթանին կողմը հակիլ, այն յոյսով որ իրենց աւատութիւնները ազատօրէն պիտի շարունակէին, քանի որ Օսմանեան Սուլթանը, զիրենք կ'ուզէր իր կողմը շահիլ:

Այս մասին ինքնակամ Սուլթան Սէլիմ Եավուզի (1512—1520) օգնական հանդիսացաւ քուրտ մը, Մոլլա Իտրիս, որ Բաղէշի քրտական մեծ իշխանութեան տիրող տոհմին անդամներէն մէկն էր եւ մեծ հեղինակութիւն կը վայելէր քուրտ ժողովուրդին մէջ:

Այնպէս որ մինչ Սուլթան Սէլիմի զօրքերը կ'արշաւէին դէպի Հայաստան, Մոլլա Իտրիսի յորդորներով շատ մը քուրտ ցեղապետներ յօժար կամքով

(1) *Ասոր տէրն էր այն տոհմէն խալիլ անուն քուրտը որ ամուսնացած էր Շէյխ Իսմայիլի քրոջ հետ* (Յ. Յակոբեան Ուղեգր. *Ա. էջ* 294)։ *Ասիկա պարսիկներու դէմ էր* (Նոյն.)։

գացին միացան Օսմ. բանակին, հպատակութիւն յայտնելով Օսմ. գահուն:

Այսպէս, Չմշկածագի ու Սաղմանի, Բալու-Չապաղջուրի ու Էկիլի, Ատաքի ու Նփրկերտի, Խիզանի ու Բաղէշի բէկերը՝ Նեմիրան Խալայիդ եւ Մեկիս՝ որ Պարսիկ զօրքին իրենց գլխուն վրայ ներկայութեան չէին կրնար հանդուրժել եւ չէին ուզեր տեւականօրէն կապուած մնալ, շուտով իրենք զիրենք անկախ հռչակեցին:

Սասունի բէկը՝ Մուհամմէտ՝ եւս անոնց օրինակին հետեւեցաւ եւ պարսիկները իր երջանիկէն վանեց։ Աղերդի տիրապետը Մելիք Խալիլ նորէն տիրեց այս քաղաքին որ իր ցեղին կեդրոնավայրն էր (Տոմաշէկ, *Սասուն*, ՀԱ. 1896 էջ 301)։

Իսկ ամէնէն առաջ Տիարպէքիրի բնակիչները ապստամբած էին:

Սուլթան Սելիմ, որ կը գնահատէր քուրտ վայրենի ցեղերու ռազմական ոյժը, ընդունեց շատ սիրալիր կերպով իրեն դիմողները եւ իւրաքանչիւրը իր իշխանութեան մէջ հաստատեց, մինչ Շահ Իսմայիլ Պարսկաստանի նոր հարստութեան հիմնադիրը, որ ունէր իր կողմնակիցները քուրտերու մէջ, չուզելով ձեռքէ հանել Քուրտիստանի այն մասերը ուր կը գտնուէին Տիգրիսի ակերը, հոն ղրկեց Գարախան զօրավարը որ յաջողեցաւ Խլաթէ մեկնելով՝ Ճապաղջուրի ճամբով Ամիթ մտնել եւ Մերտինի եւ Հասան Քէֆի պահակազօրքերուն օգնութեամբ առաջանալ, սակայն քուրտ պէկերը արգելք եղան որ Վանի եւ Խլաթի ճամբով նոր բանակներ ղրկուին, (Տոմաշէկ *նոյն.*)։

Գարախան պաշարեց Գարա Ամիթ (Տիարպէքիր) քրտական քաղաքը որ տարիէ մը աւելի պաշարուած մնաց: Քուրտերը կորսնցուցին 15,000 մարդ՝ (Hammer. Histoire de l'Empire Ottoman Paris. 1835 հտ. Դ. էջ 225): Սուլթան Սելիմ, պաշարուածներուն օգնելու գործը յանձնած էր Մոլլա Իտրիսին, որ արտակարգ եռանդով գործելով կրցաւ միութիւն մը ստեղծել քրտական ցեղերու միջեւ, բան մը որ մեծ յաջողութիւն մըն էր, նկատի ունենալով այդ վայրենի ժողովուրդի ցեղական մանր բաժանումներ:

Այս նոր միութեան մէջ կը մտնէին գրեթէ բոլոր այն ցեղերը, որոնք կ'ապրէին Հայաստանի հողին վրայ, Վանի լիճին արեւմտեան կողմը, ինչպէս էին Բաղէշի, Խլաթի, Ասլնեվազի (Արծկէ), Արճէշի, Սասունի, Չմշկածակի, Բալուի, Ճապաղջուրի քրտական տիրապետները:

Այսպէս, Հայաստանի գրեթէ բոլոր քրտութիւնը յամառօրէն կը կռուէր Պարսկաստանի դէմ: Սակայն իրենց սեփական միջոցներով քուրտերը չէին կրնար խորտակել Պարսկական ոյժը, թէեւ առանձին ընդհարումներու մէջ երբեմն նոյնիսկ աչքի զարնող յաջողութիւններ կ'ունենային։

Պըյըքլը Մուհամմէտ փաշայի բանակը երբ միացաւ քրտական զօրքին, որուն թիւը 10 հազարի կը հասնէր, Գարախան ստիպուեցաւ պաշարումը թողուլ եւ քաշուիլ դէպի Միջագետքի կողմերը:

Այնուհետեւ քրտական միութեան կը մնար կատարել Մերտինի գրաւումը, որպէսզի կատարելապէս վանուէին պարսիկները Հայաստանէն եւ Միջագետքէն:

Բայց ասիկա դիւրին չեղաւ, վասնզի պարսիկ բերդապահները ամրացան անմատչելի միջնաբերդին մէջ, Գարախանի եղբօրը՝ Սիւլէյման խանի առաջնորդութեամբ:

Այդ միջոցին Միջագետքէն օգնութեան հասան այն քրտական ցեղերը, որոնք դեռ հաւատարիմ մնացեր էին Պարսկաստանի։

Գարախան նորէն կրցաւ վերակազմել իր բանակը եւ գրոհ տալով ետ խլեց Մերտինը: Թուրք եւ քուրտ միացեալ զօրքը ծանր պարտութիւններ կրեց մէկ երկու կռիւներու մէջ: Բայց ճակատամարտի մը մէջ Գարախան սպաննուեցաւ եւ Ղզլպաշները փախան:

Պատերազմը վերջ գտաւ թուրքերուն յաղթանակով, բայց Մերտինի միջնաբերդը շարունակեց երկար ժամանակ հերոսական դիմադրութիւն ցոյց տալ, մինչեւ որ Սուլթան Սելիմ իր սուրիական արշաւանքին ժամանակ թնդանօթներ եւ խոշոր զօրաբանակ մը ղրկեց անոր դէմ: Սիւլէյման խանը ստիպուեցաւ անձնատուր ըլլալ իր բերդապահ զօրքով որ սուրէ անցուեցաւ։ Ասկէ վերջը, Պըյըքլը Մուհամմէտ փաշա իր թուրք–քուրտ բանակով Միջագետքի հիւսիսային մասը փոխադրեց պատերազմական գործողութիւնները: Հոն բնակող քուրտ ցեղերը դիմադրութիւն ցոյց չտուին, Մոլլա Իտրիսի յորդորներով: Այսպէս, Շահ Իսմայիլ կորսնցուց իր բոլոր քաղաքները եւ բերդերը, ինչպէս Մուսուլը (1516), եւ Քուրտիստան կցուեցաւ Թուրքիոյ:

Մոլլա Իտրիս լիովին վարձատրուեցաւ:

Սուլթան Սելիմ անոր յանձնեց նաեւ քրտական կեանքի կանոնաւորումը, քուրտ պետերու իշխանութեան սահմանումը, եւ այլ վարչական հարցերու կարգաւորումը:

Վարձատրելու համար քուրտերու հաւատարմութիւնը Սուլթանը ղրկեց Մոլլա Իտրիսին իրմէ ստորագրեալ թուղթեր, որոնց վրայ Իտրիս պիտի գրէր ամէն մէկ ցեղապետի անունը եւ անոր շնորհուած արտօնութիւնը, 17 հատ դրօշակներ եւ հինգ հարիւր ոսկեկար խալաթներ՝ քուրտ ազնուականութեան բաժնելու համար:

Այս կազմակերպութիւնը, որ Իտրիս տուաւ մինչեւ վերջերը կը պահուէր:

Իտրիս, ի հարկէ չէր կրնար արմատական փոփոխութիւններ մտցնել իր ցեղակիցներու ըմբռնումին մէջ: Անոնք ամէն բանէ առաջ իրենց մանր մունր իշխանութիւններու անկախութիւնը կ'ուզէին: Իտրիս այս ոգին աւելի զարգացուց, աւելի ստորաբաժնելով գոյութիւն ունեցող բաժանումները: Մեծ իշխանութիւնները որոնք կարեւոր օգնութիւններ ընծայեցին Օսմ. պետութեան, պահպանեցին իրենց նախկին բոլոր արտօնութիւնները, այնպէս որ կարելի է ըսել, թէ անոնք Սուլթանին միայն անուանական հպատակները եղան, իսկ երկրորդական իշխողները ստացան կիսանկախ դիրք, դառնալով զինուորական դասակարգ, որ իր ծառայութեան փոխարէն հողատիրական արտօնութիւններ ձեռք կը բերէր:

Միջագետք ուրկէ ամէնէն առաջ վանուեցան պարսիկները, կցուեցաւ Օսմ. կայսրութեան եւ Տիարպէքիր եղաւ կեդրոնը քրտական վիլայէթի մը որ Եփրատէն մինչեւ պարսկական սահմանագլուխ կը տարածուէր: Այս վիլայէթը բաժնուեցաւ 19 գա-

նաւակի (1) որոնցմէ 11-ը միայն ուղղակի Բ. Դուռնէն կախում ունէին, եւ 8-ը աւատառուներու տրուած էին (Տոմաշեկ, ՀԱ. 1896 էջ 301)։ Այսպէս, Բալու, Էկիլ, Կինն, Հազզու եւ Խաբիրէ (Ճէզիրէ՞) իբրեւ կիսանկախ աւատութիւններ իրենց ցեղապետներուն ձեռքը մնացին ժառանգական կերպով (*նոյն.*)։ Մասնաւոր Ֆերմաններով ատոնց ամէն առանձնաշնորհները հաստատուեցան, որով ընդարձակ երկիրներ քուրտ բէկերու կամայական իշխանութեան յանձնուած մնացին։ Այսպէս Հայաստանի հարաւային մասին մէջ ուր քրտական ցեղեր կը բնակէին, երեւան եկան ընդարձակ գաւառներ որոնք անկախութեան մօտեցող վիճակ մը ունէին (տես. Lynchի Armeniaն եւ Յակոբ Տահիպազեան *Քիւրտօ-Հայ Պատմութիւն*, 1911 Պոլիս էջ 27)։

Այս իշխանութիւններուն թիւր շատցաւ հետզհետէ վասնզի Մոլլա Իտրիս, զուգէ իր ցեղակիցնեւուն տալու համար ազդեցիկ դեր մը եւ անոնց անկախութիւնը Օսմ. Սուլթաններու գերիշխանութեան տակ ապահովելու համար թելադրեց իր անհանդարտ ցեղակիցներէն մաս մը փոխադրել եւ հաստատել Օսմ. կայսրութեան նոր սահմանագլուխին վրայ գտնուող այն գաւառներուն մէջ՝ որոնք սահմանակից էին Վրաստանի եւ Պարսկաստանի։ Անոնց շնորհուեցաւ տեւական ապահարկութիւն մը այն պայմանով որ իբրեւ Միլիս (երկրապահ զինուոր) ծառայեն այն սահմանին վրայ՝ զոր իրենց կը տրուէր պահպանելու համար։

Այսպէս, Մոլլա Իտրիսի ծրագիրին համաձայն այդ շրջաններուն մէջ հաստատուող քուրտերը ստացան համանման իրաւունքներ եւ զանազան աստիճանի անկախութիւններ, եւ Հայաստանի մէջ հարաւէն հիւսիս կազմեցին քուրտ իշխանութիւններու ցանց մը, ուր այնքան իշխողներ կային, որքան կային լեռնային ամրոցներ եւ դղեակներ (Hammer. Դ. հտ: էջ 254—255, Լեօ. Գ. էջ 177—179)։

Այս պզտիկ իշխանութիւնները կը հնազանդէին իրենցմէ զօրաւորներուն. որով կը կազմուէր աւատապետութիւններ որոնք ստորադաս ունէին բազմաթիւ վասալներ կամ աւատառուներ։ Այսպէս հետզհետէ կը կազմուէին զօրաւոր իշխանութիւններ, որոնք երբէ ոչ միանալ այլ գէթ համերաշխիլ գիտնային, թերեւս պիտի յաջողէին ստեղծել անկախ Քիւրտիստան մը։

Անկա չյաջողեցաւ վասնզի իբր նախնական ժողովուրդ մը քուրտերը իրենց ազգին գերագոյն բարիքը ըմբռնելէ հեռու էին, եւ իշխանութեան հետամուտ կ'ըլլային միայն կեղեքումի նպատակով եւ կը մաքառէին իրարու հետ իրարու վրայ իշխելու համար, սոսկ անձնական շահախնդրութեամբ։ Հետեւաբար կռիւը տեւական էր։ Այդ կռիւները ոչ վերջնական յաղթութիւն եւ ոչ պարտութիւն ունէին եւ ոչ խաղաղութեան դաշինք, հետեւաբար կը շարունակուէին միշտ արիւնահեղութիւնները, սուրը եւ կրակը, երբեմն ստիպեալ զինադադար կ'ընէին եւ այսպէս շարունակաբար՝ իրենց երբեմն սուր ու երբեմն բութ վիճակով կը շարունակէին կռիւները (Յ. Տահիպազեան, *Քիւրտօ-Հայ Պատմութիւն*, էջ 78)։ Իսկ թուրքերը կ'օգտագործէին անոնց այս ներքին պայքարները, զորս երբեմն իրենք ալ կ'արծարծէին գրգռելով զանոնք իրարու դէմ որպէսզի ուժաթափ ընէին զանոնք։

Ասով հանդերձ ԺԸ. դարուն, հինգ մեծ իշխանութիւններու միջեւ բաժնուած էր Քիւրտիստանը, ըստ Հ. Մօրիցիօ Կարզոնիի, որ Հռոմէն ղրկուած էր քուրտերու մէջ եւ հոն 18 տարիներ բնակած էր։

Այս կաթոլիկ առաքեալը, որ լեզուն ալ ուսումնասիրած է, եւ ունի 1787ին Հռոմ տպուած գիրք մը (Grammatica e vocabulareo della lingua Kurde, composti del P. Maurizio Garzoni), եւ Ռիթթեր, իր Աշխարհագրութեան մէջ (Թ. հատոր էջ 628 եւ 630), կը հաստատեն թէ արդարեւ ԺԸ. դարուն Քիւրտիստանի մէջ գոյութիւն ունէին հինգ մեծ քուրտ իշխանապետութիւններ, ամէն մէկը բազմաթիւ վասալներով։

Ասոնք էին,

1. ՊԻԹԼԻՍ կամ ԲԱՂԷՇ
2. ՃՈՒԼԱՄԵՐԿ
3. ԱՄԱՏԻՅԷ
4. ՃԷԶԻՐԷ
5. ՍԻՒԼԷՅՄԱՆԻՅԷ

Ասոնցմէ Պիթլիս կը գտնուէր կեդրոնական Հայաստանի մէջ, Հայկական բարձրաւանդակին սիրտին վրայ, իսկ Ճուլամերկի, Ամատիյէի եւ Ճէզիրէի իշխանութիւնները Հայաստանի եզերական գաւառներէն մէկ մասը նուաճած էին, հետեւաբար դարձեալ Հայաստանի հետ կապ ունէին, իսկ վերջինը՝ Սիւլէյմանիյէ բոլորովին կապ չունէր, բուն Քիւրտիստանի մէջ գտնուելով։

Իտրիսի ջանքերը Քիւրտերը վրաբնակ (*կէօչէր էվլի*) վիճակէն հանելու եւ հաստատաբնակ դարձնելու համար, միայն մասնակի յաջողութիւններ ունեցան, եւ Քիւրտերը միշտ երկուքի բաժնուած մնացին, եւ իրենցմէ շատ կարեւոր մաս մը շարունակեց նախնական ժողովուրդներու վրանաբնակ եւ վաչկատուն կեանքը։

Վրանաբնակները կը կոչուէին իրենց ցեղերուն անունովը, եւ հաստատուն բնակութիւն ունեցողներուն անունները սովորաբար առնուած էին իրենց բնակած վայրերէն։

Հայաստանի մէջ քուրտերը երկու գլխաւոր շրջանակ կազմած էին, իրենցմէ անուններ դնելով անոնց։

Անոնք, Պայազիտ— Ալաշկերտ շրջանը կը կոչէին *Սիլիվան* եւ հոն բնակողները *Սիլվանցի* (տես. Ինճիճեան, Ա. էջ 52) իսկ Բաղէշ, Մուշ, Սասուն եւ այլ շրջանակը, կը կոչէին *Ռոշկան*, եւ բնակիչները *Ռոշկանցի*։

Անոնք գրեթէ Հայաստանի ամէն կողմերը տարածուած էին։

Ստեղծուած այս վիճակին բերմամբ, Հայաս-

(1) *Հ. Ինճիճեան*, (Աշխ. Ա. էջ 210—211) *այս բաժանումները կը հասցնէ անգամ մը* 35*ի և ուրիշ անգամ մը* 20*ի և կը յիշէ անոնց մէջ* 6-7 Հիւքիւմէթ, *այսինքն անկախ շրջանակներ։*

տանի մէջ ապրող Հայերուն ստուարագոյն մասը կ'ենթարկուէր անուանական կերպով Օսմանեան հպատակ ճանչցուելով հանդերձ, քրտական տիրապետութեան, եւ որովհետեւ մէկ կողմէն քրտական աւատականութիւնը գրեթէ տեւականօրէն ներքին պատերազմներու մէջ կը գտնուէր եւ միւս կողմէն թուրքերը իրենց պետութեան այս անկման մասերը նուաճելու համար անոնց դէմ կը կռուէին, հայաբնակ գաւառներու մէջ անփոփոխ կը մնար Հայոց ճակատագիրը, որ էր տրորուիլ պատերազմող կողմերուն ոտքերուն տակ:

Իսկ երբ Օսմ. պետութեան նուաճող բանակները յաջողեցան քուրտ մեծ իշխանութիւններուն վերջ տալ, քուրտ ցեղապետերը յայտնի իշխելէ դադրեցան, սակայն անոնք վարեցին դաւադրական գաղտնի իշխանութիւն մը, միայն պարագաները ներած ատեն երեւան գալով, իսկ անկայուն ժամանակներու մէջ իբր աւազակ կեղեքելով խաղաղ, աշխատունակ եւ շինարար ժողովուրդը:

Այսպէս է որ քուրտ այս ու այն պէյական իշխանութիւնը կը ջնջուէր տեղ մը եւ ծնունդ կ'առնէր ուրիշ տեղ մը, բայց ան միշտ կը մնար իբր տիրապետող, միայն թէ հին ժամանակներու մեծ միութիւնները կը ջնջուէին եւ կը մնային փոքր բէկեր, իրարմէ անջատ եւ միութենէ զուրկ:

Օսմ. կառավարութիւնը յաջողեցաւ այսպէս տկարացնել քուրտերը, եւ զանոնք պզտիկ ոյժերու վերածելէ վերջ. գործիք բրաւ եւ իր նպատակներուն ծառայեցուց: Մասնաւորապէս այդ երեւոյթը շեշտուեցաւ, երբ ԺԹ. դարուն կէսէն վերջ թուրք եւ Հայ յարաբերութիւնները ցրտացան, Հայոց անկախութեան ձգտումներ ցոյց տալուն հետեւանօք:

Թուրք կառավարութիւնը, որուն սիրական միջոցը եղած էր, ջարդերով եւ անհիտմամբ պատժել ըմբոստները, Հայերն ալ նոյն վիճակին ենթարկելու համար սկսաւ գրգռել Հայոց դէմ եւ տգէտ ու անհեռատես քուրտերը՝ գործիք եղաւ թուրք կառավարութեան դժոխային ծրագիրին:

Անկէ առաջ բաւական տարբեր էր վիճակը: Համբարձում Երամեան, որ իբր Վանեցի իրազեկ էր Հայաստանի կացութեան կը գրէ թէ, *«իրաւ է որ քուրդ ցեղապետներէն շատեր, յաճախ իրարու դէմ կռուի բռնուելու պարագային՝ յաղթողը պարտուողին հպատակները, քուրդ կամ քրիստոնեայ, անխտիր կը կողոպտէր, ու երբեմն կ'սպաննէր իսկ: Սակայն պէտք է գիտնալ նաեւ որ մէն մի ցեղապետ կամ աւատապետ զօրեղ բազուկով կը պաշտպանէր ու կը նպաստաւորէր իր հաւատարիմ ֆլան (Հայ) մինչեւ անգամ կառավարական զեղծարար պաշտօնեաներուն դէմ, մինչեւ շատ մօտիկ անցեալը..... 1830ական եւ 40ական թիւերուն քրտական կառավարութեան շրջանին՝ Էլ-Աղասիներու կամ պէկերու ձեռքին տակ գտնուած Հայերէն շատեր անոնց խորհրդականի կամ օգնականի սերտ կապեր ունեցած են եւ շատ ապահով ապրած, օրինակ հռչակաւոր Պէտերխան պէկի վարչութեան տակ, որուն հրամանատարը Միր-Մարտօ (իշխան Մարտիրոս) Պաշգալեցի էր եւ շատ խորհրդականներ Հայ են եղեր: Հետագային գիւղացիները իրարու կ'ըսեն եղեր* «Պետերխանի *օրերը կ'ապրինք որ գիշերները դուռներդ բաց ու եզներդ կալին մէջ թողած կը քնանաս անփոյթ»:*

*Պէտերխանի գլխաւոր աջակիցը Խան Մահմուտ, 1840ական թուականներուն, ժամանակ մը Վան քաղաքը կառավարած է եղեր քանի մը տասնեակ քուրդ ոստիկաններով միայն եւ ինչպէս Պէտերխանի նոյնպէս եւ Խան Մահմուտի դատարանները, առանց երկար ձգձգումներու, Սողոմոնեան իմաստութեամբ արդար վճիռներ կ'արձակեն եղեր»* (Արեւ *թ.* 1852, 27 *Մարտ* 1925):

Որչափ ատեն որ քուրտերը կը վայելէին ինքնավարութիւններ, առհասարակ Հայերը ոեւէ կերպով լեզու կը գտնէին անոնց հետ վարուելու: Քուրտերը լաւ ըմբռնած էին Հայ գործող ձեռքերուն իրենց համար ունեցած կարեւորութիւնը, եւ անոնց հետ համերաշխ գործելու անհրաժեշտութիւնը:

Փոխադարձաբար Հայերու մէջ ալ գտնուած են մարդիկ որ Հայ եւ քուրտ համերաշխութեան մը օգուտը ըմբռնած են:

Բայց ինչպէս քուրտերու մէջ գտնուած են անձեր որ թուրք կառավարութենէն խաբուած եւ անոր ձեռքը գործիք եղած են, չըմբռնելով իրենց ցեղապետներէն ոմանց նախատեսութիւնը թէ թուրքը կ'ուզէր Հայերը բնաջնջել քուրտերու ձեռքով, որպէսզի վերջն ալ քուրտերը բնաջնջէր, նոյնպէս նաեւ մեր մէջ գտնուած են մարդիկ որոնք քուրտերու դէմ բողոքելով, դժգոհելով եւ թուրք կառավարութիւնը գըրգռելով քուրտին դէմ, քուրտը թուրքին ծոցը նետած են:

Սուլթան Համիտ, քաղաքագիտութեամբ, կրցաւ օգտագործել Հայ եւ քուրտ ատելութիւնը, եւ Հայերը բնաջնջելու իր ծրագիրին ծառայացնել քուրտերը, անոնցմէ կազմելով իբր մնայուն միլիս, Համիտիյէ զօրագունդերը, ռուսական Կոզակ զինուորներուն նմանութեամբ, ինչ որ մեծ աղէտ մը եղաւ: Հայաստան սկսաւ դատարկանալ Հայերէ, վասնզի անոնք սպառեցան տեղւոյն վրայ, կարմիր եւ սպիտակ ջարդերով կամ հեռաւոր երկիր ապաստանելով:

Մինչ անկէ առաջ քուրտերը իրենց անկախ շրջաններուն մէջ, Հայ տարրին օգնութեամբ, կը կառավարէին երկիրը (1). վայրենիներու նախնական մտայնութեամբ, եւ թէպէտեւ վայրագ ու աւազակային հակումներ ունէին, սակայն օր մը երէ քաղաքակրթուէին, կրնային ապահովել Հայոց բարօրութիւնը եւ Հայ եւ Քուրտ պետութեան մը ծնունդ տալ:

Օսմ. պետութիւնը Չալտրանի ճակատամարտէն (1514) սկսեալ, շատ փորձեր ըրած է քուրտ բռնակալ պէկերու իշխանութիւնները ընկնելու համար, սակայն չէ յաջողած:

Ամենէն լուրջ ձեռնարկը բրաւ Օսմ. կայսրութեան բարեկարգութեան նախանձախնդիր մեծ Սուլթանը՝ Մահմուտ Բ. Ատիլ (Արդար) որ Ենիչէրիները ջնջած տարին (1826) իսկ, սկսաւ քուրտերը նուաճել:

Առաջին նուաճուող քուրտը եղաւ Րէվէտուզ

(1) Լէօ (Հայոց Պատմութիւն, Գ. էջ 735) *դիտել կուտայ թէ քուրտերու զինագործները գրեթէ միայն Հայերն էին: Անոնք նոյնիսկ թնդանօթներ կը շինէին, բայց, իրենք զէնք կրելու իրաւունք չունէին:*

բէկ, որ ներում ստացաւ եւ իր ցեղակիցներուն դէմ կռուեցաւ թուրք բանակներուն հետ:

Քուրտերու դէմ զսպողական միջոցներու կիրարկութիւնը աւելի քան 10 տարի տեւեց, եւ 1847ին էր որ վերջապէս նուաճուեցան քուրտերը:

Դժբախտաբար Հայաստանը հիւծող եւ բոլորովին անէացնող քուրտ տգէտ եւ անգիր ժողովուրդին պատմութիւնը ներկայացնել եւ տալ ամբողջական գաղափար մը այն ինքնավար իշխանութիւններու վրայ, զորս անոնք կազմած էին Հայաստանի մէջ, գրեթէ անկարելի է:

Հետեւաբար պիտի բաւականանամ տալով ընդհանուր ծանօթութիւններ, քուրտերու կատարած դերին մասին Հայաստանի մէջ եւ տեղեկութիւններ մի քանի քրտական իշխանութիւններու վրայ որ տեւականութիւն ունեցած են:

## 1. ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔՈՒՐՏ ԱՒԱՏԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## (ՊԻԹԼԻՍԻ ԿԱՄ ԲԱՂԷՇԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆ)

Հ. Մորիցիօ Կարզոնի կրօնաւորը, ԺԸ. դարուն երկրորդ կիսուն Հայաստանը ցոյց կուտար բաժնուած հինգ մեծ իշխանապետութիւններու միջեւ, որոնց առաջինն էր Պիթլիսինը, որ աւելի յարմար պիտի ըլլար կոչել կեդրոնական Հայաստանի աւատապետութիւն:

Ասիկա քրտական ինքնավար կամ անկախ իշխաններուն կարեւորագոյնն էր, որ բաւական կարեւոր անցեալ մը ունեցած էր արդէն մինչեւ Հ. Մորիցիօ Կարզոնիի ժամանակը:

Ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 75 եւ 360) ԺԵ. դարուն Հայաստանի մէջ կազմուած թուրքմէն Գարագոյունլու կամ Եուսուֆեան իշխանութիւնը ստորադաս ունէր քուրտ էմիր մը Բաղէշ գաւառին մէջ:

Լէնկ Թիմուրի արշաւանքին ատեն Բաղէշի Շարաֆ Ամիրան հպատակութիւն յայտնեց Էօզպէկ Թաթար աշխարհակալին (*Թովմա Մեծոփեցի*, էջ 28 եւ վերը, էջ 360) բայց իր մահէն վերջ իր եղբայրը՝ Իպրահիմ, որ իրեն յաջորդած էր, ըմբոստացաւ Թիմուր Լէնկի որդւոյն՝ Միրան Շահի դէմ (վերը, էջ 360) եւ գերի բռնուելով գլխատուեցաւ եւ իրեն յաջորդ նշանակուեցաւ Ամիր Շէրէֆին փոքր որդին՝ Շամշատինը որ Լէնկ Թիմուրի մահէն վերջ հնազանդեցաւ Գարա Եուսուֆ Թուրքմէնին երբ ան Դամասկոսէն գալով իր նախկին իշխանութիւնը վերահաստատեց (*Մեծոփեցի*, էջ 70), եւ 1408ին նոյնիսկ անոր հետ գործակցեցաւ (*Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. էջ 495):

Եուսուֆի որդին կատաղի Իսկէնտէր (1421—1437), 1423ին խլաթը կը պահանջէ Շամշատինէն որ իր փեսան էր: Շամշատին կը մերժէ եւ ասոր համար կը գլխատուի (*Մեծոփեցի*, էջ 83–84):

Շամշատինի յաջորդները չեն յիշուած, բայց յայտնի է որ իշխանութիւնը շարունակուած է եւ Պիթլիս եղած է քրտական մեծ կեդրոն մը: Իսկէնտէրի պատերազմներուն հետեւանօք տիրող տեւական անապահովութեան պատճառով երբ 1431ին Հայաստանի մէջ սոսկալի սով մը պատահեցաւ, Վանի լիճին շուրջի բնակիչները դիմեցին Երզնկա, Խարբերդ, Ամիթ, Արզն եւ Չմշկածագ (*Մեծոփեցի*, էջ 95), իսկ անոնք որ *«անտերունչ մնացին մեռանէին խաստակութենէ սովոյն, եւ ոմանք գնացեալ խառնեցան ի Քուրդն Բաղիշոյ, Մշոյ եւ Սասնոյ վասն աղքատութեան եւ սովոյն դառնութեան ելեալ ի հաւատոյ դարձան յանհաւատութիւն աւելի քան զհինգ հարիւր ոգի»* (*Մեծոփեցի*, էջ 95):

Կ'երեւի թէ Բաղէշի մէջ համեմատաբար անդորրութիւն կը տիրէր, վասնզի 1436ին Թովմաս Մեծոփեցի կը պատմէ թէ քրտական ապստամբութիւններէն խուսափելու համար Բաղէշ ապաստանողներ եղած են (*նոյն.* էջ 108–109):

Ուրեմն ինչպէս Իսկէնտէրի ժամանակ նոյնպէս նաեւ անկէ վերջ այս իշխանութիւնը շարունակուած է, քուրտի մը իշխանութեան տակ:

Այսպէս, այս քրտական հարստութեան համար աւանդական դարձած Ամիր Շարաֆ անունով Բաղէշի ամիրայի մը յիշատակութեան կը հանդիպինք 1463ին (տես. *Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. հտ. էջ 497) որուն կամ անոր յաջորդին էր որ հանդիպեցաւ թերեւս Կատարինօ Զենօ, որ 1471–1474ին անցած է Հայաստանէն:

Ան քուրտերը կը ներկայացնէ անկախ ժողովուրդ մը *«որոնք մասամբ կը կառավարուէին Պիթլիսի իշխանին կողմէ, որ մի քանի տարի յետոյ տեսնելով Ուզուն Հասանի (1468—1478) մեծութիւնը, հպատակեցաւ անոր»* (Յովհ. Յակոբեան, *Ուղեգրութիւններ* Ա. հտ. էջ 154):

Լինչ իր Armenia-ին մէջ (Բ. հտ. էջ 145—159) Բաղէշի վրայ խօսած ատեն կը շեշտէ թէ ԺԶ. դարուն սկիզբը քուրտ մըն էր Պիթլիսի իշխողը Շահին անուանական հպատակութեան տակ:

Այս քուրտը ճամբորդ մը կը կոչէ Սարազ (1) պէկ *«այդ վաղնջական արկածախնդիրներուն բարբառով»*։ Այս ճամբորդը կ'ըսէ թէ այս աւատական փոքրիկ վեհապետը գրաւած էր բերդը, անոր լայնատարած շրջաբակովը, բարձր որմերովը, աշտարակներովը եւ աշտարակներովը (տես. The Travels of a Marchant in Persia, էջ 157—8)։

Արդարեւ կը յիշատակուի որ Պիթլիսի իշխող Շէրէֆ, պարսկական գերիշխանութիւնը ընդունած ըլլալուն համար, 1531ին (հիճրէթին 932) Թահմազ Շահէն (1525–1575) ստացած էր *խան* տիտղոսը, որ իր յաջորդներն ալ կիրարկած են, մինչ միւս քուրտ իշխողները *պէկ* կը կոչուէին:

Հայաստանի տիրապետութեան համար, ինչպէս յայտնի է, Սէֆեանք եւ Օսմանեանք իրարու հետ մաքառեցան, երկար ատեն: Այդ պայքարին մէջ երկու կողմն ալ հետամուտ եղած են իրենց կողմը ունենալու երկիրին բնիկ իշխանները որոնք աւատական դրութեամբ կը կառավարէին դեռ երկիրը եւ ոյժ մը կը ներկայացնէին:

(1) *Հաւանօրէն Շարաֆ կամ Շէրիֆ պիտի ըլլայ։*

Ասոնք ընդհանրապէս քուրտերն էին, որոնք զինեալ էին եւ ունէին իշխաններ, իբր ցեղապետ կամ իբր տիրապետ զանազան վայրերու: Այս պզտիկ ոյժերը որուք երկու երկու մեծ ոյժերու բախման վայրին վրայ կը գտնուէին, տկարներու յատուկ վարանումներով երկու կողմերուն միջեւ տատանած եւ մէկ կողմէն միւս կողմը անցած են:

Սուլթան Սէլիմ Եաւուզ 1514ին Չալտըրանի ճակատամարտով, վճռական յաղթանակ մը տարաւ եւ մինչեւ Դաւրէժ առաջանալով բովանդակ Հայաստանի տիրեց, բայց իր մահէն (1520) վերջ, Շահ Իսմայիլի յաջորդը Թահմազ Շահ, Օսմանցիներէն վերագրաւելու աշխատեցաւ Սուլթան Սէլիմի գրաւած հողերը:

Առաջին առթիւ գրաւեց Դաւրէժը, որ իբր Պէյլէրպէյի պաշտօնի կոչեց Ուլամի անուն քուրտ մը, որ ինչպէս Յովհաննէս քհն. Արճիշեցի կը նկարագրէ 1531ին, «*ինքնագլուխ դարձաւ ի Թաւրէզ եւ շատ չարիք գործեաց, ճանապարհորդ կոտորեաց եւ թալանեաց եւ բազում մեծունեայք տուգանեաց զի շահ Դահման* (Թահմազ) *իԽօրասան էր եւ ինքն էր Բէկլարբէկի, երբ լսեց զգալ շահին փախուստ առաւ եւ ամրացաւ իդղեակն Վանայ եւ ձեռք ձգեց իփաթշահին Հռոմոց* (1) *թէ ես քեզ հնազանդ եմ եւ դու ծառայ ղաբուլ անես. շուտ հեծեալ ուղարկես որ զբերդս պահէ եւ ես գամ իքոյ ծառայութիւնդ: Զօր լուեալ խոնդքարն յոյժ ուրախացաւ, և առաքեաց բազում Եէգիչարի, եւ շատ խալաթ Ուլամին. Եւ իբրեւ հասան իՎանայ դաշտն իգեօղն որ ասի Արտամետ, ելեալ զոռզաբար գնաց իդէմ հեծելին եւ խալաթին: Դարձոյց Աստուած զսիրտս իւր հեծելին որ իբերդին, յիշիցեն զաղ ու հացն շահին, եւ փակեցին զդուռն բերդին իդէմ Ուլամին եւ նորին չար խորհուրդ խափանեցաւ, զի այն էր միտքն՝ որ զէնգիչարիքն իբերդն դնէր եւ ինքն զծովու բոլորս թալանէր եւ գերի վարէր եւ քաջութեամբ իխոնդքարն գնէր: Երբ զայն տեսան զօրք Հռոմոց՝ որ ամէն բան Ուլամին սուտ եղեւ առեալ զնա իբրեւ գերի եւ տարան իխոնդաքարն եւ նա սակաւ մի ընդունեց եւ զշահի բանն հարցաւ, թէ ո՞նց գնանք իվերայ նորա։ Եւ նա չարախօսեց զամիր Շարաֆն* (2) *թէ ամէն չարութիւն ինմանէ է։ Եւ նա տուեալ վաթսուն հազար հեծեալ՝ որ եկեալ պաշարեաց զդղեակն Բաղիշու. երբ իմացաւ Ամիր Շարաֆն զբերդն ամրացոյց. թողեալ իմէջ զորդի Շխամիրն, եւ ինքն գնաց իԹավրէզ մօտ իշահին, եւ զանգատ արար յՈւլամիցն, եւ ելեալ շահն երթայր իվերայ: Նա լուեալ զգալն նորին փախաւ իԴիարբէկն ու շահն իՍլաթայ իյետ դարձաւ եւ դարձեալ շինուեցաւ Բաղէշ, Մուշ եւ Խըլաթ, զի լուան զգալն Ուլամին եւ ամենքեան ցրուեցան ու դարձեալ ժողովեցան եւ էր թուական ՋՁԱ.* (=1532)» (*Դիւան Հայոց Պատմութեան, Ժ.* 19—21):

1533ին, նոյն գրիչը կը պատմէ թէ Ուլամին Խիզանէն բանակով մը կ'երթայ Ամիր Շարաֆին վրայ եւ կը պատերազմի Տանկոյ դաշտը: Ամիր Շարաֆ կ'սպաննուի, եւ զօրքը կը ցրուի: Ուլամին զանոնք կը հետապնդէ մինչեւ Խլաթ եւ սաստիկ վրէժխնդրութիւն ցոյց կուտայ, նախորդ տարին անոնց Շէրէֆին հետ պարսից կողմը անցնելու համար:

Նոյնպէս անակնկալ կը յարձակի Վանի վրայ եւ քաղաքին շրջակայքը կ'աւերէ եւ կը գերէ, սակայն երբ Դաւրէժէն պարսիկ զօրք կուգայ Ուլամին Վանը կը ձգէ, կը փախի Տիարպէքիր, լքելով նաեւ Վանայ ծովուն շուրջը կողոպտելու ծրագիրը։

Ուլամի թելադրութեամբ Սուլթանը 1534ին կը գրաւէ կրկին Դաւրէժը. եւ Ուլամին կը վերահաստատէ իր պաշտօնին մէջ եւ ինքն կ'երթայ Պաղտատը գրաւելու։

Շահ Թահմազ, որ չէր համարձակած Սուլթան Սիւլէյմանի դէմ պատերազմելու, անոր հեռանալը լսելով, Խորասանէն Դաւրէժի վրայ կուգայ: Ուլամին կը փախի Վան: Բայց որովհետեւ Թահմազ կը հետապնդէ զայն, Ուլամին կ'ապաստանի Վանայ բերդը եւ Թահմազ կը պաշարէ քաղաքը: Թահմազ հարկադրելու համար անձնատուութեան, շատ անգթութեամբ վարուեցաւ, աւերեց Վանը, Ոստանը եւ Ամուկը, եւ ջարդեց 15,000 մարդ (Յովհաննէս քհ. Արճիշեցի, *նոյն.* հմմտ. *Հայապատում,* էջ 591, Լէօ. Գ. 184):

Սուլթան Սիւլէյման երբ իմացաւ ասիկա Պաղտատէն դարձաւ կրկին Դաւրէժ եւ պարտաւորեց Շահը, որ լքէ Վանի բերդին պաշարումը եւ հեռանայ:

Ժամանակի մը համար կռիւը դադրեցաւ եւ Վանի լիճին շուրջ բոլորը մնաց թուրքերուն ձեռքը:

Սուլթան Սիւլէյման Քանունի Վանի նոր փաշա մը նշանակեց բայց քաղաքը այնքան աւերուած էր եւ դատարկացած որ փաշան ձգեց հեռացաւ (Լէօ. Գ. 186), եւ Սիւլէյման՝ Ուլամին հոն հաստատեց, սակայն անիկա կրկին փախաւ երբ Թահմազ Շահ Վանի վրայ քալեց: Շահ Թահմազ «*տեսաւ զբերդն անմարդաբնակ, եւ զքաղաքն աւերեալ՝ խիստ ուրախացաւ իբերդին անկռիւ առնուլն եւ դառն տրտմեցաւ իվերայ աշխարհի աւերմանն. երդուաւ թէ յօրէս իյետ Վանայ շաղաւաթ* (*շնորհ*) *առնեմ, թէ զիմ որդին են սպաներ՝ այլ բան չեմ ասեր. Խուդէն վկայ*»: *Ապա լսեց թէ խոնդքարն զՈւլումէն երեք փաշայով իյետ դարձոյց իՎանայ բերդըն, գիշերով իլղար գնաց մինչեւ իԿապոյտ Կողն՝ Ուլամէն փախաւ զերեք փաշէն հեծելովն ջարդեց եւ դարձաւ իՎան, եւ եկեալ իյԱրճէշ, տեսաւ զի Իբրահիմ Փաչէն* (3) *եւ Մահմադ Սօլթան իյետ էին դարձեր, զԱրճիշու բերդի թուանգչիքն հաներ ու զժողովուրդն սուրգուն արեր մինչեւ յԱրծկէս: Եւ դարձեալ քրիստոնէութիւն արար էն օրհնեալ փաշէն, ու զամէն ազատ արար որ եկին յաշխարհն*

(1) *Թուրքերու Սուլթանին՝ Սուլէյմանի վրայ է խօսքը:*

(2) *Բաղէշի իշխողը:*

(3) *Իպրահիմ փաշա Սուլթան Սիւլէյման Քանունիի մեծ վեզիրն էր, յունածին, կարող եւ ազդեցիկ անձ մը:*

*իւրեանց, եւ ինքն առաւ զխոնդքարն գնաց իԴիարբէկն։ Եւ շահ Դահման առաւ զիւր եղբայրն, եւ զՄանթաշայ Սօլթան՝ որ իյԱրճիշոյ կողմեր դէմ Հոռոմոց թագաւորին գնաց զՄարուսուն թալանեց, զԽլաթ, զՄուշ եւ դարձեալ իյՕստան, ինքս գնաց իԹավրէզ։ Եւ մնաց սահրատ (սահմա) իծեռն Հոռոմոց զօրացն Բաղդատ Արծկէ, եւ Աղթամար»*: (Յովհաննէս Քհն. Արճիշեցի, *Դիւան Հայոց Պատմութեան, Ժ.* 27—28):

Այսպէս Բաղէշ ենթարկուեցաւ Օսմ. տիրապետութեան, եւ Ուլամիի տրուեցաւ անոր իշխանութիւնը, քանի որ հին բնիկ իշխանը՝ պարսից կողմը անցած էր:

Ուլումին նաեւ քուրտ էր, բայց Պարսկաստանի շրջանէն:

Բաղէշի քուրտ իշխանութիւնը իր անկախութիւնը մասամբ կորսնցուց, եւ Թուրքերը հոն թա փանցեցին, եւ աշխատեցան ամրապնդել իրենց իշխանութիւնը: Անոնք Բաղէշի քուրտ իշխանութիւնը Վանի թուրք կուսակալին ստորադասեցին (Ինճիճեան, *Աշխ.* էջ 136), թէեւ փաշան ոչ մէկ իշխանութիւն ունէր Բաղէշի վրայ, եւ չէր կրնար ոչ *միւպաշիր* եւ ոչ *միւթէսէլլիմ* ղրկել:

Բաղէշի խաները ազատ էին արքունի հարկերէն եւ տուրքերէն, միայն քրիստոնեաներու գլխահարկը պէտք էր տային Վանայ Ղուլին, այսինքն Վանի բերդապահ մշտակայ զօրքերուն:

Այս ապահովութիւնը շնորհուած էր որպէսզի անոնք ազատ թողուն կարաւաններու եւ ճամբորդներու երթեւեկութիւնը եւ իրենք չվնասեն եւ ուրիշներու ալ թոյլ չտան վնասելու:

Խուսրէվ փաշա (1) միակ թուրք փաշան է որ կրցած է Բաղէշի մէջ շինարարութիւններ կատարել (Ինճիճեան, *Աշխ.* Ա. էջ 173) եւ 1572ին Ռահվա հովիտին մէջ, որ վտանգաւոր անցք մըն էր, շինած է երկու ընդարձակ իջեւաններ եւ մենարան մը, բաղնիք, մզկիթ եւ հեռու տեղէ ջուր բերած (*նոյն.* էջ 176—177):

Ամէն պարագայի մէջ եթէ ԺԶ. դարուն վերջերը, Բաղէշ ժամանակի մը համար նուաճուած ալ է, քիչ վերջը իր անկախութիւնը վերստին գտած է ինչպէս կը հասկցուի Երուսաղէմի վանքը պահուած եւ 1601ին Խիզանի մէջ գրուած Շարականի մը ընդարձակ յիշատակարանէն (Ձեռագիր թ. 1663) որ անտիպ է որչափ կը կարծեմ: Ան կը պատմէ թէ նոյն տարին ինչպէս Վանի փաշան փորձած է վերստին նուաճել Բաղէշը:

Յիշատակագրողը յայտնելէ վերջ թէ *«բազում մարտ եւ պատերազմ է իմէջ աշխարհիս յամենայն տեղիս»*, կը յիշատակէ այդ պատերազմներէն մին որ Բաղէշի խանութեան պատմութեան համար շատ շահեկանութիւն ունենալով, հոս կ'արտագրեմ:

*«Յայսմ ամի ելեալ Ահմատ փաշէն իՎանայ բազում զօրօք, եւ եկեալ առ Շարաֆ խանն իԲաղէշ եւ կամէր գաղտածիգ նետիւք որսալ զնա եւ ոչ կարաց քանզի ետես զնա այլ աւելի յաղթող եւ զօրաւոր քան զինքն եւ ապա իչքմեղս եղեալ առեալ եւ տարաւ զնա իՀրզաւ քաղաքի կրկին զօրօք եւ անհուն հեծելովքն իբր զբարեկամ եւ զերախտաւոր առնուլ եւ տիրել աշխարհին այնորիկ եւ տալ Շարաֆ խանին եւ փեսային նորա Մահմատ բէկին, մինչ որ իմացեալ Միր Շարաֆն իՋըզիրու տէտէպ (?) Ասորեստան, եւ եկեալ նա այլ աւելի զօրօք եւ նստան ընդդէմ իրերաց բազում աւուրս եւ զխորհուրդ նոցա ոչ ոք գիտէր, բայց յետոյ յայտնեցաւ, որ Ահմատ փաշէն ու Միր Շարաֆն բացայայտեցին զիւրեանց խօսքն միմեանց եւ հնարիւք զՇատախ խանն եւ զիւր բէհէն սպանին եւ զզօրսն ամենայն փախստական արարին, եւ Միր Շարաֆն դարձաւ իտուն իւր բազում տեղիս աւերելով, եւ առ եւ աւար առնելով եւ զերկու եղբայրն իճանապարհին սպանեալ: Իսկ Ահմէտ փաշէն դարձաւ իԲաղէշ հանդարտութեամբ եւ եկեալ նստաւ իբերդն Բաղէշու, եւ տիրեալ, ամենայն զկին եւ զորդիս ընդ իւր եւ կացոյց, զորս տանջեաց իծառայից նոցա եւ զորս եսպան եւ զորս փախստական արար, մինչեւ որ հանեալ անթիւ խալինաս, բազում ոսկի եւ արծաթ, ակունս մեծագինս եւ մարգրիտս, ազգի ազգի. ջոհարիք եւ պատուական հանդերձք, որ ոչ կարեմ ընդ գրով արկանել: Եւ կեցեալ անդ ի Խոչի պահոցէն մինչեւ իմեծ պահոց միջինք եւ անթիւ վնաս եւ նեղութիւն հասոյց քաղաքին եւ երկրին ոչ սակաւ, եւս առաւել աղայից եւ մեծամեծ մարդկաց եւ զՇարաֆ հանի մեծ որդին զՇահ շադին խան եսպան եւ զայլքն թէ կին թէ որդի եւ թէ ծառայք յայտնի ընդ իւր առնելով զնոսա ելեալ իԲաղէշու եւ գնաց իՎան քաղաք, եւ ոչ ոք էր որ ընդդիմանայր նմա, եւ մնացեալ Բաղէշ քաղաք անտէր եւ անիշխան իբրեւ զորբ տղայս ցրուեալ եւ հեռացեալ բնակիչք նորա յամենայն տեղիս որպէս զծագ հաւուց, որ եւ աստ իքաղաքս Հիզան շատք եւ բազումք եկին յամենայն երկրէ եւ քաղաքէ, որ եւ եղեւ սղութիւն եւ պակասութիւն ամենայն իրաց, քանզի չափ ցորենոյն իԺԲ շահի եւ կորեկն եւ գարին Ե—Զ շահի եւ զառաջիկայն ոչ գիտեմք թէ որպէս լինելոց է...»*

Այս տողերէն կը հասկցուի թէ Վանի Ահմէտ փաշան 1601ին Կիզէրի Միր Շարաֆ իշխանին հետ դաւադրաբար սպաննած է Բաղէշի Շարաֆ խանը եւ անոր որդին Շահշարտինը եւ երկու եղբայրները, եւ կողոպտած է Բաղէշի խանին անբաւ հարստութիւնները վեց ամիս Բաղէշի մէջ մնալով եւ ապա անտէր ձգելով երկիրը դարձած է Վան:

Այս նուաճումը սակայն ժամանակաւոր եղած է վասնզի 1620ին դարձեալ Բաղէշի խանութիւնը վերակազմուած է: Թաւերնիյէ (1605—1689 +) Ֆրանսացին որ 1632ին, 1638—1642ին, 1643—1649ին, 1652—1656ին, 1657—1662ին եւ 1663—1658ին, վեց անգամ Արեւելքի մէջ ճամբորդած եւ Բաղէշ ալ այցելած է, մեծապէս տպաւորուած է Բաղէշի խանէն (հա-

(1) *1549ին Վանայ կուսակալ կարգուած այս անունով փաշա մը կը յիշուի* (Դիւան Հայոց Պատմութեան Ժ. էջ 203):

ւանօրէն Աւտալ) որ իր ուժին ցուցադրութիւնը բրած է այս օտար այցելուին:

Այդ պէյը, կրնար 20—25 հազար ձիաւոր զինուոր պատերազմի դաշտ հանել առանց հաշուելու իր մեծ թուով հետեւակազօրքը, որ *պայեա* կը կոչուէր եւ յաջողակ էր հրացանի գործածութեան մէջ: «*Ան կը բնակէր բերդին մէջ (1), ուր կարելի էր մտնել երեք յաջորդական շարժական կամուրջներով: Իր մասնաւոր յարկաբաժինը կը գտնուէր երեք սրահներէն վերջինին եւ ամենափոքրին մէջ, ուր այցելուն յոտնկայս կ'երթար ունկնդրութիւն ստանալու: Այս պէյը ո՛չ Թուրքիոյ Սուլթանը կը ճանչնար ոչ ալ Պարսից Շահը, որոնց երկուքն ալ զինքը կը փաղաքշէին, որովհետեւ իր քաղաքը ռազմագիտական արժէք ունէր, քանի որ Հալէպի եւ Դաւրէժի հաղորդակցութեանց գիծը կը կտրէր*»: (Les six voyages de Jean Baptiste Tavernier, en Turquie, en Perse եւ aux Indes, Paris. Ա. հտ. էջ 303):

Սակայն ինչպէս կը թուի ԺԷ. դարուն քուրտերու մէջ շարժում մը կար Օսմ. լուծը թօթափելու:

Այս պատճառով Բաղէշի Աւտալ խանը ըմբոստանալով չի վճարեր Վան զուլիներուն ռոճիկը եւ ինքը կը յափշտակէ քրիստոնէից գլխահարկը:

Երբ 1657ին Վանի կուսակալ նշանակուեցաւ նախկին մեծ եպարքոս Մէլէք Մահմուտ փաշան, զուլերը անոր դիմեցին իրենց ռոճիկին համար եւ 10 հազար ղրուշ ալ կաշառք տուին, որ փաշան երթայ Բաղէշի վրայ եւ զէնքով հարկադրէ Աւտալը, որ հպատակի Սուլթանին հրամանին: Փաշան, թէեւ երկչոտ, բայց կաշառքէն չզրկուելու համար ժողովեց քրտական ցեղերէ, նոյնիսկ նեստորական ասորիներէ, 12,000 հոգի եւ գնաց Բաղէշի վրայ: Աւտալ խանն ալ զօրք հաւաքեց քուրտերէն 8 հազար հոգի եւ պատրաստուեցաւ կռուի, բայց անոր զօրքերուն մէկ կարեւոր մասը ցրուեցաւ, իսկ մնացած փոքր մասը, որ կը բաղկանար Բաղէշի մշտական զօրքէն, պարտուեցաւ քաղաքին պարիսպներուն տակ տեղի ունեցած կռիւին մէջ: Աւտալ խանը փախաւ Մոտկանի լեռները, իսկ քաղաքը մատնուեցաւ անսանձելի դրութեան: «*Իսկ զօրք փաշային... մտին ի քաղաքն եւ յաւարի առին եւ կողոպտեցին զքրիստոնեայս, եւ սաստ էր տեսանել զաղաղակ եւ զողբն մեր, զի բազում սպանին, այսինքն քառասուն այր քրիստոնեայ սպանեն,... եւ զվանքս կողոպտեցին եւ զմեզ մերկացուցին, բայց ողորմութիւն Աստուծոյ եհաս, զի զպահարանն մեր ոչ գտին, ուր էաք եդեալ բազում Աստուածաշունչ գրեանս, եւ զսպաս եկեղեցւոյս*»: (Վարդան Բաղիշեցի, *Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. էջ 78):

Մէլէք Մահմուտ փաշան Բաղէշի քրտական իշխանապետութիւնը տուաւ փախստական Աւտալի որդւոյն՝ Դիատին բէկին եւ ինքը գնաց Վան: Մի քանի օր յետոյ Բաղէշի դարձաւ Աւտալ խան իբրեւ թէ իր որդւոյն հպատակելու համար: Բայց սպաննեց թէ՛ զայն եւ թէ՛ միւս որդին Նուրէտտինը, եւ ձեռք առաւ կառավարութիւնը, եւ նորէն քրիստոնեաներու գլխահարկը փոխանակ Վանի զուլերուն ուղարկելու՝ ինքն իւրացուց:

Դաւիթ Բաղիշեցի 1663ին կը գրէ թէ «*Այս ԹՎ. (43) ամ է՝ որ ամիրայ է Բաղշու քաղաքին եւ զանբաւ չարիս զոր անցուցանէ, ո՞կարէ ծրել իքարտիզի, զհարկապահանջութիւն, զկեղեքել, զծալանել, զտուգանսն, որ հասուցեալ է զմեզ իյետին չքաւորութիւն, զվարդապետք, զքահանայք, զեկեղեցիք, զվանքերն եւ զառհասարակ ժողովուրդ... Եւ այժմ վասն ծովացեալ մեղաց մերոց ի ներքոյ բազում եւ անտանելի հարկի եւ նեղութեան եմք ամէնքս, զոր տէր Աստուած այց արասցէ*»: (*Դիւան Հայոց Պատմ.* Ժ. էջ 53—54):

Թուրքերը միշտ աշխատած են ընկճելու Բաղէշի խաները եւ չեն յաջողած:

Յիշատակագիր մը կը յիշէ որ 1685ին Վանի կուսակալներէն Ալի փաշա գացած է Բաղէշի վրայ նուաճելու համար զայն, բայց պաշտօնանկ եղած է առանց նպատակին հասնելու (տես. *Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. հտ. էջ 111):

Այսպէս, շարունակուած է Բաղէշի խանութիւնը գրեթէ ամենազօր:

1685ին երբ Յիսուսեանք Պիթլիսի մէջ առաքելութիւն մը կը հաստատեն, սիրով կ'ընդունուին օրուան իշխողէն, որ անուանական կերպով կը հպատակէր Սուլթանին: Այդ հպատակութեան միակ նշանը այն պզտիկ նուէրն էր որ ամէն իշխան գահ բարձրացած ատեն ձեւի համար կու տար Բ. Դրան (Fleurian, Estat présent de l'Armenie, Paris 1694. ի Լինչի Armenia):

Իրապէս ԺԸ. դարուն սկիզբը, Բաղէշի քուրտ խանը ոչ միայն ունէր իրեն սեփական մօտաւորապէս 75,000 զօրք, այլ նոյնիսկ կը վայելէր դրամ հատանելու իրաւունք (Կ. Յ. Բասմաջեան. *Հայկական Ընդհանուր Դրամագիտութիւն*, 1936 Վենետիկ, էջ 119—120), ինչ որ անկախութեան նշան էր:

ԺԸ. դարուն Հ. Մօրիցիօ Կարզոնի, որ Հռոմի Բրոբականտայէն ղրկուած էր Քուրտիստան եւ 18 տարի հոն բնակած, կ'ըսէ թէ Պիթլիսի այս իշխանութիւնը մէկն է այն հինգ մեծ իշխանապետութիւններէն, որոնք այդ օրերուն Քուրտիստանը բաժնած էին իրենց միջեւ (Լինչ, Armenia):

Ամրտոլու վանքը որ Հայոց համար լուսաւորութեան կեդրոն մը եղած է այս իշխանութեան մայրաքաղաքին՝ Բաղէշի մէջ էր: Այդ դպրավանքին աշակերտներէն Յովհաննէս Կոլոտ, որ վերջը Պոլսոյ Պատրիարք եղաւ, այս իշխանութեան հպատակ Հայերու վիճակը շատ դառն կը պատկերացնէ:

Ան կ'ըսէ թէ «*զՄարաց* (քրտերու) *անգութ լինելն եւ զարիւն մեր ծծելն անասելի է... որք գիշատէին զմեզ, նեղէին եւ տառապէին իմայրիս եւ իծերպս վիմաց փաստական առնելով, մաշէին զմեր կեանս*» (*Գիրք պատմութեան երկրին Տարօ-*

(1) *Այս բերդը կը գտնուէր լերան մը գլուխը և ամրացուած էր թնդանօթներով: Բերդէն վար ճամբան շրջապատոյտ էր, վասնզի խիստ ուղղաբերձ էր եւ ամուր որձաքար:*

*նոյ, որ կոչի Զենոբ*, Կ. Պոլիս, 1719, Ցիցասակարան, հմմտ. Լէօ. Գ. 734):

Այս անկարգ, անկանոն եւ անկազմակերպ երկիրին մէջ ամէն այլանդակութիւն ներելի էր, քրիստոնեաները կողոպտելու համար։ Այսպէս 1705ին Բաղէշի *հաքիմը* (դատաւոր մոլլան) հրաման կը հանէ որ երբ քրիստոնեայ մը իսլամանայ, անոր ազգականներուն մէջ ով որ անչափահաս տղու զաւակ ունի, պէտք է տայ այդ կրօնափոխին: Այս դաժան որոշումը, որ մոլլան նուիրագործել տալու համար Վան կ'երթայ, բարեբախտաբար անգործադրելի կը մնայ, վասնզի Վանի Հայերը, Բաղէշի Հայերուն խնդրանքով մեծ կաշառքներ տալով, ջնջել կուտան այս օրէնքը եւ կ'ազատեն Բաղէշցիները զուլումէ մը (Լէօ. Գ. էջ 734):

Այս դժբախտ վիճակը հետեւանքն էր տիրող պայմաններու եւ քիւրտերու անհասկացողութեան, նոյնպէս այն իրողութեան, որ արտաքին սադրանքներով այս քիւրտ իշխանութիւնը դժբախտաբար հանդարտ եւ անդորր կեանք մը չէ ունեցած, նախառակ այն փափաքին որ քուրք կառավարութիւնը ունէր, որքան ննար է, պաշտպանելու այն առեւտրական ուղիները որոնք քուրք պետութեան անզօրութեան շնորհիւ աւազակներու որջ դարձած Բաղէշի խանութեան մէջէն կ'անցնէին:

Թուրքերը, շատ աշխատած են, ուղղակի կամ անուղղակի ամէն միջոց գործադրելով ընկճելու այս իշխանութիւնը, որուն վրայ ինչպէս տեսնուեցաւ Վանի փաշաները արշաւած, նոյնիսկ անոր տիրապետած են, սակայն քիչ վերջը վերստին այս իշխանութիւնը վերակազմուած է, վասնզի այս փաշաները աւելի կողոպուտին հետամուտ եղած են, քան թէ երկիրին խաղաղ բարիքին: Ցարութիւն Խալֆայեան իր ժամանակագրութեան մէջ *(Դիւան Հայոց Պատմ. Ժ.* հտ. էջ 132) կը պատմէ թէ 1732ին Վանի կուսակալ Մեծ Թամուր փաշան երթալով է *«ի վերայ Բաղիշու, զխանն փոխեաց, երեք մեծ ալայ սպան, ԲԱԶՈՒՄ ԳԱՆՁՍ ԷԱՌ եւ եկն դարձեալ ի Վան»*:

Այսպէս ընչաքաղցութիւնը թուրք պաշտօնատարներու քով կուտար որ այդ քիւրտ իշխանութիւնը ապրէր, բայց դժբախտաբար քիւրտերն ալ պէտք եղած խաղաղական հասունութիւնը չունէին, որպէսզի բոլորուէին այս իշխանութեան շուրջը եւ զայն զօրացնէին։

Ընդհակառակը իշխանութիւնը իրարու ձեռքէ կը յափշտակէին եւ թուրք կառավարութեան առջեւ կուտային որ ներքին կռիւներէն օգտուէր, երբեմն իր վեհապետական իրաւունքները հաստատելու համար զէնքով միջամտելով եւ երբեմն ալ քով տալով որ այդ իշխանութեան թեկնածուները իրարու հետ կռուելով իրար տկարացնէին։ Ասոր համար կը նանչնար իբր խան բոլոր անոնք որ խոշոր կաշառք կուտային: Այսպէս իշխանները իրարու չէին յաջորդեր որդւոց որդի օրինաւոր կերպով, այլ բռնութեամբ: Որդին հօրը եւ եղբայրը եղբօրը եւ ազգականներ ազգականներու դէմ կ'ելլէին խանութիւնը յափշտակելու համար: Կը բաւէր աղերսագիր մը տալ Սուլթանին եւ ընծաներ՝ Բ. Դրան, եւ ստանալ արքունի հրովարտակ եւ իր մարդերով իշխանութեան վրայ գտնուող խանին վրայ երթալ եւ տապալելով ինքն նստիլ տեղը, մինչեւ որ ուրիշ մըն ալ իրեն դէմ նոյնը ընէր:

Այսպէս, Բաղէշը իրարու ձեռքէ կը խլէին քիւրտերը: Իւրաքանչիւր զօրաւոր քիւրտ ցեղապետ, շախշախելով իր հակառակորդը ձեռք կը ձգէր խանութիւնը եւ անմիջապէս նոր հարկահանութեան կը ձեռնարկէր, իր ծախսածը առնելու համար:

Այս պատճառով, Հայ բնակչութիւնը զրկանքի եւ կեղեքումներու կ'ենթարկուէր շարունակ: Խաները ծանր տուրքեր կը դնէին մանաւանդ քաղաքացիներու վրայ, որոնք կը չարչարուէին եւ բանտ կը նետէին մինչեւ որ տուրքը առնէին: Նոյնիսկ քահանաները հարկ կուտային:

Բնակիչները երբ սահմանէն դուրս ելլէին, պէտք էր հոն ձգէին հարկին ընկալագիրը եւ 20 կամ 30 փարա տալով առնէին ազատութեան թուղթ եւ այնպէս դուրս երթային:

Օտարականներ, իրենց կարգին Բաղէշ մտած աեն պէտք էր վճարէին 60 կամ 80 փարա *խըլըա* կոչուած տուրքը:

Այս կողոպուտն էր միակ հրապոյրը խանութեան, զոր կը յափշտակէին նաեւ Բաղէշի խանութեան եւրոպայ ուրիշ խաներ ալ, ինչպէս պատահած է 1741ին, երբ Մուշի Ալայէտին պէյը, փորձած է Բաղէշի իշխանապետութիւնը ինքն յափշտակել, երկու անգամ երկիրը աւերի մատնելով:

Այս երկու պատերազմներու հետեւանքն եղաւ Հայ ազգաբնակչութեան չափազանց անոսրացումը: Բռնութիւններ եւ անվերջ կռիւներ հալումաշ ըրին Բաղէշի Հայ ժողովուրդը: Ան ջնջուեցաւ սովի ու սուրի հարուածներէն, փախաւ անտանելի հարկերէն եւ կեղեքումներէն: Բաղէշ քաղաքին 25,000 տուներէն մնաց 5,000, որոնցմէ միայն 1,500ը Հայու եւ 2—3 հարիւր Ասորիներու կը պատկանէր:

Գտարկ տուներու մէջ բնակութիւն հաստատեցին քիւրտերը:

Այլեւս տկարացած այս իշխանութիւնը հետզհետէ կորսնցուց եւ իր սահմանները սեղմուեցան: Մուշի բէկերը դարձան զերիշխան. մանաւանդ այն օրերուն որ հոն կը նստէր զօրաւոր ազա մը:

Այս անճարացումը կամ տկարացումը սակայն պատճառ եղաւ որ կրկին Վանի փաշաները հետամուտ ըլլան այս անգամ Մուշի իշխողներուն հետ Բաղէշը կողոպտելու: Դարձեալ Ցարութիւն Խալֆայեան *(Դիւան Հայոց Պատմութեան, Ժ.* հտ. էջ 144) կը պատմէ թէ 1778ին Վանեն Թամուր փաշա մը *«մեծ սափար արար վեր Բաղիշու, ուր հետն ունէր Մազատատ փաշայն Մշոյ, եւ գնաց անդ նստաւ աւուրս* 17, *երկիրն ամին ռայ եկին. Սքուլթ Բէկն որ իմէջ բերդին էր* 23 *քէսայ ըստակ տուաւ. ապա գաղտ իբերդէն փախաւ, եւ կալեալ ումն մեծամեծացն զէնջիլով* (շղթայ) *ի Մուշն առաքեաց, եւ զերկուսն սպան, եւ առեալ հարկս բազումս եւ մեծաւ յաղթութեամբ եւ փառօք եմուտ ի Վան»*:

Միւս նոյն պատմութիւնը, կողոպուտ, աւարառութիւն, եւ հարստահարութիւն, քիչ շատ անկախութիւնը պահած իշխանութեան մը դէմ, որ սակայն կրցած է տեւել մինչեւ ԺԹ. դարուն առաջին կէսը:

Պիրլիսի քիւրտ իշխաններուն վաղեմի ցեղին

վերջին շառաւիղը բազմակողմանի եւ աչքառու յատկութիւններ ունեցող մարդ մըն էր ըստ Լինչի: Այս քուրտ իշխանին անունն էր Շերիֆ պէյ: Անիկա շինած էր ամրացեալ պալատ մը այն բլուրներուն վրայ որոնք հովիտը արեւելեան կողմէն կ'եզերեն: Շերիֆ պէյ բաւական յաջողութեամբ թրքական իշխանութեան դէմ աղուեսանման դիմադրութիւն մը ցոյց տալէ ետք, վերջիվերջոյ յաղթահարուեցաւ Րէշիտ փաշայի արշաւանքին առջեւ եւ 1849ին գերի տարուեցաւ Պոլիս: Ինք եղաւ վերջին կէս-անկախ քուրտ իշխանը:

Այդ թուականէն վերջ Պիթլիս կառավարուեցաւ Պոլիսէն ղրկուած թուրք փաշաներով:

⁂

Կեդրոնական Հայաստանի մէջ հաստատուած Բաղէշի քուրտ իշխանապետութիւնը, կամ աւատապետութիւնը, բաւական ընդարձակ տարածութիւն մը ունէր, վասնզի կը պարունակէր Բաղէշի, Մուշի, Սասունի, Սուսանի, Զըսըրգանի, Խիզանի եւ այլ շրջանները, որոնք կը կոչուէին Ռօշկան եւ բնակիչները ռօշկանցիք կամ ռօշկցիք (Ինճիճեան, *Աշխ.* Ա. էջ 52):

Այս տարածութեան վրայ կը բնակէին զանազան քուրտ աշիրէթներ կամ ցեղախումբեր որոնք հաստատուն բնակութիւն ունէին եւ բոլոր այն շրջաններուն մէջ ուր բնակակից էին Հայերուն կը խօսէին նաեւ Հայերէն: Վրանաբնակները շատ քիչ էին այս շրջանին մէջ:

Բաղէշի խանը այսպէս աւատապետն էր ընդարձակ հողամասի մը որ Վանէն մինչեւ Տիարպէքիր կը տարածուէր: Այդ ընդարձակ տարածութեան վրայ գտնուող բոլոր քուրտ ցեղապետները եւ բէկերը իրեն կը հպատակէին:

Կապը որ քուրտ վասալը կը կապէր իշխանապետին կամ աւատապետին շատ ամուր չէր: Ինչպէս անուանական էր իշխանապետին հպատակութիւնը թուրք Սուլթանին կամ անոր ներկայացուցիչ Վանի փաշային նոյնպէս անուանական էր քուրտ զանազան ցեղապետներու եւ բէկերու հպատակութիւնը հանդէպ իշխանապետներուն, որոնք մեծ ազդեցութիւն մը չունէին իրենց ստորադասներուն վրայ, որոնք իրենց կարգին գրեթէ անկախ էին:

Նոյնիսկ անոնցմէ ոմանք կը յաւակնէին բոլորովին մերժել աւատապետին իշխանութիւնը կամ իրեն այդ դիրքը յափշտակել, ինչպէս պատահած է Բաղէշի իշխանապետութեան, որուն ստորադաս Մուշի քուրտ պէկերը, որոնք ոչ միայն շատ քիչ հնազանդած են Բաղէշի խանին այլ նոյնիսկ երբեմն յաջողած են գրաւել աւատապետի դիրքը եւ Բաղէշի խանը իրենց ստորադաս ընել:

Բաղէշի քուրտ իշխանապետութեան մաս կը կազմէին բազմաթիւ քուրտ իշխանութիւններ, որոնցմէ գլխաւորներն էին, Մուշ, Սասուն (1), Սուսան (2), Խիզան (3), Խզու կամ Հզու (4), Շիրուան (5), Կիզան (6), Խնուս, Թէքման, Վարդոյ եւ Կէօքսու (7), Խոյթ (8), Պուլանըգ (9), Խուլփ (10), Կինճ (11), Խլաթ (12), Արծկէ (13), Արճէշ (14) եւայլն որոնց իշխողները վասալներն էին Բաղէշի խանին, առաւել կամ նուազ հնազանդ իրենց աւատապետին:

Ասոնց մասին շատ քիչ տեղեկութիւններ կան, վասնզի շատ հաստատուն կեանք մըն ալ չեն ունեցած:

ՄՈՒՇ, ասոնցմէ ամէնէն նշանաւորն էր որ ինչպէս ըսի, գրեթէ բոլորովին անկախ էր: Ան կը գրաւէր նախնեաց Տարօնի գաւառէն աւելի ընդարձակ հողեր եւ կը տարածուէր դէպի հարաւ-արեւելք մինչեւ Բաղէշ եւ Գրգուռ լեռները, դէպի հիւսիս՝ Վարդոյ, Խնուս, Պուլանըգ, Մանազկերտ, Պինկէօլ եւ Քօսուրի լեռները, դէպի արեւմուտք՝ մինչեւ Ճապաղջուր, Խուլբ, Կինճ եւ դէպի հարաւ Շատախ:

Մուշի իշխանութիւնը կը բաժնուէր երկուքի, *Մուշ* եւ *Զուխուր* (Մշոյ դաշտ) որոնց երկուքին ալ հին ատենները Բաղէշի խանը կը ղրկէր երկու *միւթէսէլլիմ*ներ իր կողմէն, բայց ԺԸ. դարուն կէսէն վերջը Բաղէշի խանին իշխանութիւնը վերցաւ Մուշի եւ Զուխուրի վրայէն եւ Մուշի պէյին իշխանութեան տակ միացան ոչ միայն այդ երկու մասերը իրենց գիւղերով — ամէնքն ալ գրեթէ հայաբնակ — այլ նաեւ ուրիշ վայրեր:

Մուշի պէյը թէեւ անկախ, տարեկան տուրք կու տար Վանի զուլին Բաղէշի պէս, որով անուանապէս, Մուշը Վանի փաշայութեան մաս կը համարուէր:

Մուշի բնակիչները պէյին կու տային Սալիան կոչուած տուրքը:

Բոլոր կալուածները որոնք Սղերդէն կը բե-

(1) *Իբր Հայ անկախ համայնք ներկայացուած է (տես. վերը, էջ 434)։*

(2) *Սասնոյ արեւելեան կողմը լեռներուն մէջ. կը տարածուէր մինչեւ Տիգրիս. Բնակիչները կէս-իսլամ եւ աւելի Հայ. Արաբախօս էին. 5,000 զօրք ունէր պէյը: Բազմաթիւ ցեղեր կը բնակէին հոն: Պէյը փախցուցած են ժամանակ մը:*

(3) *Խիզան, երբեմն միայն Բաղէշի հպատակած է, աւելի Ճէզիրէի կը պատկանէր (տես. վերը, էջ 433):*

(4) *Սղերդի մօտ. Սասնոյ հարաւ-արեւելակողմը. Երկար ատեն հոն նստած է անկախ քուրտ պէյ մը. Այս հիւքիւմէթին պետը, միշտ պատերազմի մէջ էր Տիարպէքիրի փաշային հետ. Բնակչութիւնը կէսառկէս Հայ եւ քուրտ էր. Հայերը միեւնոյն տարազը կը հագնէին քուրտերուն հետ. Հայերը հոս հարկ չէին տար, եւ համարձակ պաշտամունք կը կատարէին. Հզու բերդաքաղաքը կը նստէր բէկը:*

(5) *Բաղէշի հարաւակողմը.*

(6) *Սղերդի գիւղերէն մին.*

(7) *Խնուս, Թէքման, Վարդոյ եւ Կէօքսու միացեալ կը կազմէին քուրտ իշխանութիւն մը, նախապէս Բաղէշի խանութեան ենթակայ. յետոյ Խնուս անցած է Էրզրումի կուսակալութեան. ԺԸ. դարուն հոն կ'իշխէր Լեզգի ընտանիք մը որդւոց որդի (Ինճիճեան, Աշխր. էջ 81).*

(8) *Բաղէշի արեւմտեան կողմը.*

(9) *Նախնեաց Հարք գաւառը որ երկու մաս ունէր Վերին եւ Ներքին Պուլանըխ. Կռուախնձոր եղած է շրջակայ իշխանութեանց միջեւ, ինչպէս պիտի տեսնուի.*

(10) *Տիարպէքիրի հիւսիսը եւ Մուշի եւ Սասունի արեւմուտքը.*

(11) *Նախորդին սահմանակից.*

(12) *Խլաթ կամ Ախլաթ Վանայ ծովու եզերքը.*

(13) *Արծկէ կամ Ատիլճէվազ » » »*

(14) *Արճէշ » » »*

րէին խանիլէ, եւ Պաղտատէն, Մուսուլէն եւ այլ տեղերէ ապրանքներ, եւ Մուշէն կ'անցնէին, պարտաւոր էին *տաղմա* կոչուած մաքսը վճարել։ Նոյնպէս Մշոյ Ս. Կարապետի ուխտաւորները որոնք փաշայութեան սահմաններէն դուրս վայրերէ կուգային, պէտք էր պէյին տային հինգ հինգ ղօլաթայ, զոր կը կոչէին *թօփրաք պասար*: Այս տուրքը նախ շատ քիչ էր սակայն ԺԸ. դարուն աւելցաւ:

Մուշի պէյը կը զինուորագրէր նաեւ Ճազունցի եւ Հավուքցի եզիտի քուրտեր, որոնց թիւը Մուշի մէջ կը հասնէր 1,000 տունի: Անոնց ձիերը Հայ բնակիչները ձրի կը կերակրէին:

Մուշի պէյերուն մէջ նշանաւոր եղած է Ալայէտտին կամ Ալատին պէյը որուն պապենական տունը 2—3 դար առաջ կը նստէր Զրիք, Մոկունայ բերդերուն մէջ՝ Մուշէն կէս ժամ հեռու, առաջինը դէպի հիւսիս, երկրորդը դէպի արեւելք (Յակոբ Տահպազեան *Քիւրտօ-Հայ Պատմութիւն*, 1911 Պոլիս էջ 78): Ալատին պէյի նախնիքը Մուսուլի կողմերէն գաղթած քուրտեր էին որոնք եկած խառնուած են Պլեուցի քուրտ ցեղին եւ հետզհետէ զօրանալով Մշոյ քաղաքին ու դաշտին տէր եղած են, Բաղէշի խանին հրամանով (*Լումայ*, 1897, Բ. գիրք էջ 126): Այս տունը դաշնակցած Պարխոյի Տիատի եւ Պոհտանի Պետրխանի պետերուն հետ Հեքեարի պէյերուն դէմ կը պատերազմի Պէտվերու մօտ, Արկօլ լեռը: Կը հաւաքուին մինչեւ 60,000 կռուող (Յակոբ Տահպազեան, *նոյն*.)։ ԺԸ. դարուն կիսուն Ալատին պէյ այնքան զօրացաւ եւ ազդեցութիւն ձեռք բերաւ որ ինքն աւելի զերիշխան եղաւ քան Բաղէշի խանը, զոր ըստ կամս պաշտօնի կը կոչէր կամ պաշտօնանկ կ'ընէր: Ըստ ոմանց նոյնիսկ գրաւած էր Բաղէշը (*Լումայ*, 1897, Բ. գիրք, էջ 126):

Ալատին ունէր մեծ հարստութիւն եւ կառուցած էր Լեզի եւ Մանրվանից մօտ Արածանիի եզերքը գտնուող Ոսպնբլուրի (*Մերճիմէք գալէսի*) բերդը, եւ կազմակերպած զինուորական մեծ ոյժ մը, 70,000 զինուորով։ Յետոյ սկսած էր բռնանալ Բաղէշի խանին վրայ որ միայն 25,000 զօրք ունէր:

Այսպէս, երեւան եկած էր քրտական նոր եւ ահաւոր բռնապետութիւն մը որուն կամաց կամաց հպատակած են շրջակայ պէյերը բաւական մաքառելէ եւ Պոլիս բողոքներ հասցնելէ վերջ: Սուլթանը տեղեկանալով կատարուած բողոքներէն, Ալատինի արարքները հրամայեց Էրզրումի Իպրահիմ եւ Պայազիտի Մահմուտ փաշաներուն, երթալ Մուշ եւ սպանել Ալատին պէյը: Ասոնք իրենց հետ առնելով Մանազկերտի, Խնուսի, Քղիի պէկերը, 1747ին, 24,000 զօրքով, եկան բանակեցան Մուշի առջեւ, պարբերաբար յարձակելով: Մի քանի անյաջող ընդհարումներէ ետք, անոնք վերջապէս յաջողեցան յաղթել եւ փախցնել հզօր պէկը, որուն բանակին մէջ միայն 3,000 զինուոր մնացած էր վասնզի շատերը Օսմ. Սուլթանին վրիժառութենէն սարսափելով, դասալիք եղած էին:

Թէեւ քաղաքին մեծամեծները եւ դատաւորները միասին գացին Օսմ. բանակ եւ իրենց անմեղութիւնը հաւաստեցին եւ գանգատեցան Ալատին պէյի բռնութիւններէն, ասով հանդերձ պարտաւորուեցան 25,000 քսակ տուգանք վճարել իբր փրկանք գերի ինկածներուն համար:

Երկու թուրք փաշաները այս քուրտ իշխանութեան ոյժը ջլատելու համար, գիւղերը հրկիզել տուին իրենց բոլոր պաշարներով եւ 25 օր Մուշի մէջ մնալէ վերջ մեկնեցան: Մուշի գաւառին բնակչութիւնը— մեծ մասամբ Հայ— այսպէս չարաչար կը տուժէր, առանց զոնէ երկիրին խաղաղեցումը տեսնելու:

Վեց ամիս չանցած Ալատին պէյ կը դառնար Մուշ եւ իր հին հողերուն կը տիրանար:

Էրզրումի Ջէքէճի փաշան 2–3 տարի վերջ, Պոլիսէն եկած հրամանի մը համաձայն կը յարձակէր Մուշի վրայ, եւ կը պաշարէր Ոսպնբլուրը (Մէրճիմէկ Գալէսի):

Ալատին պէյ իր նորաշէն պալատը եւ բոլոր գիւղաքաղաքը, որ բերդին նստոցը կը գտնուէր, կրակի տալով եւ 70 հոգի բերդին պահապան ձգելով կը փախի Կինճ։

Ջէքէճի փաշա երկար ատեն մեծ թնդանօթներով ռմբակոծելով չկրցաւ վնասել բերդին, եւ երբ Վանէն բերել սկսաւ ռմբաձիգներ եւ քանդիչ գործիքներ, բերդին պահապանները ապարդիւն համարելով կռիւը, յանձնեցին բերդը թուրք փաշային:

Ջէքէճի փաշա, անմիջապէս մշեցիներուն քակել տուաւ այս բերդը որ Բաղէշցի Հայ ճարտարապետ մը շինած էր եւ Մշեցի Հայ Բարօ անուն անձ մը՝ թնդանօթներով ամրացուցած:

Թէ որքան տարապահակ աշխատանք, եւ որքան ահագին զոհողութիւններ արժած էր բերդին կառուցումը Հայերուն, կը հասկցուի անկէ որ բերդը քանդելու համար պէտք եղաւ որ 15,000 հոգի աշխատին 40 օր (Ինճիճեան, *Աշխ*. Ա. էջ 193 եւ Լէօ. Գ. 734—5):

Տարի մը վերջը Ալատին պէյ կրկին Մուշ եկաւ եւ հանելով իր հրկիզուած ապարանքին մէջ թաղուած գանձը, նստաւ խաղաղութեամբ մինչեւ իր մահը, ինչպէս մակաբերաբար կը հասկցուի հրաժարելով Բաղէշի խաներէն գերազանցութիւնը խլելու յաւակնութենէն: Իրեն յաջորդեց իր որդին Մախսուտ պէյ (1), իսկ ասոր յաջորդեց իր որդին Մուրատ, որ Սուլթանէն փաշայութեան աստիճան ստացաւ 1784ին:

Ասկէ վերջն է որ Մուշի շրջանը կամ քուր-

(1) *Ասոր բարեկամն էր Մշոյ Գլակայ վանքին վանահայր Յովնան եպս. Կիպնէ գիւղացի, որ 1753ին, պաշտօնի ձեռնարկած է յաջորդելով Մինաս եպս. Ակնեցիի։ Այս Հայ եկեղեցականը որ Յովսէփ Էմինի կողմէ գովուած է, ահագին գումարներ տուած է Մախսուտ բէկին, որուն շնորհիւ իր պաշտօնը առած էր։ Ան մեծամեծ գումարներ ծախսած է ֆէրմաններ առնելու համար Մախսուտ բէկի համար: Այսպէս հրաման բերել տուած է բերդ շինելու և շինութեան անհրաժեշտ բոլոր ծախքերը ինքն հոգացած է։ Քանի մը անգամ փոխել տուած է— աւելորդ է ըսել կաշառքով — Բաղէշի խանը, որ թշնամի էր իր բարեկամին: Մախսուտի, ինչպէս տեսնուեցաւ: 1778ին յիշուած է փաշա տիտղոսով եւ Վանի կուսակալ Թամուր փաշայի հետ Բաղէշի վրայ գացած է (տես. վերը, էջ 444):*

տէրու Ռօշկան կոչած երկիրը թատերավայր եղաւ յուզումներու, վասնզի Շէյխ Ահմէտ Չիփլաք իր հարստահարութիւններով եւ աւազակութիւններով ահագին դրամ դիզած էր, եւ կ'ուզէր յափշտակել Ռօշկանի իշխանութիւնը Սելիմ փաշայէն, որուն դէմ ատելութիւն եւ թշնամութիւն ունէր:

Ուստի Շէյխը առնելով իր հետ դրամ եւ գեղեցիկ ձիեր, գնաց Էրզրում, եւ յաջողեցաւ ձեռք բերել Ռօշկանի կառավարչութիւնը ստանալով Սէյիտ Ահմէտ փաշա անունը:

Բայց որովհետեւ Սելիմ փաշա տեղի չտուաւ, Սէյտ Ահմէտ փաշա ըմբոստացաւ եւ բանակներ ղրկեց Էրզրումի, Պայազիտի եւ Վանի փաշաներուն դէմ եւ արշաւեց Սելիմ փաշայի դէմ, որ ամրացաւ Պիթլիսի մէջ, Սէյտ Ահմէտ փաշայի քուրտ զունդերը յարձակեցան Պիթլիսի վրայ եւ քաղաքը աւարի ենթարկեցին: Սելիմ փաշա, անկարող դիմադրելու լքեց Պիթլիսը եւ իրեն հետեւորդներով գնաց Սասունի կիրճը բռնեց: Սէյտ Ահմէտ փաշա դարձաւ Ռօշկաններու կառավարիչը եւ իրեն բնակավայր ըրաւ Մուշի մէջ պալատ մը ուր միայն երեք ամիս կրցաւ իշխանութիւն վարել, վասնզի Սելիմ փաշա, որուն ընտանիքը Մուշ կը գտնուէր, Սասունի կիրճէն յաջողեցաւ լուր հասցնել իր քրոջ՝ Սուլթան Խանըմի որ զինքը փրկէ։ Ան Միսօ անուն Հայու մը միջոցաւ վառօդով օդը հանել տուաւ Սէյտ Ահմէտ փաշայի ապարանքը եւ զայն սպաննեց:

Սելիմ փաշա վերստանձնեց *Ռօշկանի* կառավարչութիւնը, իսկ Սէյտ Ահմէտ փաշայի երկու որդիները, Շէյխ Մուհամմէտ բէկ եւ Շէյխ Մուսթաֆա բէկ, գրաւեցին Խլաթը (Ախլաթ), եւ ապստամբելով գործեցին սպանութիւններ եւ հարստահարութիւններ։ Շէյխ Մուհամմէտ առեւանգեց բաւական թիւով Հայ եւ մահմետական կիներ եւ իր ձեռքով սպաննեց Հայ եւ իսլամ 40 անձեր:

Սակայն անոնց իշխանութիւնն ալ երկար չտեւեց։ Երբ Պէտէրխան բէկի շարժման դէմ Օսմանեան պետութիւնը զսպողական միջոցներ ձեռք առաւ, Շէյխ Մուհամմէտ ծպտեալ փախաւ Պաղտատ, իսկ իր եղբայրը՝ Շէյխ Մուսթաֆա բռնուեցաւ Խան Մահմուտի հետ եւ աքսորուեցաւ Ռուսճուգ. (Յ. Տահպազեան, *Քիւրտօ-Հայ Պատմութիւն*, 1911 Պոլիս, էջ 76—78):

Իսկ Ալատինի սերունդը մնաց Մուշի մէջ իբր իշխող մինչեւ 1848: Վերջինը այս սերունդէն իշխողներուն եղած է Շէրիֆ պէյ (Լումայ, 1897, Բ. գիրք էջ 126):

## 2. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔՈՒՐՏ ԱՒԱՏԱՊԵՏՈՒԹԻՒՆ

## (ՀԵՔԵԱՐԻ ԿԱՄ ՃՈՒԼԱՄԵՐԿԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆ)

ԺԸ. դարուն վերջերը, ինչպէս տեսնուեցաւ, Հ. Մօրիցիօ Կարզոնի Հայաստանը բաժնուած ցոյց կուտար հինգ մեծ քուրտ իշխանապետութեանց միջեւ, որոնցմէ մին էր ըստ իր բաժանումներուն Ճուլամերկ:

Այս բաւական ուշ ժամանակի բաժանումը իրական պատկերը ըլլալ չի թուիր, վասնզի ԺԵ. դարէն մինչեւ ԺԸ. դար, ծանր խառնակութիւններով լեցուն, բաւական երկար ժամանակ մը անցած էր, մինչեւ որ այդ բաժանումները ձեւաւորուած էին:

Վասպուրականի իրական նուաճումին Օսմանցիք ԺԶ. դարուն սկիզբէն ձեռնարկած էին եւ թուրք պետութեան համար այդ շրջանակը միշտ վտանգի տակ գտնուող սահմանագլուխ մը ներկայացուած է, ասոր համար Օսմ. պետութեան մէջ բացառիկ վիճակ մը ունեցած է Վանի նահանգը, որ ինչպէս տեսնուեցաւ արդէն, թուրք եւ պարսիկ 250 տարի տեւող պայքարին մէջ երկու պետութեանց միջեւ կռուախնձոր դարձած շրջաններէն մին եղած է։

Երկու պետութիւններն ալ սիրաշահիլ ուզած են երկիրին բնակչութիւնը, մասնաւորապէս անոր զէնք բռնող տարրը, որ քուրտն էր: Ասոր համար քուրտերը շփացած են եւ տեսակ մը ինքնիշխան վիճակ ունեցած են:

Հոն երեւան եկած են քուրտ իշխանութիւններ որոնք իրենցմէ ամէնէն ազդեցիկին հովանիին տակ կազմած են քրտական աւատապետութիւն մը որուն մէջ աւատապետի դերը մերթ վիճակուած է Ճուլամերկի, մերթ՝ Խօշապի եւ մերթ ուրիշ քուրտ իշխողի մը, ուստի յարմար է այս շրջանի իշխանապետութիւնը կոչել *Արեւելեան Հայաստանի քուրտ իշխանապետութիւն*:

Արդէն տեսնուեցաւ (տես. վերը, էջ 436—437) թէ քուրտերը ինչ դեր կատարեցին Սէֆեան Շահ Իսմայիլի (1499—1523) եւ Թահմազ Ա.ի (1523—1577) դէմ Սուլթան Սելիմի (1512—1520) եւ Սուլթան Սիւլէյման Գանունիի (1520—1566) մղած պատերազմներու մէջ, երկու մասի բաժնուելով:

Անոնցմէ ոմանք Մոլլա Իտրիսի քարոզչութիւններով յարեցան Օսմանցիներու եւ ոմանք մնացին հաւատարիմ պարսիկներու եւ իրարու դէմ ալ կռուեցան, մինչեւ որ Օսմանցիք 1514ին Չալտրանի յաղթանակէն վերջ տիրեցին Հայաստանի մեծագոյն մասին, եւ Մոլլա Իտրիսի կարգադրութիւններով անոնք կազմեցին քուրտ իշխանութիւններ:

Մոլլա Իտրիս ինչպէս տեսնուեցաւ, մասնաւոր կերպով աշխատեցաւ որ Պարսկաստանի եւ Վրաստանի սահմանագլուխին վրայ քուրտերը սահմանապահի դեր առնեն: Այսպէս անոնք դէպի հիւսիս տարածուեցան իրենց լեռներէն եւ հաստատուեցան այդ սահմանագլուխներուն վրայ:

Վան, պարսկական սահմանագլուխի վրայ գտնուող այդ ամուր վայրը, նկատուեցաւ կարեւոր զինուորական տեսակէտով: Եւ որպէսզի անոր պաշտպանութեան սրտանց աշխատին քուրտերը, Վանի կուսակալութիւնը, ինչպէս հին հայկական բացատրութեամբ սահմանապահ բդեշխութեան մը վերածուեցաւ եւ գրեթէ միշտ տրուեցաւ Վանեցի քուրտերու, որոնք բաւական ինքնիշխան կառավարութիւն մը ունեցած են: Իսկ կուսակալութեան ենթակայ գաւառներուն գլուխը կը գտնուէին քուրտ պէյեր, որոնք կը հպատակէին Վանի քուրտ փաշային, բացի Բաղէշի եւ Մուշի պէկերէն, որոնք ինչպէս տեսնուեցաւ միայն անուանական կերպով կը գտնուէին Վանի փաշային իշխանութեան տակ:

Վանի բացառիկ կարեւորութեան պատճառով Վանի բերդին պաշտպանութիւնը, քաղաքը 1548ին գրաւուելէն վերջ, յանձնուեցաւ վարձկան մնայուն թոշակաւոր զօրախումբի մը, որ Ենիչերիական հանգամանք ունէր եւ նոյնքան վտանգաւոր եղաւ թէ՛ պետութեան եւ թէ՛ նահանգին բնակչութեան համար:

Այս զօրագունդը որ «Գուլ» կը կոչուէր, հաստատած էր քաղաքը գրաւող Սուլթան Սիւլէյման Գանունի (1520—1566) 1533ին, իր պարսկական արշաւանքին ատեն: Վանի նշանաւոր աւազակապետներէն Ճամուզնի Օղլու Խալիլ աղա իր հետեւորդներով կը յարձակի Խոյ եւ Սալմաստ քաղաքներուն վրայ եւ այս կերպով Սուլթանին կ'օգնէ: Խալիլ պատերազմէն վերջը իր սպանած 1,000 պարսիկներուն գլուխները եւ իր սուրը Սուլթանին կը ներկայացնէ եւ կ'ստանայ առանձնաշնորհի Ֆէրմանի մը որով Խալիլ աղա եւ իր խումբը՝ «Սուլթան Գուլը» կը կոչուին, եւ արտօնութիւն կ'ստանան Պարսկաստանի սահմանէն մինչեւ Վան եւ Վանէն մինչեւ Եփրատ, բնակող քրիստոնեայ հպատակներէն անձ գլուխ երեք ղրուշ *խարաճ* առնել ամէն տարի:

Այս զօրագունդը որ յետոյ առաւ «Վան Գուլը» անունը, միացաւ Ենիչերիներուն եւ անոնց 31-րդ կաթսան կամ օճախը դարձաւ:

Այս գունդերը կը բաղկանային քուրտերէ եւ մաս մը Հայերէ (1): Ասոնք ապահովութիւն տալու համար Օսմ. կառավարութեան պատանդներ կը ձգէին Պոլսոյ մէջ։

Վանի փաշան Վանի-Գուլիներու յատկացուած տուրքէն զատ կը գանձէր *իմտատիէ* եւ *այլըգ* անունով տուրքեր:

Այս պատճառով *«միշտ մեծ հաստուցանէ մանաւանդ քրիստոնէից, զի ոչ պահանջէ յորոշեալ ժամանակին կամ ըստ որոշեալ հաշուին, որ է 100 ղրշ. ամսոյ յամիս բնակչաց Վանայ քաղաքին, այլ զայլըխն ողջոյն տարւոյն միանգամայն պահանջէ հարկանելով եւ տանջելով, պատճառս բերեալ թէ փոխանակ սակաւ առ սակաւ տալոյ, միանգամայն տայք եւ զերծանիք, իսկ յետ չորից կամ հնգից ամսոյ դարձեալ տանջել սկսանի՝ տալ զյետագայ տարւոյն տուրս յետ քանի մի ամսոյ՝ զմիւս յետագայ տարւոյն, եւ այսպէս զօրինաւոր տուրսն առիթ իւր առեալ, ժողովէ տուրս արտաքոյ օրիաց իվեր քան զկարողութիւն բնակչաց, մինչեւ անհնար լինել վճարելով»* (Ինճիճեան, *նոյն.* էջ 137):

Ինճիճեան (Ա. էջ 140), կ'ըսէ թէ Վան քաղաքի թուրք բնակիչները, որոնք շատ քիչ էին, «գրեալք» էին *«իզինուորութիւն յորդւոց յորդի, եւ կոչին ըստ տաճկաց գուլ, սոցա թիւ ըստ հին օրինաց պարտ է լինել 12, հազար։ Ամենեքին թոշակաւոր զինուորք, որք առնուն իթոշակ իւրեանց՝ այն է՝ եօլէֆէ՝ զհարկս առեալս իՀայոց: Իսկ իբերդի անդ ըստ հին օրինաց պարտին կալ հանապազ պահնակ զօրականք 1,500 հանդերձ բերդակալ իշխանաւն, բայց այժմ են անդ 100—150, զինուորք կամ Եէնիչէրիք, որոց թոշակ այլ է իբուն բնակչաց տաճկաց գրելոց իզինուորութիւն, եւ ոչ է իհարկաց Հայոց: Իմէջ բերդապահ զինուորացս են երկու գահերէցք, որք կոչեն սօլ աղասի. սաղ աղասի, այսպէս կոչեցան վասնզի առաջինն իշխէ ձախակողման երկրին եւ երկրորդն աջակողման»։*

Այս բերդապահ զինուորները, Վանի փաշային երբեմն կը հնազանդէին եւ երբեմն ոչ: Անոնք երբեմն նոյնիսկ կը մերժէին այդ փաշաները եւ ետ կը ղրկէին: Անոնք իրենց ռոճիկը, որ *օճաքլըք* կոչուած գաւառներէն կ'ստանային, նախանձախնդրութեամբ կը պահանջէին: Տեսնուեցաւ թէ ինչպէս Բաղէշի քուրտ պէյը Աւտալ երբ իրենց ռոճիկի յատկացուած դրամը չտուաւ, Գուլերը ճնշում բանեցուցին Վանի կուսակալ Մէլէք Մահմուտ փաշային վրայ որ պատերազմի անոր դէմ (տես. վերը, էջ 443): Նոյնպէս տեսնուեցաւ թէ Վանի փաշաները, յաճախ շրջակայ քուրտ բէկերը նուաճել կը փորձէին: Ուրեմն Վան, դարձաւ որքան սահմանապահ բանակի մը նոյնքան ալ քրտական ապստամբութիւններու դէմ գործադրուած զինուորական գործողութիւններու համար կեդրոն մը:

Հոն կը հաւաքուէին այն զօրերը, որոնք կը ղրկուէին Մանազկերտի, Խոշապի, Բաղէշի, Խիզանի վրայ։

Այսպէս ստեղծուեցաւ Վանի մէջ թրքական տարօրինակ վարչութիւն մը, ուր «զօրաւորագոյնին էր իրաւունքը»:

Այդ զօրաւորը երբեմն Վանի փաշան, երբեմն Վան-Գուլիներու պետերն էին (1) եւ երբեմն ալ Հայ ազդեցիկ մեծամեծները:

Հայերը դժբախտաբար հետզհետէ իրենց հեղինակութիւնը կորսնցուցին, մինչ առաջ կը ներկայացնէին նկատելի ոյժ մը: ԺԷ. դարուն կիսուն, երբ քուրտ Հիւսէյին աղա, Վանի մէջ ամենայն ինչ էր, եւ իր դէմ ելած էին Խոշապի Սիւլէյման քուրտ պէյը եւ Պոլսոյ կեդրոնական կառավարութիւնը, Հիւսէյին աղա դիմեց Ճուլամերկի եւ Շատախի տիրոջ Եզտին-Շէրի, ըսելով թէ Հայ իշխանները եւ Սիւլէյման պէյ իր թշնամիներն են. (Յակոբ Շահպազեան, *Քիւրտօ-Հայ Պատմութիւն*, էջ 69):

Եթէ Հայերը հնարիմացութիւններով կամ դրամին ուժով չչէզոքացնէին քուրտ կամ թուրք փաշաներու հրամանները, աւելի դառն պիտի ըլլար Հայոց կացութիւնը, վասն փաշաները անսանձ կը գործէին եւ անոնց քմահաճոյքը կը տիրապետէր:

(1) *Հայ Վան-Դուլիներու պետերէն կը յիշուէին Պօղոլեանները, Դարաալ-Ֆէրեանները, Թորամանեանք, և Պարոն Կարապետ մը որ նոյնիսկ մարդ կախելու իրաւունք ունէր։ Նոյնպէս կը պատմուի թէ Վանի բերդը մնացած էր Դանկովեաններու ձեռքը և Յովհաննէս Դանկովեան եղած է բերդապահ և միեւնոյն ատեն թնդանօթաձիգ և բերդին թնդանօթները և զէնքի պահեստը անոր իշխանութեան տակ եղած է, ինչպէս նաեւ բերդին բանալին* (Յակոբ Շահպազեան, Քիւրտօ-Հայ Պատմութիւն, *էջ* 72)։ *Տէր Բարսեղեանց ընտանիքն եղած էր բերդապահ եւ թնդանօթաձիգ* (Նոյն.):

(1) *Ասոնք երբեմն միասին ալ կը գործէին, այսպէս Յովհաննէս Արճիշեցիի*, Մեկնութիւն Պատարագի, *գործին (ձեռագիր թ. 1652 Երուսաղէմի) յիշատակարանին մէջ կ'ըսէ թէ* 1631*ին* «Վանայ Խուլու փաշէն գնացին ի Ղափանատուն, գերի բերին բազում կին եւ տղայ ի Վան, եւ զամենայն Վանայ մարդն գնեաց եւ յետս դարձոյց»:

Անոնք երբեմն յիմար որոշումներ կուտային որոնց ստիպուած էին համակերպիլ Վանի եւ շրջակայ բնակիչները:

Այսպէս, 1679ին փաշա մը կը հրամայէր որ Հայերը մորուք թողուն, 1680ին եւ 1687ին ուրիշ երկու փաշաներ կը հարկադրէին որ Հայերը փոխանակ փակեղի գդակ դնեն, եւ 1712ին ուրիշ մը կը հրամայէր որ քրիստոնեաները չհամարձակէին *«սպիտակ կապոց, դեղին սոլ եւ մըղս հագնիլ, ոչ թուր, թվանք, խանչալ, դանակ պահել եւ ոչ թամբով այարով ձի հեծնել եւ կամ գինով իշուկային շըրջիլ եւ ոչ տանէկին գինի տալ»* (հմմտ. Գարեգին վրդ. Սրուանձտեանց, *Մանանայ*, էջ 366, *Դիւան Հայոց Պատմութեան Ժ.* էջ 107, եւ 112, Լէօ. Գ. 732):

Բայց, ինչպէս կը թուի Վանի Հայերը, օգտուելով թուրքերուն այս սահմանագլուխին վրայ ունեցած անհաստատ վիճակէն,— հետեւանք պարսկական յարձակումներու եւ քուրտերու ապստամբութեան սպառնալիքներուն— անընկճելի կորովով իրենց գոյութիւնը պաշտպանած եւ երբեմն նոյնիսկ թուրք փաշաները ծունկի բերած են:

Կը յիշուի որ 1702ին Մուստաֆա փաշա սպանած է Զանգուլ անուն վաճառական Հայը, իբր սպանող կեղեքիչ Թօխմախ Միրաք անուն ռէսին, բայց երբ 1,500 Հայեր Էրզրում գացած են, անկէ Պոլիս Սուլթանին բողոքագիր ղրկելու համար, փաշան աղաչած պաղատած է որ Հայերը չընեն այդ բանը եւ զանոնք սիրաշահած է (*Մանանայ*, էջ 353—355):

Նոյնպէս երբ Օսման փաշա 1712ին, սաստիկ կը նեղէ Հայերը, տեղացի նշանաւոր հայ մը, Ախիջան աղա, Հայ համայնքէն ուրիշ ներկայացուցիչներուն հետ կ'երթայ Էրզրում, գանգատելու համար Սերասքեր (սպարապետ) փաշային, եւ այդ տեղէն ալ բողոքագիր կը ղրկէ Կ. Պոլիս: Սուլթանը կը հրամայէ այդ հարստահարիչ կուսակալը գլխատել (Լէօ. Գ. 733):

Վանի փաշաները, ինչպէս ըսուեցաւ, յաճախ քուրտերէն առնուած ըլլալով, իրենք ալ իրենց կարգին տեսակ մը աւատապետական իշխանութիւն ստեղծած են թրքական Հայաստանի Արեւելեան սահմանագլուխին վրայ, եւ իրենց ստորադաս քուրտ իշխանութիւններու վրայ ազդեցութիւն բանեցուցած են: Իրենց աւատապետութեան ենթակայ եղող գլխաւոր քուրտ իշխանութիւններն էին,

1. ԽՕՇԱՊ
2. ՃՈՒԼԱՄԵՐԿ ԿԱՄ ՀԷՔԵԱՐԻ
3. ՈՍՏԱՆ
4. ԲԵԿՐԻ

որոնց գործերուն խառնուած են անոնք եւ երբեմն ալ անոնց պետերը իշխանութենէ զրկուած եւ ուրիշներ անուանուած են եւ ասոր համար ներքին կռիւներ պատահած են։

Օսմ. կառավարութիւնը Վանի փաշաները ժամանակի ընթացքին, երբեմն, փոխանակ քուրտերու թուրքերէն առնել սկսաւ: Նոյնպէս Վանի բերդապահ զինուորութեան խառնուեցան թուրքեր որոնք յատկապէս բերուած էին:

Թուրքերը այս կերպով հետզհետէ իւրացուցին արեւելեան սահմանագլուխին կեդրոն դարձած Վանի վարչութիւնը, եւ քուրտերը անկէ դուրս մնացին եւ կերպով մը հակառակորդի դիրք բռնեցին Վանի կուսակալներուն հանդէպ:

Արդ, ինչինչ երեւոյթներէ մակաբերաբար կը հետեւի որ արեւելեան Հայաստանի քուրտ աւատապետութեան առաջին կայանը Վան եղած է եւ ապա ՃՈՒԼԱՄԵՐԿ կամ ՀԷՔԵԱՐԻ, ինչպէս Հ. Մորիցիօ Կարզոնի կը վկայէ:

Բայց, ինչպէս Բաղէշի խաները իրենց ստորադաս քուրտ պէյերէն իրենց դէմ ունէին Մուշի բէկերը, նոյնպէս նաեւ Վանի եւ Ճուլամերկի քուրտ աւատապետները իրենց մրցակից ունէին ԽՕՇԱՊԻ իշխողները, որով արեւելեան Հայաստանի քուրտ աւատապետութիւնը տեղէ տեղ փոխադրուած է:

## ա.) ՎԱՆԻ ՔՈՒՐՏ ԱՒԱՏԱՊԵՏՆԵՐ

Վան ԺԷ. դարուն ունեցած էր իր քուրտ կամ պարսիկ իշխողները, ինչպէս 1439ին կը յիշուին Ղլիճասլան Պարոն Վանայ եւ անոր որդին Սէյիտ Ղասումը (*Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. հտ. էջ 498) եւ 1484ին Շամիրամակերտի Պարոն Սիւլէյման բէկը (*Նոյն.*) եւ անոնց նման ուրիշներ:

Այս իշխանները հաւանօրէն շարունակած են իրենց տանուտիրական իշխանութիւնները:

Տեսնուեցաւ ատդէն թէ Սուլթան Սէլիմէն սկսեալ մինչեւ որոշ շրջան մը քուրտերը Հայաստանի մէջ շփացած տարր մըն էին եւ Վանի կուսակալութիւնը, 1558ին քաղաքը Սուլթան Սիւլէյմանէն գրաւուելէն վերջ, անոնց ձգուած էր, բոլոր իր ստորադրեալներով:

Քուրտերը սակայն յետոյ զգացին հետզհետէ իրենց սեղմուիլը եւ նուաճուիլը, եւ իրենց առանձնաշնորհներէն զրկուիլը, ուստի աշխատեցան թօթափել Օսմանեան լուծը, որով ԺԷ. դարուն երկիրին մէջ երեւան եկաւ շարժում մը, որուն արդիւնքը տեսնուեցաւ Բաղէշի մէջ Աւտալ խանի ցոյց տուած ըմբոստութեամբ (տես. վերը, 443)։

Վանի մէջ իշխանութեան երկուութիւն մը կար արդէն:

Կուսակալ եւ Վանի բերդապահ Վան-Գուլիներուն հրամանատար երկու ոյժեր էին որոնք յաճախ իրարու դէմ կը մաքառէին, ի շահ իրենց եւ ի վնաս տեղական բնակչութեան, որոնցմէ քուրտերը, իբր զինեալ ոյժ, իրենց առանձնաշնորհները պաշտպանելու հետամուտ էին եւ սկսած էին կազմել երրորդ ոյժ մը, որ յաջողեցաւ նոյնիսկ ամէնէն զօրաւորը հանդիսանալ:

Այս պատճառով ԺԷ. դարուն կէսերուն Վանի մէջ իշխան եւ հրամանատար կը գտնենք քուրտ Հիւսէյին աղա մը, որ իր իշխանութեան կ'ենթարկէ Վանի փաշան: Իրեն կը միանան նաեւ դատին (դատաւորը) եւ Եէնիչէրի աղասին, այսինքն զօրքին հրամանատարը: Ան կ'սպաննէ տասը մեծ պաշտօնատարներ որոնց մէջ էր Գուլար Աղասին, Վանի Դուլերուն հրամանատարը:

Այսպէս, ապստամբութեան դրօշ կը պարզէ, ուրիշ շատ մը քուրտ պէյերու պէս։

Սուլթանը Պոլիսէն նոր փաշա մը կը ղրկէ որպէսզի խաղաղեցնէ Վանը: Հիւսէյին աղա անոր թոյլ չի տար Վան մտնելու եւ ետ կը դարձնէ:

Սինան անուն Եէնիչէրին, Վանի բերդին վերի մասին կը տիրապետէ եւ հակառակորդը կը հանդիսանայ Հիւսէյին աղային որ կ'իշխէր բերդին ներքին մասին եւ անպարտելի կը մնար:

Անիկա կեդրոնին իրեն հանդէպ ձեռք առած միջոցներուն դէմ ինքզինքը պաշտպանելու համար, կը զինակցի Ճուլամերկի իշխող տան հետ խնամիանալով, սակայն Օսմանեան կառավարութիւնը յաջողելով անոր դէմ հանել Խօշապի իրեն վասալ քուրտ պէյը, զայն կը պարտաւորէ Վանէն փախելու Ճուլամերկ:

Ասով Վանը վերջնապէս չնուաճուեցաւ: Վանեցիք, կամ հոն ստեղծուած այլազան ոյժերը, շարունակ ըմբոստութիւններ կը յարուցանէին:

Ոչ շատ ետք Հիւսէյին աղայէն, 1678ին *«Բաքըր փաշան Վանայ յոյժ պատերազմեցաւ ընդ քաղաքացին եւ ոչ կարաց յաղթել. զի Ասլան աղան առեալ զզօրս իւր եւ ելեալ ամրացաւ իբերդն եւ ոչ յաղթեցաւ»* (տես. *Դիւան Հայոց Պատմութեան, Ժ.* հտ. էջ 107 եւ հմմտ. *նոյն.* էջ 125):

Ինչպէս կը հասկցուի քաղաքացիք է որ ըմբոստացած են եւ Ասլան աղա որ հաւանօրէն Վան Գուլիներու պետերէն էր, անոնց ոյժ տուած է եւ Պէքիր փաշա, մականուանեալ, *«Լէշկէր»* որ դաժան մէկն էր եւ կախած էր Խօճա Ալխաս անուն ազդեցիկ եւ բարերար մէկը, չէ կրցած զսպել ըմբոստները:

Հազիւ ինը տարի վերջը (1678). Վանի քաղաքացիները դարձեալ կ'ըմբոստանան: Յիշատակագիրը կ'ըսէ թէ *«զայայլի ղօղօլլի Մահմատ փաշան եկն իՎան, որոյ ընդդէմ ելին քաղաքացիքն եւ պատերազմեցան ընդ նմա եւ ո՛չ ետուն թոյլ մտանել իքաղաքն. մինչ զի թալանեցեն եւս զինքն իգիւղն Աւանց»*: Այս նուաստութեան ենթարկելէ վերջ իշխանաւորը զարմանալի է որ *«զկնի սակաւ աւուրց՝ դարձեալ գնացին ընդդէմ եւ մեծարանօք բերին իքաղաքն»* (*Դիւան. Ժ.* էջ 112)

Երկու օր վերջը 3 Սեպտեմբեր 1689ին, Ջամուշօղլին— հաւանօրէն քուրտ երեւելի մը— կ'սպանէ կուսակալ Հասան փաշան *«եւ այլք ընդ նմա»* (*Դիւան. Ժ.* էջ 113):

1691ին, թուրք կառավարութիւնը ուղղակի կեդրոնէն ղրկուած պաշտօնատարի մը ձեռամբ *խարաճ* կը հաւաքէ եւ թոյլ չի տար որ Վան-Գուլիները իրենք հաւաքեն (*Դիւան. Ժ.* էջ 114): Գուլերը, այս որոշման ենթադրեալ թելադրիչ Հայերը կախաղան կը հանեն վրէժխնդրութեան համար::

Ժամանակագիրներ կը յիշեն փաշաներ որոնք դրամ հասած են (տես. *Դիւան. Ժ.* էջ 115 եւ այլն)։ Յիշուած են նաեւ փաշաներ, զորս ժողովուրդը ինքն պաշտօնի կոչած է, առանց կեդրոնին հրամանին, այսպէս կը պատմուի թէ 1699ին *«Ջամուշզի Խալիլ աղայն եւ Նօհ աղայն առաքեցին իԽօշաբ եւ մեծանանօք կոչեցին զԻբրահիմ բէկն իպատիւ, որ էր տէր երկրին այնորիկ.»* (*Դիւան. Ժ.* էջ 118):

1717ին ապստամբութիւն մը եւս կը ծագի Վանի մէջ, քուրտ բէկերու իրարու դէմ մղած պայքարներուն եւ կռիւներուն հետեւանօք:

Կառավարութիւնը կ'ստիպուի ումբակոծել քաղաքին մի քանի մասերը, եւ յաղթելով ըմբոստներուն ապստամբութեան առաջնորդները կը գլխատէ: Սակայն հազիւ այս ապստամբութիւնը զսպուած Վան կրկին կ'ապստամբի եւ պէտք կ'ըլլայ կրկին զայն նուաճել։ Միջնաբերդին մէջ ամրացած ապստամբներուն դէմ կառավարական զօրքերը գործեցին թնդանօթներով: Մէկ գիշերուան մէջ, երկու կողմէն 500 անգամ թնդանօթ արձակուեցաւ: Ապստամբութիւնը դարձեալ ճնշուեցաւ եւ անոր ղեկավարները մահուամբ պատժուեցան:

Դրութիւնը այնքան խառնակ էր եւ վտանգաւոր, որ Ապտուլլահ փաշան, քրիստոնեաները ջարդուելու վտանգէն ազատելու համար զինաթափ ըրաւ բոլոր մահմետականները:

Սակայն, կրկին կիրքեր յուզուեցան ոչինչ պատճառով մը: Ապտուլլահ փաշա արտօներ էր Հայերուն լայնցնել Առաքելոց եկեղեցին դուռը: Բայց երբ ան հեռացաւ Վանէն, թուրք մոլեռանդ ամբոխը գնաց Հայոց թաղը եւ քանդել տուաւ նորոգուած դուռը։ Հայոց առաջնորդը փախաւ, իսկ թուրքերը բռնեցին հինգ առաջնորդ Հայեր եւ բանտարկեցին: Հայերը ստիպուեցան կաշառք տալ: Եօթն եկեղեցիներ եօթն քսակ փող տուին, ապա միայն թոյլատուութիւն ստացան Առաքելոց եկեղեցիին հին դուռը բանալու:

Ապստամբական այս շարժումներուն հետեւանօք բացի այլեւայլ վնասներէն, հարկը բազմապատկուեցաւ: (Լէօ. Գ. 730—731)։

1720 ական թուականներու թուրք-պարսիկ պատերազմներու ատեն զօրքերու շարժման գլխաւոր կեդրոններէն մէկն էր Վանի նահանգը որ Նատիր Շահի բանակներէն քանի մը անգամ ոտնակոխ եղաւ։ Պատերազմները աւարտելէն վերջ Վան հին վիճակը առաւ եւ դարձեալ սովորաբար ապստամբական շարժումներ եղան: Գրեթէ ամէն տարի նոր փաշաներ կը ղրկուէին, որոնք կը կախէին թուրք եւ քուրտ ապըստամբները, բայց գրեթէ ոչ մէկ արդիւնքի կը հասնէին, ուստի անհրաժեշտ կ'ըլլար միշտ զօրքով կռուիլ, քաղաքին յամառութիւնը ընկճելու համար: Այս ընդհարումներու ժամանակ սարսափահար գիւղացի ազգաբնակութիւնը, կը փախչէր այս ու այն կողմ, ձգելով իր դաշտերն ու ցանքերը: Վանը միշտ դուրսէն եկողներուն դիմադրելու համար միայն զէնք չէր վերցներ: Ան կ'ունենար նաեւ ներքին, կուտ քաղաքային պատերազմներ՝ իշխանութիւնը ձեռքէ ձեռք խլելու համար (հմմտ. *Դիւան Հայոց Պատմութեան, Ժ.* հտ. էջ 133—134 եւ այլն):

Օրինակի համար Վանի Գուլը 25 Օգոստոս 1737ին կուսակալ Սէլիմ փաշան խայտառակաբար կը վանէ քաղաքէն (*Դիւան. Ժ.* էջ 134)։ 8 Ապրիլ 1798ին նոյն վիճակին կ'ենթարկէ նաեւ Մուսուլցի Հաճի Հիւսէյին փաշան (*Նոյն.*):

1741ին Ուզուչի Օղլու Օմար փաշան կուգայ Վան եւ հոն կը մնայ ուրիշ փաշայի մը՝ Մուրթազա փաշայի հետ: Օմար փաշա այնքան կը նեղէ Հայերը որ ազդեցիկ անձ մը՝ Ախիջան Ղարասէֆերեան էրզը-

րում Համալ Օղլու Սպարապետին կը դիմէ եւ անկէ Կ. Պոլիս Սուլթանին, եւ հրովարտակ կը բերէ Մուրթազա փաշային, Օմար փաշան մահուամբ պատժելու: Մուրթազա փաշա տհանութեամբ եւ դաւով կ'սպանէ զայն եւ գլուխը Էրզրում կը ղրկէ (*Դիւան.* Ժ. էջ 135):

1754ին Գուլը կռուեցաւ Կարսեցի Քէօր Եուսուֆ փաշայի հետ եւ զայն փախցուց (*Դիւան.* Ժ. էջ 137):

1755ին Գուրճի Հանի փաշան եկաւ մինչեւ Նորովանց բայց քաղաք չկրցաւ մտնել: Խաող աղա զինուորներով դիմադրեց եւ մեծ թուով մարդիկ մեռան: Յետոյ Եէնիչէրի Աղասին իր զունդերով Ճաող աղան տարին թշուառ փաշային մօտ, որ զայն աղային տուաւ եւ ինքն ալ պաշտօնանկ եղաւ եւ մեկնեցաւ 3,000 զօրքովը (*Դիւան.* Ժ. էջ 137) եւ այսպէս շատ ուրիշներ: Նոյնպէս, 1769ին սաստիկ խըռովութիւններ եւ կռիւներ սկսան Վանի մէջ վանքի Գուլերու պէտը մեռեր էր, եւ անոր յաջորդութեան համար կը կռուէին երկու հակառակորդ կուսակցութիւններու պարագլուխները: Խռովութիւնները եւ սպանութիւնները շարունակեցին մէկուկէս տարի, մինչեւ որ Էրզրումէն ղրկուած փաշա մը կըրցաւ քիչ շատ կարգը հաստատել քաղաքին մէջ: Բայց միշտ եռացող կաթսայ մըն էր Վան, ուր ո՛չ կեանքի, ո՛չ ինչքի եւ ո՛չ ալ պատիւի ապահովութիւն գոյութիւն ունէր։ Հարուստները կը կողոպտուէին շարունակ եւ երբեք իրենց կեանքը ապահով չէր: Խօճա Ալխիչան Գարասէֆէրեան որ երկար ատեն վաճառականապետը եղած էր Վանի փաշային (*Դիւան.* Ժ. էջ 148), 1797ին կողոպտուեցաւ։ 2 Ապրիլին Գարասէֆէրեաններու տունը այրեցին եւ 600 քսակ արժող ապրանք տունէն կողոպտեցին (*Նոյն.* էջ 150)։ Ալխիչան եւ իր եղբայրը՝ Յարութիւն, գացին Էրզրում եւ դիմեցին Քէօր Եուսուֆ փաշային որ եղելութիւնը հաղորդեց Կ. Պոլիս, ուրկէ յատուկ քննիչներ եկան, սակայն հազիւ մէկ քառասուներորդը կրցան ստանալ իրենց ապրանքին (*Դիւան.* Ժ. 150):

Գարասէֆէրեաններու հակառակորդ էր Վանի թուրք ընտանիքներու հնագոյնը՝ Զամուշչիք, որոնք մինչեւ վերջը ազդեցիկ եղած են (*Նոյն.*) սակայն ազատ չեն մնացած իրենց անօրինութեանց պատիժը կրելէ, շնորհիւ Գարասէֆէրեաններու որոնք յաջողած էին նոյնիսկ մահապատիժի ենթարկել տալ զանոնք:

Եւ ատոր վրէժն էր որ կը լուծէին Հիւսէյին եւ Խալիլ աղաները, որոնք սակայն քանի մը ամիս վերջը, Յունիս 15ին Վանէն կը փախէին, թերեւս Գարասէֆէրեաններու վրէժխնդրութենէն վախնալով:

Այն ատեն կուսակալ եղած էր Գուլերու երկու պետերէն (1) Էմին բէկը, որ Սաղ աղասին էր:

Ատոր դէմ Հայերը ի նշան բողոքի շուկաները փակեցին: Էմին փաշան բարկացած երկու անմեղ Հայեր կախաղան հանեց իբր գրգռիչ եւ 100 քսակէն աւելի ապրանք յափշտակեց (*Դիւան.* Ժ. էջ 150):

Այս էր սովորական կեանքը, մանաւանդ ԺԸ. դարուն ընթացքին, Վանի մէջ, ուր բնակչութիւնը ստիպուած էր համակերպիլ այս դաժան պայմաններուն, որոնք մինչեւ ԺԹ. դարու առաջին յիսնամեակին ալ տեւեցին, այսինքն մինչեւ այն ատեն ուր Սուլթան Մէճիտ յաջողեցաւ ընկճել քրտական այն մեծ ապստամբութիւնը որ *Թանզիմաթի* գործադրութեան դէմ Վան-Գուլիներու ընդդիմութենէն ծագեցաւ եւ մեծ ծաւալ ստացաւ:

1845ին Սուլթան Մէճիտ կայսրը *Թանզիմաթը* հաստատելու համար Վանի մէջ հոն կը ղրկէ Սըրրի փաշան, որուն կը դիմադրեն Վան-Գուլիները, եւ Թիմուրզատէ Մուսթաֆա պէյի գլխաւորութեամբ կ'ապստամբին:

Այս ապստամբութեան կ'աջակցի Խան Մահմուտ իր վեց եղբայրներով եւ Ճէզիրէի եւ Պոհտանի տէր Պէտերխան բէկ:

Անոնք կը ծրագրեն Քուրտիստանի մը կազմութիւնը Պէտերխանի գերագահութեան տակ աւատապետական կարգերով:

Այս պետութեան գլխաւոր վասալն էր Խան Մահմուտ, որուն իշխանութեան տակ պիտի ըլլային Ոստան, Գաւաշ, Շատախ, Մոկս, Հայոց Ձոր եւ Նորտուզ:

Վան՝ պիտի պատկանէր Մուսթաֆա պէյի, բայց ապստամբներուն կողմէ քաղաքը գրաւուելէն վերջ զայն կառավարեց Խան Մահմուտ, մինչեւ որ Ֆէրիք Ահմէտ փաշա 1 Յուլիս 1847ին Վան մտաւ եւ գերի վարեց Խան Մահմուտը:

Այդ թուականէն վերջն է որ Վան իրապէս ենթարկուեցաւ Օսմ. պետութեան:

## Բ.) ԽՕՇԱՊԻ ՔՈՒՐՏ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ (ՄԱՀՄՈՒՏԻՅԷ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ)

Խօշապի գաւառը կը գտնուէր ընդմէջ Վանի եւ Խոյի՝ Վանի հարաւ-արեւելեան կողմը:

Բնակչութեան ստուար մեծամասնութիւնը քուրտ էր:

Գաւառին կեդրոնավայրն էր համանուն Խօշապ բերդաքաղաքը, իսկ բէկը կը նստէր Մահմուտիյէ բերդին մէջ, որ ԺԵ. դարուն շինուած էր բարձր քարաժայռի մը վրայ:

Այս բերդաքաղաքին անունէն առնելով իշխող տունը եւ հիւքումէթը՝ այսինքն անկախ իշխանութիւնը, կոչուած է ՄԱՀՄՈՒՏԻՅԷ:

ԺԷ. դարուն կէսերուն Խօշապի կը տիրէր քուրտ Սիւլէյման բէկը, որուն իշխանութեան տակ կը գտնուէին գաւառական աւելի մանր իշխողներ, տալով այդ փոքրիկ երկրին աւանդական երկիրի բնորոշ կերպարանքը (Լէօ Գ. 311):

Այս Հիւքիւմէթը կը բռնէր Վանայ լիճին հարաւային ամբողջ լեռնաշխարհը, Ճուլամերկէն մինչեւ Բաղէշ, Մուշ, Տիարպէքիր:

Սիւլէյման բէկի ժամանակակից էր Ճուլա-

(1) *Գուլիները երկու պետ ունէին, Սաղ և Սոլ աղա անուններով, որոնք իրենց իրաւասութեան շրջանակները ունէին, քաղաքին աջ ու ձախ կողմերը տարածուած հողամասերու վրայ։*

մերկի «մեծ իշխան» կամ «պարոն» Եզտիշերը, որուն հրամանին տակ կը գտնուէին Շատախի եւ այլ շատ մը գաւառներու իշխողները, իսկ Վանի մէջ ամենազօր էր վերոյիշեալ Քուրտ Հիւսէյին աղան:

Սիւլէյման բէկը սովորութիւն դարձուցած էր կողոպտել Վանի եւ Դաւրէժի միջեւ երթեւեկող առեւտրական կարաւանները, որոնց բեռները բանալ կուտար եւ ինչ որ հաւնէր կ'իւրացնէր, չնչին գումար մը տալով տիրոջը, որպէսզի կարենայ ըսել թէ չի յափշտակեր այլ կը գնէ: Վնասուող առեւտրականները գանգատեցան Հիւսէյին աղային, որ փոխանցեց անոնց բողոքը Պոլիս եւ հրաման ստացաւ ետ առնելու Սիւլէյման բէկի յափշտակած ապրանքները եւ դարձնել տէրերուն։ Սիւլէյման բէկ մերժեց այդ հրամանին հնազանդիլ: Հիւսէյին աղան զէնքի դիմեց եւ սկսաւ Քուրտ ցեղամիջեան կռիւը:

Հիւսէյին աղային միացան Եզտիշերը, իրենց հպատակ Քուրտ բէկերու հետ: Խոշապի բերդը պաշարուեցաւ եւ բոլոր երկիրը աւերուեցաւ: Սիւլէյման բէկ, չկրնալով ետ մղել արշաւանքը, սկսաւ Եզտիշերին կաշառքներ տալ որպէսզի ան հեռացնէ Հիւսէյին աղան Խոշապէն: Այսպէս ալ եղաւ: Քրտական հրոսախումբերը ձգեցին պաշարումը եւ ցրուեցան իրենց տեղերը: Հիւսէյին աղան ալ դարձաւ Վան:

Սակայն հազիւ քանի մը օր անցած, Խոշապի մէջ երեւան եկաւ մարդ մը, որուն բոլոր ժամանակագիրները կուտան «պիղծ» յորջորջումը: Անիկա Զոմարն էր «*գոռոզ արիւնարբու եւ արիւնահեղ, յաղթող պատերազմող եւ անպարտելի ախոյեան*» ըստ Դաւրիժեցիի: Այս թուրք եւեսլի փաշան զանազան տեղեր կուսակալի պաշտօն վարած էր եւ ամէն տեղ սոսկում պատճառած էր, իր բռնութիւններով, հարըստահարութիւններով, եւ կեղեքումներով: Թուրք կառավարութիւնը չկրնալով հանդուրժել իր արարքներուն զայն կոչեց Պոլիս եւ պաշտօնազրկեց: Զոմար, հեռացաւ Պոլիսէն ապստամբելու նպատակով: Ան անցաւ Փոքր Ասիա, սրիկաներէն, գողերէն եւ աւազակներէն բաղկացած հրոսախումբ մը կազմեց եւ սկսաւ քալանել մարդիկը եւ կարաւանները:

Այնքան գործը մեծցաւ որ ընդհատուեցան բոլոր հաղորդակցութիւնները եւ երկիրը ահագին վնասներու ենթարկուեցաւ:

Սուլթան Մուհամմէտ Դ. (1648—1687) զօրք ղրկեց Զոմարին դէմ եւ ամէն տեղ հրաման ղրկեց կռուիլ անոր դէմ, բնաջնջելու համար զայն իր խումբով: Զոմար, կռուեցաւ անվեհեր, սակայն ի վերջոյ պարտուեցաւ եւ փախաւ մի քանի մարդով, եւ եկաւ Խոշապ, Սիւլէյման բէկի քով: Քուրտ իշխողը, սիրով ընդունեց զայն, միացաւ անոր, իր ժառանգութիւնը պահելու համար:

Վանի Հիւսէյին աղան ալ իր կարգին ինքն ալ ուզեց զօրաւոր դաշնակից մը փնտռել, ուստի խնամիացաւ Ճուլամերկի Քուրտ իշխող Եզիտիշերի հետ, իր եղբօր աղջիկը կնութեան տալով այդ "մեծ պարոնի"ն եղբօրը՝ Խալիլ փաշային։

Այսպէս, Հիւսէյին աղան շատ ուժեղացաւ Վանի մէջ, այնպէս որ տեղւոյն փաշան եւ զօրքերու հրամանատարները չէին համարձակիր առանց անոր թոյլտուութեան որեւէ բանէ ընել: Կեդրոնը անճար էր գրեթէ եւ Հիւսէյին կատարեալ տիրապէս քաղաքին: Անիկա փաշաները կը ճամբէր եւ նորերը չէր ընդունէր: Վանին մէջ կարգը հաստատելու համար կը ղրկուի Սինան անունով Ենիչէրի աղասի մը, որ կը հաստատուի միջնաբերդին մէջ եւ իր հրամանին տակ գտնուող Ենիչէրիներով կ'սկսի ռմբակոծել փաշային ապարանքը, ըսելով թէ թագաւորին հրամանին պէտք է հնազանդի: Միեւնոյն ատեն կը ռմբակոծէ Հիւսէյին աղային տունը, որպէսզի քաղաքէն հեռանայ: Փաշան եւ Աղան, վերջապէս կ'ստիպուին ձգել իրենց տուները եւ տեղափոխուիլ ուրիշ տեղեր, մինչ «*թօփն իվերին բերդէն հանապազ զներքին բերդն եւ զքաղաքն հեծէր եւ աւերէր*», (*Դաւրիժեցի*, էջ 389) տակաւին երկու ամիս:

Սինան, նաեւ իմաց տուաւ Սիւլէյման բէկին թէ ինքը հրաման ունի իրեն թշնամի Հիւսէյին աղայի դէմ:

Խոշապի տէրը որ այդպիսի առիթի մը կ'սպասէր, զօրահաւաք ընելով Զոմարին հետ արշաւեց Վանի վրայ, որպէսզի ձեռք ձգէ Հիւսէյին աղան, մանաւանդ որ լուր կար որ ան պիտի փախչէր Ճուլամերկի Եզտիշերին քով:

Սիւլէյման բէկը եւ Զոմարը այս արշաւանքի միջոցին, 1651ին, «*գնացին ի Վարագայ վանքն եւ զոր ինչ համբաւ յառաջմէ լուեալ էին զմեծահանդէս ուխտէն Վարագայ, այժմ աչօք տեսեալ եւ մտօք նկատեալ զննէին զամենայն եւ մտախոհ եղեալ խոկային, թէ այսպիսի հոյակապ եւ հռչակաւոր մեծաշէն վանից գոն բազմաժամանակեայ մթերեալ ինչք եւ ստացուածք, կահք եւ կարասիք պղնձեղինաց, արծաթեղինաց եւ ոսկեղինաց եւ արդ ժամ է մեզ զի ի ձեռս մեր գրաւեսցուք զամենայն*» (*Դաւրիժեցի*, էջ 385—386):

Եւ կը գործադրեն այս որոշումը վանականները ձերբակալելով եւ պահանջելով որ ցոյց տան վանքին հարստութեան թաքստոցը: Վանականները ամէն տանջանքի տոկալով ցոյց չտուին, սակայն Զոմար խուզարկութեամբ գտաւ (Լէօ. Գ. էջ 314, *Դարանաղցի*, էջ 387) եւ վանքին բոլոր հարստութիւնը՝ Վարագի հռչակաւոր խաչին կամ Ս. Նշանին հետ տարաւ Խոշապ, ուր Հոգւոց վանքը դրաւ այս սրբութիւնը զոր Քուրտերն ալ կը յարգէին:

Մարխաս Չէլէպի, 7,000 ղրշ. փրկանք առաջարկեց խաչին համար բայց մերժուեցաւ (*Դաւրիժեցի*, էջ 396):

Երբ Զոմար սպաննուեցաւ Ոստանի մօտ, զինուորներէն եւ Սիւլէյման բէկ դաւաճանութեամբ նոյնիսկ Քուրտ բէկերուն— որոնցմէ մէկը իր աները՝ Մուսթաֆա բէկն էր — եւ իշխանութիւնը անցաւ սպաննուածին եղբօրը՝ Իպրահիմ բէկին, կարելի եղաւ համոզել զայն որ Ս. Նշանը Վարագ դարձնէ 2,000 ղրշ. ստանալով (տես. Լէօ. Գ. 315. հմմտ. *Դաւրժեցի*, էջ 401).

Խոշապի Քուրտ անկախ իշխանութիւնը սակայն իր գոյութիւնը պահեց տակաւին երկար ատեն, եւ միշտ զբաղեցուց Վանի կուսակալները: Այսպէս, կը յիշատակուի որ ԺԷ. դարուն երկրորդ կէսին հոն կ'իշխէր «պարոն» Շէմսէտտին Մեզտին, զոր խաբէութեամբ իր քով կը բերէ 1683ին, Վանի կուսակալ Օմար

փաշան եւ կ'սպաննէ (*Դիւան Հայոց Պատմութեան*, *Ժ*. էջ 108—119, եւ 125)։ 1797—99ին Խօշապի մէջ կ'իշխէր իբր «պարոն» Քիւչուք Մուսթաֆա, որ այնքան նշանաւոր եղաւ որ 1699ին Սուլթանը խիլայով պատուեց զայն եւ հրամայեց զօրք հաւաքելով երթալ Պասրա։ Քիւչիւք Մուսթաֆա հոն սպաննուեցաւ (*Նոյն*. էջ 116)։

Իրեն կը յաջորդէ իբր տէր Խօշապի, Իպրահիմ բէկ որ որդին էր 1683ին սպաննուած Շէմսէտտին «պարոն»ին։ 1699ին Վանեցիք *«մեծարանօք»* կոչեցին այս Իպրահիմը Վանի կուսակալութեան (*Դիւան. Ժ*. էջ 118—119), զոր շատ կարճ ատէն վարեց, վասնզի յաջորդ տարին (1700) Օսման կամ Օմար անուն փաշա մը եկաւ Վան եւ իր առաջին գործը բրաւ Խիզանի վրայ երթալ, (*Դիւան. Ժ*. 119 եւ 126) որուն իշխողը յանդգնած էր Վանի իշխանութիւնը յափշտակել։

Ասոր յաջորդեց Իսմայիլ անուն փաշա մը 1701ին, որ հազիւ քանի մը ամիս (Սեպտ-Դեկտ.) պաշտօնավարելէ վերջ գիշերանց խոյս տուաւ Վանէն։ Խօշապի իշխողը իմանալով անոր վրայ յարձակեցաւ եւ կողոպտեց կուսակալը որ մազապուրծ ազատելով ապաստանեցաւ Պարսկաստան (*Նոյն*. էջ 119—120)։

1711ին, Վանի կուսակալ Ռեճէպ փաշա, Խօշապի վրայ արշաւեց եւ *«զՊարոնն փոխեաց եւ ինքըն մեծաւ փառօք դարձաւ ի Վան»* (*Դիւան. Ժ*. էջ 128)։

1715ին Մուրթազա փաշա, Վանի կուսակալը Խօշապի վրայ գնաց, որպէսզի այդ գաւառին իշխանութիւնը առնէ Զիյնալ բէկէն եւ տայ Իպրահիմ բէկին։ Զիյնալ բէկ դիմադրեց, սակայն պարտուեցաւ։

1716ին Բալլի Բուզուք Մահմատ փաշա ալ Խօշապի վրայ գնաց եւ Ապաղայի գիւղերը հարուածեց։ 600 գերի, 30,000 ոչխար, անթիւ ձի եւ ջորի, եզ, գոմէշ եւ կով բերաւ (*Նոյն*. էջ 129)։

27 Մայիս 1721ին Քէօփրիւլիւ Ապտալլահ փաշա իր երկրորդ անգամ Վանի կուսակալութիւնը ստանձնելէն վերջ, գնաց Խօշապի վրայ, (*Դիւան*. էջ 131)։

1762ին Խօշապի պարոնը Չօպան աղա, դարձեալ խնդիր ունեցաւ կուսակալին հետ որ ռմբակոծեց անոր բերդը եւ գրաւեց, սակայն Չօպան աղա փախաւ, (*Նոյն*. էջ 139)։

Այսպէս, Խօշապ կը մնայ միշտ անընկճելի, մինչեւ 1845—1847ի քրտական ապստամբութիւնը, երբ Խօշապ, Գաւառ եւ Արեւմանտան կը տրուի Խան Ապտալին, Խան Մահմուտի վեց եղբայրներէն մէկուն, իբր վասալ Պետէրխանի։

Ապստամբութիւնը ընկճուելով Խօշապի քուրտ պէյութիւնն ալ վերջ կը գտնէ (1848)։

## գ.) ՃՈՒԼԱՄԵՐԿԻ ԿԱՄ ՀԵՔԵԱՐԻԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ (ԱՂԲԱԿ)

Ճուլամերկ կամ Հէքեարի Զապ գետին հովիտին մէջ Հայաստանի սահմանալուխ վայր մըն է, որ բուն հայկական Աղբակ գաւառին հետ կը կազմէր միութիւն մը, այնպէս որ երբեմն Հայերը այս քուրտ իշխանութիւնը կոչած են Աղբակի անունով։

Դժուար է իրապէս Հէքեարիի կեդրոն՝ Ճուլամերկի եւ Աղբակի կեդրոն՝ Պաշքալէի մօտաւորութեան պատճառով ենթադրել թէ երկու անկախ իշխանութիւններ գոյութիւն ունեցած են։ Եթէ նոյնիսկ եղած է, մէկը միւսին ստորադաս եղած պիտի ըլլայ։

Քուրտերը եւ թուրքերը իբր թէ հոն իշխող քուրտ տոհմին *Հէքեարի* անունէն առնելով գաւառը նաեւ կոչած են այդ անունով։

Սէֆեան Շահ Իսմայիլի ժամանակ (1499—1523) ամբողջ Վասպուրական եւ Ատրպատական մանր իշխանութիւններու բաժնուած էին, տեղական իշխաններու ձեռքին տակ, որոնք երբեմն պարսիկ եւ յաճախ քուրտ էին եւ իրարու հետ կը մաքառէին։

Յ. Տահպազեան (տես. *Բիւրատ-Հայ Պատմութիւն*, էջ 65—66) արձագանգ ըլլալով առանց քննութեան բերնէ բերան աւանդուած զրոյցներու, կը պատմէ թէ Ատրպատականի Մարաղա գաւառին տիրապետ պարսիկ Ասքէր խան, անհաշտ թշնամի Հէքեարիի սահմանակից Տիմ-Տիմ դղեակին տիրոջ Խան Աւտալի կամ Միր-Զէպիլ-Զէտին (=Ոսկեբազուկ իշխան) վըրայ կը յարձակի 11,000 զօրքով եւ երեք ամիս կը պաշարէ։

Աւտալ խան որեւէ օգնութիւն չստանալով Վանի փաշայէն, դիւցազնօրէն կը կռուի։ Նոյնիսկ կիները կը մասնակցին այս հերոսամարտին։ Ասկէ ծագում առած է Կիւհէր խանումի նուիրուած դիւցազնավէպը (*Նոյն*)։

Արդ, պատմական վաւերագիրներ աւելի ստոյգ իրողութիւններ մատնանիշ կ'ընեն մեզի։

Միր-Զէպիլ-Զէտին ոչ թէ միայն դղեակի մը այլ ինչպէս կը թուի ամբողջ շրջանի մը, Ուրմիոյ լիճէն մինչեւ Վանի ծովը տարածուող հողերու տէրն էր, ինչպէս անոնց երկու յիշատակարաններ ցոյց կուտան։

Առաջինը անոնց, յիշատակարանն է 1499ին Խիզանի մէջ գրուած Աւետարանի մը, ուր կ'ըսուի թէ *«աշխարհս ամենայն իյերերմանի կան, զի ոչ թագաւոր կայ եւ ոչ իշխան, զի որդին Եզտընշրին՝ Զէհիտ բէկն եմուտ իյԱղթամար»* (*Մայր Ցուցակ Հայ. Ձեռ. Մատեն. Մխիթարեանց իՎենետիկ*, Ա. հտ. էջ 599), ինչ որ ցոյց կուտայ թէ անիկա մինչեւ Վանի ծովը իր իշխանութեան տակ ունէր, եւ նոյնիսկ կը տեղակալէր Վանի մէջ իբր պարսիկ կուսակալ, վասնզի նոյնիսկ այս քաղաքին մէջ 1507ին գրուած Աւետարանի մը յիշատակարանը կ'ըսէ թէ ձեռագիրը գրուած է *«ի թագաւորութեան Շահ Իսմայիլի կարմիր գդակի եւ մեր տեղակալ պար(ո)նիս Միր Զեհիտի»* (*Ձեռագիր Թ*. 5088, Լոնտոնի Բրիտանական Թանգարանի)։ Ասիկա վստահօրէն կրնանք ըսել թէ քուրտ էր, վասնզի ուրիշ յիշատակարան մը 1499ին Աղթամարի գրաւումը կը հաստատէ գրելով թէ *«ԲՈՒՐԹՆ էառ զանառիկ կղզին զԱղթամար... եւ բազում աւերս արար եւ անչափ մալ ու մանգրուն՝ Հայի, եւ տաճկի, աւարի եւ բնականի՝ թալանեաց եւ տարաւ»* (*Ցուցակ Վասպուրականի*, էջ 318)։

Յաջորդող թուրք եւ պարսիկ պատերազմներու շրջանին, ինչպէս բոլոր այդ կողմերը, նոյնպէս նաեւ

Ճուլամերկ ոտնակոխ եղաւ երկու կողմի բանակներէն:

Այսպէս, ձեռագիր մը կը յիշէ թէ 1553ին Սուլթանը գերի տարած է Ճուլամերկի երկիրը (*Մայր Ցուցակ Վենետիկի Ձեռագրաց*, Ա. էջ 818):

Ամէն պարագայի մէջ լեռնային այս գաւառին մէջ հաւանօրէն Մօլլա Իտրիս պէտք է հաստատած ըլլայ քուրտ բէկ մը որ իր իշխանութիւնը եւ գերիշխանութիւնը տարածած է Մոկսի եւ Շատախի վրայ, որոնցմէ առաջինը նախապէս Ճէզիրէի բէկին ենթակայ էր եւ պայքարի մէջ դրացի Շատախի հետ, ԺԶ. դարուն (տես. վերը, էջ 432—433) սակայն ի վերջոյ, ինչպէս կ'երեւի Ճուլամերկի բէկը յաջողած է Մոկսն ալ իրեն ստորադասել:

1608ին Աղբակի իշխող կը յիշատակուին ձեռագիրի մը մէջ (տես. *Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի*, էջ 256) պարոն Աբազիզն եւ անոր եղբայրը պարոն Մեհերն «*որ բազում խնամս տանին իվերայ քրիստոնէից*»։

Շահ Աբաս որ Վանը եւ Ոստանը գրաւած է, կ'երեւի չէ գրաւած Հեքեարի-Աղբակ շրջանը, որուն քուրտ իշխանները, ԺԷ. դարուն կէսերուն, երբ քրտական շարժումի նշանները կը տեսնուին շատ մը վայրերու մէջ, կ'երեւի թէ իրենց լեռնային նպաստաւոր դիրքէն օգտուելով մասնակցած են այդ շարժումին եւ բոլորովին անկախ եղած են, վասնզի 1650ին կը յիշուի Եզտիշէր (1) «*մեծ պարոն*»ը, «*տէր Ջուլամերկոյ, եւ Շատախայ եւ այլ բազում գաւառաց եւ բերդօրէից*» եւ «*մեծ իշխանն Մարաց*» (իմա քուրտերու) (*Առաքել Դաւրիժեցի*, էջ 495):

Վանի Հիւսէյին աղան, ինչպէս տեսնուեցաւ, խնամիացաւ այս իշխանին հետ, անոր հետ զինակցեցաւ, իրեն դէմ հանուած Խօշապի Սիւլէյման բէկին եւ Զօմարին դէմ դիմադրելու համար:

Այսպէս, Հիւսէյին աղա դարձաւ շատ զօրաւոր: Բայց, ինչպէս ըսուեցաւ, թուրքերը անոր դէմ հանեցին նոր նոր թշնամիներ:

Եզտիշէր 1,500 զօրք ղրկեց Հիւսէյին աղային որ սակայն ի վերջոյ պարտաւորուեցաւ պարանով մը Վանի բերդէն վար իջնելով ապաստանիլ Եզտիշէրի քով, որ յաջողեցաւ Զօմարը ձեռք անցնել եւ սպանել:

Եւ որովհետեւ Զօմար ապստամբ էր Օսմ. իշխանութեան դէմ, իր այս յաջողութիւնը տեղեկագրեց Պոլիս Սուլթանին, որ ի վարձատրութիւն իր այս արարքին, անոր տուաւ Սղերդի իշխանութիւնը մինչեւ մահ (Յակոբ Շահպազեան, *Քիւրտօ-Հայ Պատմութիւն* էջ 68—70):

Բայց ինչպէս կ'երեւի Ճուլամերկի իշխանութիւնը շարունակուած է եւ Վանի Օսմ. վարչութեան ենթարկուելէն վերջ, ԺԸ. դարուն հոն իշխող քուրտ պէյերը զօրացած են:

Հ. Մօրիցիօ Գարզոնի վկայութիւնը ասիկա կը հաստատէ:

Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեան, (Ա. էջ 137) *Հաքեարի* Վանի կուսակալին ենթակայ *հիւքիւմէթ*, այսինքն անկախ քուրտ պէյութիւն կը ներկայացնէ, եւ Ճուլամերկը իբր «*բերդաքաղաք գլխաւոր համօրէն գաւառին*» եւ «*իշխանանիստ Հաքեարի քուրդ պէյի*», որով կը հաստատէ Հ. Մօրիցիօ Գարզոնի ըսածը (տես. *նոյն*. էջ 158):

Ան կը հաւաստէ նաեւ թէ այդ իշխանանիստ քաղաքին մէջ կային մզկիթներ, մէտրէսէներ եւ այլ շինութիւններ ամէնքն ալ շինուած՝ Հեքեարիի իշխաններէն (*նոյն*.): Հեքեարիի քուրտ բէկերը մաքառած են Վանի կուսակալներուն դէմ, որոնք ինչպէս տեսնուեցաւ կ'ուզէին շրջակայ քուրտ բէկերը նուաճել:

Ճուլամերկի դէմ ալ այսպիսի փորձեր եղած են: Յարութիւն Խալֆայեան ժամամանակագիրը կը յիշատակէ թէ Վանի Թամուր փաշան երկու անգամ արշաւած է այս կողմերը: Առաջին անգամ 1773 Նոյեմբերին, գացած է Աղբակ, պատժելու համար վրանաբնակ եւ աւարառու քուրտերը եւ 3—4 հազար ոչխար գրաւած եւ Վան բերած է (*Դիւան. Ժ*. էջ 144) եւ երկրորդ անգամ 1779ին գացած է Ճուլամերկի Աւտալ բէկին վրայ, եւ մեծ գումար մը առնելով ետ դարձած (*Դիւան. Ժ*. էջ 145)։

Հեքեարիի բէկերը ոչ միայն մաքառած են Վանի փաշաներուն հետ այլ նաեւ անոնցմէ կորզել աշխատած են, Վանի շրջակայ կարգ մը քուրտ պէյերու եւ ազատ Հայ համայնքներու գերիշխանութիւնը, ինչպէս առած էին երբեմն Ճէզիրէի ենթակայ երկու մելիքութիւնները՝ *Մոկս* եւ *Շատախ* (տես. վերը, էջ 432—3): Նոյնպէս անոր ենթարկուած են *Ոստանի* եւ *Աղբակի* քուրտ բէկերը:

1846ին Պետէրխանի քրտական ապստամբութեան մասնակցած է նաեւ Հեքեարիի Նուրուլլահ պէյը, որուն իբր աւատական կալուած Պետէրխան խոստացած էր Ճուլամերկի շրջանէն զատ Աղբակը, եւ Պարսկական Քուրտիստանէն մաս մը: Նուրուլլահ վերջին անկախ քուրտ իշխողը եղաւ Հեքեարիի:

Իր նուաճումէն վերջ թուրքերը հոն հաստատած են Օսմ. իշխանութիւն, Հեքեարին դարձնելով Վանի կուսակալութեան ենթակայ գաւառ մը:

## դ.) ՈՍՏԱՆ — ԳԱՒԱՇ

Հին Ռշտունեաց երկիրն է: Վանի ծովին հարաւակողմը, դրացի Մոկաց գաւառին:

Պզտիկ վիճակ մըն էր որ առաջ Վանի նահանգին մաս կը կազմէր եւ ապա ինկաւ Հեքեարիի պէյին իշխանութեան տակ (տես. վերը, էջ 449):

Բնակչութիւնը Հայ էր մեծ մասամբ:

Գլխաւոր քաղաքն էր Ոստան Վանի ծովին եզերքը, երբեմն ամուր քաղաք։

Ոստան անկախ քուրտ իշխանութիւն մըն էր, նոյնիսկ ԺԵ. դարէն սկսեալ, իսկ աւելի առաջ, իբր Ռշտունեաց Արծրունի թագաւորութեան մայրաքաղաքը, արդէն առանձին Հայ իշխանութեան մը կեդրոնավայրն էր (տես. վերը, էջ 370—372)։

Նոյնպէս տեսնուեցաւ (վերը. անդ) որ հոն

(1) *Այս անունը կ'երեւի ընտանեկան բնոյթ ունէր եւ աւանդական էր տոհմին մէջ ուր 1499էն առաջ ալ այս անուն իշխող մը ունեցած է։*

Արծրունիներէն քրդացած իշխաններ իրենց իշխանութիւնը շարունակած են էին Մոնկոլ տիրապետութեան շրջանին, եւ նոյնիսկ մինչեւ Վան տարածուած էին (տես. վերը, էջ 370):

Լէնկ Թիմուր զանոնք Վանէն հեռացուց, սակայն Ոստանի մէջ շարունակեց այս տունը հնազանդելով Լէնկ Թիմուրի:

Գարա Եուսուֆ եւ անոր հաւատարիմ Բաղէշի քուրտ իշխանը՝ Ոստանի Եզտին ամիրան եւ անոր Մելէք որդին կ'ընկնեն եւ կը հնազանդեցնեն (տես. վերը, 371):

ԺԵ. դարուն առաջին քառորդին վերջը այս տունէն Սուլթան Ահմէտ սպաննուեցաւ Իսկէնտէրէն, որ տիրեց Ոստանի: Բայց ինչպէս տեսնուեցաւ (վերը, էջ 371), շուտով վերակազմուած է եւ բաւական ընդարձակ տարածութեամբ հողերու տէր եղած է:

1425ին իր իշխանութեան տակ էր Հայոց Ձոր, Աղբակ, Քարպահ եւ Ոստան մինչեւ Բաղէշ (*Ցուցակ Վասպուրականի*, էջ 353): Հոն իրարու յաջորդած են մինչեւ ԺԵ. դարուն կէսերը «պարոն»ներ.

ԺԵ. դարուն վերջերը Ոստան–Գաւաշ տակաւին ունէր իր անկախ իշխանները:

1491ին Աղթամար գրուած Շարականի մը յիշատակարանին մէջ գրուած է որ «*ելեալ ոմն անիծեալ ի յԱստուծոյ Սովփի անուն ի Թաւրիզոյ՝ եւ եկեալ բազում զաւրաւք ի Վան քաղաք եւ աւերեալ եւ զբազումս յաւար եւ գերի արարեալ եւ զսպասք եկեղեցւոյ եւ զաւերարան եւ ամենայն սրբութիւնսն, եւ զգրեանք տարեալ գերի, եւ ո՞վ կարէ պատմել զաւերն զոր արար: Եւ եկեալ ի յՈստան քաղաքն եւ անդի եկեալ խրոխտալով նստաւ ի դաշտն Գաւաշիցն, դէմ յանդիման տեղոյս* (1) *եւ գայրանայր ի վերայ մեր որպէս զգազան պիղծն այն, եւ բազում չարիս խորհէր թէ առնում զտեղն եւ զամենայն սրախողխող առնեմ եւ զսրբութիւնս քակեմ, որով սաստեալ Ս. Խաչի զաւրութեանց յետս դարձոյց զնա եւ գնաց Սուլիմայ բէկն շհեր եւ կոտորեաց զնա ի դաշտին Վանայ եւ կորեաւ անիծեալն յԱստուծոյ Սոֆի անունն*» (*Երուսաղէմ թ.* 1741 *Ձեռագիր Սաւալանեան Ցուցակի*):

Պարսիկ մեծ պետութեան կազմութենէն վերջ Ոստանի բէկերը պէտք է շարունակած ըլլան իրենց իշխանութիւնը քրտական միւս իշխանութիւններու պէս, մինչեւ որ Սուլթան Սիւլէյման ԺԶ. դարուն կէսերուն նուաճած է Վասպուրականը: Հաւանօրէն Մոլլա Իտրիս այս իշխանութիւնն ալ ճանչցած է:

Շահ Աբաս Վանի հետ գրաւած է նաեւ Ոստանը, ուր «*սով սաստիկ*» տիրած էր ինչպէս Վանի ծովուն շուրջը: (*Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի*, էջ 256):

Միայն յայտնի չէ թէ Ոստան պահած էր իր անկախութիւնը թէ՞ ենթարկուած էր Աղբակի իշխանին, վասնզի նոյն ձեռագիրին մէջ, 1608ին, իբր իշխան «*երկրիս Աղբակու*» կը յիշուին «*պարոն Աբազիզն եւ զեղբայր իւր զպարոն Մէհէտն*» (*նոյն.*):

Միայն գիտենք թէ Պետրխանի ապստամբութեան ատեն (1845) Ոստան վիճակած է Խան Մահմուտի, իբր քրտական երկիր:

(1) *Աղթամարի*:

## Ե.) ԲԵԿՐԻ — ԱՐՃԷՇ

Բեկրի պատմական Քաջբերունիք գաւառին մէջ է: Դրացի Արճիշակովիտ գաւառին հետ միասին քուրտ իշխանութեան մը ենթարկուած էր: Նախապէս սորադաս էր Բաղէշի խանութեան եւ հետեւաբար անուանապէս նաեւ Վանի փաշաներուն: Կը գտնուէր Վանի ծովին հիւսիսային կողմը Պայազիտի հարաւը, եւ կը կազմէր ինքնիշխան շրջան մը:

Բերկրիի իշխանութեան մէջ էր Ապաղայի նշանաւոր դաշտը:

Ինչպէս բացատրուեցաւ (տես. վերը, էջ 449) Օսմ. կառավարութիւնը որ Վանի քուրտ իշխանութիւնը հետզհետէ թրքականի վերածեց, ԺԸ. դարուն սկիզբէն աշխատած է Քուրտ բէկերը հնազանդեցնել, թուրք կուսակալներու ձեռքով:

Այդ թուրք կուսակալներէն Մուրթազա փաշա որ խօշապէն սկսաւ գործի 1715ին եւ 1716ին նման արշաւանք մը կատարեց դէպի Բերկրի:

Զօրքերու թիւը կը հասնէր 5,000ի: Ապաղայի կողմերը բանակը յարձակեցաւ խաղաղ բնակչութեան վրայ, Եզիտիները եւ Հայերը անխնայ կոտորեց: «*Զտունս լի մարդով եւ զախոռս լի անասնօք այրէին եւ նոքա ի մէջ տոչորէին մինչեւ յելս շնչոց, նաեւ Դ.* (4) *Ե. եւ Զ.* (6) *անգամ որով հարեալ սպանանէին, եւ զայլսն որպէս զանասուն դանակաւ զենուին եւ զոտայս կախեալ յերկու ոտիցն յերկուս հերձէին եւ ձգէին յերկիր, եւ զկաթնասունս ցրուեալ ի յերկրի՝ ծիուց կոխան առնէին, զծերս եւ զպառաւունս որով սպանանէին, զՀայոց եւ զԵզիդաց զարս եւ զկանայս զգեղեցիկս, զերիտասարդս եւ զմանկունս ՉՃ* (600) *հոգի գերի բերեցին նաեւ ԼՌ* (30000) *ոչխարս եւ անթիւ ձիս եւ ջորիս, եզինս եւ գոմէշս, պղնձեղէնս եւ արծաթեղէնս թալան բերէին, որ թիւ ոչ մտանէր եւ զի էր առաջաւորացն ձմեռն ձիւնամեծ եւ կարի ցուրտ էր, եւ շաղք ի յահէն փախստական եղեն ի լերինս եւ ի ձորակս, ի տարակս եւ ի սահմանս, եւ անդէն բքածեծք եւ ցրտասառոյց մեռան: Իսկ այն ողորմելի գերիքն հետիոտս ի ճանապարհին առաջի ձիոցն, թէ զինչ տանջանս կրէին, մանաւանդ խղճալի կանայքն ի ձեռն զազրագործ եւ անաստուած անօրինաց եւ ի յունուար ԻԴ* (24) *եմուտ ի քաղաքս բազում գերեաւ եւ աւարաւ*» (Գարեգին եպս. Սրուանձտեան Մանանայ, էջ 369):

Բայց չգիտցուիր ինչպէս հազիւ 60—70 տարիներ վերջը հոն կը գտնենք Եզիտի պէյ մը որ համանուն ընդարձակ բարեբեր դաշտին վրայ Ապաղայի շինուած չորս բերդերը աւազակներու որջ դարձուցած էր:

1788ին, Վանի փաշան զինուորական կարեւոր ուժով մը յարձակեցաւ եւ հալածեց զողերն ու աւազակները անկէ եւ բերդերէն մին ուր ամրացած էին անոնք քանդեց:

## 3. ԱՄԱՏԻՅԷԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Հէքեարիի հարաւակողմը կը գտնուէր այս գաւառը, համանուն Ամատիա կամ Ամատա քաղաքով, զոր ոմանք հին Եկբատանին հետ կը նոյնացնեն: 1511—1520 թուականներուն Պարսկաստանի մէջ ճամբորդող վաճառականի մը վկայութեան համաձայն (տես. Յովհ. Յակոբեան *Ուղեգր.* Ա. հտ. էջ 307) այս քաղաքը, ամրոց մըն էր, *«բնակուած ու կառավարուած»* թուրքմէններէ, հետեւաբար Ամատիյէի իշխանութիւնը ծագմամբ քուրտ չէր, եւ թերեւս այս էր պատճառը որ իր առանձին գոյութիւնը պահած էր, թրքական տիրապետութեան տակ եւս, եւ առանձին իշխանապետութիւն մը կազմած էր, դեռ ԺԸ. դարուն վերջերը ըստ Հ. Մօրիցիօ Կարզոնիի, հակառակ անոր որ երկիրը քրտացած էր եւ բնակչութիւնը քուրտ կը նկատուէր, թէեւ խառն էր, բնակչութեան մէջ բաւական թիւով Նեստորական Քաղդէացիներ գտնուելով:

Հին Մոկաց եւ Կորճէից նահանգներէն մասեր կը գտնուին այս իշխանութեան մէջ որուն հողերուն մեծ մասը Հայաստանէն դուրս էին:

Երբեմն Պաղտատի փաշայութեան ենթակայ քուրտ հիւքիւմէթ մը կը կազմէր քուրտ պէյի մը իշխանութեան տակ:

Քիչ քիչ եղաւ բոլորովին անկախ եւ ինքնագլուխ: Այս իշխանութեան ենթարկուած է *Զախօ* կամ *Զախու*, որ նոյնպէս Պաղտատի կուսակալութեան ենթակայ *հիւքիւմէթ* մըն էր, եւ ունէր իր յատուկ անկախ բէկը, բայց վերջը ենթարկուեցաւ Ամատիյէի իշխանապետութեան:

Հ. Մօրիցիօ Կարզոնի Ամատիյէի իշխանութիւնը կը նկատէ Քուրտիստանի տիրող հինգ քուրտ իշխանապետութիւններէն մին (տես. վերը, էջ 438):

Կարելի է ենթադրել թէ Ամատիյէի մասնաւոր կարեւորութիւն մը տուած է Հ. Մօրիցիօ Կարզոնի, վասնզի անիկա կեդրոնը եղած էր Օսլոյի ապստամբութեան (տես. վերը, էջ 430):

Ըստ Ինճիճեանի (*Աշխ.* Ա. էջ 247) Ամատիյէի իշխող պէյին ընտանիքը հին ծագում ունէր եւ ԺԳ—ԺԴ. դարերէն կ'սկսէր իր իշխանութիւնը, ինչպէս ցոյց կուտային Քրիստոսի 1300ական (Հիճրէթի 700) թուականէն մնացած անոնց նախնիքներուն դամբարանները:

Ամատիյէի քուրտ իշխանը, փաշայութեան տիտղոս ունէր եւ կարող էր հանել 40,000 զօրք (*նոյն.*):



## 4. ՀԱՐԱՒԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔՈՒՐՏ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ (ՃԷԶԻՐԷԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆ)

Ըստ Հ. Մօրիցիօ Կորզոնի Քուրտիստանի հինգ իշխանապետութիւններէն մին էր Ճէզիրէ, որ ինչպէս յայտնի է Հայաստանէն դուրս է, սակայն որովհետեւ Ճէզիրէի քուրտ իշխանապետը աւատապետն էր բազմաթիւ վասալ քուրտ իշխողներու, որոնց հողերը կը գտնուէին Հայաստանի սահմաններուն մէջ, պէտք է նկատուի Հայաստանի գոնէ մէկ մասին տիրող իշխանութիւն մը:

Հ. Մօրիցիօ Կորզանի թէեւ զայն կը նկատէ բոլորովին անկախ բայց նկատելի է որ անիկա ինչպէս Բաղէշի, Մուշի, Ճուլամերկի, խօշապի եւ այլնի քուրտ իշխանութիւնները, *հիւքիւմէթ* մըն էր Տիարպէքիրի քուրտ փաշայութեան ենթարկուած, գոնէ անուանապէս, կամ աւելի ճիշտ բացատրութեամբ, պարագային համաձայն երբեմն հնազանդ եւ երբեմն ապստամբ, երբեմն շատ ընդարձակուած եւ երբեմն սեղմուած, ըստ Օսմ. պետութեան ուժով ու տկար պահերուն:

Իսկապէս Ճէզիրէ մէկն էր զօրաւորագոյն քուրտ իշխանութիւններուն, որոնք Հայաստանի հարաւային սահմանները կ'եզերէին եւ ենթարկուած էին Տիարպէքիրի կուսակալութեան: Հետեւաբար Հարաւային Հայաստանի այս քուրտ իշխանութիւնները կը խմբեմ, մէկ հատուածի մէջ:

Տիարպէքիրի նահանգը ազգերու խառնարան մըն էր, վասնզի շատ ցեղեր հոն կ'ապրէին: Հոն կային Հայեր, Նեստորական եւ Կաթոլիկ Քաղդէացիներ, Յակոբիկեան եւ Կաթոլիկ Ասորիներ, Արաբներ եւ մանաւանդ մեծ թիւով քուրտեր, որոնք գրեթէ տիրած էին ամբողջ նահանգին:

Այս քուրտերը ոչ մէկ իշխանութիւն կը ճանչնային եւ յաճախ պատերազմներ կը մղէին, նոյնիսկ կուսակալին դէմ, որուն իշխանութեան կը հնազանդէին միայն փոքրաթիւ գիւղեր (Լէօ. Գ. 735):

Ինչպէս արդէն բացատրուեցաւ (տես. վերը, էջ 436—7 նոյնիսկ պարսկական տիրապետութեան շրջանին հոն գոյութիւն ունէին բազմաթիւ քուրտ իշխանութիւններ, որոնք երբ երկիրը Օսմ. տիրապետութեան ենթարկուեցաւ եւ կազմուեցաւ Տիարպէքիրի թուրք կուսակալութիւնը— որ Եփրատէն մինչեւ պարսիկ սահմանագլուխ կը տարածուէր— պահեցին իրենց գոյութիւնը: Արդէն տեսնուեցաւ թէ Տիարպէքիրի կուսակալութեան մէջ գոյութիւն ունէին 11 Բ. Դուռէն կախում ունեցող գաւառակներու դէմ 8-ը անկախ քուրտ *հիւքիւմէթ*ներ ու ուրիշ պզտիկ անկախ համայնքներ, որոնցմէ երկուքը *Իսեան* եւ *Սավուր* հայկական էին (տես. վերը, էջ 435—436): Այս *հիւքիւմէթ*ներու թիւը ԺԸ. դարուն վերջերը հինգի զեղչուեցաւ վասնզի թուրքերը զանոնք, մանաւանդ

արեւմտեանները, նուաճեցին (1), իսկ չնուաճուածներուն մէջ որդւոց որդի ժառանգութեամբ իշխեցին քուրտ պէյեր։ Հիւքիւմէթներէն ոմանք ալ, ինչպէս Կինճ կամ Ճապաղջուր անցան Բաղէշի խանութեան:

Իսկ Տիարպէքիրի կուսակալութեան սահմաններու մէջ մնացած հողերը հիւքումէթ կամ սանճաք, բնակուած միշտ մեծ մասամբ քուրտերէ, գրեթէ շարունակ ապստամբ էին, եւ խռովութիւններ կը յարուցանէին եւ դժուարութիւններ կը պատճառէին փաշային, յայտնապէս պատերազմելով անոր դէմ:

Տիարպէքիրի փաշան հազիւ 20—30 հազար զօրք կը հանէր, մինչ եթէ ամբողջ նահանգին տիրէր իրապէս, այն ատեն կրնար հանել թագաւորական բանակի մը չափ զօրք:

Քրիստոնեաններու տարեկան հարկը Տիարպէքիրի մէջ 5 ու կէս ղրուշ էր, իսկ գիւղերու բնակիչները 1 ղրուշ աւելի կը վճարէին Քէօյ աղային համար, իբր վարձք հարկապահանջին որ գիւղերը կը շրջի:

## ա․) ՃԷԶԻՐԷ

Տիարպէքիրի կուսակալին ենթակայ *հիւքիւմէթ*ներէն մին էր Ճէզիրէ, Նախնեաց *Գզերան* եւ օտարներու *Զաբտան* կամ *Պէզաբտան*։ Ինճիճեան կը գրէ. *«այս գաւառ է հիւքիւմէթ եւ է սեփական հին ցեղի ինչ քրտաց, ուստի է պէյ ինքնագլուխ եւ զօրաւոր. ունի ընդ իւրեւ գիւղօրէս բազումս, այլեւ վիճակս ինչ, որոց բնակիչք ըստ մեծի մասի են քուրտք, յորոց կարէ հանել աւեն զօրս մինչեւ 70 հազար.* (Ինճիճեան, *Աշխ. Ա.* էջ 349):

Ճէզիրէ կամ Ճէզիրէ-Իպն-Էօմէր այս քուրտ պետութեան կեդրոնը, բերդաքաղաք մըն էր, Տիգրիսի արեւմտեան ափին վրայ կառուցուած: Ճէզիրէի հիւսիսային կողմը կար ամրոց մը, փոքր անառիկ, կոչուած *Ֆէնիք Գալէսի,* ուր կ'ամրանար իշխանը երբ խռովութիւն ծագէր:

Պէյը Ճէզիրէէն անցնող կարաւաններէն մաքս կ'առնէր: Սուրհանդակի ճամբան ասկէ կ'անցնէր:

Ճէզիրէ ամէնէն գլխաւոր քրտական կեդրոններէն մէկն էր: Թուրքերը, որոնք *«բաժանեա՛ զի տիրեսցես»ի* քաղաքականութեամբ միշտ պառակտած են իրենց հպատակները, յաջողած են քուրտերն ալ իրարու դէմ հանել: Այս քաղաքականութեամբ, ինչպէս տեսնուեցաւ (տես. վերը, էջ 442) Վանի Ահմէտ փաշան 1601ին Բաղէշի Շարաֆ խանը ընկճելու համար անոր դէմ արշաւած ատեն Ճէզիրէի Միր Շարաֆ բէկը իրեն գործակից առաւ եւ դաւադրաբար սպաննեց զայն:

Միր Շարաֆ բէկ, հեռու իր ազգին գերագոյն շահերը ըմբռնելէ. *«բազում տեղիս աւերելով եւ առ ու աւար առնելով եւ երկու եղբայրն* (հաւանօրէն Շարաֆ խանին) *ի ճանապարհին սպանեալ»* կը դառնայ Ճէզիրէ:

Այս դէպքը ցոյց կուտայ թէ Բաղէշի խաները եւ Ճէզիրէի բէկերը, քուրտ իշխանութիւններու երկու գլխաւորները, թուրքերը յաջողած էին իրարու դէմ հանել: Եւ գուցէ անոնք իրարու դէմ կռուած էին շատ անգամներ եւ իրար տկարացուցած, փոխանակ իրարու միանալով թուրքին դէմ կռուելու:

Ճէզիրէի մէջ կ'իշխէր Պետէրխան քուրտ ընտանիքը, որ ինքնագլուխ կը կառավարէր Քուրտիստանի մեծ մասը:

Տէրութեան ո՛չ տուրք կուտար եւ ոչ զինուոր. անյաղթելի զօրութիւն ունէր եւ անբաւ հարստութիւն: Իր իշխանութեան տակ գտնուող քուրտերը իրեն հաւատարմաբար կը ծառայէին, (տես. Բարունակ պէյ Ֆերուհխան. *Ճանապարհորդութիւն ի Բաբելոն ընդ Հայաստան յամի տեառն* 1847. 1876 Արմաշ. էջ 62—63):

Ճէզիրէի տէրերը մեծ հեղինակութիւն ունեցած են բոլոր քուրտ իշխաններուն վրայ եւ իրենց ազդեցութեան ենթարկած են շրջակայ վայրերը:

Պետէրխանները կը ձգտէին իրենց պապերուն իշխանութիւնը ամրապնդել եւ մեծ ու ընդարձակ Քուրտիստան մը կազմել:

Հետեւաբար նուաճեցին նախ փոքր բէկերը եւ զանոնք իրենց ենթարկեցին, ինչպէս Մոկսի Ապտալ բէկը որուն հետ նախ կռուեցաւ Պետէրխան բէկ եւ ապա զինակից եղաւ եւ շրջեցաւ Մոկաց բերդերը:

1830—40 ական թուականներուն մինչեւ Վան իր ազդեցութեան ենթարկուած էր եւ Բաղէշի ու Մուշի քուրտ իշխանները իրեն հետ համաձայնած էին:

Այսպէս, Պետէրխաններու ընդարձակ իշխանութիւնը, իրեն հնազանդեցուցած էր Վանէն մինչեւ Բաղէշ տարածուած երկիրները եւ անոնց մէջ գոյութիւն ունեցող բոլոր քուրտ փոքրիկ իշխանութիւնները:

Սուլթան Մահմուտ Բ. 1826ին երբ ձեռնարկեց գերման զօրավար Մոլթքէի խորհուրդով նուաճել Թուրքիոյ սահմաններուն մէջ գտնուած աննուաճ վայրերը, 1836ին Կիւրճի Մէհմէտ Ռէշիտ փաշայի հրամանատարութեամբ բանակ մըն ալ ղրկեց Ճէզիրէի քուրտ Պետէրխան բէկին դէմ որ անկախ Քուրտիստան մը կազմած էր: Ռէշիտ փաշա ռմբակոծեց Ճէզիրէն: Պետէրխան բէկ քաշուեցաւ Ֆենիք Գալէսի ամրոցը (*նոյն.* էջ 63) եւ տակաւին կատարելապէս նուաճուած չէր 1837ին, երբ մեռաւ եւ իրեն յաջորդեց Չէրքէզ Հաֆըզ փաշա, որ չափազանց խստութեամբ վարուեցաւ: 15,000 քուրտ ջարդեց եւ 6,000 ընտանիք Ճէզիրէէն տարագրեց Տիարպէքիր։ Իսկ Քուրտիստանի միւս լեռնային մասերուն մէջ ապաստանող քուրտերն ալ ջարդեց եւ տարագրեց եւ այսպէս ընկճեց Պետէրխանի իշխանութիւնը:

Բայց այս խստութիւնը իր հակազդեցութիւնը ունեցաւ: Քուրտերու մէջ խմորուիլ սկսաւ ըմբոստական շարժումներ եւ անկախութեան ձգտում, առ երեսս հնազանդութեան համակերպելէ վերջ:

Մասնաւորապէս Ճէզիրէի Պետէրխան տունը

(1) *Մեհրանի և Աթակ կամ Աթախ այդ նուաճուածներէն էին։ Մեհրանին նուաճած է 1772ին Ուզուն Ապտալլահ փաշա 30,000 զօրքով (տես. Ինճիճեան.* Աշխ. Ա. *էջ 222).*

առիթի մը սպասեց, ինչ որ չուշացաւ: Երբ 1845ին, 1839ին հռչակուած *Թանզիմաթը*— որուն գործադրութեան դէմ էին բոլոր բռնակալները որոնք Հայաստանի անմատոյց լեռներուն վրայ որջացած էին գործադրութեան դնելու համար Պոլիսէն Վան եկաւ Սըրրի փաշա, յայտնապէս ըմբոստացան եւ զայն փախցուցին: Այս ըմբոստներուն գլուխն էր Վանեցի Թիմուրզադէ Մուսթաֆա պէյ, որ նկատելով թէ միայն իր ուժերը անբաւական էին, դիմում բրաւ Վանայ հարաւային գաւառներու Քուրտ ցեղապետներուն, որոնց մէջ նշանաւոր էին Խան Մահմուտ եւ իր վեց եղբայրները:

Ասոնք արդէն Ճեզիրէի Պետէրխան պէյի հետ միացած, ատենէ մը ի վեր ապստամբած էին կառավարութեան դէմ, անկախ Քուրտիստան մը հիմնելու նպատակով, եւ հետզհետէ ընդարձակելով իրենց ազդեցութեան շրջանակը, Մոկսէն մինչեւ Աղձնիք ու Ռշտունիք, եւ Հայոց Ձոր ու Վանի շուրջը ամէն տեղ ահ ու սարսափ կը սփռէին:

*Թանզիմաթի* գործադրութեան որոշումը, գրգռութիւն տարածելու առիթ ընծայեց: Քուրտերը Վան թափեցան եւ Գուլին միանալով Մուսթաֆա բէկին շուրջը հաւաքուեցան: Ասոնց հետ Վան եկաւ նաեւ Պետէրխան եւ Խան Մահմուտ իր եղբայրներով:

Եւ ծնաւ թուրք-քրտական եղբայրակցութիւն մը ընդդէմ Սուլթանին իշխանութեան, Պետէրխան բէկի վեհապետութեան տակ:

Խեղճ Հայերը հարկադրուած համակերպեցան, եւ ստիպուած հնազանդեցան այս իշխանութեան, իսկ Նեստորականները իրենց լեռներուն մէջ դիմադրեցին եւ 12,000 հոգի ջարդուեցան:

1847ին ամրան արդէն ապստամբ կառավարութիւն մը երեւան եկած էր որ ծրագրած էր գրաւել Վանի, Բաղէշի եւ Տիարպէքիրի նահանգները եւ կազմել անկախ Քուրտիստան մը, պարսիկ հովանաւորութեան տակ եւ խորագիտութիւնը ունեցած էր լուր տարածելու թէ իր յաջողութեան պարագային, Հայերու պիտի ձգէր հայաբնակ վայրերը, որպէսզի անոնք անկախ Հայաստան մը կազմեն Ռուսիոյ հովանիին տակ:

Ասիկա անշուշտ Հայերը իրենց հետ գործակից ունենալու համար միջոց մըն էր, եթէ ճիշդ է Հայկ Անէմեանի հաւաստումը (տես. *Հայոց Հայրիկը*, Թաւրէզ, 1927 էջ 151): Յ. Տահպազեան (*Բիւրաօ-Հայ Պատմութիւն*, էջ 86) կ'ըսէ թէ ապստամբութենէն քիչ առաջ, Պետէրխան-բէկը, դիմած էր նաեւ Վանի Հայոց բարոյական, նիւթական եւ ֆիզիքական օգնութեան, խոստանալով, որ եթէ ինքն յաղթանակէ եւ Անկախ Քուրտիստանի ծրագիրը իրականութիւն դառնայ «իշխանը (Պետէրխան) Հայերուն պիտի տար կառավարութեան տնտեսական բաժնի մատակարարութիւնը»:

Ասոնք ցոյց կուտան թէ Հայեւքուրտ հասկացողութիւն մը գոյութիւն ունէր, եւ կային Հայեր որոնք ձեռնտու էին Քուրտերուն, ինչպէս Միր-Մարտօ Պաշզալեցին (տես. վերը, էջ 439) որ զօրավար էր Պետէրխանի բանակին մէջ եւ երկու նշանաւոր Վանեցի Հայեր, Ստեփան Մանօղլեան (1) (մականուանեալ «Ասող») եւ Մհ. Յովհաննէս Զալկատըրեան, եւ իրենց քանի մը համախոհները, որ գաղտնի գացած էին Պետէրխանի մօտ եւ անոր խորհրդական եղած:

Նոյնպէս Շատախի եւ Մոկսի գիւղացիք, որոնք ինչպէս տեսնուեցաւ ազատ համայնքներ կը կազմէին (տես. վերը, էջ 432—433) Պետէրխանի բանակին մէջ մտան:

Պետէրխան իր ծրագիրը գործադրելու համար համաձայնեցաւ Քէօր Մուսթաֆա փաշա Թիմուր Օղլիի հետ, եւ Գաւաշէն իրեն գործակից առաւ Կուլի խան պէյի հայրը՝ Խան-Մահմուտը: Իսկ Մոկսի պէյը՝ Խան Ապտալ արդէն առաջուց համաձայն էր:

Պետէրխանի զինուորագրուեցան Դրհի Հայերը եւ Պոհտանի Քուրտերը: Այսպէս, Հայերէ եւ Քուրտերէ կազմուած բանակով մը արշաւեց Վանի վրայ եւ զայն գրաւեց:

Վանի կառավարիչ եղաւ Խան-Մահմուտ:

Այս ապստամբութիւնը ընկճելու համար Պոլիս հազիւ քանի մը հազար զօրքով կրցաւ Հայաստան ղրկել Օսման փաշան, վասնզի պետութիւնը տագնապի մէջ էր:

Օսման փաշա, իր բանակը ստուարացնելու համար զինուորագրեց տեղական բնակչութիւնը անխտիր:

Օսման փաշա նախ մտաւ Մոկս եւ ռմբակոծեց Ապտալ պէյի բերդերը: Ապտալ պէյ եւ իր եղբայրները ձերբակալուեցան եւ աքսորուեցան Հռոդոս:

Նոյնպէս Օսման փաշայի անձնատուր եղաւ Քէօր Մուսթաֆա փաշա, առանց կռիւի:

Խան Մահմուտ ալ չդիմադրեց:

Վճռական կռիւը տեղի ունեցաւ Պետէրխանի բանակին դէմ Պոհտանի մէջ:

Ըստ ոմանց Վանի Հայերը կը ձերբակալեն Պետէրխանը եւ կը յանձնեն թուրք կառավարութեան, իսկ ըստ այլոց Պետէրխան Օսման փաշայի բանակէն պարտուած Գազիկ գիւղի ամրոցը կ'ապաստանի, սակայն թուրքերը կը գրաւեն զայն եւ հոն գերի կը բռնեն Պետէրխանը:

Ապստամբութիւնը կը զսպուի 1847 Հոկտ.ին, օգնութեամբ Հայոց, վասնզի Կ. Պոլսոյ Մատթէոս Պատրիարքը ահաբեկ թրքական ոյժէն եւ ապագայ վտանգի մը սարսափով, յորդորած էր իր ժողովուրդը օգնել Թուրք բանակին (2):

Պետէրխանի երկու Հայ խորհրդականները, Ստեփան Մանօղլեան եւ Մհ. Յովհաննէս Զալկատըրեան իրեն հետ գերի ինկան եւ աքսորուեցան նախ Կեսարիա

(1) 1830 *ական Թուականներուն Պոլիս իտալական դպրոցի մը մէջ ուսում առած անձ մը, որ գիտակ էր Ֆրանսերէն և Թուրք լեզուներուն, (Հայկ Աճէմեան,* Հայոց Հայրիկը *էջ* 151։

(2) *Պատրիարքը Թերեւս լուր առած էր որ Հայեր կային Պետէրխանի բանակին մէջ և հակազդելու համար ասոր և հաւատարմութեան հաւաստիք ընծայելու համար, յորդորական կոնդակներ ցրուած էր։ Սուլթան Մէճիտ* 1847 *Նոյեմ.* 22*ին Հայոց Պատրիաքին այս ընթացքին համար գոհունակութեան գիր գրած է։*

եւ ապա Կապան Մատեն (Հայկ Աճէմեան, *նոյն.* էջ 154)։

Պետէրխանի գաղափարը սակայն տակաւին ատեն մը կենդանի մնաց իր ցեղին մէջ։

Պէտէրխան նուաճած էր նաեւ Պոհսանի դրացի Ճերնախը, ուր իր աքսորէն վերջ կը զօրանայ Ճերնախի աղան եւ կը նուաճէ Պոհսանը։

Դըհ, որ 800 տունէ բաղկացած Հայ շրջան մըն էր, դրացի Պոհսանի եւ Ճերնախի, հակառակ այս վերջիններուն ունեցած թշնամութեան, չեն նուաճուիր Ճերնախցիներէն, վասնզի բնակիչները զինուած, եւ վէս եւ ռազմիկ մարդիկ էին։

Այսպէս, նեղ սահմանի մը մէջ Պետէրխանեան իշխանութիւնը շարունակուեցաւ մինչեւ 1870 ական թուականները։

Պետէրխանի որդիներէն Օսման փաշա, 1877—78ին ռուսեւթուրք պատերազմին ատեն, Պոհսանէն հաւաքեց 8,000 քուրտ եւ գնաց Կարս, ռուսական ճակատ։

Դարձին քուրտերը իրենց զէնքերը չյանձնեցին եւ Օսման փաշան (1) ալ, իրենց հետ համաձայն Դըհ մտնելով ապստամբեցաւ։

Դըհեցի Հայերը ամբողջ իրենք պարենաւորեցին ապստամբ զօրքը։

Օսմանեան 15 վաշտ զօրք Դըհի վրայ գնաց, եւ նուաճեց գաւառը, եւ ցրուեց Դըհեցիքը։

Պետէրխաններու այդ թուականէն, մանաւանդ առաջին համաշխարհային պատերազմէն վերջ ծագած քրտական ապստամբութեան մէջ ղեկավար դեր կատարած են, առանց սակայն ոեւէ արդիւնքի հասնելու։

## Բ.) ՏԵՐՍԻՄ

Հին Տիարպէքիրի կուսակալութեան արեւմտեան ծայրը, Եփրատի երկու ճիւղերուն միջեւ, կը գտնուի Տերսիմ, որուն գլխաւոր քաղաքն էր Խօզաթ։

Տերսիմ, 1878էն ի վեր մաս կը կազմէ, Նորակազմ Մամուրէթ-էլ-Ազիզի (Խարբերդ) կուսակալութեան։

Տերսիմ խիստ լեռնային եւ դժուարամատոյց, բաւական ընդարձակ երկրամաս մըն է Եփրատի արեւելեան կողմը եւ Կամախի հարաւակողմը, շրջապատուած քարալեռներով, որոնք կ'սկսին Տերսիմի լեռնէն եւ կը տարածուին մինչեւ Քղի։ Անիկա կը ներկայացնէ տեսակ մը անառիկ ամրոց։

Տերսիմի մէջ են Խօզաթէն զատ Չարսանճագի եւ Չմշկածագի շրջանները։

Ըստ Տոմաշէկի այս շրջանին մէջ բնակող քուրտերը Դաւզիկեան կամ «Աւազակ-քուրտեր» են որոնց ծագումը շատ մութ է։

Ուրիշներ Տերսիմի քուրտերը կը կարծեն սերունդները Դիլում կամ Դելմիկ հին ժողովուրդին որ Զ. դարուն կը յիշուի թէ կը բնակէր արդի Իրանի մայրաքաղաքին Թէհրանի մօտերը Տելմաստանի կամ Դիլմաստանի մէջ ինչպէս կը տեսնուի Սեբէոսի պատմութեան մէջ (էջ 95,239—40)։ Ասոնք կը յիշուին արաբներուն դէմ Մարականի ապստամբութեան մը առթիւ (*նոյն.* 239—240) ինչ որ նշանակելի է։

Թովմա Արծրունի նաեւ կը յիշէ (էջ 340) Դելմուկք անուն ազգ մը որ Հայաստանի հարաւային գաւառներուն, այսօր քրտաբնակ Աղբակի եւ Անձաւացեաց կողմերը արշաւներ ըրած է։

Ասոնք հաւանօրէն Սելջուկեան արշաւանքներու ատեն գաղթած են դէպի Արեւմուտք, անշուշտ Սելջուկեան յաղթական բանակներու հետեւելով, եւ բնակութիւն հաստատած են։ Մուշի արեւմտեան մասերէն՝ Խանտէզի, Վարդոյի եւ Խնուսի ծայրերէն դէպի Փոքր Հայք եւ մինչեւ Սեբաստիոյ եւ Կեսարիոյ մօտերը տարածուած երկրամասին վրայ, երկու ծայրերը սակաւաթիւ ըլլալու պայմանով։

Իրենց խիտ բնակութիւն ունեցած վայրերն են Քղի, Խուզուլջան, Չարսանճագ, Տերսիմ եւ Տուժիք։

Ոմանք կը կարծեն, անոնց կարգ մը քրիստոնէական սովորութիւններուն եւ աւանդութիւններուն վրայ հիմնուած, թէ Հայերու հետ կապ ունին եւ իսլամացած Հայեր են, բայց աւելի հաւանական է կարծել թէ անոնք եկուորներ են որ եկած բնիկ ժողովուրդին՝ հայոց խառնուածեն են եւ տիրապետող եղած են։ Իսկ բնիկ տարրը անոնց մէջ ձուլուած է, պահելով հին հաւատքին եւ սրբատեղիներուն յարգանքը (տես. Լեւոն Լիւլէճեան, *Հայ եւ քուրտ յարաբերութիւնները. Տերսիմի քուրտերը.* ՊԱՅՔԱՐ օրաթերթ, 14 Մարտ 1923)։

Ասոնք կրօնքով ալ հաստատ իսլամներ չեն այլ աղանդաւորներ՝ Ալեւի (Գըզըլ պաշ) են, որ տեսակ մը խառնուրդ է քրիստոնէութեան եւ իսլամութեան, աւելի մօտ քրիստոնէութեան։ Թուրքերը զանոնք կը կոչեն *Մում սոյուտըրան* (ճրագ մարող)։

Հայերը զանոնք կը կոչեն Տըմըլիկ եւ քուրտերը՝ Քրդոսի։ Իսկ անոնք ինքզինքնին կը կոչեն Տըմըլի։

Իրենց գործածած Զազա լեզուին համար, որ խառնուրդ մըն է պարսկերէնի, հայերէնի եւ քրտերէնի *զազա* ալ կը կոչուին։ Կը կոչուին նաեւ *Շէխ Հասանցիք* անշուշտ իրենց աղանդին հիմնադիրին կամ մէկ առաջնորդին անունով։

Ասոնք շատ հազուադէպ է որ քուրտերու հետ խառն բնակին։

Իրենց գիւղերը փոքրիկ եւ բնակութիւննին ալ շատ ցրուած է։ Տուները ամենաողորմելի եւ սնունդնին նախնական է։ Անասնաբուծութենէ եւ խաշնարածութենէ զատ եւ ոչ մէկ ապրուստ ունին։ Միմիայն կորեկ եւ կըլկըլ կը մշակեն եւ կ'ուտեն։

Խիստ համբերատար եւ չարքաշ եւ առանձնասէր են։ Իրենց լեռներուն մէջ ազատ ապրիլ կ'ուզեն եւ աւազակաբարոյ են։ Ցանդուզն եւ յամառ կռուողներ են (տես. *Լումայ*, 1897 Թ. գիրք 134—137)։

Ասոնք մինչեւ մեր օրերը ապստամբ էին եւ աւազակութեամբ կը զբաղէին։

Տերսիմցիք իրենց անառիկ դիրքերուն մէջ մեկուսացած, չեն նուաճուած բնաւ Օսմ. պետութե-

(1) *Օսման փաշա կ'ստորագրէր* «Օսման՝ Իպնի Պէտէր խան, Միրի Պոհսան»։

նէն եւ ազատ ապրած են, առանց իրենց լեռներէն անդին նուաճումներ ընել փորձելու: Ընդհակառակը իրենց միակ ջանքը եղած է զիրենք նուաճելու համար եղած փորձերու դիմադրել եւ իրենց լեռներուն վրայ իրենց ազատութիւնը պահել: Արդարեւ անոնք կրցած են ապարդիւն դարձնել Օսմ. պետութեան կատարած բազմաթիւ փորձերը:

Անոնց անկախ վարչութիւնը աշիրէթապետական էր եւ պզտիկ միութիւններու բաժնուած:

Ասոնց մէջ հայկականներ ալ եղած են:

Լեւոն Լիւլէճեան (տես. *Պայքար,* 14 Մարտ 1923), կը յիշէ օրինակի համար Միրաքեան Հայ տունը որ մինչեւ 1850 պահած էր իր գոյութիւնը Հաւլորի վանքին շուրջ, իշխան ունենալով Միրօն, որ դրամ ալ կը հատանէր:

Խապուն, այժմ աւերակ գիւղը, անոնց մայրաքաղաքն էր, ուր դրամ կը հատանէին հայկական տառերով եւ թագաւորներու պատկերներով։

Այս ինքնիշխան աննուան շրջանը որ կրնար գեղեցիկ կռուան մը ըլլալ Հայ եւ Քուրտ ազատագրութեան Քեմալական շրջանին քանդուեցաւ, վասնզի թուրք զօրքերը կրցան Տերսիմէն ներս թափանցել եւ վերջ տալ ոչ միայն անոնց անկախութեան այլ նաեւ անոնց գոյութեան, ջարդելով եւ տեղահանելով այդ լեռնաշխարհի բնակչութիւնը:

## գ.) ԽԱՐԲԵՐԴ

Ծոփաց կամ Դ. Հայոց Հանձիթ գաւառին կը համապատասխանէ: Ըստ Ալիշանի քաղաքը յունաց Կարկաթիակերտն է: Ունէր ամուր բերդ:

Նախապէս Օսմ. տիրապետութեան տակ կազմած է Տիարպէքիրի կուսակալութեան մաս, բայց յետոյ *Մատէն Էմինի* իշխանութեան ենթարկուած է:

Հաւանօրէն Զազա քուրտերը Տերսիմի լեռներուն մէջ ամփոփուելէ առաջ հոս ալ իշխած են:

Ճաշոց գիրքի մը յիշատակարանը 1466ին գրուած «*ի Խարբերդ քաղաքի... ի թաղն Սինամուտ, ի կաթողիկոսութեան տեառն Սարգսի եւ յեպիսկոպոսութեան տեառն Յովհաննիսի,* եւ իշխանութեան Հասանի խանի...» (*Թորոս Աղբար Բ.* էջ 479) կը հաստատէ թէ անիկա ԺԵ. դարուն էմիր մը ունէր: Այս Հասան խանին կամ բէկին կինն էր Դեսպինա՝ Տրապիզոնի կայսեր դուստրը, որ յոյն կրօնաւորներով լեցուցած է Խարբերդը (*Բնաշխարհիկ Բառարան*, Բ. էջ 161):

Քուրտերու այս շրջանակին մէջ միշտ իշխող դիրք մը ունենալը եւ միշտ խլրտիլը ապացոյց մըն է թէ հոն միշտ այսպէս քուրտ իշխանութիւններ գոյութիւն ունեցած են:

Տոքթ. Բարունակ պէյ Ֆէրուհխան 1847ին Խարբերդ այցելած է, կ՚ըսէ թէ Խարբերդի կուսակալութեան 7 գաւառներէն երկուքը *Չիրօ* եւ *Աղճատաղ* այսպէս քուրտերուն ձեռքն էին (*Ճանապարհորդութիւն ի Բաբելոն*, էջ 44)։

## դ.) ԲԱԼՈՒ

Եփրատի եզերքը, սահմանակից Ճապաղջուրի, Խարբերդի, Չարսանճագի եւ Տերսիմի, այս գաւառը երբեմն ինքնագլուխ քուրտ *հիւքիւմէթ* մը կը կազմէր միայն անուանական կերպով ենթակայ Տիարպէքիրի փաշային:

Անկախ պէյը հարկ կ՚առնէր իր հպատակներէն անձ գլուխ 22 փարա (Ինճիճեան, Ա. հտ. էջ 225):

Պէյը կը նստէր Բալու քաղաքին մէջ որ բերդաքաղաք մըն էր, լերան մը կատարը շինուած:

Բալուի պէյերէն կը յիշատակուի մէկը 1560ին գրուած Աւետարանի մը մէջ, ուր կը կարդանք. «*Յիշատակարանս գրեցաւ իյամուրն Բալու, իպարոնութեան որդւոյ պարոն Ճիմշիտ պէկին, որ Հիւսէին Ջանպէկ աւենն: Աստուած զինքն հաստատ պահէ իպարոնութեան վերայ՝ Հայոց ազգիս համար, որ խիստ կու սիրէ, կուընդունէ, Աստուած զիւր աւրն ՃՌ. (=100,000) անէ, զիւր բարութիւն աւրհնէ եւ հաստատ պահէ մինչեւ իխոր ծերութիւնն*» (տես. *Թորոս Աղբար, Բ.* էջ 395):

Հաւանօրէն Բալուի քուրտ իշխանութիւնը բաւական կանուխ նուաճուած շրջաններէն մէկը պէտք է ըլլայ:

## ե.) ԷԿԼ ԿԱՄ ԱԿԼ

Պատմական Անգեղտուն գաւառն էր որ Տիարպէքիրի հիւսիսային արեւմտեան կողմը կը գտնուէր: Նախապէս ստորադասուած էր Տիարպէքիրի փաշային, սակայն իբր *հիւքիւմէթ* ունէր իր մասնաւոր քուրտ պէյը, որ պատերազմի ատեն կրնար հանել մինչեւ 1,000 հրացանակիր (*Թիւֆէնկճի*):

Յետոյ այս գաւառը Տիարպէքիրի փաշայութենէն բաժնուեցաւ եւ ենթարկուեցաւ *Մատէն Էմին* կոչուած պաշտօնատարի մը որուն ենթակայ էին նաեւ Խարբերդ, Չերմուկ, Չնքուշ, Արղնի։ Իշխանութեան մէջ իշխանութիւն մըն էր իրապէս։

Էկիլ 1656էն առաջ բարգաւաճ քաղաք մըն էր, բայց սովի մը հետեւանքով բնակիչները ցրուեցան եւ Հայոց թիւը 250էն 60 տունի իջաւ:

Էկիլի մօտ լերան մը կատարը կը գտնուէր քուրտ պէյին բերդը, բնական եւ արհեստական պարիսպներով շրջապատուած:



## 5. ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔՈՒՐՏ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ (ՊԱՅԱԶԻՏԻ ՓԱՇԱՅՈՒԹԻՒՆ)

Արդէն բացատրուած է վերը (էջ 438) թէ քուրտերը թրքական Հայաստանի հիւսիսային կողմին, Պայազիտ-Ալաշկերտի շրջանը կը կոչեն *Միլիվան*: Հոն քուրտերը համեմատաբար ուշ հաստատուած են, իսկ իշխանութիւն, ա՛լ աւելի ուշ ունեցած են, այնպէս որ Հ. Մօրիցիօ Կարզոնիի ժամանակ այս իշխանութիւնը հաստատուած չէր, որով անիկա չէ կրցած յիշել զայն:

Ինչպէս տեսնուեցաւ, Մոլլա Իտրիսն էր որ քուրտերը հարաւային եւ կեդրոնական Հայաստանէն փոխադրեց արեւելեան եւ հիւսիսային Հայաստան զանոնք սահմանապահ դարձնելու համար (տես. վերը, էջ 438):

Վանի պարագան արդէն պարզուած է վերը, (էջ 447): Սահմանապահ քուրտերը վերջը դարձան ապստամբներ եւ շարունակ զբաղում հայթայթեցին Օսմ. պետութեան.

Բարեբախտաբար այլեւս Պարսկաստան տկարացած ըլլալով, չէր փորձեր Օսմ. երկիր մտնել:

Սակայն ԺԸ. դարուն վերջերը, նոր ապառնալից ոյժ մը երեւան կուգար որուն դիմագրաւելու համար, թուրքերը կրկին քուրտերուն ապաւինելու սխալը գործեցին, վասնզի ԺԸ. դարուն վերջերը Էրզրումի կուսակալութենէն անջատեցին Պայազիտի սանճագը, եւ առանձին փաշայութեան մը վերածեցին (Ինճիճեան, *Աշխ. Ա.* էջ 113), եւ անոր գլուխը դրին հռչակաւոր քուրտ Մահմուտ փաշան, ժառանգական իրաւունքով, որդւոց որդի յաջորդութեամբ, եւ այսպէս, առիթ տուին կազմելու քուրտ նոր բռնակալութիւն մը: Պայազիտ բերդաքաղաք մըն էր պարսիկ սահմանագլուխի վրայ եւ շատ կարեւոր վայր մը, որուն իշխանութիւնը Օսմ. կառավարութիւնը քուրտերուն վստահելով եւ անոնց տալով կէս-անկախութիւն մը, կ՚ուզէր զանոնք իրեն կապել:

Այս փաշայութեան սահմաններուն մէջ էին նաեւ Ալաշկերտ եւ Տիատին քաղաքները որով քուրտերէն *Միլիվան* կոչուած շրջանը իր բազմաթիւ քրտական ցեղերով. ենթարկուած էր այս փաշայութեան:

Մահմուտ փաշա, դրամով գնելով ընդարձակ հողեր, կ՚ամրապնդէ իր իշխանութիւնը, քանի որ անոնց վրայ բնակող բնակիչները, իբր հողին կապուած երկրագործներ, տեսակ մը ստրուկ կը դառնային:

Անիկա ձեռք բերած էր նաեւ իրաւունք բոլոր պաշտօնեաները իր կողմէն նշանակելու, եւ ինչպէս նաեւ հարկադրելու քրիստոնեայ բնակիչները, այսինքն Հայերը, որ կերակրեն քուրտ զօրքը (*Արարատ* ամսագիր, 1889 էջ 34):

Մահմուտ փաշայի յաջորդներէն կը յիշուի իր թոռը Իսաք կամ Իսախ փաշա, որ ԺԸ. դարուն վերջերը վերաշինած է Պայազիտի բերդերը, բարձր պարիսպներով (Ինճիճեան, *Աշխ. Ա.* էջ 114): ԺԹ. դարուն առաջին կիսուն Պայազիտ-Ալաշկերտ կը կառավարուէր ժառանգական իրաւամբ իշխող քուրտ Պահլիւլ փաշայի սերունդէն քուրտերով:

Սուլթան Մէճիտ (1839—1861) որ վերջ տուած է Պէտէրխանի իշխանութեան, բանակ մըն ալ ղրկեց Պահլիւլ փաշայի վրայ եւ անոր ալ իշխանութեան վերջ տուաւ:

Պայազիտի այս քուրտ իշխանութիւնը իրեն ենթարկած է շրջակայ զանազան վայրերու փոքր քուրտ պէկերը:

ԺԹ. դարու ընթացքին թուրքերը յաջողած են իրենց պետութեան ընդհանուր կազմին մէջ առնել այս քուրտ իշխանութիւնը:

### ա.) ՄԱՆԱԶԿԵՐՏԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Մանազկերտ, նախնեաց Հարք գաւառը, ենթարկուած էր երբեմն Տարոնի իշխաններուն:

Քուրտ իշխանութիւններու կազմութենէն վերջ, ինչպէս տեսնուեցաւ (էջ 445), աւատապետական կարգերով Հայաստանի կեդրոնի վրայ կազմուած Բաղէշի զօրաւոր քուրտ իշխանապետութեան ենթակայ քուրտ պէյութիւն մըն էր Մանազկերտ, համանուն քաղաքը կեդրոն ունենալով: Արդ, Բաղէշ, անուանապէս Վանի փաշաներուն ենթարկուած ըլլալով, Մանազկերտ ալ նոյն ձեւով անոնց ստորադասուած էր, եւ երբ իր քուրտ բէկերը գլուխ վերցուցած են, անոնց դէմ ալ զինուորական միջոցներ ձեռք առնուած են:

Այսպէս, կը յիշուի թէ 22 Հոկտեմբեր 1699ին, Մանազկերտի վրայ գացած է Վանի Ալի փաշան եւ այրած է շատ մը գաւառներ եւ ապա դարձած է Վան (*Դիւան Հայոց Պատմութեան*, Ժ. հտ. էջ 117):

1740—1750 թուականներուն երբ Մուշի Ալաշին բէկը բռնացաւ Բաղէշի քուրտ խանին վրայ, անկէ կորզեց նաեւ Մանազկերտը, զոր կը կառավարէր *միւտիրով* եւ *մուսէլլիմով*:

Ալաշին պէյ, որովհետեւ հետզհետէ կը զօրանար եւ կ՚ընդարձակէր իր իշխանութիւնը, Սուլթանը 1747ին հրահանգ տուաւ Էրզրումի եւ Պայազիտի փաշաներուն որ Մուշի վրայ երթան (տես. վերը, էջ 446) եւ սպաննեն զայն:

Այս արշաւանքին միջոցին անոնց կը գործակցի Մանազկերտի բէկը, Խնուսի եւ Քղիի բէկերուն հետ, եւ այսպէս անիկա կը ձերբազատուի եւ կը կազմէ անջատ իշխանութիւն մը, այս անգամ հիւսիսային սահմանագլուխի պաշտպանութեան համար կազմուած Պայազիտի փաշայութեան ենթարկուելով:

Այս առթիւ հաւանօրէն Մանազկերտ քաղաքը եւ շուրջը, կը տրուի Բռնոքցի թուրքերուն, որոնք մինչեւ դարուս սկիզբը կը մնային եւ կը կոչուէին *բերդի բէկեր* (*Ազգագրական Հանդէս*. Ե. գիրք, էջ 9—10, եւ *Լումայ*, 1897. Ա. գիրք):

Մանազկերտի քուրտ իշխանութեան արեւմտեան կողմը կը գտնուէր Պուլանըգ գաւառը, որ երբեմն ուղղակի Մուշի քուրտ պէյերուն եւ երբեմն Մանազկերտի եւ երբեմն ալ Խնուսի քուրտ պէյերուն

ստորադասուած է, իսկ երբեմն ալ անոնց միջեւ բաժ-նուած եւ մէկ մասին՝ մէկը եւ միւսին՝ ուրիշ մը տիրած է (Ինճիճեան, *Աշխ.* Ա. էջ 199):

Այսպէս, Պուլանըխ, կռուախնձոր եղած է շրջակայ քուրտ իշխող պէյերուն միջեւ:

Այս գաւառը ունէր 360 գիւղեր, մեծ մա-սամբ հայաբնակ: 1762ին քուրտ պէյերու իրարու դէմ մղած կռիւներէն շատ մը գիւղեր քանդուեցան եւ մնացին միայն 100 գիւղեր: ԺԸ. դարուն վերջերը դրացի Խնուսի իշխանութեան ենթարկուած էր ուր, Լեզգիներ տիրած էին, եւ կը ջանային տի-րել նաեւ Մանազկերտի: Պայազիտի փաշան, իրեն վասալ Մանազկերտի բէկին օգնութեան կը հասնի եւ այդ լեզգի բէկը կը վանէ Մանազկերտէն:

Այս պատերազմները բոլորովին աւերեցին Մանազկերտը, որուն գիւղերուն թիւը 20-ի իջաւ:

Գաւառին կեդրոնը՝ Մանազկերտ, բերդաքա-ղաք մըն էր, եւ առաջ ունէր 6,000 տուն, մինչ ԺԹ. դարուն սկիզբը հազիւ 107 տուն մնացած էր, որոնցմէ միայն 7 կամ 8 տունը Հայ, իսկ մնացեալները քուրտ (Հ. Ղուկաս Ինճիճեան, *Աշխ. Ա.* հտ. էջ 111, Լէօ. Գ. 735):

## Գ. ՆԵՍՏՈՐԱԿԱՆ ԱՆԿԱԽ ՀԱՄԱՅՆՔ

Հայ ազատ համայնքներու եւ քուրտ անկախ բէկերու կողքին թրքական Հայաստանի մէջ, գոյութիւն ունեցած է նաեւ քրիստոնեայ Նեստորական-Քաղդէա-ցի ազատ համայնք մը եւս, որ եկուոր ժողովուրդ մը կազմած էր Վասպուրականի հարաւակողմը, ան-մատոյց լեռներու մէջ:

Այս ժողովուրդը, մնացորդն էր հին Քաղդէա-ցիներուն եւ Ասորեստանցիներուն, որոնք քրիստոնեայ եղած էին եւ Նեստորականութեան յարած:

Արաբական խալիֆայութեան սահմաններուն մէջ երբեմն անոնք շատ տարածուած էին, եւ իրենց պատրիարքները շատ յարգուած՝ արաբներու կողմէ (1): Պատրիարքը կը նստէր Պաղտատ խալիֆային մայրա-քաղաքը:

Պաղտատը՝ Հուլաղու խանէն գրաւուելէն (1258) եւ Թիմուր Լէնկէն կործանելէն (1400) վերջ, Նեստորական պատրիարքական աթոռը անշքացաւ եւ Նեստորականները ապաստանեցան Քուրտիստանի լեռ-ները, ուր Հեքեարի սանճագին հարաւ-արեւմտեան կողմը հաստատուեցան, իրենց գլուխը ունենալով Մար Շիմոն կոչուած պատրիարքներ:

Այս շրջանակին մէջ ասորիները կրցան ստեղ-ծել եւ պահպանել ինքնուրոյն, անկախ համայնք մը:

Նեստորական Ասորիներու սեփական երկիրն էր Հեքեարիի Ճուլամերկ Գազային Թիար, Թխում, Բազ, Ջելու, Դէզ կոչուած չափազանց լեռնոտ շրջանները, գրեթէ բոլորովին անմատչելի օտարներու: Հազիւ 40,000 հոգի էին Ճուլամերկ Գազային մէջ, իսկ 30,000-ը կը գտնուէին մօտակայ վայրեր, Հեքեարի եւ Վանի սանճագներուն մէջ:

Բոլորովին մեկուսացած այս լեռնավայրին մէջ պահած են իրենց լեզուն եւ կը խօսին ասորերէն: Իբր միութիւն Ասորիները ունին ընդհանուր երկրամաս մը Քոչանէս. Մեծ եւ Փոքր Թիար, Թխում, Բազ, Ջիլու եւ Ըշտազ, ուր իրենցմէ զատ 5 առ հարիւր համեմա-տութեամբ միայն քուրտեր կը բնակէին:

Միութեան գլուխն էր Մար-Շիմոնը որ թէ՛ կրօնական եւ թէ՛ քաղաքական պետն էր: Ան իբր կրօնապետ կը լուծէր բոլոր կրօնական հարցերը, կը տնօրինէր եկեղեցական գործերը, կը վճռէր ամուսնա-կան խնդիրները եւ կրօնական նուիրապետական կար-գերը կը պահէր:

Իսկ իբր քաղաքական միութեան մը պետ, ան կը հաւաքէր թուրք կառավարութեան տրուելիք հար-կերը եւ կը յանձնէր անոր, ինչպէս նաեւ կը ղեկա-վարէր ասորի զինեալ ոյժերը, ապստամբութեան կամ ինքնապաշտպանութեան պայքարի մը միջոցին եւ ինքն կը վարէր բանակցութիւնները եւ կը կնքէր դաշինք-ները:

Իբր գերագոյն պետ ինք կը հաստատէր ասորի-ներու սեփական երկրամասին Մելիքները կամ պաշ-տօնանկ կ՚ընէր:

Իրեն կը պատկանէր դատել քրէական յան-ցանքները:

Մար Շիմոնի պաշտօնը ժառանգական էր, եղբօրորդին կը յաջորդէր գրեթէ միշտ:

Մար Շիմոնի աթոռը Տեղքոնէն Մուսուլ փո-խադրուած եւ ԺԷ. դարուն երկրորդ կէսին Ճուլամերկ Գազային Քոչանիս գիւղը հաստատուած էր:

Մար Շիմոն ունէր տեղակալ մը, որ տեսակ մը գործակալ էր եւ ինքն կը տնօրինէր գործերը:

Մար Շիմոն թուրք կառավարութեան տրուելիք տուրքէն զատ կ՚ստանար մէկ դրուշ տուրք, այր եւ կին, ամէն անձէ, եւ տասանորդ ամէն արդիւնաբերութիւն-ներէ, իբր եկեղեցական տուրք: Իսկ բարձր հոգեւո-րականութեան պահպանութեան համար կը հաւաքուէր *ըիշվէյատէ* կոչուած տարեկան տուրք մը, որ հաւասար էր տեղեկան եկեղեցականներու տուրքին: Տուգանքներն ալ Մար Շիմոնին եւ եպիսկոպոսներուն կը պատկա-նէին:

Մար Շիմոն երբ հովուական այցելութեան ելլէր, ամէն գիւղ պարտաւոր էր թէ՛ խաչահամբոյր եւ թէ՛ գառնուկ եւ ոչխար նուէր տալ:

Այս լեռնական ասորիները կը բաժնուէին եօթը տոհմերու (*աշիրէթ*) որոնց ամէն մէկը կեդրոնա-ցած էր որոշ երկիրի մը վրայ, որ կը կրէր տոհմին անունը, կը կազմէր քանի մը գիւղ, ունէր ընդհանուր արօտատեղի, ձմերանոց, անտառ, եւ վարելահող:

Իւրաքանչիւր տոհմ ունէր իր ինքնուրոյն ան-կախ կառավարութիւնը, իր ներքին գործերուն հա-մար, իսկ զօրապետ-դատաւորն էր Մելիքը խորհրդա-կան ունենալով քահանաները:

Մելիքները կ՚ընտրուէին հին եւ զօրեղ գեր-

*(1) Այս իրողութիւնը կը հաստատէ Մուկտաֆի խա-լիֆայի* (1136—1160) *Աբտիշօ Գ. Նեստորական պատրիարքին շնորհած արտօնագիրը որ* 1924*ին Ա. Մինգանա գտաւ բրիտա-նական Թանգարանի արաբական ձեռագիրներուն մէջ:*

դաստաններու անդամներէն ձեւականապէս ընտրութեամբ, իսկ գործնապէս ժառանգութեամբ, վասնզի Մելիքին մահուան առթիւ հաւաքուած ամբոխը, սովորաբար կ'ընտրէր Մելիքին երէց որդին եւ երբեմն ալ եղբայրը: Նոր ընտրուած Մելիքը ընծաներով կը ներկայանար Մար Շիմոնին եւ անկէ խալաթ ստանալով կը հաստատուէր մելիքական պաշտօնին մէջ:

Մելիքը երկիրին մէջ կը պահէր կարգ ու կանոնը, կամաւորներու գլուխն անցած կը պաշտպանէր իր տոհմը, շրջակայ ասորի միւս տոհմերու եւ քիւրտերու յարձակումներէն եւ կամ ինքը յարձակում կը գործէր, կ'ստանար տանուտէրներուն հաւաքած հարկերը եւ կը տանէր ու կը յանձնէր Մար Շիմոնին, կը վարէր քաղաքային դատերը, իսկ քրէականներուն համար կը դիմէր Մար Շիմոնին։

Տոհմերը կը բաժնուէին *օճախ*ներու կամ *գաւիլ*ներու, որոնց անդամները զիրենք միեւնոյն նախահօրմէն սերած կը համարէին եւ կը տիրապետէին նոյն հողաբաժինին, ունէին ընդհանուր գերեզմանատուն մը եւ ներքին գործերը կը վարէին հասարակական կամ ծերերու ժողովներով, որոնց կը նախագահէր տանուտէրը. ընտրուած հին եւ զօրեղ գերդաստանէ մը եւ հաստատուած նոյն տոհմին Մելիքէն:

Տանուտէրը կը գանձէր հարկերը եւ կը յանձնէր Մելիքին, կը վարէր դատերը, ծանր յանցանքներու համար դիմելով Մելիքին:

Այսպէս, Նեստորական անկախ համայնքը պարզ ու խիստ նախնական վարչաձեւով մը եւ նահապետական կեանքով կ'ապրէր իր լեռներուն մէջ, պաշտպանելով իր գոյութիւնը իբր յետին ստուերը անցեալ փառաւորութեան մը:

Նեստորական այս անկախ համայնքին մասն էին.

1. Ջելուի Ջարանիշի
2. Ջիրի
3. Վերին Թիարի
4. Ներքին Թիարի
5. Թխումի
6. Բազի
7. Թալի

մելիքութիւնները, որոնց աւանդական պատմութիւնը տուած է, ծերերու բերնէն հաւաքելով, Երուանդ Լալայեան, (տես. (*Ազգագրական Հանդէս ԻԴ.* գիրք էջ 200—213): Հոն կը տեսնուի որ այս ժողովուրդը աւանդաբար գիտէ իր քաղդէական ծագումը եւ իր արդի բնակավայրը եկած ըլլալը հեռուէն: Նեստորականներու մասին Երուանդ Լալայեան ունի *Վասպուրականի Ասորիները* խորագրով ուսումնասիրութիւն մը (*Ազգագրական Հանդէսի* մէջ ԻԴ. գիրք էջ 181—232) ուր շատ խնամով ներկայացուցած է զանոնք, իրենց լիակատար ազգագրութեամբ:

Նեստորականները որոնք Պետէրխանի ապստամբութեան ատեն 12,000 հոգի կորսնցուցած էին ջարդով, 1914—1918 համաշխարհային պատերազմին մէջ բոլորովին բնաջնջուեցան թուրք կառավարութեան կողմէ, վասնզի անոնք ալ հայոց պէս զոհ եղան նենգ խոստումներու եւ երեք զումարտակ կամաւորներ տուին:

Զինադադարէն վերջ Մար Շիմոն ապաստանած էր Վանեցի Հայերու հետ Պաքուպա (Պաղտատի մօտ) եւ ինչպէս Զաւէն Պատրիարք կը պատմէ (*Պատրիարքական Յուշերս*, էջ 264) մեծ յոյսերով առլցուն, կը յուսար առանձին ազգ մը եւ առանձին երկիր մը կազմել։ Այս նպատակով անիկա Եւրոպա ալ գնաց, ընկերակցութեամբ իր քրոջ, Սուրմա Խանումի (1), որ ամերիկեան վարժարանի մը մէջ կրթուած էր եւ իր եղբօրը դիւանապետութիւնը կը կատարէր, եւ Աղա Պետրոսի, որ Ամերիկա ապրած եւ պատերազմին ատեն իրենց կռիւներուն հրամանատարի պաշտօն վարած էր: Նեստորականք դժբախտաբար այսօր աննշան թիւով թափառականներու խումբի մը վերածուած են:

## Դ. ՎՐԱՑԻ ԱՆԿԱԽ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ

## (ԱԽԼՑԽԱՅԻ ՓԱՇԱՅՈՒԹԻՒՆ)

Վրաստան ինչպէս տեսնուեցաւ պարսիկ տիրապետութեան տակ միշտ իր անկախութիւնը պահած էր, երբեմն ճանչնալով եւ երբեմն մերժելով պարսիկ գերիշխանութիւնը:

Տեսնուեցաւ նաեւ թէ պարսիկ ճնշումին տակ երբեմն երկիրին թագաւորները ընդունած էին իսլամութիւնը: Իրենց հետ ժողովուրդէն ալ մաս մը իսլամացած էր։

Երբ թուրքերը արեւմուտքէն առաջանալով Թրքահայաստանի տիրեցին, Վրաստան սահմանակից եղաւ Օսմանեան պետութեան եւ թուրք եւ պարսիկ երկարատեւ պատերազմներուն մէջ ոտնակոխ եղաւ երկու բանակներէն ալ: Թուրքերը ոչ նուազ անգթութեամբ վարուած են վրացիներու հետ, որոնք իսլամանալով կրցած են զերծ մնալ հարստահարութենէ: Մասնաւորապէս Օսմ. պետութեան սահմանակից շրջաններու մէջ մահմետականութիւնը տարածուած էր:

Իսլամ վրացիք կը ճանչցուին իրենց բնակավայրին անունով Աճարացի, եւ Օսմ. տիրապետութեան շրջանին ունեցած են առանձնաշնորհեալ դիրք:

Վրաստան, որ Հայաստանի պէս թատերավայր եղած էր թուրք եւ պարսիկ կռիւներու, երբեմն թուրք լուծին ալ ենթարկուած է ամբողջութեամբ, սակայն առաւելապէս հայոց եւ վրացիներու միջեւ դարերով վէճի առարկայ եղած Վրանայքը կամ Սոմխէթին աւելի շատ թրքական տիրապետութեան ենթարկուած է:

Այս շրջանին գլխաւոր քաղաքն էր Ախլցախա, որ կը գտնուէր Հայոց Տայք նահանգին Ճակք կամ Ճակատք իսկ ըստ վրացիներու՝ Սամցխէ գաւառին մէջ: Ախլցխա կամ Ախալցիխէ, վրացերէն կը նշանակէ Նոր Բերդ, ինչպէս մօտակայ Ախալքալաք, որ կը գտնուէր Գուգարաց Ջաւախք գաւառին մէջ, կը նշանակէ վրացերէն Նոր Քաղաք:

(1) *Երուանդ Լալայեան զայն կը յիշէ Սուրմէ Խանում անունով։*

ԺԴ. դարուն Սամցխէ (Ախլցխա–Ախալքալաքի շուրջ) անկախ էր, Աթաբէկի մը իշխանութեան տակ, Վրաց Գէորգի թագաւորին հաւանութեամբ: Առաջին Աթաբէկը եղած էր Սարգիս անուն մէկը 1269ին (Հ. Յակ. Տաշեան, *Հայ բնակչութիւնը Սեւ ծովէն մինչեւ Կարին*, 1921, Վիեննա էջ 74):

Ասկէ վերջը երկիրը փոխանակ Սամցխէի (= Երկիր Մեսխաց) կոչուելու Սա-Աթաբէկ (= Երկիր Աթաբէկներու = իշխանաց երկիր) կոչուեցաւ։

Մինչեւ 1463 թուականը աթաբէկերը Վրաց թագաւորէն կը հաստատուէին, բայց Կուարկուարէ աթաբէկը ինքզինքն անկախ հռչակեց: Վրաց թագաւորները իզուր աշխատեցան հպատակեցնել:

1547ին երբ թուրքերը սկսան առաջանալ դէպի Ճորոխի հովիտը, Շահ-Թահմազ խան օգնութեան հասաւ Ախլցխայի Քէյ-Խոսրով աթաբէկին:

1553էն 1580 շարունակ թուրք եւ պարսիկ բանակներէն ոտնակոխ եղած է երկիրը, մանաւանդ երբ Կուարկուարէ եւ Մանուչար կամ Մէնուչէհր յաջորդեցին իրենց Քէյ Խոսրով հօրը:

1579ին, Սուլթան Մուրատ Գ.ի (1574—1595) հրամանով Լալա Մուսթաֆա փաշա երբ առաջացաւ դէպի Կովկասի սիրտը, Կարսի Թոխմախ խանին յաղթելէ վերջ (1), Չըլտըրի ճակատամարտին մէջ (1578), թուրքերը տիրեցին Վրաստանի (տես. վերը, էջ 420) ինչպէս նաեւ 1579ին Ախլցխայի, երբ Մանուչար կը կառավարէր երկիրը: Անիկա իր քաջութեամբ հիացում պատճառեց թուրքերուն, որոնք զինքը Պոլիս տարին իբր գերի, սակայն Սուլթանը զայն փաշայութեամբ պատուելով դարձուց իր երկիրը:

Այսպէս, հաստատուեցաւ Ախլցախայի փաշայութիւնը, որուն բնակիչներուն մէջ մեծամասնութիւն էին իսլամացած վրացիները, իսկ յետոյ կուգային քրիստոնեայ վրացիք եւ Հայերը:

Սակայն Մանուչարի իր երկիրին տիրանալէն վերջ, պարսիկները վերստին գրաւեցին Վրաստանը (տես. վերը, էջ 420) զոր Սինան փաշա կրկին գրաւեց 1571ին, բայց շուտով պարտաւորուեցաւ նահանջելու դէպի Կարին: Մանուչար այս փոփոխական յաջողութիւններով պատերազմի ընթացքին ինքն ալ անկախ դարձաւ եւ չճանչցաւ Պոլսոյ Սուլթանին հեղինակութիւնը, ուստի թուրքերը իրեն դէմ հանեցին շրջակայ փաշաները, բայց չյաջողեցան, եւ վերջապէս պարտաւորուեցան ճանչնալ Մանուչարի անկախութիւնը, 1587ին:

Մանուչարին 1614ին յաջորդեց իր համանուն որդին:

1590ին երբ թուրքերը տիրեցին Կովկասի (վերը, էջ 420) Ախլցխա եւս նուաճուեցաւ, սակայն 1608ին Շահ-Աբաս գրաւեց նաեւ Ախլցխան, որ մինչեւ 1617, վրացիներուն պարսիկները իրենց երկրէն վանելը, մնաց պարսից ձեռքը (տես. վերը, էջ 420):

1625ին Սամցխէի աթաբէկը Բեգա Գ., հաւանորէն Մանուչարի սերունդէն. իր իշխանութիւնը փրկելու համար մահմետական կ'ըլլայ ինքն՝ առնելով Սաֆար փաշա անունը (Հ. Յակ. Տաշեան *նոյն*. էջ 75): Արդարեւ ասով փրկուեցաւ այս իշխանութիւնը վասնզի երբ 1636ին, Սուլթան Մուրատ Դ.ի (1622—1640) մեծ վէզիրը Քէնան փաշա, պաշարեց քաղաքը, որ 23 օրերու դիմադրութենէ մը վերջ անձնատուր եղաւ եւ վեց բերդերու հետ Օսմանցիներու անցաւ, այս փաշայութիւնը որուն կ'իշխէր Եուսուֆ փաշա (1635էն սկսեալ) իբր յաջորդ Սաֆար փաշայի, մնաց իր պաշտօնին մէջ եւ իբր մոլեռանդ մահմետական սաստիկ կրօնական հալածանք՝ գործադրեց: Արդէն քիչ ետքը վրացիք մահմետական եղած էին. ինչպէս նաեւ վրածէս Հայերը, որոնք 1643ին զանգուածօրէն իսլամացան «խարան»ի պատճառով (Տաշեան. *նոյն*. էջ 75–6): Սամցխէ, վերածուեցաւ Օսմ. փաշայութեան մը, որ ժառանգական էր եւ սահմանապահ (*օճախլըխ*): Այս փաշայութիւնը նախ կոչուեցաւ Չըլտըրի անունով, թէեւ փաշան կը նստէր Ախլցխա, որուն անունը առաւ վերջը, երբ մանաւանդ Չըլտըր բոլորովին ամայացաւ: Ախալցըխայի փաշային ստորադրուած էին կուսակալութեան զանազան մասերը հաստատուած բէկեր:

Սաֆար փաշայի սերունդները հոն իշխեցին մինչեւ ԺԹ. դարուն սկիզբը, շինելով քաղաքին մէջ եւ շուրջը, մզկիթներ, խաներ, բաղնիքներ եւ մեդրէսէներ:

ԺԸ. դարուն վերջերը, 1784ին, երբ Վրաց Հերակլ թագաւորը իր երկիրը Ռուսիոյ հովանաւորութեան տակ դրաւ, այս սերունդէն Սիւլէյման փաշա, ապառնալիք մը տեսնելով այս հովանաւորութեան մէջ, իբր հաւատարիմ հորտ Սուլթանին, օգնութիւն ուզեց (տես. վերը, էջ 424) սակայն Բ. Դուռը չուզեց պատերազմիլ ռուսերու դէմ, այլ թելադրեց Ախլցխայի փաշային որ Կովկասի մէջ ընդդէմ ռուսերու խմբերու միութիւն մը ստեղծէ: Սիւլէյման փաշա, այս ուղղութեամբ ձեռնարկներ ըրաւ, թելադրելով Լեզգիները որ յարձակին Վրաստանի վրայ: Հերակլ եւ Սողոմոն թագաւորները փոխադարձաբար, Սիւլէյման փաշայի վրայ յարձակեցան եւ Ախալքալաքը պաշարեցին բայց չկրցան գրաւել:

Հերակլ Սիւլէյման փաշայի հետ հաշտուելու համար ուզեց բանակցիլ, սակայն Շուշիի խանը արգելք եղաւ (տես. վերը, էջ 424):

Ռուսերը երբ դէպի Կովկաս հարաւը հասան, Ախլցխան եւ Ախալքալաք քաղաքները գրաւեցին։

1807 զօր. Գուտովիչ պաշարեց Ախալքալաքը, բայց չկրցաւ գրաւել քաղաքը, 2,000 զինուոր ի զուր տեղ կորսնցնելէ վերջ, 1810ին առաջին անգամ Ախլցխան գրաւեց Թորմասով զօրավարը, իսկ Ախալքալաքի վրայ գիշերային յարձակում մը գործեց Փաւլուզզի գնդապետը (4 Սեպտ. 1810) որ մեծ ջարդ մը տուաւ թուրքերուն:

1811ին Դեկտ. 7ին, ռուսերը անպատմելի նեղութիւններով, Քարբալեվսքիի առաջնորդութեամբ անցնելով Թրիալէթու լեռներէն, գիշերանց յարձա-

(1) *Այս պատերազմը թուրքերու եւ պարսից միջեւ 13 տարի տեւած է։ 1590ին հաշտութիւն կնքուած է, Օսմանցիներու ձգուելով Վրաստանը, Շիրուանը, Երեւանի խանութիւնը եւ Ատրպատականի մէկ մասը։*

կեցան Ախալքալաքի վրայ եւ տիրեցին քաղաքին, սակայն դարձեալ հաշտութեան դաշինքով Ախլցխայի հետ թուրքերուն թողուցին։ Միայն 1828ին է որ ռուսերը զօր. Պասքեւիչի հրամանատարութեամբ վերջնապէս գրաւեցին թէ՛ Ախլցխա եւ թէ՛ Ախալքալաք քաղաքները։

## Դ. ԼԱԶ ՁՈՐԱՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ

Լազիստան, մեր նախնեաց Խաղտիքը կամ Կողքիսացիքը, Հայաստանի դրացի գաւառ մըն է, իր սեփական ժողովուրդով, որ լազ կը կոչուի եւ վրացիներուն պէս մասամբ իսլամացած է։

Քեաթիպ Չէլէպի զանոնք կը նկատէ Լեզգի եւ գաղթած Տաղիստանէն դէպի Խաղտիք։

Վաղ ժամանակներէ սկսեալ Հայերը Եգերացւոց երկիրին եւ Կողքիսի հետ յարաբերութիւններ ունեցած են եւ բազմաթիւ Հայեր այդ երկիրները գաղթած են, այնքան որ բիւզանդացիք այդ վայրերը Հայաստանի մաս համարած են։

Թրքական տիրապետութեան շրջանին Լազիստանի մէջ, ուր քաղաքներ գրեթէ չկային այլ գիւղեր, տիրապետած են Լազ *տէրէպէյ*իներ, որոնք ինքնիշխան կը կառավարէին երկիրը։ Ինճիճեան կ'ըսէ թէ «*զամենայն վճիռ անձամբ հատանեն, չունելով ուստէք երկիւղ*» եւ կը յարէ անմիջապէս թէ «*իւրաքանչիւր ինոցանէ ունին պալատ պարսպաւոր եւ աշտարակաւոր հանդերձ ամենայն հարկաւորօք, ուր ամրացեալ կարող լինին ընդդէմ դնել նաեւ փաշայից եւ ի լինել հարկի կարեն ժողովել զօրս հազար եւ աւելի եւս ի հպատակեալ գիւղականաց*»։ (*Աշխ.* Ա. էջ 384)։

Այս աշխարհին բնակչութիւնը բռնի իսլամացուած է ԺԷ. դարուն վերջերը եւ ԺԸ. դարուն սկիզբը՝ «*սակս բռնութեան հարկապահանջութեան, բայց գտանին տակաւին ինոսա եւ քրիստոնեայք*» (Ինճիճեան, *Աշխ.* Ա. էջ 396)։

Իսլամացածներէն շատերը կը պահէին ծածուկ իրենց կրօնքը, նոյնիսկ իրենց սեփական լեզուն։

Լազերը, առանց նկատի առնելու իրենց ծագման խնդիրը, Սեւ ծովու եզերքը հաստատուած էին, եւ կը բնակէին ծովէն մինչեւ Հայաստանը եզերող Պարխար կամ Պոնտական լեռները տարածուած հողերուն վրայ։

Հայերը եւս իրենց երկիրին սահմանը գծող այս լեռներուն դէպի ծով իջնող հովիտներուն, մանաւանդ վերնամասերուն մէջ, մասնաւորապէս Տրապիզոնի արեւելքէն մինչեւ Րիզէի արեւելքը, բաւական թիւով հաստատուած էին։

Այս Հայութիւնը ԺԸ. դարու ընթացքին ջարդի սպառնալիքով բռնադատուած էր իսլամական կրօնքն ընդունելու, բայց պահած էր գրեթէ իր Հայ նկարագիրը եւ գոնէ մասամբ Հայերէն լեզուն (Հ. Յակոբոս Վ. Տաշեան, *Հայ բնակչութիւնը Սեւ ծովէն մինչեւ Կարին, պատմական-ազգագրական հարեւանցի ակնարկ մը*, 1921 Վիեննա, էջ 7)։

Իսկ պոնտական լեռնաշղթային միւս երեսը, մինչեւ ուր կը հասնէին Տայոց եւ Բարձր Հայոց նահանգները, Հայերը եւ Լազերը բնակակից էին եւ փոխադարձաբար իրարու վրայ ազդած, եւ Պոնտական լեռնաշղթային երկու կողերուն վրայ ապրող Հայերը, «Հայ-Լազ» կամ շրջանին ամէնէն մեծ քաղաքին անունով «Համշէնցի» կը կոչուէին։

Պարխար կամ Պոնտական լեռներու դէպի ծով նայող հովիտներուն մէջ հաստատուող Հայերու գլխաւոր վայրն եղած է *Համամաշէն* կամ *Համշէն*, իրենց մեծ կեդրոնը, որմէ տարածուած են Սեւ ծովու հարաւային եզերքը, մինչեւ Կ. Պոլսոյ մօտերը եւ նոյնիսկ Սեւ ծովու հիւսիսային՝ ռուսական եզերքները։

Իսկ նոյն լեռներուն դէպի ցամաքակողմը, Ճորոխի հովիտին մէջ, կը գտնուէին Բարձր Հայքի եւ Տայքի նահանգներուն մաս կազմող Կեսկիմ, Թորթում, Սպեր եւ Բաբերդ քաղաքները։

Լազիստան, թուրքերէն գրաւուած է 1461ին, սակայն Լազերը, որոնք կանուխէն մահմետականացած էին, կրցած են պահել իրենց ազգային ինքնուրոյնութիւնը, եւ կէս անկախ իշխաններուն գոյութիւնը։

Այս դրութիւնը երկար ատեն տեւած է Օսմ. տիրապետութեան տակ, եւ Dr. Karl Koch որ 1843—44ին այդ կողմերը շրջած է. գտած է հոն իշխողներ որոնք իրապէս տէրէպէյիներ էին։

Տոք, Քոխ, կ'որոշէ բազմաթիւ այս տեսակ տիրապետներու իշխանութեանց ենթակայ հողերու սահմանները, որոնցմէ մէկը — եւ փոքրերէն մէկը — էր Արտաշէն որ բուն Լազերու երկիրին մէջ էր, բայց ինչպէս անունէն կը տեսնուի հայկական, իսկ մեծագոյնն էր Համշէն, որուն մեծ իշխանը «Վոյվոտա» տիտղոսը կը կրէր, իրեն ստորադաս ունենալով առանձին հովիտներու տէր փոքր իշխաններ։ Քոխ կը ջանայ գծել իր ժամանակին (1843—44), Համշէնի աւատական գաւառին սահմանները՝ անջատ Րիզէի եւ Լազիստանի գաւառներէն։ Ան հիւր եղած է Ճէմիլի մէջ — Րիզէէն Սպեր ճամբուն վրայ գիւղ մը — Համշէնի իշխաններէն մէկուն, որ շատոնց մահմետականացած էր (տես. Հ. Տաշեան, (*Նոյն*. էջ 26—27)։

Նշանակելի է որ Հ. Ինճիճեան որ ժամանակով 30—40 տարի աւելի առաջ է, իր *Աշխարհագրութիւն*ին մէջ (Ա. հտ. էջ 396) Համշէնի իշխանութիւնը ցոյց կուտայ ձեռքը երկու աղաներու, որոնցմէ մին Հայ էր։ Ուրեմն Հայերն ալ իշխանութեան մաս կազմած էին։

Բայց Լազիստան որպէս ծայրագաւառ եւ դրացի քրիստոնեայ երկիրի մը, որուն հետ կրօնակից էին Լազերը եւ հոն բնակող Հայերը, նկատուած է հաւատարմութեամբ կասկածելի վայր մը, ուստի Թուրքերը ամէն ջանք ըրած են զայն իսլամացնելու։

Այսպէս, կը յիշուին բազմաթիւ փորձեր, որոնցմէ ամէնէն նշանաւորն է 1708—1710ին Համշէնի եւ Սեւ Գետի Հայերու վրայ գործադրուած բռնութիւնները, զանոնք իսլամացնելու համար։

Իսկ Պոնտական լեռնաշղթային միւս երեսը, արեւելքէն արեւմուտք տարածուող Ճորոխի եւ իր օժանդակներու հովիտներուն մէջ հաստատուած Կիսկիմ եւ Թորթում գաւառները, որոնք Տայոց Արսեացփոր գաւառին մէջ կը գտնուէին՝ Համշէնի թիկունքը,

եւ Սպեր եւ Բաբերդ գաւառները, որոնք Բարձր Հայոց Բաբերդ-Սպեր գաւառներուն մէջ կը գտնուէին, նոյնպէս ենթարկուած էին, մասամբ *Լազ տէրէպէյի*ներու տիրապետութեան եւ հոն այդ Լազերը այն դերը կը խաղային, ինչ որ քուրտ բէկերը կը կատարէին Հայաստանի միւս մասերուն մէջ։

Ասիկա կը հաստատէ Ինճիճեան, (*Աշխ.* Ա. էջ 133) Տայոց Կիսկիմ գաւառակին մաս կազմող զուտ հայաբնակ եօթն եւ աւելի գիւղերէ բաղկացեալ Խոտորջուրի համար գրելով որ, ԺԸ. դարուն վերջերը, կը գտնուէր բռնակալութեան տակ Լազի մը որ տարեկան տուրք կ'առնէր այդ գիւղերու բնակչութենէն։

Դժբախտաբար ինչպէս քուրտ բազմաթիւ բէկերու իշխանութիւններուն վրայ մեր տեղեկութիւնները շատ հարեւանցի են եւ հատակտոր, նոյնպէս շատ մասնակի եւ անբաւական են Լազ այս իշխանութիւններու վրայ մեր ծանօթութիւնները։

* * *

Խնուս, Թէքման, Վարդոյ եւ Կէօքսու, միացեալ քուրտ իշխանութիւն մը կը ներկայացնէին նախապէս (1)։ Ասոնց բէկը վասալ մըն էր, ինչպէս տեսնուեցաւ (էջ 445), Բաղէշի քուրտ մեծ իշխանապետութեան, ինչպէս կը հաստատէ քուրտերու միակ պատմագիրը՝ Բաղէշի Շէրիֆ խանին թոռը Միր Շէրիֆ կամ Շէրէֆ-էտտին, իր գրած *Շէրէֆնամէ*ին մէջ, որ պատմութիւնն է քուրտերու 1577—1597 (986—1005 Հիճրէթի) թուականներուն։

Յետոյ սակայն Էրզրումի փաշային ստորադասուած էր այս միացեալ իշխանութիւնը, որ ըստ Հ. Ղուկաս Ինճիճեանի ԺԸ. դարուն վերջերը եւ ԺԹ.ին սկիզբները, կը գտնուէր Լեզգի պէյի մը իշխանութեան տակ։

Արդ, նկատելով որ Հ. Ղուկաս Ինճիճեան Լազը եւ Լեզգին կը նոյնացնէ (տես. *Աշխ.* էջ 329), կ'ենթադրեմ թէ Խնուսի այս իշխողը Լազ մը պէտք է ըլլայ։

Իբր թէ Թահմազ Շահի դէմ Օսմանցիներու մղած պատերազմներուն մէջ պարսիկներու դէմ կռուած է Լեզգի մը, ի նպաստ թուրքերու եւ քաջագործութիւններ ցոյց տուած է։ Այս պատճառով Սուլթանը շնորհած է Խնուսը իրեն եւ իր ժառանգորդներուն (Ինճիճեան, *Աշխ.* Ա. 81)։

Այս առթիւ, Լեզգիներ (Լազե՞ր) եկած են բնակիլ Խնուսի մէջ (*Նոյն.*)։

Խնուսի պէյը 1747ին օգնած է Էրզրումի եւ Պայազիտի փաշաներուն, ընդդէմ Մուշի Ալատին պէյին, իսկ նոյն դարուն վերջերը յարձակած է Մանազկերտի քուրտ պէյին վրայ, բայց Պայազիտի փաշան, որուն ստորադրեալ էր Մանազկերտը, օգնութեան հասած է եւ Խնուսի ու անոր շրջակայքին մեծ չարիքներ հասցուցած է, գիւղերը քանդելով եւ աւերելով։

(1) *Խնուս կը գտնուի Կարնոյ հարաւ-արեւելեան, Թէքման՝ Կարնոյ արեւելեան եւ Խնուսի հիւսիսային կողմը, եւ Վարդոյ՝ Խնուսի արեւմտեան եւ Բզլի արեւելեան կողմը եւ Կէօքսու՝ Թէքմանի արեւելքը։ Ամէնքն ալ իրարու կից են։*

## Գ.

# ՌՈՒՍԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

Ռուսերու Հայաստանի տիրապետութեան բաժնեկից դառնալը բացատրուեցաւ պարսկական եւ թրքական Հայաստաններու (տես. վերը, էջ 375—425 եւ 425—466), խօսուած ատեն, սակայն եւ այնպէս աւելորդ չեմ համարեր ժամանակագրական կարգով ներկայացնել ռուսական գրաւման ինչպէս ընդարձակուած ըլլալը։

Մեծն Պետրոս (1680—1725) առաջին Զարն է որ զբաղած է Հայերով. ԺԸ. դարուն սկիզբը պաշտպան հանդիսանալով Պարսկաստանի Հայերուն եւ զանոնք ռուս հողեր փոխադրելու աշխատելով։ Նոյնպէս Մեծն Պետրոսն է որ Իսրայէլ Օրիի բախտախնդրական ձեռնարկին կարեւորութիւն ընծայած է եւ զայն 1706ին Պարսկաստան ղրկած է իբր դեսպան, խոշոր շքախումբով մը։ Սակայն իրական արդիւնք մը չեն ունեցած Մեծն Պետրոսի խոստումները վասնզի անիկա ուրիշ ճակատներու վրայ պատերազմելու պարտաւորուած ըլլալով դէպի Կովկաս առաջանալու ծրագիրը չէ գործադրուած, սակայն Իսրայէլ Օրիի գաղափարը, ռուսական օգնութեամբ Հայաստանը փրկելու, Հայերու համար եղած է ուղեգիծ մը, որ օգտագործուած է ռուսերու կողմէն, յաճախ ի գին Հայոց ֆիզիքական գոյութեան վտանգուելուն։

Այսպէս, 1722ին Մեծն Պետրոսի դէպի հարաւ արշաւը (տես. վերը, էջ 87) որ այնքան ոգեւորած էր Հայերը, աղէտ մը եղած է Հայոց համար, վասնզի 1723 Սեպտ. 12ին՝ Պարսից եւ 1724 Յունիս 24ին՝ Օսմանցիներու հետ Զարին կնքած դաշինքները Հայերը անպաշտպան թողած է, այս երկու իսլամ պետութիւններու դէմ, որոնք Հայերը դաւաճան նկատած են։ Բարեբախտաբար Հայերը որոշ չափով մը կրցած են ինքզինքնին պաշտպանել։

Նատիր Շահի ժամանակ Աբրահամ Կրետացի Կաթողիկոսին իմաստուն քաղաքականութիւնը, մեծ աղէտէ մը փրկած է Հայերը։ Նատիրի մահէն (1747) վերջ երբ Պարսկաստան անիշխանութեան մատնուեցաւ Վրաստան իր գոյութիւնը ապահովել փորձեց ռուսական հովանաւորութեամբ եւ Հայերը՝ Վրացիներու հետ աշխատեցան մելիքութիւնները կորիզ ընել հայկական անկախութեան, ռուսական օգնութեամբ։ Այս նպատակով Ռուսիա գացող վրաց թագաւորին հետ նամակ մը ղրկելով Յակոբ Շամախեցի Կաթողիկոս, 1760 Յուլիս 20ին, Եղիսաբէթ կայսրուհիէն կը խնդրէր «*Հայ ողորմելի ժողովուրդին ու վրաց*

*մասին հոգացողութիւն ունենալ»* (Ազգապատում էջ 3018)։

Յաջորդ տարին (1761) ռուս կառավարութեան ցոյց տուած շահագրգռութիւնը, Յովսէփ Էմինի առաջարկներու եւ անոր ընծայած դիւրութիւններն եւ քաջալերութիւնները ցոյց կուտան թէ ինչպէս անոնք կը հետաքրքրուէին այս խնդրով։

Մասնաւորապէս Յովսէփ Էմինի Վրաստանի եւ Հայաստանի մէջ ջանքեր գործադրած ատեն, Կատարինէ Բ. Զարուհիին (1763—1796) 1768 Յուլիս 30ին հրովարտակը (1), որով Ռուսիոյ պաշտպանութեան տակ կ'առնէր Հայերը, պերճախօս փաստ մըն էր այդ շահագրգռութեան։

Ասոր համար ուրիշ պատճառներ ալ կային։ Կատարինէ Բ. Թուրքիոյ դէմ պատերազմ հռչակած էր նոյն տարին, իբր թէ արեւելեան քրիստոնեայ ազգերը փրկելու համար, եւ այս առթիւ կոչ ըրած էր քրիստոնեայ բոլոր ժողովուրդներու իրեն օգնելու համար (*Ազգապատում*, էջ 3203)։ Այս պատերազմին մէջ, որ վեց տարի (1768—1774) տեւեց, ռուսերը գրաւեցին Տէրպէնտը, Պագուն եւ Շամախին, որոնք Նատիր վերագրաւած էր, բայց ոեւէ օգնութիւն չընծայեցին Ղարապաղի մելիքներուն որոնք անխտիր իրենց աջակցութեան կ'սպասէին։

Յովսէփ Էմին, ձախողած, կը հեռանար։

Այս անյաջողութեան մէջ պզտիկ բաժին մը չունէր Սիմէոն Կաթողիկոս, որ հալածեց եւ աշխատեցաւ ամէն գնով հեռացնել Էմինը, մինչ քիչ վերջը, իր բարեկամին՝ Հերակլ Վրաց թագաւորին պէս, ինքն ալ համոզուած թէ առանց Ռուսիոյ աջակցութեան դժուար է գոյութեան պայքար մղել մահմետական զանգուածներու դէմ, սկսաւ Մոսկուայի մօտենալ եւ յարաբերութիւն մշակել ռուս արքունիքին հետ, Մոսկուայի պատրիարքին հետ թըղթակցութեան մտնելով 1778ին (տես. Մսեր Մսերեանց, *Պատմ. կաթողիկոսաց Էջմիածնի ի Սիմէոնէ մինչ ցՅովհաննէս Ը.* էջ 155—158) եւ Ռուսաստանի Հայոց համար Առաջնորդութիւն մը հաստատելով։

Սիմէոն Կաթողիկոս նոյնպէս արգելք չեղաւ իրեն ներկայացուցիչ Յովսէփ Արքեպիսկոպոս Արղութեանի եւ Յովհաննէս Լազարեանի, երբ անոնք Ռուսիոյ մայրաքաղաքին մէջ Յովսէփ Էմինի գործը վերակենդանացնել աշխատիլ սկսան։

Կատարինէ Բ. Զարուհիի իշխանութեան շըրջանի պետական ամենանշանաւոր անձը հանդիսացող Պոտեմկին,— որուն տրուած էր «Տաւրիկեան Իշխան» տիտղոսը, իր ցոյց տուած գործունէութեան համար, —1798—1774 ռուս եւ թուրք պատերազմի ընթացքին— բարեկամն էր Յովհաննէս Լազարեանի, մեծահարուստ եւ հայրենասէր Հայուն, որուն մեծ աջակից մը եղաւ Սիմէոն Կաթողիկոսի նշանակած Ռուսիոյ Հայոց առաջնորդը Յովսէփ Արքեպս. Արղութեանը, որ շնորհիւ Լազարեանի պետական շրջանակներու, ինչպէս նաեւ Կատարինէ Բ.ի ծանօթացած է եւ ծառայած ռուս պետութեան (տես. Լէօ. *Պատմ. Հայոց Գ.* էջ 823—824. Լէօ, Յովսէփ Արքեպս. Արղութեան, էջ 41)։

Յովսէփ Արղութեան եւ Յովհաննէս Լազարեան յաջողեցան Կատարինէ Բ. Զարուհին եւ իշխան Պոտեմկինը շահագրգռող ծրագիրներուն մէջ (տես. այս մասին Լէօ. Գ. էջ 824—825) անցնել տալ նաեւ Հայոց հարցը որուն ուսումնասիրութիւնը յանձնուեցաւ Սուարոֆի, որ իրենցմէ տեղեկութիւններ քաղեց, եւ *«յուսադրութիւն արար յոյժ, որպէս, թէ նորոգելոց իցեն ի մեզ իշխանութիւն ինչ»* (*Ազգապատում*, էջ 3206—7)։

Բայց որովհետեւ ռուսերը պարսից դէմ պատերազմի մէջ էին, Զօր. Իվան Գորիչ (Goric) 1780 Յունուար 1ին Արղութեանի կ'այցելէ եւ այդ շրջանին մասին տեղեկութիւններ կ'ստանայ (*Նոյն.*), իսկ Յունուար 3ին Արղութեան եւ Լազարեան իրենք կը ներկայանան իշխան Պոտեմկինին, եւ կը համարձակին *«Թախանձել, նորոգել իմեզ զմասնաւոր տէրութիւն իմեծն Հայաստան ի քաղաքն Երեւան»*, (*Ազգապատում*, էջ 3207 կամ *Կռունկ*, 1863 էջ 511)։

Իշխան Պոտեմկին կը պահանջէ որ Էջմիածինի Կաթողիկոսն ալ խնդրամատոյց ըլլայ։ Յովհաննէս Լազարեան Յունուար 10ին տեղեկագիր մըն ալ կը ներկայացնէ, որուն մէջ կ'առաջարկէ ռուսական պաշտպանութեան տակ Հայ իշխանութեան մը կազմութիւնը. որուն պետը Հայերը պիտի ընտրէին։ Ան 20,000էն 60,000 զօրք պիտի կարենար հաւաքել։ Արղութեան եւ Լազարեան կը ներկայացնեն նաեւ Ռուսիոյ եւ Հայաստանի փոխ-յարաբերութիւնները ճշդող դաշնագիրի մը նախագիծը— ինչպէս ծանօթ է— բայց անիկա չի ստորագրուիր։ Անոնք Սուարոֆի կը ներկայացնեն անունները Հայաստանի տանուտէրներուն եւ մելիքներուն իրենց զինեալ մարդոց թիւերով, եւ միւս կողմէ Արցախ լուր կը հասցնեն։ Մելիքները ոգեւորուած Գանձասարի մէջ ժողով կը գումարեն եւ կ'որոշեն ապստամբիլ ընդդէմ Շուշիի Իպրահիմ խանին, եւ այսպէս առիթ ընծայել Ռուսերուն որ առաջ խաղան։ Սակայն իրենց այս դաւադրութիւնը կը մատնուի Աղուանից Յովհաննէս Կաթողիկոսի եղբօրը՝ Ալլահ-Գուլի բէկի կողմէն, եւ Հայ մելիքներէն մէկ մասը կը ձերբակալուի, մէկ մասը կը փախի, իսկ Յովհաննէս Կաթողիկոս կ'սպաննուի (*Ազգապատում*, էջ 3208)։

Այսպէս, Արղութեանի ծրագիրը կը ձախողի, բայց անիկա չի յուսահատիր եւ կ'աշխատի որ Հայերը կրկին շարժին։

Ռուսերը՝ 1787ին զօրագունդ մը Վրաց օգնութեան կը ղրկեն, վասնզի Հերակլ թագաւոր արդէն 1783ին Ռուսիոյ հպատակած էր (տես. վերը, էջ 423)։ Մելիքներն ալ, որ մեծ մասամբ Վրաստան ապաստանած էին, իրենք ալ 1787ին հպատակութիւն կը յայտնեն եւ Վրաց հետ ռուս զօրքին միանալով, Իպրահիմ խանի զօրքերը կը ջարդեն, բայց յանկարծ ռուս զունդերը ետ կը դառնան, վասնզի Ռուսիա Թուրքիոյ դէմ պատերազմի մէջ ըլլալով, պէտք ունէր

(1) *Պատճէնը տես. Մսեր Մսերեանց* Պատմութիւն կաթողիկոսաց Էջմիածնի ի Սիմէոնէ մինչ ցՅովհաննէս Ը. (1763—1831), 1876 *Մոսկուա, էջ* 161—163)։

իր զօրքերուն (J. M. Jouannin et Jules Van Gauer, Turquie, 1850 Paris էջ 360. հմտ. *Ազգապատում*, էջ 3209)։

Մելիքները կ'ստիպուին խոյս տալ Վրաստան եւ Ռուսաստան։ Իպրահիմ խան կը գրաւէ անոնց կալուածները. եւ վերջ կուտայ անոնց անկախութեան։ Ժողովուրդը կ'ընկճուի եւ ազգը մեծ յուսախաբութեան մը կը մատնուի։

Իսկ Հերակլ իր ծերութեան օրերուն իսլամ իշխանութիւններու հետ մտերմանալու կը պարտաւորուի անընդհատ, (տես. վերը, էջ 424) առանց օգնութիւն գտնելու ռուսերէն, որոնց հեղինակութիւնը վտանգուած էր Կովկասի մէջ, մանաւանդ Աղա Մուհամմէտ խանի կողմէ 1795ին Թիֆլիսի գրաւումէն վերջ (տես. վերը, էջ 424)։

Հազիւ թէ Վալերիա Զուբովի հրամանատարութեամբ 1796ին ռուսերը շարժիլ սկսած էին (տես. վերը, էջ 424) երբ Կատարինէ Բ. կայսրուհին մեռաւ (1796 Նոյեմ. 6) եւ ռուս բանակները կանգ առին (տես. *նոյն*.)։ Շահին Շուշիի մէջ սպանութենէն վերջ երբ պարսիկները քաշուեցան, ռուսերն ալ իրենց զօրքը քաշեցին Վրաստանէն (1797) եւ միայն Գէորգ ԺԲ.ի թախանձանքով նորէն զօրք ղրկեցին, ինչպէս նաեւ դեսպան մը, առանց որուն հաւանութեան Վրաստան ոչինչ կրնար ընել, Պօղոս Ա. Ցարը հրամայած էր Պօտեմկին զօրավարին— ազգական համանուն իշխանին— որ առանց պատերազմի գրաւէ Ղարապաղը եւ Վրաստանը։

Այսպէս, ռուսերը առաջին անգամ գրաւեցին Հայաստանի մէկ մասը, հոն Հայ անկախութեան վերջին նշոյլներուն խաւարման պատճառ ըլլալէ յետոյ, իսկ Վրաստանի անկախութիւնը իրենք ջնջեցին երբ տեսան որ Գէորգ ԺԲ. յուսախաբ իրենցմէ, կրկին Պարսից կը յարէր, հպատակութիւն յայտնելով Ֆաթալի Շահին, եւ կ'ուզէր դիմադրել ռուսերուն (տես. վերը, էջ 425)։

Վրաստանի կցումէն (1801) վերջ, Ալեքսանդր Ա. Ցարը (1801—1825) ընդարձակեց ռուսական տիրապետութիւնը Կովկասի մէջ եւ գրաւեց Պագուն։ 1801ին Զօր. Ցիցիանօֆ գրաւեց Գանձակը եւ զայն Եղիսաբէթբոլ կոչեց եւ Զօր. Լիսիանեվիչ նուաճեց Ղարապաղը։ 1804ին Զօր. Ցիցիանօֆ, առանց պատերազմի յայտարարութեան, առաջացաւ դէպի Երեւան։ Առաջին ճակատամարտը տեղի ունեցաւ Էջմիածնի մօտ, առանց վճռական արդիւնքի։ Սակայն անակնկալ յարձակումով մը պարսիկ բանակը փախուստի մատնուեցաւ եւ Երեւան պաշարուեցաւ, սակայն խանը անձնատուր չեղաւ եւ ռուսերը լքեցին բերդին պաշարումը եւ հեռացան, երբ Ֆաթալի Շահը զինուորական մեծ ոյժով միջամտեց պատերազմին, վերագրաւելու համար Պարսկաստանէն գրաւուած հողերը, որոնց կորուստին մասնաւորապէս չէր համակերպած Աբաս Միրզա գահաժառանգը։

Ռուսերը յառաջացան մինչեւ Ռեշտ եւ գրաւեցին Գիլանը, բայց Ցիցիանօֆի սպանութիւնը Պագուի առջեւ պահ մը պատճառ եղաւ որ անոնք ընկրկին եւ Գանձակը գրաւուի Աբաս Միրզայէ առժամապէս։

Կռիւը շարունակուեցաւ առանց վճռական արդիւնքի, թէեւ ռուսերը գրաւած էին ընդարձակ գաւառներ, բացի Երեւանէն, որուն առջեւ երկրորդ անգամ ձախողեցան, բաւական մեծ կորուստ տալով։

Երբ Անգլիա հաշտուած Ռուսիոյ հետ ետ քաշեց անգլիացի սպաները, որոնք պարսից բանակին մէջ կը ծառայէին, Ռուսիա վճռական հարուած մը տուաւ պարսիկներուն, 1812ին, Արաքսի եզերքը Ասլանդուզի ճակատամարտին մէջ, ուր Աբաս Միրզայի բանակը յանկարծակիի գալով ռուս 2,300 զինուորով, փոքր ուժի մը առաջ, խուճապահար փախուստ տուաւ։

Ռուսերը երբ Լենքորանը գրաւեցին պարսիկները հաշտութիւն խնդրեցին, եւ Անգլիա որ մեծ շահ ունէր որ Ռուսիա ազատօրէն կարենար կռուիլ իր ոխերիմ հակառակորդին՝ Նաբոլէոնի դէմ, իր դեսպանի միջամտութեամբ յաջողեցաւ 1813 Հոկտ. 12ին Գիւլիստանի դաշնագիրը կնքել տալ։

Այս դաշինքով Պարսկաստան կը կորսնցնէր Վրաստանը, Տերպէնտը, Պագուն, Նուխին, Գանձակը, Ղարապաղը, եւ Թալիշի մէկ մասը (տես. վերը, էջ 83), եւ յանձն կ'առնէր նաւատորմիղ չունենալ Կասպից ծովուն վրայ։

Այս յաջողութեան մէջ բաժին ունէին Հայերը վասնզի ռուս եւ պարսիկ այս կռիւներուն մէջ անոնք անձնուիրութեամբ օգնած էին ռուսերուն (տես. վերը, էջ 83), որոնք Կովկասի հարաւը ընդարձակ տարածութեան մը կը տիրանային։

Ռուսիա զուգէ աւելի խաղաղահաճոյ պիտի ըլլար, եթէ Նաբոլէոն ձեռնարկած չըլլար իր համբաւաւոր արշաւանքը դէպի Մոսկուա եւ Ռուսիա պարտաւորուած չըլլար դիմագրաւելու զայն։ Միւս կողմէն Պարսկաստան թերեւս պիտի չընդունէր այս պայմանները, եթէ իր զինակիցը՝ Անգլիա համակերպիլ յորդորած չըլլար, պարսիկներուն ցոյց տալով իր բանակը վերակազմելու եւ վրէժ լուծելու հեռապատկերը։ Ասոր համար ժամանակի պէտք կար եւ այս դաշինքը պիտի տար այդ ժամանակը։ Ասկէ զատ Պարսկաստանի մէջ ըմբոստութիւններ ծագած էին, որոնք կը դժուարացնէին պատերազմին շարունակութիւնը։

Գիւլիստանի հաշտութենէն վերջ պարսիկ կառավարութիւնը զուր յոյսեր տածեց անգլիական միջամտութեամբ իր կորսնցուցած հողամասերէն մաս ետ ստանալու։ Նոյնիսկ Կեօքչայը (Երեւանի եւ Սեւանի միջեւ տարածուող հողերը) որուն տիրապետութիւնը ճշդել անկախ ձգուած էր, ռուսական բանակը գրաւեց 1815ին։

Կովկասի ընդհանուր կառավարիչ Զօր. Երմոլով, ոչ միայն Աբաս Միրզայի Կեօքչայը չզիջաւ այլ 1817ին մեծ շքախումբով մը Պարսկաստան գնաց եւ Սուլթանիէյի մէջ Ֆաթալի Շահին ներկայացաւ եւ թիզ մը հող չզիջաւ Պարսկաստանի, այլ առաջարկեց դաշնակցիլ Ռուսիոյ՝ Թուրքիոյ դէմ, եւ պահանջեց թոյլ տալ ռուս բանակներուն, անցնիլ Ատրպատականէն եւ Խորասանէն, Խիվա արշաւելու համար։ Ան կ'ուզէր նաեւ հաստատել գործակալութիւն մը Ռեշտի մէջ։

Բոլոր ատոնք, ինչպէս նաեւ ռուսական սպաներով պարսկական բանակը վերակազմելու առա-

ջարկը, Շահը մերժեց, եւ Երմոլով դարձաւ Թիֆլիս։

Ռուսիոյ այս անողոք ընթացքը ընդհանուր ցասում առաջ բերաւ Պարսկաստանի մէջ։

Երբ Նիկոլա Ա. Ցարը (1825—1855) գահ բարձրացաւ, Թեհրան ղրկեց իշխան Մենչիքովը, համաձայնութեան եզր մը գտնելու համար, բայց որովհետեւ ռուս ներկայացուցիչը Կէօքչայը դարձնելու հրահանգ չունէր, ոչ մէկ յաջողութիւն ձեռք բերաւ, հանդարտեցնելու համար վրդովուած միտքերը։ Երեւանի Հասան խանը, իր Հիւսէյին եղբօր հետ, 1826 Յուլիսին ռուս գրաւման տակ գտնուող գաւառներու վրայ յարձակումներ բրաւ եւ ջարդեր ու գերութիւններ կատարեց, օգտուելով ռուսներու անպատրաստ ըլլալէն։ Իսկ Թալիշի խանը աւելի առաջ անցնելով, նախայարձակ եղաւ ռուսերու դէմ եւ գրաւեց Լենքորանը։ Վերջապէս Աբաս Միրզա գահաժառանգը, 80,000 զօրքով մտաւ Հայաստան, իր բանակին մէջ ունենալով Ղարապաղի՝ Մեհտի խանը, Շաքիի՝ Սէլիմ խանը, եւ Շիրուանի՝ Մուսթաֆա խանը, որոնք Ռուսաստանի հպատակութիւն յայտնած էին եւ յետոյ դաւաճանած (Րաֆֆի, *Խամսայի Մելիքութիւնները*, էջ 254)։

Ռուսիա անպատրաստ էր պատերազմի եւ ասոր համար սկիզբը ձախողուածներ ունեցաւ։

Ռուսական վաշտ մը Շուշիի շրջակայքը գերի ինկաւ եւ պատերազմական գերիներու կէսը մտաւ պարսկական ծառայութեան մէջ։ Գանձակի իսլամները ջարդեցին ռուս պահակազօրքը եւ պարսիկները արշաւեցին Թիֆլիս։ Պարսիկները, մէկ ամսուան մէջ գրաւեցին Շիրուանը, Նուխին, Թալիշը եւ Գանձակը։ Միայն Շուշին ուր Հայ կիներն իսկ դիւցազնաբար կռուեցան, դիմադրեց Աբաս Միրզայի բոլոր յարձակումներուն։

Զօր. Մատաթեան որ Ղարապաղցի ջորեպանի մը զաւակն էր, Շամքոր գետին մօտ, Գանձակէն ոչ հեռու, գրաւեց պարսկական կարեւոր ոյժ մը (1827 Սեպտ. 3)։ Պարսիկ բանակին հրամանատար Մուհամմէտ Միրզան, (որդի Աբաս Միրզայի եւ ապագայ Մուհամմէտ Շահը) գերի ինկաւ, բայց ազատեցաւ Շահ Սաւաններու մէկ պետին կողմէ։ Զօրավար Մատաթեան Շամքորի յաղթութիւնը տանելէ վերջ Գանձակի մէջ միացաւ Զօր. Պասքեւիչի։

Աբաս Միրզան փութաց դէպի հիւսիս, դարմանելու համար այս աղէտը եւ հանդիպեցաւ Պասքեւիչի եւ Մատաթեանի բանակներուն Գանձակի արեւելեան դաշտին մէջ (28 Սեպտեմբեր 1826)։ Պասքեւիչ եւ Մատաթեան փայլուն յաղթանակ մը տարին պարսիկ բանակին վրայ, որ իր անկանոն նահանջին մէջ Հայ գիւղերէն առաւ իր վրէժը։

Աբաս Միրզայի նոր բանակ մը կազմելու բոլոր փորձերը ապարդիւն եղան. վասնզի երկիրին տնտեսական վիճակը քայքայուած էր եւ Շահը ոեւէ գումար չէր ուզեր տրամադրել երկիրին պաշտպանութեան համար, մինչ Երմոլովի բանակները հետզհետէ կը զօրանային, որովհետեւ նոր ոյժեր կը հասնէին օգնութեան։

Աստրխանէն առաջացող բանակ մը Տերպէնտէն կը վտարէր Շահին զինուորները եւ Ռուս ուրիշ զօրամաս մը կ'անցնէր Արաքսը եւ կ'սպառնար Դաւրէժի։

Յաջորդ տարի, 1827ին, Զօր. Պասկեվիչը նշանակուեցաւ ընդհանուր հրամանատար եւ երրորդ անգամ Երեւանը պաշարուեցաւ։ Քիչ վերջը գրաւուեցան Նախիջեւան եւ Աբասապատ։ Պարսիկները յուսալքուած էին երբ Աբաս Միրզան յաջողեցաւ յաղթանակ մը տանիլ Էջմիածինի մօտ, զօրավար Խարկովսկիյի դէմ, որուն հրամանին տակ կը գտնուէին 5,000 հետեւակ ու 1,000 ձիաւոր զօրք եւ 12 թնդանօթ։

Ռուս զօրավարը սպաննուեցաւ եւ բանակին մէկ մասը միայն ազատուեցաւ՝ ապաստանելով Էջմիածին։ Հակառակ այս յաղթանակին Երեւանը գրաւուեցաւ 1 Հոկտեմբեր 1827ին (1)։

Պասկեվիչի 5,000 զինուորները Արաքսը անցան եւ Դաւրէժը գրաւեցին, առանց դիմադրութեան։

Ռուսերը թելադրեցին հաշտութեան պայմանները, թէեւ թշնամութիւնները կ'սկսէին միեւնոյն ատեն թուրքերուն դէմ՝ եւ ռուսներու շահը կը պահանջէր շուտով վերջացնել Պարսկաստանի հետ պատերազմը։

Թուրքմենչայի դաշնագրութիւնը կնքուեցաւ 10 Փետր. 1828ին, որով Կուրի եւ Երասխի միջեւ գտնուող երկիրը, այսինքն Երեւանի եւ Նախիջեւանի բարեբեր շրջանները եւս կ'անցնէին Ռուսաստանի (տես. վերը, էջ 86 ) եւ Պարսկաստան յանձն կ'առնէր 30 միլիոն արծաթ ռուբլի պատերազմական տուգանք վճարել։

Այս դաշնագրութեան տրամադրութեամբ, Արաքս գետը սահման կը դառնար։ Թալիշի մէկ մասը, Լենքորանով միասին եւ Կասպից ծովի եզերքը, մինչեւ Աստարա, կը մնար Ռուսիոյ։ Աբաս Միրզա պաշտօնապէս կը ճանչցուէր, որպէս Պարսկաստանի գահաժառանգ եւ Ռուսիա իրաւունք կ'ստանար հիւպատոսներ եւ առեւտրական գործակալներ նշանակելու Պարսկաստանի մէջ «ուր որ առեւտրական շահը կը պահանջէր»։

Այս ջախջախիչ յաղթանակին մէջ, որուն արդիւնքն էր Թուրքմէնչայի դաշինքը. այնքան նպաստաւոր ռուսերուն, դարձեալ բաժին ունէին Հայերը, վասնզի Ներսէս եպս. Աշտարակեցի, Թիֆլիսի Հայոց առաջնորդը, եւ Գրիգոր եպս. Մանուչարեան 10,000ի մօտ Հայ կամաւորներու գլուխը անցած օգնեցին ռուս բանակին, այն հաւատքով թէ Ռուսիա, իր հովանիին տակ Հայոց ինքնավարութիւն պիտի տայ։

Տակաւին ռուս եւ պարսիկ պատերազմը վերջացած եւ Թուրքմէնչայի դաշինքը կնքուած չէր, երբ Թուրքիա պատերազմ հրատարակեց Ռուսիոյ դէմ 18 Դեկտ. 1827ին։ Բայց թշնամութիւնները սկսան միայն 14 Ապրիլ 1828ին, երբ Ռուսիա ալ պատերազմ յայտարարեց, եւ թէ Եւրոպայի եւ թէ, Ասիոյ կողմէն Թուրքիոյ վրայ յարձակեցաւ։

Ռուսերը Ասիոյ կողմը գրաւեցին Փօթին, Ախալցխան, Կարսը, Ալաշկերտը, եւ Տիատինը։

(1) 1626—1827 *ռուս և պարսիկ պատերազմին մանրամասնութիւնները առած է Մսէր Մագիստրոս Մսերեանց իր* Պատմութիւն Կաթողիկոսաց Էջմիածնի *գործին մէջ, գլուխ մը (ԺԲ.) յաւելցնելով* (*տես.* նոյն էջ 87—102)։

1829 Յունիս 22ին ինկաւ Կարին, Յուլիս 4ին՝ Պայազիտ եւ Օգոստոս 13ին՝ Կիւմիւշխանէ, եւ հետզհետէ Բաբերդ ու Տրապիզոն գրաւուեցան:

Թուրքիա հաշտութիւն խնդրեց եւ 7 Հոկտեմբեր 1829ին կնքուեցաւ Ադրիանուպոլսոյ դաշնագիրը, որով գրաւուած վայրերէն Անափա, Բոթի, Ախալցխա, Ախալքալաք իրենց շրջակայքով Ռուսիոյ մնացին, եւ մաս կազմեցին Կովկասեան փոխարքայութեան որ իր մէջ կը պարունակէր Կովկասեան լեռներու հիւսիսային եւ հարաւային կողմը տարածուած երկիրները։

Հազիւ երկու տասնեակ տարիներ վերջը, Նիքոլա Ա. Ցարը (1825—1855) Ս. Տեղեաց պաշտպանութեան պատրուակով կրկին պատերազմ կը յայտարարէ Թուրքիոյ դէմ, սակայն Անգլիա, Ֆրանսա եւ Սարտենիա, Թուրքիոյ կը զինակցին եւ Սեւաստոպոլի գրաւմամբ Ռուսիոյ կը պարտադրեն Փարիզի դաշնագիրը, առանց սահմաններու փոփոխութեան (տես. վերը, էջ 83):

Բայց Ռուսիա, կրկին պիտի հարուածէր Թուրքիան Պալքանեան ժողովուրդներու ազատագրութեան համար 23 Ապրիլ 1877ին պատերազմ յայտարարելով։ Ալեքսանդր Բ. (1855—1881) «Ազատարար» Ցարին բանակները թէ՛ Եւրոպայի եւ թէ՛ Ասիոյ կողմէն յարձակեցան:

Պալքանեան լեռներէն դէպի Պոլիս առաջացող ռուս բանակը հասաւ թուրք մայրաքաղաքին դուռները:

Գըզանլըգի մէջ 27 Յունուար 1878ին զինադադար կնքուեցաւ եւ 2 Մարտ 1878ին Այ-Սթէֆանոյի մէջ դաշինք մը, որ Պերլինի մէջ 13 Յունիս 13 Յուլիս 1878ին վերաքննուեցաւ, եւրոպական մեծ պետութեանց մասնակցութեամբ:

Ռուսիա այս պատերազմին իբր արդիւնք տիրացաւ Հայաստանէն Կարսի եւ Արտահանի:

Խաղաղութեան 45 տարիներէ վերջ, 1914—1918 համաշխարյին պատերազմի ընթացքին Թուրքիա իր դարաւոր հակառակորդին դէմ պատերազմ հռչակեց, 1 Հոկտ. 1914ին:

Ռուսերը մինչեւ Սեբաստիոյ մօտերը առաջացան, սակայն ռուսական յեղափոխութենէն վերջ բանակը կազմալուծուելով Հայաստանէն գրաւուած վայրերը լքուեցան եւ Պրեսթ Լիթովսքի դաշինքով Ռուսիա նոյնիսկ Կարսը թողուց Թուրքիոյ:

Յաջորդ դէպքերուն եւ Հայաստանի Հանրապետութեան կազմութեան պարագաներուն վրայ արդէն բաւական մանրամասնօրէն խօսուած ըլլալով (տես. վերը, էջ 88—95) աւելորդ կը համարեմ վերստին անդրադառնալ, մանաւանդ որ տակաւին շատ նոր ժամանակներու մէջ պատահած դէպքեր ըլլալով, շատ ծանօթ են:



## Ա.

## ՌՈՒՍԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Ռուսերը, ինչպէս տեսնուեցաւ, Կովկասեան լեռներու հարաւային կողմը առաջացած են Հայերու եւ Վրացիներու աջակցութեամբ եւ անոնց ջերմ բաղձանքով:

Հայերը կ'ակնկալէին որ Ռուսիա իրենց անկախութեան վերջին բեկորները եղող Ղարապաղի Մելիքութիւնները կորիզ ծառայեցնելով իր հովանիի տակ Հայոց իշխանութիւն մը պիտի տար, իսկ Վրաստան իր վտանգուած անկախութիւնը պիտի կարենար պաշտպանել, շնորհիւ ռուսական հովանաւորութեան:

Ռուսիա ընդհակառակը նենգ քաղաքականութեամբ մը, պատճառ եղաւ Հայ մելիքներուն փճացման, իսկ Վրաստանի անկախութիւնը ինք ջնջեց:

Ռուսերը՝ ուղղակի ռուս պետական վարչութեան ենթարկեցին իրենց գրաւած երկիրները, միայն շոյելով տեղացի մեծամեծները, ազնուականութիւնը եւ հողատէրերը, որոնց իրաւունքները ճանչնալով կ'ուզէին սիրաշահիլ զանոնք:

Ինչպէս տեսնուեցաւ Հայ մելիքներէն ոմանց սերունդները պահեցին իրենց հողերը եւ տիտղոսները, առանց սակայն կիրարկել կարենալու իրենց իշխանութիւնը:

Ռուսիա, հետզհետէ այդ իրաւունքներն ալ կրճատեց եւ սեղմեց, այնպէս որ ոեւէ հայկական իշխանութեան հետք չմնաց իր տիրապետութեան տակ, թէեւ անուրանալի իրողութիւնն է որ իր ստեղծած պայմաններուն մէջ, իբր ուժով կառավարութիւն, Հայերը բարգաւաճեցան եւ թուական աննման աճում մը ունեցան կարճ ժամանակի մէջ, քանի մը անգամ բազմապատկուելով:

## Ա. «ՀԱՅԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ»

Ինչպէս տեսնուեցաւ, Յովսէփ Արքեպս. Արղութեան եւ Յովհաննէս Լազարեան, յաջողեցան խոստում առնել Կատարինէ Բ. կայսրուհիին կառավարութենէն, Երեւանի շուրջ, ռուսական հովանաւորութեան տակ Հայ անկախ վարչութիւն մը ունենալու:

Խոստում որ անգործադրելի մնաց:

Այս տխուր փորձառութենէն եւ Վրաստանի կցումին (1801) ականատես ըլլալէ հազիւ քառորդ դար վերջ, Հայերը կրկին գործիք ծառայեցին 1826—1827ի ռուս եւ պարսիկ պատերազմին մէջ, եւ կրկին խաբուեցան:

Ինչպէս Արղութեանցի ատեն, նոյնիսկ գրաւոր դաշինքներ խմբագրուած՝ բայց չէին ստորագրուած

վարպետութեամբ, եւ յետոյ խոստումները մոռցուած էին, այս անգամ դարձեալ Հայոց ակնկալութիւնները չպսակուեցան հակառակ անոր որ Ներսէս Արքեպս. Աշտարակեցի, *իբր թէ* (1) գրաւոր ապահովութիւն մըն ալ ձեռք բերած էր, Զօր. Պասքէվիչէն, որ ընդհանուր հրամանատարն էր ռուս բանակներուն եւ որ նեղ վայրկեանի մը մէջ բրած էր խոստումներ որոնք դրժուեցան յետոյ:

Ռուս կառավարութիւնը Հայոց միամտութիւնը շահագործած է, ռուս-պարսկական պատերազմի սկիզբէն, երբ ինքն դեռ անպատրաստ էր եւ անակնկալի եկած, եւ Հայոց աջակցութենէն օգուտ մը կ'ակնկալէր, թէեւ այնպիսի ձեւ մը տալով թէ այդ օգնութեան պէտք չունէր, քանի որ կը յայտարարէր թէ *«Թէպէտ զօրք ռուսաց բաւականք են հնարկանել զթշնամիս առանց գործակցութեան այլոց»* բայց խաթէր համար Ռուսիոյ Զարը կը հանէր *«իներկայ պատերազմիս ունիլ իմէջ քաջայաղթ զօրաց իւրոց զյատուկ գունդ կազմեալ·· Հայոց*:

Եւ այս խաբէական հիման վրայ 24 Մայիս 1827ին կը հրատարակէր հայերէն տպագրեալ երկու յայտարարութիւններ: *«Ազդարարութիւնս առ Հայս»* եւ *«Առաջնորդութիւն Հայոց նոր սարքվող զօրքի համար»* (տեսնել անոնց օրինակները Մսեր Մսերեանցի *Պատմ. Կաթողիկոսաց Էջմիածնի* էջ 192—200): Անոնցմէ առաջինին մէջ, Վրաստանի զօրաբանակին հրամանատարը, կը վկայէր թէ *«հանդիսացան Հայք քաջութեամբ ընդդէմ թշնամեաց... եւ գովանի հաւատարմութեամբ»*, եւ կը բացատրէ թէ ինչպէս կազմուած է *«յատուկ գունդ... Հայոց»* ինչպէս կատարուած է *«թաքօր օրհնութեան, եւ նորընտիր զօրականքն կացեալ ընդ հովանեաւ Սուրբ Դրօշակի՝ յուղի անկան գործակից եւ փառակից լինել զինուորութեան Ռուսաց»*:

Շարունակութեան մէջ անիկա հրաւէր կ'ընէ ուրիշներու ալ զինուորագրուիլ իբր կամաւոր եւ կը խոստանայ թէ Հայերը պիտի ունենան իրենց սեփական դրօշակներով սեփական գունդեր, թէ իրենց պիտի բաժնուի զէնք *«վասն հաստատելոյ զանդորրութիւն նեղեալ եղբարց ծերոց»*:

Իսկ երկրորդը Հայկական գունդին կանոնագիրը 29 յօդուածներէ բաղկացած է:

Այս վերջինին կից էր նաեւ Հայ գունդին մինչեւ 13 Մայիս 1827 արձանագրուած սպաներուն եւ զինուորներուն անուանացանկը:

Ներսէս Աշտարակեցի եւ Գրիգոր Մանուչարեան եպիսկոպոսները, Հայոց փրկութեան օրը հասած համարելով անձնուէր կամաւորներու գլուխը անցած, մեծ օժանդակութիւն բերին ռուս բանակներուն, որոնք մինչեւ Դաւրէժ առաջացան:

Պատերազմէն վերջ Հայերը միայն պատրանքը ունեցան կարճ միջոց մը թէ իրենց նպատակին հասած էին, վասնզի մինչ Ռուսիոյ Զարը իր տիտղոսներուն վրայ կ'աւելցնէր *«Թագաւոր Հայաստանի»* նոր տիտղոսը, եւ նուաճուած երկիրներէն կը հրամայէր կազմել ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀ կոչուող երկրամաս մը, եւ այս «աշխարհ»ին յատուկ կանոնադրութիւն մը կազմելու համար յանձնաժողով մը, անդին 1827 Հոկտ. 6ին, ճիշդ հինգ օր յետոյ Երեւանի գրաւումէն կը կազմուէր Պասքէվիչէն այդ «Հայկական Աշխարհ»ին համար «ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ» մը, իրողութիւններ որոնք Հայոց համար յուսադրիչ էին:

Քիչ մը աւելի առաջ տանելով խաբէութիւնը Պետերսպուրկի մէջ կայսեր հրամանով «Հայոց Աշխարհ»ի յատուկ կանոնագրութիւն մը պատրաստելու համար կազմուած յանձնաժողովը, որուն անդամներն էին, Կոմս Դիբիչ, Արտաքին, Ներքին եւ Ելեւմտից նախարարները եւ որպէս Կովկասի տեղական պայմաններու ծանօթ Զօր. Վէլիամինովը, կը պատրաստուէր ընդարձակ կանոնագրութիւնը մը ուր ուշագրաւ էին հետեւեալ կէտերը

1. Երկրին վերին վարչութեան մէջ, պիտի գտնուէին երկու խորհրդականներ, մէկը նշանաւոր հայերէն եւ միւսը՝ նշանաւոր մահմետականներէն:

3. Ընդհանուր օրէնք պիտի ըլլայ, որ քրիստոնեայք ոչ մէկ կերպով կախում ունենան մահմետականներէն, այլ կառավարուին ուղղակի իրենց դաւանակիցներէն:

4. Այս կանոնին հիման վրայ պիտի կարգադրել որ

ա. Քաղաքներու Հայ համայնքներու կառավարութիւնը յանձնուէր անոնց պետերուն կամ գլուխներուն,

բ. Հայաբնակ գիւղերու մահմետական նայիպները պիտի փոխուէր եւ այդ պաշտօնը պիտի յանձնուէր Հայ բէկերուն Հայ նշանաւոր անձերու, իսկ խառն բնակչութեամբ գեղերու մէջ երկու նայիպներու:

5. Քրիստոնէից քաղաքային գործերու քննութիւնը եւ դատաստանը՝ պիտի յանձնուէր իրենց եկեղեցականներուն եւ տանուտէրներուն, իսկ մահմետականացը՝ իրենց հոգեւորականներուն:

10. Ջնջել այն տուրքերը որ կը գանձուէին Հայերէն իրենց կրօնական ազատութեան համար:

16. Հայոց հոգեւոր գործերու վարչութիւնը յանձնել Ներսէս Արքեպս.ին, ընդ վերին ղեկավարութեամբ Եփրեմ Պատրիարքին: Եկեղեցական կալուածները պահել անձեռնմխելի, բայց հսկել, որ չըլլայ որ եկեղեցիները եւ վանքերը իրենց սեփականեն արքունական կամ մասնաւոր անձերու եւ բնակիչներու կալուածները:

Զօր. Վէլիամինովը կը հակառակի մահմետականներու սեփական կալուածներու մէջ բնակող հայոց Հայ տանուտէրներ ունենալու տրամադրութեան, պատճառաբանելով թէ անիկա պիտի կործանէ մահմետական կալուածատէրերը, վասնզի կը նախատեսէր թէ *«Հայերը որպէս մի խորամանկ, աղուէսաբարոյ եւ նենգաւոր ազգ, գրգռուած իրենց բնածին ատե-*

*(1) Անոր համար «իբր թէ» վասնզի այս թուղթը ոչ ոք տեսած էր, այն թուղթին պէս որ «իբր թէ» 1914—1918 Համաշխարհային պատերազմին սկիզբը Խատիսեան առած էր Կովկասի փոխարքայ Վորոնցով-Տաշկովէն: Կը պատմուի թէ Ներսէս Աշտարակեցի մինչեւ իր մահուան օրը իր կուրծքին վրայ կը պահէր զայն-*

*լութեամբը հանդէպ մահմետականներու»* ոչ միայն կալուածտիրոջ հարկ պիտի չտան, ա՛յլ զայն բոլորովին պիտի ուզեն չճանչնալ (*Նոյն.* էջ 341):

Վելիամինով չէր ուզեր որ մահմեդականները վիրաւորուէին, վասնզի անոնք շատ ուժեղ տարր էին եւ Կովկասի բնակչութեան երեք չորրորդը կը կազմէին, ուստի Հայոց համար զանոնք պէտք չէր վրդովեցնել, մանաւանդ որ անկէ օգուտ պիտի քաղէին Ռուս. եւ պարսիկ տէրութիւնները (*Նոյն.*):

Այսպէս, առաջին օրէն, Ռուսերը կը վարուէին երկայրի ուղղութեամբ մը:

Մասնաւորապէս Պասքէվիչ Կովկասի մէջ բոլորովին կը դաւանանէր Հայերուն, «Հայկական աշխարհ»ի վարչութիւնը անէացնելով:

Այդ վարչութիւնը կը բաղկանար միայն երեք անձերէ, որոնք էին Զօր. Կրասովսկի, (նախագահ), Ներսէս Արքեպս. Աշտարակեցի (անդամ), բերդապետ դեր-գնդապետ Բորոտին (օգնական): Ան պաշտօն ունէր վարելու Երեւանի եւ Նախիջեւանի խանութիւններուն բոլոր քաղաքային գործերը:

Այս մարմինին վրայ, Պասքէվիչ դաւադրութեամբ դրաւ ծանր պարտականութիւնները, հաստատելու Արարատեան աշխարհին մէջ խաղաղութիւնը եւ անդորրութիւնը, պաշտպանելու բնակիչները ամէն տեսակ թշնամիներուն դէմ: Ան պիտի հոգէր նաեւ արքայական կալուածները, եկամուտները, եւայլն: Տեղական միջոցներով պիտի կերակրէր ռուս զօրքը, պիտի տար պաշար բերդերուն եւ բնիկներէն, *մանաւանդ Հայերէն*, զօրք պիտի հաւաքէր, երկիրը պաշտպանելու համար, պիտի քննէր եւ որոշէր բէկերու եւ ուրիշ անհատներու իրաւունքները: Պարտաւոր էր հսկելու որ փոքր Ասիոյ մէջ տիրող ժանտախտի համաճարակը Կովկաս չմտնէ, եւ հաւաքելու ճշգրիտ տեղեկութիւններ թրքական գաւառներու անցուդարձերու ինչպէս զօրքերու թիւին եւ թուրք կառավարութեան դիտաւորութեանց մասին: Զարկ պիտի տար առեւտուրին եւ ապահով ճամբայ մը պիտի հաստատէր Ապարանի եւ Դիլիջանի գիծով դէպի Թիֆլիս: Պիտի ջնջէր թուրքերու աւազակութիւնը, պիտի զարգացնէր բամբակի արտադրութիւնը, վերահաստատէր Կողբի աղի առեւտուրը եւայլն եւայլն (տես. Աղեքսանդր Երիցեանց, *Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը եւ Կովկասի Հայք*, 1894 Թիֆլիս Ա. հտ. էջ 339):

Ինչպէս Երիցեանց դիտել կուտայ *«միով բանիւ Պասկեւիչը այնպիսի բաներ էր պահանջում, որոնց շատերը մինչեւ հիմա էլ դեռ չեն կատարուած ամբողջ Անդրկովկասում: Իսկականպէս այս մի որագայթ էր որ լարուած էր Կրասովսկուն տապալելու համար, բայց ոչ սա, որ իւր բարեկամ Ներսէսը չկարողացան իւր ժամանակին գուշակել այդ, եւ Պասկեւիչը, ինչպէս կը տեսնենք, շուտով հասաւ իր նպատակին»* (*Նոյն*), վասնզի հակառակ Ներսէս Աշտարակեցիի եւ իր ու Հայ ազգին բարեկամ Զօր. Կրասովսկիի մեծ ջանքերուն իրենց տրուած պարտականութիւնները լրիւ կատարելու Պասքէվիչ որ Թուրքմէնչայի դաշինքը կնքուելէ (10 Փետր. 1828) առաջ արդէն Թիֆլիս եկած էր «ՀԱՅԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ»ի վարչութենէն հեռացուց Կրասովսքին եւ Ներսէս Աշտարակեցին, որոնց ակամայ պարագաներու հարկադրանքին տակ ստիպուած էր յանձնել առժամեայ կառավարութիւնը, զոր տեւականացնելու միտք չունէր: Եւ ասոր համար պատրուակ պիտի ծառայէր Կրասովսկիի անկարողութիւնը գործադրելու համար այն անիրագործելի պարտականութիւններ որ ինքն դրած էր «ժամանակաւոր վարչութեան» վրայ:

Պասքէվիչ կ'ատէր Կրասովսկին, որուն դէմ հանել փորձեց Ներսէս Աշտարակեցին եւ երբ չյաջողեցաւ երկուքը միասին տապալելու որոշում տուաւ (Ա. Երիցեանց, *Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւն,* եւայլն Ա. էջ 244—5):

Անիկա սկսաւ ամբաստանել Կրասովսկիի նախագահած վարչութիւնը, որ իբր թէ հարկերը եւ հին ապառիկները չէ ժողված եւայլն եւայլն: Պասքէվիչ կը գրէր *«կարելի է հաստատապէս ասել, որ յիշեալ վարչութիւնը իւր գոյութեան հինգ ամսուան մէջ ամենեւին գործ չէ շինած, իսկ եթէ մի բան արել է, այդ էլ այն առարկաների վերաբերութեամբ, որ յառաջադրած է (որի մէջ շահ է ունեցել) Ներսէս Արքեպիսկոպոսը»*: Եւ Ներսէս Աշտարակեցիի անունին այս յիշատակութիւն առիթ առնելով իր երբեմն գոված անձը կը սեւցնէր (տես. *Նոյն*. էջ 346—348) եւ ապա Կրասովսկին (էջ 348—350):

Պետերսպուրկի մէջ համոզուած չէին Պասքէվիչի զրպարտութիւններուն եւ գիտէին անոր ատելութիւնը, սակայն զոհեցին անոր հակառակորդները վասնզի Պասքէվիչ կը մնար հրամանատար կովկասեան բանակին, ուր կարեւոր գործեր կային կատարելիք: Ուստի պատուով եւ իբր թէ վարձատրելով առաջին անգամ հեռացուցին Կրասովսքին, երբ արդէն թուրքերու դէմ պատերազմը սկսած էր:

Կրասովսքի, 21 Փետրուար 1828ին պաշտօնէն արձակուեցաւ եւ Փետր. 28ին Երեւանէն մեկնեցաւ Հայերու համակրական ցոյցերուն մէջ:

Իրեն յաջորդեց իբր նահանգապետ Երեւանի, իշխան Աղեքսանդր Ճավճավաձէ զօրավարը, վրացի ազնուականներէն: Պասքէվիչ 5 Մարտ 1828ին Երեւանի ժամանակաւոր վարչութենէն հեռացուց նաեւ Ներսէս Աշտարակեցին եւ Պեսարապիոյ առաջնորդ նշանակել տուաւ, պատրուակելով թէ ռուս եւ թուրք պատերազմին պատճառով այս առաջնորդութիւնը կարեւորութիւն ստացած էր:

Եւ այսպէս հազիւ կազմուած քայքայուեցաւ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ վարչութիւնը եւ ջնջուեցաւ նոյնիսկ անունը, վերածուելով Երեւանի նահանգի:

Իսկ Հայ գունդերը, որոնց կազմութիւնը բացատրուեցաւ վերը, առժամեայ կառավարութեան կամ ժամանակաւոր վարչութեան շրջանին, շարունակեցին մարզուիլ Էջմիածինի մօտ, դաշտին վրայ, պահելով իրենց առանձին դրօշակները, որոնց վրայ նկարեալ էր Մասիսը, Նոյեան Տապանը, Դաստառակը եւայլն սակայն տարի մը յետոյ անոնք ալ արձակուեցան:

Հազիւ վարդի մը կեանք ունենալէ վերջ «Հայկական Աշխարհ»ը կ'անհետանար իր վարչութեամբ եւ իր զինուորութեամբ:

ՎԵՐՋ

# ԱՐԴԻ ՀԱՅԱՍՏԱՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Արդի Խ. Հայաստանի սահմանները կարմիր կէտերով գիծով մը սահմանուած է:
2. 1918 Մայիս 28-ին կազմուած եւ 1918 Յունիս 4-ին Պաթումի դաշինքով ճանչցուած Հայաստանի Հանրապետութեան սահմանները կարմիր գիծով նշանակուած են:
3. 1 թուով նշանակուած Ախալքալաքի եւ Լօռիի շրջանները վրացիք գրաւած են պատերազմով 3—31 Դեկտ. 1918-ին եւ 25 Դեկտ. 1918-ի համաձայնութեամբ թողուած է վրացիներուն:
4. 2 թուով նշանակուած հողամասը (Կարս եւ Արտահան) թուրքերը գրաւած են եւ հայերը 2 Դեկտ. 1920-ի Աղեքսանդրապոլի դաշինքով լքած են թուրքերուն:
5. 3 թուով նշանակուած է Նախիջեւանի ինքնավար շրջանը:
6. 4 թուով նշանակուած են Շուշիի, Ջանգեզուրի, Ջիպրայէլի եւ Ջիվանշիրի գաւառները որ 3 Ապրիլ 1919-ին Անգլ. հրամանատարութեան յայտարարութեամբ միացան Ազրպէյճանի հանրապետութեան, եւ 22 Օգոստ. 1920-ին Հայաստան համակերպեցաւ:

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ

*Կը խնդրուի ընթերցողներէն նկատի ունենալ հետեւեալ յաւելուածները.—*

*Էջ 152, Ա. Սիւնակ, 18րդ տողին քով աւելցնել ծանօթութեան նշան մը և էջին տակը իբր ծանօթութիւն աւելցնել հետեւեալը.*

— Զամիչեան, որ Կոստանդին Ծիրանածինի նոյն գիրքին եւ նոյն էջին վրայ հիմնուելով գրած է Տարօնի անցքերը (Բ. հատոր, էջ 725—6), Գրիգորիսը, որդին եւ յաջորդը կը ներկայացնէ Վահան Բագրատունի Տարօնի իշխանին, որ մեռած է 898ին:

*Էջ 164, Ա. Սիւնակ, 48րդ տողին շարունակութիւնը պիտի ըլլայ.*

— Բացի միակ իշխանէ մը, որ էր Տիգրան Անձեւացեաց իշխան եւ Վասպուրականի Մարզպան աներհայր Վահրամ Պահլաւունիի 1015ին (Ալիշան, *Շիրակ*, էջ 149 եւ Կ. Կոստանեանց *Գր. Մագիստրոսի* Թղթերը, էջ ԺԶ. եւ ԺԹ.):

*Էջ 174, Ա. Սիւնակ, 55րդ տողէն յետոյ, պէտք է աւելցնել.*

— *Վրական Ժամանակագրութիւնը* կը խօսի նաեւ իշխանի մը վրայ Gabloutz անունով, որ կը յայտարարէր թէ «հօրենական զարմիկն» էր Մեծն Աշոտ Ա. Բագրատունիի: Laurent (էջ 278), կը մտածէ թէ Աշոտ անոր տուած պէտք է ըլլայ Գարդմանի գաւառը, Սեւանի արեւելեան եզերքին վրայ, բայց դիտելի է որ *Վրական Ժամանակագրութիւնը* զայն ցոյց կու տայ իբր հակառակորդ Աշոտի, եւ անոր դէմ կռուող (René Grousset, էջ 329):

*Էջ, 174, Ա. Սիւնակ, վերջին երեք տողերը ինչպէս Բ. սիւնակին առաջին եօթը տողերը, աւելորդ են եւ անոնց տեղ, պէտք է գրուած ըլլար.*

— Իսկ Աշոտ Երկաթի (914—930) ատեն, իբր իշխան Գարդմանի կը յիշատակուի Աղուան Սահակ Սեւադա իշխանը, որ կը տիրէր Գարդմանի եւ կը տարածէր իր իշխանութիւնը նաեւ Գուգարքի մէկ մասին վրայ, մինչեւ Ձորագետ: Աշոտ Երկաթ ամուսնացած էր անոր աղջկան հետ: Սեւադա Աշոտի օգնած է առաջ, բայց յետոյ թշնամացած է իր փեսին հետ:

Աշոտ անգամ մը հաշտուելէ վերջ, կրկին պարտաւորուեցաւ կռուիլ Սեւադայի հետ, որ յաջողեցաւ գերի բռնել զայն, իր Գրիգոր որդւոյն հետ եւ կուրցնել երկուքն ալ: Աշոտ գրաւեց նաեւ Գարդմանի բերդը եւ իրեն սեփականեց:

*Էջ 177, Ա. սիւնակ 19—21 տողերը պիտի ըլլան այսպէս.*

— Իսկ իր եղբայրը երբ ոչ որդին, Հասան կ'ամուսնանայ Սարգիս Թուրդ իշխանին աղջկան Դոփի հետ եւ Ծարի տանուտէր կը դառնայ եւ իր սերունդը կ'ստանայ Դոփեան կոչումը, կատարելով կարեւոր դեր մը, այս Հայ-Աղուանական հողերուն կամ Արցախ նահանգին մէջ: Այս նոր տոհմը շարունակած է Ծարի իշխանութիւնը...:

*Աւելցնել էջ 346, Բ. սիւնակ ԱՐՑԱԽԻ ԿԱՄ ԽԱՉԷՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ հատուածէն առաջ:*

### ԱԶԻԲԷԿԵՆՔ

Նման Շօթուկանց իշխանութեան, Զաքարեանց շրջանի նոր կազմակերպուած տոհմերէն մին էր Եղիվարդի Ազիբէկենց կամ Ազիզբէկենց իշխանութիւնը, որ հաւանօրէն կազմուած էր ԺԳ. դարուն վերջերը կամ ԺԴ. դարուն սկիզբները:

Տոհմին առաջին յիշուած դէմքն է Աւագ Ա., որուն յաջորդած է Ազիզ Բէկ Ա. շինարար իշխանը, յիշուած 1318 թուին:

Անոր որդին է Աւագ Բ. եւ թոռը՝ Ազիզ Բէկ Բ. Եղիվարդեան (յիշուած 1367ին) որուն որդիքն էին Աւագ Գ. եւ Զաքարիա:

Ազիզբէկ Եղիվարդեան, իր Աւագ եւ Զաքարիա զաւակներուն հետ, ԺԴ. դարուն վերջերը օժանդակած է Սիմոն Այրիվանեցիի, Եղիվարդի մէջ դպրոց մը բանալու:

Դպրոցը շարունակուած է արդիւնաւորութեամբ մինչեւ ԺԵ. դարուն վերջին քառորդը, Աւագի եւ Զաքարիայի եւ ապա Աւագ Գ.ի (✝ 1434) որդւոյն եւ Ազիզ Բէկ Բ.ի թոռ Մանուէլի հովանաւորութեամբ:

Ուշ ժամանակներու համար, տեղեկութիւնք թերի են, այս տոհմին մասին:

Այս իշխանութեան սահմանները ընդարձակ չէին, եւ հազիւ կը գրաւէին Արայի լերան փէշերը:

Այս տոհմը ԺԴ. դարուն վերջերը երկուքի բաժնուած էր:

Բ. ճիւղին յայտնի դէմքն է Բջնիի Մանուէլ Արքեպս.ը, որ 1367 թուին կը յիշուի:

Իրեն յաջորդած են ԺԵ. եւ ԺԶ. դարերուն նոյն ցեղէն ուրիշ եպիսկոպոս-տանուտէրներ:

Գարեգին Կաթողիկոս կը կարծէ թէ Ազիզբէկեանք անընդհատ յաջորդութեամբ հասած են մինչեւ ԺԷ. դարուն վերջերը:

(Գարեգին Կաթ. այս տոհմին մասին ունի պատմահնագիտական ուսումնասիրութիւն մը *ԱԶԻԲԷԿԵՆՔ ԵՒ ՆՐԱՆՑ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԳՈՐԾԸ* խորագրով Էջմիածինի Գիտ. Ինստիտուտի *Բանբերի* մէջ, էջ 177—206, որմէ քաղուած են վերի համառօտ տեղեկութիւնները):

# ՎՐԻՊԱԿՆԵՐ

*ԾԱՆՕԹ*.— Այս ցուցակին մէջ միայն առնուած են այն վրիպակները որոնք իմաստը խանգարելու բնոյթ ունին, իսկ զանց առնուած են այն վրիպակները որոնք ընթերցողը դիւրաւ կրնայ ուղղել:

Այս վերջին դասին կը պատկանին մասնաւորապէս *ո* եւ *ս* տառերու շրջումը եւ մի քանի նմանաձեւ տառերու, ինչպէս *ա*-ի եւ *ա*-ի, *գ*-ի եւ *դ*-ի, *զ*-ի եւ *ղ*-ի, եւ այլի իրարու տեղ գործածութիւնը, որոնք աւելորդ համարեցինք ցուցակագրել:

| *Էջ* | *Սիւնակ* | *Տող* | *Սխալ* | *Ուղիղ* |
|---|---|---|---|---|
| 5 | բ. | 14 | անհրռժեշտ | անհրաժեշտ |
| 6 | ա. | 31 | ժին | ցին |
| » | » | 32 | անոնյ | անոնց |
| 12 | ա. | 1 | Բիւրիւեն | Բիւրուեն |
| 15 | բ. | 46 | (1) | (2) |
| 16 | ա. | 42 | Նաեւ 38, 78, 110 եւ 163: (ջնջել) | |
| 16 | բ. | 25-6 | Սամոսարը | Սամոսատը |
| 20 | բ. | 34 | Ծանարերը | Ծանարները |
| 21 | բ. | 41 | այս | այն |
| 25 | ա. | 14 | վարձականներ | վարձկաններ |
| 27 | ա. | 17 | Անտիոքա | Անտիոքու |
| 37 | բ. | 47 | բայց | բացի |
| 40 | բ. | 1 | որո | որոշ |
| 41 | ա. | 30-1 | Մարդատտանը | Մարդաստանը |
| 47 | բ. | 15 | omponius | Pomponius |
| 47 | բ. | 16 | անվիճել- | անվիճելի |
| 48 | ա. | 35 | իրբ | երբ |
| 48 | ա. | 39 | Ատրաբոն | Ստրաբոն |
| 48 | բ. | 36 | եր- | երբ |
| 49 | բ. | 25 | միպետութեան | միապետութեան |
| 51 | բ. | 17 | (1) | (2) |
| 54 | ա. | 13/4 | եւ իբրեւ | իբրեւ |
| 55 | ա. | 49 | շահագրգռրութիւնը | շահագրգռու-թիւնը |
| 60 | ա. | 3 | (262) | (էջ 331) |
| 65 | բ. | 20 | Պաշտատի | Պաղտատի |
| 67 | ա. | 50 | եվրջին | վերջին |
| 68 | ա. | 20-21 | Քաշբակեանք | Խաղբակեանք |
| 68 | ա. | 21-22 | Խագրատունիք | Բագրատունիք |
| 69 | ա. | 6 | տետղոններն | տիտղոնները |
| 69 | բ. | 59 | 1127 | 1117 |
| 70 | բ. | 7 | Օրբելեան | Զաքարեան |
| 71 | բ. | 24 | Մաղքբայ | Մագքբաց |
| 71 | » | 45 | 1232ին | 1236 |
| 72 | ա. | 4 | Զարմաղա | Զարմաղան |
| 72 | բ. | 57 | 1256— | 1250— |
| 73 | բ. | 33-48 | Ապագա | Ապաղա |
| 74 | բ. | 55 | (1356 1837) | (1356 – 1387) |
| 75 | ա. | 30 | Գարագոյուլու | Գարագոյունլու |
| 75 | ա. | 58 | Քիւրտ | Քիւրտ եւ Թիւրք-մեն |
| 78 | բ. | 24 | իրեն եւ ինքն | իրեն փոխանորդ եւ ինքն |
| 84 | բ. | 2 | րակ | տակ |
| 88 | բ. | վերջին | շռնի | բռնի |
| 92 | բ. | 58 | բանոկը | բանակը |
| 94 | ա. | 32 | Վեդրի | Վետիի |
| 97 | ա. | 2 | կըբաւէրոր | կը բաւէր որ |
| 97 | բ. | 20 | Բիւկ | Բիւ- |
| 105 | ա. | 42 | զայք | զայն |
| 109 | բ. | 47 | Հաննո | Հաննոյ |
| 116 | ա. | 29-30 | Բագրատունիի | Բագրատունի |
| 116 | ա. | 32-33 | Բագրեվան | Բագրեւանդ |
| 116 | ա. | 59 | Բագրեւան | Բագրեւանդ |
| 117 | ա. | 22 | զօրանա | զօրանալ |
| 127 | բ. | 21 | Դրունց | Դրուց |
| 128 | ա. | 7 | եկեան | եկեալ |
| 128 | ա. | 8 | ի խաղաղութիւ | ի խաղաղութիւն |
| 133 | ա. | 28 | Հեր եւ Զարեհ-աւան | Հերի եւ Զարեհ-աւանի |
| 141 | բ. | 48 | (1) | (2) |
| 144 | բ. | 2 | կողմերու | կարգերու |
| 144 | բ. | 16 | յետեալ | յետնեալ |
| 152 | ա. | 24 | կայսեր | կայսր |
| 153 | ա. | 33 | Բագարատ | Բագարատի |
| 153 | բ. | 12 | զգացին | չգացին |
| 157 | ա. | 19 | ի Գազանածա-կոն | ի Գազանածակ-ըն |
| 157 | ա. | վերջին | Սարմառիի | Սուրմառիի |
| 161 | ա. | 26 | յիշած է | յիշուած է |
| 168 | ա. | 14 | շութիւն | տութիւն |
| 168 | բ. | 2 | յաժախ | յաճախ |
| 171 | բ. | 27 | միս | միւս |
| 172 | բ. | 18 | Սահլ | Սահլի |
| 172 | բ. | 51 | Եսայի՝ Դիզակի | (ջնջել) |
| 174 | բ. | 3-4 | զր ելով | զրկելով |
| 174 | բ. | 11 | Օւտիական | Ուտիական |
| 226 | ա. | 35 | խոստացայ | խոստացաւ |
| 240 | բ. | 1 | Վասի | Վասիլ |
| 243 | բ. | 47 | պահակազշրք | պահակազօրք |
| 243 | բ. | 50 | թրքակաե | թրքական |
| 244 | ա. | 22 | հնազանդեցաե | հնազանդեցան |

| Էջ | Սիւնակ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|---|
| 249 | ա. | 19 | Ապուոուարի | Ապուսուարի |
| 249 | ա. | 50 | Կամենասս | Կամենասը կը |
| 249 | ա. | 51 | իտէը | իտէ- |
| 249 | ա. | 56 | պատմակա | պատմական |
| 249 | բ. | 16 | վ̥երտ | վ̥էտ |
| 251 | ա. | 29 | ուաւ | տուաւ |
| 252 | բ. | 27 | Բաղնատշւն | Բաղնատուն |
| 252 | բ. | 53 | համակերցպեցա | համակերպեցան |
| 257 | բ. | 38 | Արձնը | Արծնը կամ Արգնը |
| 259 | ա. | 31 | հայկակականի | հայկականի |
| 265 | ա. | 49 | էջ 274) | էջ 247) |
| 267 | ա. | 36 | (1) | (2) |
| 269 | բ. | 28 | 1207–8) | 1212+) |
| 282 | բ. | 41 | 1146 | 1126 |
| 288 | բ. | 46 | հին իշխաններու | 5 իշխաններու |
| 291 | բ. | 53 | (4) Ջաքար | (4)Ջաքարեանն է: |
| 294 | ա. | 20/21 | Nicolas Yorga | Laurent |
| 297 | ա. | վերջին | 076 | 1076 |
| 297 | բ. | 3 | ետք, կը գտնէ | ետք, վերջ կը գտնէ |
| 300 | բ. | 44 | Կրսի | Կարսի |
| 317 | ա. | 23 | լլալով | ըլլալով |
| 319 | ա. | 5 | շրջան մը: | շրջան մը իրեն տրուած ըլլալ: |
| 337 | ա. | 26 | դարձուած էր | դարձուցած էր |
| 345 | բ. | վերջին | որաձկներ | ձորակներ |
| 351 | բ. | 1 | շարուակուած | շարունակուած |
| 355 | ա. | 28 | ասն | տասն |
| 355 | ա. | 46 | յորձակի | ձորակի |
| 359 | ա. | 1 | տասերորդ | տասներորդ |
| 360 | բ. | 10 | ոչխա | ոչխար |
| 360 | բ. | 22 | աւապետական | աւատապետական |
| 361 | ա. | 44 | ապաստա | ապաստանած |
| 366 | բ. | 48 | Դաւրին | Դաւբին |
| 368 | ա: | 42 | Եզեգեաց | Եղեգեաց |
| 375 | ա. | 1 | ոյնիսկ | նոյնիսկ |
| 375 | բ. | 36 | Պախտիատ | Պախտիար |
| 378 | բ. | 34 | Եոիվարդի | Եղիվարդի |
| 381 | ա. | 45 | ապաստած | ապաստանած |
| 397 | բ. | 19 | Ախիջահ | Ախիջան |
| 397 | բ. | 27 | ԺԵ. ... ԺՁ. | ԺՁ. ... ԺԷ. |
| 398 | ա. | 38 | համակրանքը | համակրանքը: |
| 401 | ա. | 22 | ստացա– | ստացան |
| 407 | ա. | 16–17 | ամրացան | ամրացած |
| 420 | բ. | 32 | ծին | հին |
| 427 | բ. | 27 | ըրա- | ըրաւ |
| 429 | բ. | 2 | Ներէ վարու | Ները իրարու |
| 436 | ա. | 37 | իքրտյ | ի քրտաց |
| 436 | բ. | 30 | Taavels | Travels |
| 436 | բ. | 30 | Merchan tine | Merchant in |
| 437 | ա. | 17 | Սուլան | Սուլթան |
| 443 | ա. | 54 | Բաղէշի | Բաղէշ |
| 445 | ա. | 4 | պայատ | պալատ |
| 448 | ա. | 2 | 1548իւ | 1548ին |
| 448 | ա. | 44 | օրիաց | օրինաց |
| 449 | ա. | 32 | խակութիւններու | խանութիւններու |
| 449 | բ. | 53 | Գուլար | Գուլլար |
| 449 | բ, | 53 | Դուլերուն | Գուլերուն |
| 450 | ա. | 29 | ըմբոսները | ըմբոստները |
| 450 | բ. | 42 | ընկհելու | ընկնելու |
| 450 | բ. | 57 | հայեցը | հայերը |
| 455 | բ: | 46 | դադաշտին | դաշտին |
| 468 | ա. | 41 | Եղիսաբէթուպօլ | Եղիզաբէթպօլ |
| 469 | ա. | 1 | Երոմլով | Երմոլով |
| 469 | բ. | 44 | մշտ | մօտ |
| 470 | ա. | 32 | Նիս 13 Յուլիս 1878ին | Նիս — 13 Յու-լիս 1878ին |

# ՑԱՆԿ

Էջ

